82Մ
Ս-84 Աγ 2004

# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆՔ
# ԿԻՒԼԻՎԵՐԻ

Ի ՁԱՆԱԶԱՆ

ՀԵՌԱԿԱՑ ԱԶԳՍ ԱՇԽԱՐՀԻ

Ի ՅՈՎՆԱԹԱՆ ՍՈՒԻՖԹԱՑ

ՀԱՆԴԵՐՁ

ԿԵՆԱԳՐՈՒԹԵԱՄԲ ՀԵՂԻՆԱԿԻՆ



ԶՄԻՒՌՆԻԱ

Ի ՏՊԱՐԱՆԻ ԵՂԲԱՐՑ ՏԷՏԷԵԱՆ

Րէճէպլէ Խանը, Թիւ 50:

1857

# ՅԱՌԱՋԱԲԱՆ ԹԱՐԳՄԱՆՉԻՆ

ԱԶԳԵՐՆՈՒՍ մէջ ընթերցասիրութեան և լեզուագիտութեան ոգւոյն որ օր ըստ օրէ յաւելնայ , ու զանազան լեզուներէ նորանոր գրեանց թարգմանութիւնը տեսնելով , ուստի փափաք մը եկաւ որ Յովնաթան Սուիֆթ Անգղիացի մեծահամբաւ մատենագրին Կիւլիվէրի ճամբորդութիւնք կոչուած զուարճալի , երգիծաբանական , և միանգամայն կրթական գրուածոյն թարգմանութիւնը ազգայնոցս նուիրեմ :

Աս ճամբորդութիւնները Եւրոպական շատ լեզուներու թարգմանուած , և ըստ մեծի մասին բաւական յարգ գտած են : Հեղինակը երևակայական ճամբորդութիւններով աշխարհիս ամեն վիճակի մոլութիւնները կը պախարակէ , մարդկային ազգին որչափ ողորմելի ու վատթարանալը կը ցուցնէ , և առաքինութիւնները կը գովէ :

Հեղինակին փիլիսոփայական ոգին երկար գովութեան կարօտ չըլլալը ընթերցողք դիւրաւ կը տեսնեն , սակայն անոր իմաստին վրայօք նախագաղափար մը ունենալու համար՝ առաջ անոր վարքը անգամ մը մտադրութեամբ կարդան :

Թէև այսպիսի գործի մը ձեռք զարնելը իմ տկար կարողութենէս վեր է , սակայն ազգը՝ աւելի ընտիր և գերազանց թարգմանութիւններով ճոխացնելու , ազգային

լեզուագիտաց յորդոր է գրգիռ մը տալու, ու լեզու չի գիտցողներուն նաև այսպիսի պատուական ու վսեմ գըրուածքի մը ճաշակը հաղորդելու դիտմամբ աս գիրքը հըրատարակելու համարձակեցայ ։

Ընթերցողիս դիւրահասկանալի ընելու համար՝ աշխատեցայ պարզ և յստակ աշխարհաբար ոճով թարգմանելու. սակայն բնագրին իմաստին երբեք չվնասելու և հարազատ թարգմանութեանը համար մանաւանդ ուշադրութեամբ հոգ տարի ։ Աս պատճառաւ հարկ եղաւ մեր լեզուին մէջ չի գտնուած քանի մը մասնաւոր հայերէն բառեր հնարելու, ու հեղինակին դարուն՝ մանաւանդ և հին պատմութեանց տեղեակ չեղողներուն դիւրութեանը համար՝ պէտք եղած տեղերը ծանօթութեամբ բացատրելու ։ Սակայն յատուկ անունները անգղիարէն հնչմամբ, և չափերն ու ժամերը ըստ Եւրոպացւոց թողուլ արժան սեպեցի ։

Ի վերջոյ՝ աս գործիս ձեռք զարնելու դիս քաջալերողը մի միայն ազգասիրական ոգին եղաւ, և չէ՞ թէ անձնական շահը ։ Կամ լեզուագիտութեան ու թարգմանչութեան համբաւաւորութիւնը ։ զորոնք պահանջելու ո՞չ ] իրաւունք ունիմ և ոչ արժանաւորութիւն, կը յուսամ որ ազնիւ ընթերցողք թերութեանցս ու սխալմանցս ներողամիտ ըլլալով, յօգուտ և ի յառաջադիմութիւն մտաց կարդալով կը զբօսնուն ։

ՍԱՐԳԻՍ Տ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

ԿԵՆԱԳՐԱԿԱՆ

ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

# ՅՈՎՆԱԹԱՆ ՍՈՒԻՖԹԱՅ

## Ա.

Յովնաթան Սուիֆթ իր հօրը մեռնելէն ետքը ծնաւ ի Տըպլին՝ 1667 Նոյեմբերի 30ին. իր մայրը՝ իր Կոտուին Սուիֆթ տայգրին օգնութեամբը կ՚ապրէր, և իր որդւոյն դաստիարակութիւնը անոր յանձնեց. Բայց Սուիֆթ իր մանկութեան ատենը զարմանալի դէպքով մը իր մօրը և հօրեղբօրը խնամքէն զրկուեցաւ. Իր Ուայթհէվընցի ստնտուն ազգականի մը ժառանգը ըլլալու համար Անգղիա երթալը հարկաւորելուն, ու մանկան վրայ չափազանց սէր ունենալուն՝ մայրէն գաղտուկ առաւ հետը տարաւ զան. Սակայն տղան փափկառողջ, և ատենուան ճամբորդութիւնները դըժուար ըլլալուն՝ երեք տարիէն ետքը նորէն զան իր մօրը դարձուց. Սուիֆթ երբ Տըպլին եկաւ, նայեցան որ ստնտուն չափազանց հոգ տարած էր անոր դաստիարակութեանը. քանզի դեռ հինգ

տարեկան չեղած՝ կրնար բաւական հե-
գել ու կարդալ։

Սուիֆթ վեցը տարեկան եղածին պէս՝ Քիլքէննի դպրատունը ղրկուեցաւ, ուր ութը տարի մնաց. և 14 տարեկան որ եղաւ՝ Տըպլինի համալսարանը մտաւ՝ 1682 Ապրիլ 24ին.

Սուիֆթի աշակերտական ընթացքը շատ գովելի չէր. միշտ դժկամակութիւն կը ցուցընէր տրամաբանութեան, որ անատենուան սիրելի գիտութիւնն էր. Իր անփութութեամբը մինչև անգամ վկայական առնելու համար հարկաւոր եղած սահմանեալ տեղեկութիւնը չունէր. Երեք տարի ևս համալսարանին մէջ մնաց, բայց մէկ քանի օրինազանց և անկարգ աշակերտաց հետևելով, իր մէկ անկարգութեանը համար խոտիկշտամբուելուն՝ Տօքթօր Էշընէն ներողութիւն խնդրելու պարտաւորեցաւ. աս նուաստութիւնը շատ դպաւ իրեն, ու քանի տարիէն ետև՝ Իրլանտիոյ կառավարիչ լօրդ Պէրքլիի դէմ գրածին մէջ՝ Տօքթօր Էշընի դէմ երգիծաբանութիւն մը մնցուց. Այս յիմարական գործոց մէջ՝ Սուիֆթ երգիծաբանական ոճոյն մանաւոր ախորժակ մը ունեցաւ,

որուն մէջ հետզհետէ այնչափ հռչակե-ցաւ ։

Սուիֆթ իր հօրեղբօրը մահուան վրայ քսան և մէկ տարեկան հասակին մէջ ան-օգնական մնաց · բայց Տրէյտըն Ուիլեըմ Սուիֆթ անունով իր միւս հօրեղբայրը իրեն օգնութեան հասաւ ։ Նա բարերար հօրեղբօրը Ուիլօպի Սուիֆթ տղան Լիս-պօն վաճառական էր, ու Սուիֆթին ա-ռատաձեռնութեամբ կ'օգնէր ։

Սուիֆթ կարօտութեան թշուառու-թիւնները ճանչցած ըլլալով, իր ընդու-նած գումարները այնչափ խնայողութբ գործածել սորվեցաւ, որ մինչ ի մահ աս բնութիւնը չմոռցաւ ։

1688ին խռովութիւն մը ծագելով, համալսարանէն ելաւ ու Անգղիա իր մօ-րը քովը եկաւ · բայց ան՝ թշուառ վի-ճակի մէջ ըլլալուն՝ խրատեց իր որդին որ երթայ Սըր Ուիլեըմ Թէմփլին պաշտ-պանութիւնը շահի, որուն կինը իր ազ-գակիցն էր ։ Թէմփլ՝ որ խորին քաղա-քագէտ ու փորձառու պալատական մը էր, Սուիֆթը իր քովը առաւ · բայց քիչ մը ժամանակ սիրոյ կամ հաւատար-մութեան նշան մը չցուցուց անոր ։ Սու-իֆթ երկու տարի Մուր Փարքի մէջ անոր

քովը եղած ատենը իր ապառնի բաղդին հիմը դրաւ. սկսաւ օրը ութը ժամ շարունակ ուսմանց պարապիլ. բայց հաւանական է որ աւելի մեծ տեղեկութիւն ստացաւ այն մեծ քաղաքագէտէն, որ տէրութեան ամեն երևելի գործոց մէջ կը գտնուէր.

Զափազանց ուսմունքէ Սուիֆթի առողջութիւնը աւրեցաւ. սաստիկ անմարսողութենէ՝ խլութիւն ու գլխու պտոյտ եկան վրան, որոնց մինչ ի մահ ենթակայ մնաց. Օդափոխութեան համար ընիկ երկիրը գնաց. բայց Տըպլինի մէջ քիչ ժամանակ մնալուն՝ օգուտ մը չտեսաւ, ու նորէն Մուր Փարք դառնալով, իր ուսմունքը շարունակեց.

Ուիլեըմ Թագաւորը՝ Թէմփլի յօդացաւութեան ատեն՝ շատ անգամ անոր այցելութեան կու գար՝ անոր հետ տէրութեան գործոց վրայօք խորհրդակցելու համար. Սուիֆթ Թէմփլի միջոցաւ Թագաւորին ներկայացաւ, ու անձամբ անոնց խորհրդակցութեանը ականջալուր կ'ըլլար. Մէկ կամ երկու անգամ Թագաւորը զԹէմփլը յօդացաւութեամբ անկողինը պառկած գտնելով, Սուիֆթին ընկերութեամբը պարտէզը կը պտտէր,

ու խօսակցութեան մէջ՝ ձիաւորաց գունդի մը հրամանատարութիւնը տալ ուզեց, բայց Սուիֆթ չընդունեց։

Սուիֆթ Մուր Փարքի մէջ ձանձրանալ սկսելով, խնդրեց Թէմփլէն որ տէրութեան պաշտօն մը պատրաստէ իրեն․ խնդիրքը շուտով չկատարելուն, Իրլանտա վերադարձաւ, և միտքը դրաւ եկեղեցական ըլլալ։ Կարգ առնելէն առաջ՝ եպիսկոպոսը անոր Մուր Փարքի մէջ ունեցած բարի վարուցը համար վկայական ուզեց․ Սուիֆթ կամայ ակամայ Թէմփլին գրելով այս շնորհքը խնդրեց։ Նոր վերայ՝ Թէմփլ ոչ միայն պահանջած վկայականը ղրկեց, այլ անոր համար լորդ Քէփէլ Իրլանտիոյ փոխարքային յանձնարարութիւն ըրաւ, ու Քօննէրի թեմին մէջ Քիլրութի կանոնիկոսութիւնը անոր տալ տուաւ, որ տարին 100 լիրաէն աւելի եկամուտ կը բերէր։

Թէմփլ Սուիֆթին յարգը ճանչնալ՝ սկսելով, և անոր հանճարոյն հարկաւորութիւն ունենալը տեսնելով, նամակներ գրեց և խնդրեց որ նորէն Մուր Փարք վերադառնայ։ Սուիֆթ իրեն մերձաւոր երէց բարեկամի մը իր կանոնիկոսութիւնը յանձնելով, ինքը այս բա-

ընկամին իրեն ընծայած սև ձիր հեծած ու Լոնտոն վերադարձաւ Սըր Ուիլեըմ Թէմփլին քարտուղար ըլլալու համար։

## Բ.

Երբ Սուիֆթ նորէն իր քարտուղարութեան պաշտօնը ձեռք առաւ, գեղեցիկ նպատակներ աչքին բաց կ՚երևէին․ բայց աս միջոցին էր որ իր ապառնի թըշուառութեանց հիմը դրաւ։ Թէմփլ այս անգամ մեծ յարգանօք կը վարուէր անոր հետ, ուստի և Սուիֆթ չորս տարի շարունակ անոր քովը քարտուղարութիւն ըրաւ, միանգամայն իր ուսմանցն ու մատենագրութեանցը պարապելով։ Բայց երբ 1699ին Թէմփլ մեռաւ, Սուիֆթի բաղդը բոլորովին փոխուեցաւ, և անոր Մուր Փարքի մէջ ունեցած հանդարտ ու երջանիկ կենցաղավարութիւնը վերջացաւ։ Սըր Ուիլեըմ իբր փոխարէն Սուիֆթի ծառայութեանցը և բարեկամութեանը՝ իր ձեռագիրներէն զատ՝ բաւական մեծ գումար մը թողուց անոր։

Թէմփլ չմեռած՝ Ուիլեըմ թագաւորէն խօսք էր առեր որ Գէնթէրպըրի կամ Ուէսթմինսդրի թեմին առաջնոր-

դու Թո՛ր դատարկ մնացածին պէս՝ իր քար-տուղարին տայ. բայց Թագաւորը իր խօսքը չկատարելուն համար, Սուիֆթ քիչ մը ժամանակ սպասելէն ետև՝ Լորտ Պէրքլիի հետ Իրլանտա գնաց, ու Լարաքօրի և Պէթհըպէկկինի առաջնորդութիւնը առաւ, որոնք 230 լիրա եկամուտ կը բերէին տարին։

Արդէն Սուիֆթ Ս. Իլեըմ Թէմփլին կենդանութեան ժամանակը՝ Էսթէր Ճօնսըն (որ Սթէլա անուամբ աւելի ծանուցուած է) գեղեցիկ օրիորդի մը սիրահարեր էր, որուն հետ իր դատարկ ժամանակները կ՚անցընէր։

Սուիֆթ փանաքան տետրներ հրատարակելով, իր տաղանդները խիստ հռչակեցան, այնպէս որ շատերը անոր գրիչէն խիստ կը վախնային, և անոր պաշտպանութիւնը կը խնդրէին։

1712ին՝ խորհրդանոցի բացուելէն տասըն օր առաջ՝ Քօնտըքթ օֆ Էլէյս ըսուած հրատարակած տետրը այնպէս ազդեցութիւն ըրաւ, որ ատանկը որ և իցէ կողմէ երբէք չէր երևցած. երեք ամսուան մէջ 11000 օրինակ ծախուեցաւ, ու պատերազմը այնչափ ատելի ըրաւ, որ ժողովուրդը գրեթէ որ և իցէ դաշամք հաշտութիւն աղաղակեց։

Այսպիսի ծառայութիւններ մեծ վարձատրութեանց արժանաւոր են, և Սուիֆթ առանց վարձատրութեան աշխատող մարդ չէր։ Շատ ընդդիմութիւններէ ետև՝ պաշտօնէից պաշտպանութեամբը Սէնթ Փէթրիկի առաջնորդութիւնը առաւ ի 1713։

Սուիֆթ իր քաղաքական և գրագիտական գրուածոց միջոցին՝ Վանհօմրիկ ( որուն Սուիֆթ Վանէսսա շինծու անունը կու տար ) խելացի ու գեղունի օրիորդին սիրահարեր էր։ Սթէլլա աս լսելով՝ սրտի անձկութենէն այնպէս հիւանդացաւ որ քանի մը շաբաթէն գերեզմանին եզրը մօտեցաւ։ Սուիֆթ անոր մեռնելէն վախնալով, գնաց Սէնթ Ճօրճ Աշ եպիսկոպոսին աղաչեց որ երթայ Սթէլլային հարցունէ թէ ինչ է իր հիւանդութեան պատճառը։ Սթէլլա եպիսկոպոսին աս պատասխանը տուաւ։ "Շատ տարիէ ի վեր զրպարտիչ լեզուներու համբերեցի, ու մինչև ցորս որ մը Սուիֆթի կինը ըլլալու յուսով կ'ուրախանայի, իսկ հիմա աս բանիս անկարելիութիւնը կը տեսնեմ, ու անունս հարկաւ անարժանութեամբ և զրպարտութեամբ արատեալ պիտի բամբասուի ամենէն"։

Եպիսկոպոսը երբ Աթէլայէն աս ըսածները Սուիֆթին պատմեց. "Ա՜ս, ըսաւ Սուիֆթ, երկու մեծ պատճառներու համար մինչև ցորս չուզեցի կարգուիլ. բայց քանի որ Աթէլայի երջանկութիւնը ինծի հետ կարգուելէն կախեալ է, կամքը կը կատարեմ՝ այն դաշամբ որ նախ՝ ամուսնութիւնը բոլոր աշխարհէ ծածուկ մնայ, մինչև որ ստիպողական հարկ մը յայտնել չպահանջէ. երկրորդ՝ զատ տանց մէջ բնակիլը շարունակուի։ Աթէլա աս դառն դաշանց կամայ ակամայ զիջանելով, 1716ին սկիզբները առաջնորդարանին մէջ գաղտնի պսակուեցաւ։

Ցաւալի է յաւելցընելը թէ Սուիֆթ կարգուելէն ետքն իսկ Վանհօմրիկին հետ փափուկ մտերմութիւնը կը շարունակէր։ Իբր ամուսնանալու համար Վանհօմրիկին սաստիկ աղաչանացը վրայ՝ Սուիֆթ արդէն Աթէլայի հետ կարգուած ըլլալը խոստովանելու պարտաւորեցաւ, դըժբաղդ օրիորդը յուսահատութենէ և բարկութենէն տարաժամ մահուամբ մեռաւ։

Քաղաքական յուզմանց միջոցին՝ Սուիֆթ իր տաղանդոց և գրչին զօրութեամբը ազնուականաց և մեծամեծաց մտեր-

մացեր ու բոլոր պաշտօնի հետամուտնե-
րէ յորդութիւն գտնելով, անոնց ըն-
կերութիւնը կը փայլէր։ Բայց իր ստ
ղաւզմօնքն ու դրամքը 1720էն ետև
մեկդի թողուց, և սկսաւ ոչ իբր փաս-
տարան՝ այլ հարստահարեալ ժողովրդ-
եան մը աներկիւղ և անձնուանձէլի պաշ-
պանը հանդիսանալու քաղաքական աս-
պարէզին մէջ։ Իրլանտացիք Սուիֆթէն
աւելի զօրաւոր պաշտպան մը չէին կրնար
գտնել։ Քաղաքական պատերազմէ մը ե-
տև՝ իր ազնուականներն ու պատերազ-
մականները աքսորուեր էին։

Անգղիոյ խորհրդարանը (փարլամէնթ) կ'ու-
զէր Իրլանտայի տէրութիւնը Անգղիոյ
տակ դնել, ու անոր առեւտուրը յառաջ
չտանել. սա պատճառաւ հրաման ըրաւ
որ Իրլանտայէն դուրս բրդեղէն կտաւներ
չտարուի։

Սատամարութեան այսպիսի ընթացք
մը հարկաւ ընդհանուր նեղութիւն
պատճառեց, և Սուիֆթ ալ բանս թե
թեւցընելու համար համարձակութեան
նեար մը հրատարակեց, որով կը հրա-
ւիրէր Իրլանտացիները որ այսուհետև
Անգղիոյ ձեռակերտուածները չգործա-
ծեն, ու հայրուստանն համար իրենց

երկրին մէջ չինուածները միայն գործածեն ։ Ժողովուրդը աս հարստահարութե մէջ այսպէս պաշտպան մը գտնելով, իրենց անոր վրայ ունեցած սէրը չափազանց եղաւ ։

1724ին Իրլանտիոյ մէջ սասկի քէչութեան վրայ շատ գանգատներ ըլլալով, Ուիլեըմ Ուուտ անուն արուեստագործին հրովարտակ տրուեցաւ որ 180,000 լիրայի արժողութեամբ տասը և հինգ գրամնոց կտրէ Իրլանտիոյ կառավարութե համար ։ Բայց անոր կտրած սասկները տժգին ըլլալուն՝ Սուիֆթ իր Տրէփիէր ստորագրութեամբ գրած նամակներովը ցուցուց ամենուն թէ Ուուտի կտրած սասկները իրենց գինին երրորդ մասը չեն արժեր ։ Ասոր վրայ ազգը վրդովեցաւ. Իրլանտիոյ խորհրդանոցը և վաճառականներէն շատը հրովարտակին դէմ բաւէարկեցին. և Անգլիոյ խորհրդանոցը ստիպուեցաւ Ուուտի տրուած հրովարտակը ետ առնելու ։

Սուիֆթ իր աս ժողովրդասիրութեանը համար շատ սիրելի եղաւ. փողոցներէն անցած ժամանակը՝ իբր իշխան կը յարգէին զան. եթէ վտանգ մը հասնելու ըլլար անոր, բոլոր Իրլանտա անոր օգնութեան

նը փախչէր ։ Ուօլփոլ Սուիֆթի թշնամին կ'ուզէր Իրլանտացւոց սա պաշտպանը բռնել ու բանտը դնել․ բայց բարեկամին մէկը իմացուց աս պաշտօնէին թէ պէտք է տասն հազար զօրք ղրկել անոր վրայ որ բռնուի ։

Գ.

Կըլիվէրի Ճամբորդութիւնները 1727 ին հրատարակեցան Սուիֆթի Իրլանտա դառնալէն ետև, ու բաւական ժամանակ անոր հեղինակը ո՛վ ըլլալը չճանչցուեցաւ ․ մինչև անգամ Փօփ, Կէյ, ու Արպըթնըթ իր բարեկամները անոնց հեղինակին վրայ երկբայութիւն գրեցին ։

Քիչ գիրք կայ որ իրենց առջի երևցած ատենը՝ Կըլիվէրի Ճամբորդութիւններէն աւելի յաջողութիւն գտած ըլլան, և ամեն հասակի և վիճակի մարդոց ընդունելի և օգտակար ըլլան ։

Լիլիփութի Ճամբորդութիւնը՝ Գէորգ Ա․ Թագաւորին օրուան Անգղիոյ քաղաքականութեան բացատրութիւնն է ․ զՈւօլփոլը Ֆլիմնափ անուանը տակ կ'երգիծաբանէ ։ Թօրիներու և Ուիկներու երկպառակութիւնները մուճակաց բարձր և

ցած կրուկներով, ու բողբոջական և լատին եկեղեցեաց տարբերութիւնները հաւկիթին տափակ կամ սուր ծայրէն կոտրելու վէճերով կը բացատրուին։ Ուէլսի իշխանը երկու կողմին միութեանը միտումը ունենալուն՝ իր մուճակաց կրուկին մէկը ցած ու միւսը բարձր ներկայացուած է։

Պրոպտինկնակի Ճամբորդութեան մէջ երգիծաբանութիւնը աւելի ընդհանուր է։ քանզի Եւրոպիոյ առաջին պաշտօնէից բռնած ընթացքը կը պախարակէ։

Մի և նոյն մարդուն Լիլիփութի մէջ ամենափոքր թզուկ և Պրոպտինկնակի մէջ հսկայ երևնալուն ընդդիմապատկերը շատ զարմանալի է։

Լափուդայի Ճամբորդութիւնը ամենէն քիչ հաւնուեցաւ, ըստ որում հրատարակուած ատեն ամենէն քիչ հասկցուեցաւ. Թռչող կղզւոյն բնակչաց գործերը նկարագրելով, ժամանակին փիլիսոփայից գործերուն վրայ ծիծաղել կ՚ուզէր. մինչև անգամ Սըր Իսահակ Նևտոնի վըրայ կը յարձակի, և շատ հաւանական է թէ Լափութացւոց քովը սպասող փամփշտահարաց այլանդակ գաղափարը՝ առ փիլիսոփային մտաց ցրումէն ծագած է։

Սուիֆթ երաժշտութեան ճաշակը չունենալուն իրաւունք չունէր զան պախարակել· բայց Հնարագիտաց ճեմարանին մէջ աւելի իրաւունք ունէր։ Սթրըլտպրըկաց տխուր նկարագրութենէն կ'երեւի թէ իր կենաց աղէտալի վերջին նկարագրութիւնը մեծ ուղղութեամբ յառաջմանէ ըրած է։

Հօույհնհնմաց Ըմբռոդութիւնը մարդկային բնութեանը վրայօք խիստ քննութիւն մ'է, բայց իր մարդատեցութեանը ու անպարկեշտ լեզուին համար չհաւնուեցաւ· յիրաւի թշուառ ըլլալ պէտք է մարդկութեան դէմ եղած երգիծաբանութենէ հաճութիւն զգացող մարդուն վիճակը· սակայն Սուիֆթի մարդատեցութեան միտումը զօրացընող ուրիշ մասնաւոր պատճառներ կային· Վէնէսսա իր սիրուհին վաղահաս մահուամբ գերեզմանը մտած էր, Սթէլա շուտով անոր ետեւէն հասնելու վրայ էր· ու ինքը այնպէս երկրի մէջ կը բնակէր, ուր մարդկային սեռը փոքր բանաւորներու եւ ազատութիւն խնդրող հարստահարեալ գերիներու բաժնուած էր· անկէ զատ՝ իր առողջութիւնը օր ըստ օրէ վատթարանալու վրայ էր։ Ստուգիւ թէեւ

Եահուներու նկարագրութիւնը զզուելի է, բայց դեռ բարոյական հարկաւոր դաս մ'է.

Կիւլիվէրի համբաւը Իրլանտիոյ մէջ ճանչնուեցաւ, այլ բոլոր Եւրոպա տարածեցաւ. Վօլթէր, որ այն ժամանակ Անգղիա կը գտնուէր, Գաղղիա իր բարեկամաց սերտիւ պատուիրեց ու խըրատեց որ զանոնք թարգմանել տան.

Ժամանակակից քննիչներէն ոմանք Սուիֆթը ամբաստանեցին իր Կիւլիվէրի Ճամբորդութիւնները Տէֆօ հեղինակին Ռօպինսըն Գրիւզօ արկածավէպին նմանցընելուն համար. Թէև այս երկու հեղինակաց երևելի արկածավէպներուն մէջ աչքի զարնող շատ նմանութիւններ կան, բայց Տէֆօ արտաքոյ կարգի դիպուածներէ դուրս չելլէր, մինչդեռ Սուիֆթ փիլիսոփայական երգիծաբանութեան բարձր նպատակաւ կը գրէ.

Գրեթէ այս Ճամբորդութիւնները հըրատարակուած տարին՝ Սթէլլա մեռնելով, Սուիֆթի առտնին երջանկութիւնը առ ի յաւիտեան վերջացաւ. Այս տը-խուր արկածին վրայ՝ հեղինակը հիւանդութենէ ու սրտին կսկիծէն չէր կրնար անդադար աշխատիլ. Քանի որ տարի-

ները կ'անցնէին, իր գլխու պտոյտն ու խլութիւնը, միանգամայն և բնութեան խստութիւնը աւելի կ'աճէին։

1736ին՝ Լէճըն Քլըպը գրելու ատեն՝ իր գլխու պտոյտը այնպէս սաստկութեամբ բռնեց ու այնչափ երկար տեւեց, որ այնուհետեւ բան մը գրել չհամարձակեցաւ։ 1741ին՝ իր մտաւորական միճակը ա՛ն աստիճանի հասաւ, որ իր անձին ու ստացուածոցը վրայ օրինաւոր պահապաններ դնել հարկ եղաւ։ Հետեւեալ տարին՝ քնէութեան, յիմարութեան, անզգայութեան, և լռութեան մէջ ինկաւ։ Իր Ռիչըրտ Պրէնէն հաւատարիմ ծառան կ'ըսէր թէ՝ երբ ամենեւին չկրցաւ խօսիլ, իր առանձին աղօթքը միշտ կը շարունակէր. քանի որ յիշողութիւնը կը պակսէր, անոնք ևս կը պակսէին։ Վերջապէս Տէրունական աղօթքը միայն կրնար ըսել, մինչև խօսելու կարողութիւնը բոլորովին դադրիլը։ Մահը հանդարտ էր, ու ճրագի պատրուգի նման մարեցաւ՝ ի 19 Հոկտ. 1745։ Իր ստացուածքովը տխմարաց ու խելագարաց հիւանդանոց մը շինուելու համար կտակ ըրաւ։

Դ.

Սուիֆթ բարձրահասակ, ուժեղ, և վայելչագէմ էր· գոյնը քիչ մը թուխ, աչքը կապոյտ, յօնքը սև և խիտ, ու քիթը արծուենկի հակեալ։ Շատ ճարտարախօս էր· հակառակորդին ըստ անդւոյն պատասխան տալու պատրաստ էր, և անոր անակնկալ յարձակումէն չէր սասաներ։ Նա տաղանդը իրեն շատ օժանդակ պիտի ըլլար, թէ որ Թօրիները Անգղիոյ լորտերուն տան մէջ եպիսկոպոսական աթոռ մը տուած ըլլային իրեն։

Երկդիմի կատակը շատ կը սիրէր· և յանպատրաստից ոտանաւոր շինելու չափազանց տաղանդ մը ունէր։ Տրէփիէրի նամակները հրատարակուելէն վերջը ժողովրդենէ այնչափ սիրուեցաւ, որ Տըպլինի փողոցներէն անցած ատենը խուռն բազմութիւն մը միշտ ետևէն կ'երթային։ "Իրլանտացիք պէտք են, կ'ըսէր, որ ժողովք ընեն ու ինծի համար շատ մը գլխարկ ծախու առնեն· վասնզի բարև տալէն գլխարկս մաշեցաւ"։

Քաղաքականութեան վրայ գրող քիչ հեղինակ կան, որ կարենան Սուիֆթի չափ պարծենալ։ Սուիֆթ Աննա Թագու-

հայն օրը՝ ժողովրդեան սիրոյ հոսանքը Ս–ֆիներու դարձուց, և իրաւը ըսելու է՝ Անգղիոյ բոլոր հասարակութեան կարծեացը ատեն մը ինքը առաջնորդեց։ Հետևեալ թագաւորութեան ատեն՝ Իրլանտացւոց պաշտպան ու քաղաքական ուսուցիչ եղաւ. Թէպէտև ոտնակոխ եղած ազգէ մը միայն պաշտպանուած էր, սակայն տէրուէ խորհրդանոցին և ատենին դէմ դրաւ։ Իրաւամբ կ՚ըսէ Ճօնսըն թէ Իրլանտա անոր պարտական է. Իրլանտացիք իրենց հարստութիւնն ու երջանկութիւնը Սուիֆթի զիրենք պաշտպանել սկսած ատենէն կրնան թուականել։

Սուիֆթի յիշատակը Իրլանտիոյ մանաւանդ Տըպլինի մէջ դեռ կը յարգի։



## ՎՐԻՊԱԿՔ

| ԵՐԵՍ | ՏՈՂ | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 10 | 4 | ըս նորէն | որ նորէն |
| 66 | 5 | ստախօսութեամբ | ուրախութեամբ |
| 92 | 5 | ունենայ | ունեցայ |
| 170 | 12 | վերարկուիս | վերարկուին |
| 180 | 2 | մորթը | մորթը |
| 527 | 17 | 1707 Օգոստ. | 1706 Օգոստ. |
| 547 | 23 | ճանապարհորդէիէք | ճանապարհորդէինք |
| 576 | 16 | մեծափառութիւնը | վսեմութիւնը |
| 402 | 15 | կերծեօրս | կարծեօրս |
| 516 | 8 | հասկըցուի | հասկըցուցի |

Այս սխալներէն ոմանք միայն քանի մը օրինակաց մէջ կը գտնուին։

| ԵՐԵՍ | ՏՈՂ | ՍԽԱԼ | ՈՒՂՂԻՂ |
|---|---|---|---|
| 208 | 7 | պալատի | պալատէն |
| 231 | 14 | քառակուսիի | քառակուսի |
| 235 | 18 | իր համբաւը | իմ համբաւս |
| 346 | 12 | պատահմուք | պատահմունք |
| 348 | 3 | Ծողովուրդ | Ժողովուրդ |
| 427 | 16 | ըսածիս վրայ | տեսածիս վրայ |
| 431 | 8 | հարստահարութիւնը | հարստութիւնը |
| 456 | 22 | յիշողութեաը | յիշողութեան |
| 460 | 1 | կը հասկըցընեն | կը հարցընեն |
| 464 | 20 | դրոշին | դրօշմին |
| 466 | 20 | Լեհինակէ | Լեհինակէի |
| 481 | 1 | համարձակեցայ | չհամարձակեցայ |
| 520 | 4 | հագուլու | հագուելու |
| 524 | 14 | թեան | թեամբ |
| 577 | 11 | եղածին | եղածիս |
| 588 | 27 | աշխատեցա | աշխատեցաւ |
| 635 | 3 | անոցմէ | անոնցմէ |

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ



# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Ի

# ԼԻԼԼԻՓՈՒԹ

# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Ի

# ԼԻԼԻՓՈՒԹ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ.

*Հեղինակը իր ծննդեան ու ընտանեացը վրայօք քանի մը տեղեկութիւն կու տայ ։ Իր ճամբորդութեան առաջին պատահմունքը ։ Նաւաբեկութեան կը պատահի ու կեանքը ազատելու համար կը լողայ . և Լիլիփութի երկրին ծովեզերքը կը հասնի անվնաս ։ Հոն բանտարկուելով քաղաքը կը տարուի ։*

ՀԱՅՐՍ Նոթինկհըմ գաւառին մէջ փոքրիկ կալուածքի տէր մարդ մ'էր, ու ես իր հինգ զաւակաց երրորդն էի ։ Տասնըերկու տարեկան էի երբ Քէմպրիճի Էմմանուէլեան դպրատունը ղրկեց զիս , ուր երեք տարի մնացի անդադար ուսմանցս պարապելով . թէև դպրատան ծախուցս համար հօրս տուածը չնչին բան

մ՚էր · բայց հարուստ չեղողի մը խիստ ծանր գալուն՝ Լոնտոնի մէջ Պր. Ռէյմ Պէյթս հռչակաւոր վիրաբուժին քով աշկերտութեան մտայ, որուն քովն ալ շարունակ չորս տարի մնացի։ Այս միջոցին մէջ հայրս երբեմն քիչ մը ստակ կը ղրկէր ինծի, որոնք նաւարկութեան, ու մաթեմաթիգական գիտութեանց ան մասերը սորվելու կը ծախէի, որ ճամբորդութիւն ընելու դիտաւորութիւն ունեցողներուն օգտակար էին · քանզի միշտ կը գուշակէի՝ թէ օր մը ճակատագիրս պիտի վճռէր որ ճամբորդութիւն ընեմ · Պր. Պէյթսին քովէն ելնելէս ետքը՝ հօրըս քովը դարձայ, որուն, միանգամայն և Ճոն քեռիիս ու ազգականացս մէկ քանիին ձեռնտուութեամբը քառասուն լիրա ձեռք ձգեցի, նաև Լէյտնի մէջ ընելու ծախուցս համար տարին անոնցմէ երեսուն լիրա հաստցնելու խօսք առի։ Այս քաղաքին մէջ ալ երկու տարի եօթն ամիս բժշկութեան պարապեցայ, որովհետև ծովային ճամբորդութեանց մէջ շատ ալ օգտակար բաներ գիտէի։

Լէյտնէն դառնալէս ետքը շատ չանցաւ՝ Պր. Պէյթս բարի վարժապետիս յանձնարարականովը Աբրահամ Փէնել

նաւապետին հրամանատարութեանը տակ
Սուօլլօ անուն նաւին մէջ վիրաբոյժ կար-
գեցայ, որով շարունակ երեք ու կէս
տարի Արեւելք և ուրիշ կողմեր քանի
մը ճամբորդութիւն ըրի։ Յետ որ դար-
ձայ՝ մտքս դրի որ այնուհետեւ Լոնտո-
նի մէջ բնակիմ. Պր. Պէյթս վարժապետս
աս գիտութիւնս քաջալերելէն զատ՝
քանի մը հիւանդաց ևս յանձնարարու-
թիւն ըրաւ ինծի։ Օլտ-Ճիւրի ըսու-
ած թաղին մէջ փոքրիկ տան մը մէկ մա-
սը վարձեցի, ու ինչպէս կը խրատէին
զիս որ վիճակիս փոփոխութիւն մը տամ,
Նիւկէյթ թաղին մէջ զանկապան ծա-
խող Մէրի Պըրթըն օրիորդին հետ ա-
մուսնացայ, որ չորս հարիւր լիրա իբրև
օժիտ հետը բերաւ։

Բայց Պր. Պէյթս բարի վարժապետս եր-
կու տարիէն ետքը մեռնելով, ու բա-
րեկամներս քիչ ըլլալուն՝ գործս սկսաւ
յառաջ չերթալ. քանզի արհեստակցացս
խիստ շատերուն վատ սովորութեանը
հետեւիլ ալ խղճմտանքս չթողուց։ Ուստի
կնկանս ու քանի մը ծանօթ մարդոց
հետ խորհուրդ ընելով, նորէն ծովային
ճամբորդութիւն ընել որոշեցի։ Վեր-
ջապէս՝ հետզհետէ երկու նաւերու մէջ

վեց տարի վիրաբուժութիւն ընելով, Արեւելեան ու Արեւմտեան Հնդկաստան զանազան անգամ ճամբորդութիւն ըրի· որով և ունեցած հարստութիւնս աւելցուցի։ Հետս միշտ բաւական գրքեր ունենալուս՝ պարապ ժամանակս հին և նոր ընտիր հեղինակներ կարդալով կ՚անցրնէի, ու ցամաքը եղած ատենս՝ գըտնուած քաղաքիս բնակչաց բարքն ու սովորութիւնները կը դիտէի, միանգամայն և անոնց լեզուն սորվելով կը ջանայի· քանզի յիշողութիւնս սուր ըլլալուն՝ սորվելու մեծ դիւրութիւն ունէի։

Աս ճամբորդութեանց վերջինը շատ անյաջող ըլլալուն՝ ծովէն ձանձրացայ, և միտքս դրի որ այնուհետև կնոջս ու ընտանեացս քով հայրենիքս մնամ։ Ուստի Օլտ-Ճիւրի Թաղէն Ֆէթր-լէյն Թաղը անցայ, անկից ալ ելնելով Ուափփինկ Թաղը գացի՝ յուսալով որ հոն նաւաստիներուն մէջ գործ մը գտնեմ· բայց հոս ալ յոյս պարապը ելաւ։ Վերջապէս՝ յուսալով որ գործս յաջողութիւն մը կը գտնէ, երեք տարի պարապ անցընելէս ետքը՝ հարաւային ծովը ճամբորդութիւն ընելու վրայ եղող Անթիլօփ նաւուն՝ Ուիլեըմ Փրիչար նաւապետին իս-

ծի բրած շահաւէտ առաջարկութիւնը ընդունեցի ։ 1699, Մայիսի 4ին՝ Պրիսթոլէն առագաստեցինք ու մեր ճամբորդութիւնը իսկզբան շատ յաջող գնաց ։

Աս ծովերուն մէջ գլուխնիս եկածները մանրամասն պատմելով ընթերցողիս ձանձրութիւն տալը՝ քանի մը պատճառաց համար փայելուչ չըլլալուն՝ հոս դանց կ'ընեմ, միայն այսքան հասկցընելս բաւական է թէ Պրիսթոլէն Արեւելեան Հնդկաստան երթալու ատեններս՝ ահագին ալէկոծութիւն մը մեզ դէպ ի Վան Տիմէնի երկրին արեւմտեան հիւսիսային կողմը քշեց տարաւ ։ Հոս քննեցինք տեսանք որ հարաւային լայնութեան երեսուն աստիճանին ու երկու մասին տակը կը գտնուէինք ։ Մեր նաւաստիներուն տասն երկուքը աշխատանքին չափազանցութենը եւ ուտելեաց յոռութենը չկրնալով դիմանալ՝ մեռան, եւ մնացածները շատ տկար վիճակի մէջ էին ։ Նոյեմբերի 5ին, որ այն կողմերուն ամառը սկսելու ատենն է, օդը շատ միգապատ ըլլալուն՝ նաւաստիք նաւուն պարանին կէսին երկայնութեանը չափ հեռու ժայռ մը տեսան, բայց սաստկաշունչ հովին բռնութիւնը միջոց չտալով, ուղղակի տարաւ նաւը անոր

ղարկաւ, որ անմիջապէս խորտակեցաւ։ Նաւակներէն վեցը հոգի, որոնց մէկն ալ ես էի, նաւակը ծովը իջեցրնելով՝ մէջը նետուեցանք, և ժայռէն ու նաւէն հեռանալու ճար մը գտանք։ Ըստ իմ հաշուիս՝ երեք փարսախի չափ թի քաշեցինք, մինչև որ աշխատելու կարողութիւննիս չմնաց, քանզի նաւուն մէջն ալ սաստիկ աշխատած էինք։ Ճարերնիս հատնելով, ինքզինքերնիս ալիքներուն խընամքը յանձնեցինք։ Կէս ժամու չափ ետքը՝ յանկարծ հիւսիսային սաստիկ քամի մը փչելով, նաւակը տակնուվըրայ դարձուց։

Ալ չեմ գիտեր թէ նաւակին մէջ հետս գտնուող, ինչպէս նաև ժայռին վրայ ազատուող կամ նաւուն մէջ մնացող ընկերներս ինչ եղան. բայց ըստ իմ կարծեացս՝ ամէնքն ալ խեղդուեցան։ Ես սկսայ լողալ բաղդը դէպի ուր որ կ'առաջնորդէր զիս. հովը ու ծովուն մակընթացութիւնը զիս դէպի յառաջ կը մղէին։ Շատ անգամ սրունքս վար կը կախէի, բայց ոտքս յատակին չէր դպչեր։ Երբ ոյժս բոլորովին հատած դիմանալու կարողութիւնս չէր մնացեր, նայեցայ որ գտնուած տեղիս ջուրին խորութիւ-

նը երկայնութեանս չափ էր․ ան միջա-
ցին ալէկոծութիւնն ևս բաւական մեղ-
մացած էր, ու յատակին դարուվարը
այնչափ անզգալի էր որ գրեթէ մղոն մը
ծովուն մէջ քալելէս ետքը՝ ցամաքը հա-
սայ՝ կարծեմ իրիկուան ժամը գրեթէ
8ին ։ Անատեն՝ կէս մղոնի չափ յառաջ
քալեցի դէպ ի ներս, բայց ո՛չ տներու
և ոչ բնակչաց նշմարանք մը երևցաւ
ինծի ; գուցէ այնքան հոգնած էի, որ
բան մը չկրցայ տեսնել․ քանզի չափա-
զանց աշխատութիւնը, օդին տաքութիւ-
նը, և նաւէն մեկնելու ատեն՝ կէս սը-
րուակի չափ խմած օղիս, ա՛յնպիսի վի-
ճակի մէջ ձգեր էին զիս, որ քունը աչ-
քէս կը վազէր ։ Ուստի շատ կակուղ ու
կարճ խոտերու վրայ պառկեցայ, և հոն
անանկ խորին քուն մը քնացայ, որ կե-
նացս մէջ այնպէս քնանալս բնաւ չեմ
յիշեր ։ Ըստ իմ հաշուիս՝ գրեթէ ինը
ժամ քնացայ․ քանզի երբ արթնցայ՝ ար-
շալոյսը նոր կը ծագէր ։

Անատեն ելնելու ջանք ըրի և նայեցայ
որ չէի կրնար շարժիլ․ ըստ որում կռը-
նակիս վրայ պառկած ըլլալուս՝ երկու
կողմերէս թևերս ու սրունքս, նմանա-
պէս գլխուս երկայն ու խիտ մազերը

գետնի վրայ պինդ մը քամեր էին։ Ան-
կէ զատ՝ անութներէս մինչեւ ազդերս
բոլոր անձս շատ մը բարակ կապերով կապ-
կըպեր էին։ Ուստի միայն դէպ ի վեր
կրնայի նայիլ. արեւը կը սկսէր իր տաքու-
թիւնը տարածել, եւ անոր ճառագայթ-
ները աչքերս կը նեղէին։ Այնատեն՝ չորս
դիէս խառնաշփոթ ձայն մը լսեցի, բայց
ես անանկ դիրքով մը պառկած էի, որ
երկինքէն զատ՝ ուրիշ բան չէի կրնար
տեսնել։ Շատ չանցաւ՝ ձախ սրունքիս
վրայ կենդանի բանի մը շարժիլը զգացի, որ
կուրծքիս վրայէն կամաց կամաց յառաջ
գալով՝ գրեթէ ծնօտիս մօտեցաւ. երբ
աչքերս կրցածիս չափ դէպ ի ան կողմը
ծռեցի, տեսայ որ ան հազիւ վեցը բը-
թաչափ բարձրութեամբ մարդ մ'էր՝,
ձեռքը աղեղ ու նետ մը բռնած, եւ կռ-
նակէն ալ կապարճ մը կախած. Նոյն
վայրկենին զգացի որ նոյն մարդոցմէն
(ինչպէս որ երեւակայեցի) առ նուազն
քառասուն հոգի եւս առաջինին ետեւէն
վրաս եկան։ Յետին աստիճանի զարմանք
մը զիս պատելով, անանկ ահարկու ձայ-
նով մը պոռացի, որ ամէնը մէկէն յան-
կարծահաս վախով մը ետ փախան. ա-
նոնցմէ ոմանք, ինչպէս որ ետքը լսեցի,

փախչելու համար երկու կողմէս գետինը նետուելու ատեննին վիրաւորուեր էին։ Սակայն և այնպէս շատ չանցաւ՝ նորէն եկան. ու անոնցմէ մէկը, որ երեսս աղէկ տեսնելու չափ բաւական մօտս գալու համարձակեր էր, ի նշան զարմացման ձեռքերը ու աչքերը վեր վերցընելով, սուր բայց որոշ ձայնով մը պոռաց՝ Հէքինահ դէգուլ. միւսներն ևս նոյն խօսքը շատ անգամ կրկնեցին, բայց ես ան ատեն ինչ ըսել ուզելնին չէի գիտեր։

Բոլոր աս միջոցիս, ինչպէս որ ընթերցողս ալ կրնայ հաւատալ, մեծ անհանգստութեամբ պառկած էի. վերջապէս ինքզինքս ազատելու համար ջանք մը ընելով, բարեբաղդաբար ոչ միայն ձախ թևս գետինը ամրող չուանները կտրեցի, այլև անոնց ցցերը տեղերնէն հանեցի. քանզի թևս քիչ մը բարձրացընելով, զիս ինչ կերպով կապած ըլլանին տեսնելուս պէս՝ սաստիկ ուժով ցնցում մը ըրի, որ շատ ցաւցուց ինծի, ու ձախ կողմի մազերս գետինը պընդող չուանները քիչ մը թուլցուցի. ասով հազիւ երկու բթաչափ գլուխս կըրցայ դարձընել։ Բայց աս մարդկային կենդանիները բռնել ուզելուս չեղաց՝

ըոնորէն փախան, ու խիստ սուր ձայնով բարձր աղաղակ մը ձգեցին․ աս ալ դադրելէն ետքը՝ մէկ մ'ալ անոնց մէջէն մէկուն բարձր ձայնով Թօլչօ ֆօնա՜ պոռալը լսեցի․ մէկէն հարիւրէն աւելի նետեր ձախ թեւիս վրայ նետելնին զգացի, և կարծեցի թէ նոյնչափ ասեղներով զիս կը ծակծըկէին։ Մեր Եւրոպա օդուն մէջ ռումբ նետածնուս պէս՝ ասոնք կրկին անգամ անթիւ նետեր արձակեցին, որոնց շատը կարծեմ մարմնոյս վրայ ինկան, (թէև ես բան մը չզգացի) ու ոմանք ալ երեսիս վրայ, որն որ շուտով ձախ թեւովս ծածկեցի։ Ու նետերուն տարափը դադրելէն ետքը՝ ցաւէս ու տառապանքէս նեղելով՝ նորէն ազատելու ջանք ըրի․ բայց առաջինէն աւելի ուժգին նետեր արձակեցին վրաս, և անոնցմէ ոմանք նիզակնին կողերս խօթելու ջանացին, բարեբաղդաբար գոմէշի կաշիէ վերարկու հագած ըլլալուս չէին կրնար թափանցել։ Ու հանդարտ պառկիլը խելացութիւն սեպեցի, ու միտքս մինչև գիշեր անանկ մնալ էր․ քան զի ձախ թեւս արդէն ազատ ըլլալուն՝ ինչպէս որ ըլլար՝ ինքզինքս դիւրաւ կրնայի ազատել։ Թէ որ աս երկրին բոլոր բնա-

կիչները ան տեսածիս հաւատար էին, իրաւամբ կրնայի հաւատալ թէ որչափ մեծ բանակ հանելու ըլլային՝ կրնայի անոնց դէմ դնել։

Բայց բաղդը բանը ուրիշ կերպ տընօրինեց. վասն զի ժողովուրդը զիս հանդարտ տեսնելով, այլ նետ չնետեցին, և լսած աղաղակէս հասկցայ՝ թէ անոնք երթալով կը շատնային. աջ ականջիս կողմէն գրեթէ չորս կանգուն հեռաւորութեամբ ժամու մը չափ անանկ աղմուկներ լսեցի, որ գործաւորներու ըրած ձայնի կը նմանէր. ի վերջոյ՝ սեպերուն ու չուաններուն ներածին չափ գլուխս ան կողմը դարձնելով, նայեցայ որ գետնէն մէկ ու կէս ոտնաչափ բարձր, երկու կամ երեք աստիճան սանդուղով բեմ մը կանգներ էին, որուն վրայ նոյն փոքրիկ բնակիչներէն չորս հոգի ելեր էին։ Ասոնցմէ մէկը, որ նշանաւոր մարդ մը կ'երևար, ու բեմին վրայէն երկար ատենաբանութիւն մը ըրաւ ինծի, ուսկէ խօսք մը չէի կրնար հասկընալ. Պէտք եմ նաև յիշել որ ան երևելի անձը իր ատենաբանութիւնը չսկսած՝ երեք անգամ՝ Լանկրօ դէհիւլ սան պոռաց. (աս ու առջի ըսած խօսքերս ետքը կրկնելով մեկնեցին ին-

ծի )։ Ասոր վրայ՝ բնակիչներէն յիսունի չափ անձինք մէկէն գալով, գլխիս ձախ կողմը պնդող չուանները կտրեցին, որով ազատ կրցայ գլուխս աջ կողմն դարձընել, ու ատենաբանութիւն ընելու պատրաստուող մարդը ու անոր շարժուածքը աղէկ մը դիտել։ Աս մարդը միջակ տարօք մէկը կ՚երեւար ու հասակաւ իր հետը ընկերացած ան երեք անձերէն աւելի բարձր էր․ որոնց մէկը մանկլաւիկ(1) մ՚էր, որ անոր քղանցքը բռնելով վեր կը վերցընէր ու միջամատէս քիչ մը աւելի երկար կ՚երեւար․ միւս երկուքն ալ անոր երկու կողմը կանգնելով թեւակից էին։ Աս անձը իր ատենաբանութիւնը վայելուչ կերպով կը կատարէր, և գիտեցի որ իր խօսքերուն շատին մէջ երբեմն սպառնական, ու երբեմն գթութեան, մարդասիրութեան, ու խոստմանց խօսքեր կ՚ընէր։

Համառօտ բայց խիստ խոնարհ կերպով մը պատասխան տուի՝ ձախ ձեռքըս ու աչքերս դէպ ի արեւը տնկելով, որպէս թէ վկայ կոչել կ՚ուզէի զան։ Նաւէն զատուելէս ի վեր բան մը կերած չըլլալուս և դրեթէ անօթութե-

(1) Իչ օղլանը։

նէ մարելու՝ բնութեան պահանջած
հարկը ա՛ն աստիճան սաստիկ զգացի, որ
չկրնալով ինքզինքս զսպել (գուցէ փա-
յելչութեան խիստ կանոններուն դէմ),
մատս ստէպ բերանս տանելով, ուտե-
լիք խնդրելս հասկըցընել ուզեցի։ Հուր-
գօն (աս անունը մեծ լորտ նշանակելը
ետքէն սորվեցայ) միտքս շատ աղէկ հաս-
կըցաւ, ու բեմին վրայէն վար իջնալով,
հրամայեց որ երկու կողմերուս քանի
մը սանդուղներ մօտեցընեն․ ուստի հա-
րիւրէն աւելի մարդիկ միս լեցուն զամ-
բիւղներ բեռնաւորած՝ անոնց վրայ ել-
նելով դէպ ի բերանս քալեցին եկան․
Իմ հոն հասնելուս լուրը կայսեր հա-
նելուն պէս՝ անոր հրամանաւը աս միսերը
պատրաստուեր ու հոն բերուեր էին․
Նայեցայ որ շատ տեսակ կենդանեաց
միս կային, բայց ես համերնէն չէի կըր-
նար որոշել զանոնք․ անոնց մէջ եղած
ազդրերը, ուսերը, և երիկամունքը՝ ոչ-
խարիններուն կը նմանէին, ու խիստ ալ
աղէկ համեմուած էին, բայց արտուտի
թևերէ աւելի պզտիկ էին․ Ես անոնց
երկուքն ու երեքը, նաև նկանակներուն
երեքը, որոնց ամեն մէկը հրացանի գըն-

տակի չափ կային, մէկ մէկ պատառ ընելով կերայ։ Սա մէկ կողմէն կ'ուտէի, անոնք ալ միւս կողմէն ախորժակիս ու մեծութեանս հազար ու մէկ զարմացման ու հիացման նշաններ ցուցընելով ուտելիք կը հասցընէին։ Ուրիշ նշան մ'ալ ըրի, որով խմելիքի պէտք ունենալս հասկըցընել ուզեցի։ Անոնք իմ ուտելէս մակաբերեցին որ քիչ խմելիք պիտի չ՚օգտէ ինծի, ուստի շատ բարակամիտ մարդիկ ըլլալնուն՝ խիստ վարպետութեամբ իրենց ամենէն մեծ լեցուն տակառներուն (1) մէկը վերցընելով, դէպ ի ձեռքըս գլորեցին, և անոր բերանը բացին, ու ես առանց դժուարութեան ի մի ումպ խմեցի լմնցուցի զան. քանզի մէջինը կէս սրուակ բան չկար, և եթէ քիչ մը Պուրկօյնի թեթև գինիին համը ունէր ալ՝ անկէ շատ աւելի համեղ էր։ Ուրիշ տակառ մը բերին, որն որ առաջինին պէս խմեցի. նշան մը ըրի նորէն, որ ուրիշ մը ևս բերեն, բայց ալ չունէին որ բերէին։

Աս սքանչելիքը լմնցընելս տեսնելով, ցնծութեան աղաղակներ ձգեցին, ու շատ անգամ առջի ըրածնուն պէս՝ կըր-

(1) Փըչը։

կին կրկին՝ Հէքինահ տէկիւլ պոռալով, կուրծքիս վրայ ելնել խաղալ սկսան։ Ասկէ ետև՝ նշան մ՚ըրին ինծի որ տակառները վար նետեմ. բայց նախ հոն գտնուողները ճամբուն վրայէն հեռացընելու համար՝ բարձր ձայնով՝ Պօրախ Մէվօլահ պոռացին. ու երբ նետած ամանները օդուն մէջ տեսան, Հէքինահ տէկիւլ ըսելով՝ ընդհանուր աղաղակ մը ձգեցին։

Ի՞նչ մեղքս պահեմ, շատ հեղ գրգիռ մը եկաւ ինծի որ վրայէս անցած դարձած առեններին՝ անոնցմէ քառասունը կամ յիսունը ձեռքովս բռնեմ գետինը զարնեմ. բայց մտածելով որ անոնք արդէն քաշած նեղութիւններէս աւելի նեղութիւն կրնային տալ, և որովհետև անոնց խօսք տուեր էի որ իրենց դէմ ոյժս չի փորձեմ՝ չուզեցի մտքէս անցածը ի գործ դնել։ Ասկէ զատ՝ այնչափ մեծածախ հանդիսիւ զիս կերակրելնուն համար՝ անոնց հետ հիւրընկալութեան օրինօք կապուած սեպեցի զիս։ Այսու ամենայնիւ աս չընչին էակաց անվեհեր քաջութեանը վրայ մտքէս որչափ որ զարմացայ՝ քիչ էր, ինչու որ ինծի պէս ահագին կենդանիի մը ( ինչպէս որ ես իրենց անանկ երևնալ պէտք էի ) միայն տեսքէն վախնալու տե-

զերնին՝ ձեռացս մէկը արձկուած տասնէն անգամ՝ վրաս ելնելով պատրաստելու համարձակեր էին։

Քիչ մը ատենէ ետև՝ երբ տեսան թէ ուրիշ ուտելիք չեմ ուզեր, կայսեր կողմանէ բարձր աստիճանաւորին մէկը եկաւ ինծի ներկայացաւ։ Նորին վսեմութիւնը ոտունքիս վարի կողմէն վրաս ելաւ, ուղէպ ի երեսս յառաջ եկաւ՝ հետը ունեցած երկոտասնեակի մը չափ շքադիրներովը, և թագաւորական դրոշմով կնքուած վկայականը հանելով աչացս մօտեցուց, և առանց բարկութեան նշան մը ցուցընելու՝ հաստատուն կերպով և շատ անգամ հորիզոնի կողմը ցուցընելով, տասը րոպէի չափ հետս խօսեցաւ։ Ըս ցուցըցած կողմը կէս մղոնի չափ հեռու մայրաքաղաքը ըլլալը ետքը հասկըցայ, ու նորին վեհափառութիւնը իր խորհրդարանին մէջ որոշեր էր որ զիս հոն տանին։ Քանի մը խօսքով պատասխան տուի անոր, բայց օգուտ մը չըրաւ, և արձըկուած ձեռքս միւս ձեռքիս վրայ դնելով, նշան մը ըրի, (բայց աս ընելու ատենս՝ նորին վսեմութեանը կամ շքադիրներուն չվնասելու համար՝ ձեռքս անոնց գլխուն վրայէն անցուցի) և ետ-

քը գլխուս ու անձիս վրայ դնելով, ապատ թողուելու փափաքս հասկցընել ուզեցի։

Կ'երեւի թէ միտքս ըստ բաւականին հասկցաւ․ քանզի հաւանութիւն չի տալու կերպով մը գլուխը երերաց, ձեռքն ալ անանկ դրութեամբ բռնեց, որով իմացուց թէ բանտարկեալի պէս զիս պիտի տանին։ Սակայն ուրիշ նշաններով բաւական ուտելիք ու խմելիք տալ, ու հետս շատ աղէկ վարուիլ ուզելնին հասկցուց։ Նոր վրայ՝ անգամ մը ևս կապերս կոտրտելու փորձ փորձեցի, բայց երբ նորէն նետած նետերնուն ցաւը երեսիս, ու ձեռացս վրայ զգացի, որոնք բոլորովին պալար էին կապեր, ու նետերուն շատը դեռ անոնց վրայ մնացած էին, նմանապէս տեսնելով որ թշնամեացս թիւը երթալով շատնալու վրայ էր, նշաններով ցոյց տուի անոնց թէ ուզածնին կրնան ընել ինծի։ Անատեն Հուրկօն ու իր շքախումբը շատ քաղաքավարութեամբ և ուրախ դէմքով քաշուեցան գացին։

Շատ չանցաւ՝ Փէփլօմ Սէլան խօսքերը ատէպ կրկնելով, ընդհանուր աղաղակներ


1002
5609
Հ.Ս.Խ.Հ. ... 7/XI 1922
ИМЕНИ А. МЯСНИКЯНА
Ա. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ

լսեցի, և նայեցայ որ ձախ կողմէս բազմաթիւ մարդիկ չուանները ա՛ն աստիճան թուլցուցին, որ աջ կողմս դառնալու ու միզելով հանգստութիւն առնելու կարող եղայ։ Զարմանքը առաւ բոլոր ժողովուրդը՝ երբ ինձմէ ասա՛նկ առատօրէն ջուր ըղխիլը տեսան, ու աս ընելիքս շարժուածքէս մակաբերելով, շուտով ջրին եկած ճամբուն աջ ու ձախ կողմը բացուեցան, որ այսպիսի շառաչմամբ վազած հեղեղէն հեռանան։ Բայց ասկէ առաջ՝ երեսս ու ձեռքերս տեսակ մը անուշահոտ իւղ քսելով, քանի մը վայրկենի մէջ նետերուն կսկիծը բոլորովին անցաւ։ Ասոր պարագաները՝ իրենց ինծի տուած խիստ սննդարար կերուխումին հետ միանալով, քունս բերին, որ ութը ժամի չափ տեւեց, ինչպէս որ ետքը ինծի հաւաստացուցին. զարմանք չէր այսչափ քնանալս, քանզի բժիշկները կայսեր հրամանաւ գինիին մէջ քնաբեր ըմպելիք մը խառներ էին։

Կ'երեւի թէ ցամաքը հանելէս ետեւ՝ գետնի վրայ քնացած գտնուելս կայսրը մասնաւոր սուրհանդակէ մը իմանալով, ժողովին մէջ վճռեր էր որ պատմած կերպովս կապուիմ (աս բանը գիշերը քուն

եղած ատենս ի գործ դրեր էին) , առաւօտէն միս և խմելիք խրկուի ինծի , ու զիս մայրաքաղաքը տանելու համար մեքենայ մը պատրաստուի ։

Կայսեր աս որոշումը գուցէ շատ համարձակ ու վտանգաւոր երևնայ , և ես վստահ եմ որ Եւրոպիոյ որ և իցէ իշխան մը այսպիսի պատեհութեան մը ատեն՝ ասոր ըրածը պիտի չընէր ։ Այսուամենայնիւ ըստ իմ կարծեացս՝ չափազանց խոհեմ ու վեհանձն ճամբայ մը բռներ էր · քանզի դիցուք թէ քնացած ատենս ասոնք աղեղներով ու նիզակներով զիս սպաննելու ջանային , անշուշտ առջի նետին կսկիծէն պիտի արթննայի , ու կատղութիւնս և ոյժս ան աստիճան սաստկանալու էր , որ ջարդուբուրդ պիտի ընէի ան չուանները՝ որոնցմով զիս կապեր էին ։ Ի վերջոյ՝ ինչպէս որ պիտի չկրնային ինծի դէմ դնել , գթութիւն ալ պիտի չյուսային ինձմէ ։

Աս մարդիկը քաջ մաթեմաթիկագէտ են , և կայսեր քաջալերութեամբն ու պաշտպանութեամբը , որ գիտութեանց երևելի պաշտպանն է , մեքենականութիը մեծ կատարելութեան հասուցած են ։ Աս իշխանը ծառեր և ուրիշ ծանր բեռ-

ներ կրելու համար՝ անիւներու վրայ հաս-
տատած բազմաթիւ մեքենաներ ունի ,
որոնց միջոցաւ՝ ծովէն երեք - չորս հա
րիւրաւոր կանգուն հեռու տախտակ ե-
լած անտառներուն մէջ շինել տուած
պատերազմական մեծամեծ նաւերը (որոնց
մէջ կան որ ինը ոտք երկայնութիւն ու-
նին) , ծովեզերքը տանել կու տայ ․

Անմիջապէս հրաման եղաւ հինգ հա-
րիւր ատաղձագործ ու ճարտարապետ ար-
հեստաւորաց , որ իրենց խիստ մեծ մեքե-
նան պատրաստեն ։ Այս մեքենան երեք ըն-
թաչափ բարձր , եօթը ոտնաչափ երկայն ,
չորս ոտնաչափ լայն , և քսան ու երկու
անիւներու վրայ շարժող փայտէ շէնք
մ'էր ։ Աղաղակ մը եկաւ ականջիս , որ
մեքենային մերձենալու ձայնն էր ․ կ'երևի
թէ ցամաքը հանելէս չորս ժամ ետքը
ճամբայ հաներ էին զան ։

Այս մեքենան պառկած տեղս մարմնոյս
հաւասար բերին դրին ․ բայց դժուարու-
թեանց մեծը զիս վերցընել ու անոր վը-
րայ դնելն էր ։ Ուստի աս գործին հա-
մար ութսուն ցից՝ ամէն մէկը ոտնաչափ
մը բարձրութեամբ գետինը տնկեր էին ,
ու գործաւորները պարանոցէս , ձեռքե-
րէս , անձէս , սրունքէս իբր զօտի ան-

ցուցած կապերէն՝ ծայրերնին ճանկեր կապած տռատանի հաստութեամբ խիստ գիմացկուն չուաններ անցուցեր էին ։ Այս չուանները ցիցերուն կապած ճախարակներով քաշելու համար՝ ինը հարիւր խիստ կորիճ մարդիկ զբաղած էին ։ Ահա աս ճամբով երեք ժամ չանցած՝ զիս վերցուցեր, մեքենային վրայ դրեր, ու պինդ մը կապեր էին ։

Բոլոր աս եղածները եսքը պատմեցին ինծի, ինչու որ աս գործողութիւնները ի գործ դրուած միջոցին՝ խմելիքիս մէջ խառնուած այն թմրեցուցիչ դեղին զօրութենէն խորին քունի մէջ պառկեր էի ։ Գրեթէ չորս ու կէս ըթաչափ բարձրութեամբ կայսերական ամենամեծ ձիերէն հազար հինգ հարիւր հատ մեքենային լծած էին զիս դէպ ի մայրաքաղաքը տանելու համար, որ ինչպէս արդէն ըսի՝ անկէ կէս մղոնի չափ հեռու էր ։

Չորս ժամու չափ ճամբայ ընելէն ետեւ՝ շատ ծաղրաշարժ պատահմունքով մը արթնցայ ։ քանզի կառքին մէկ կողմը շտկելու համար՝ անոր ընթացքը դադրեցուցած միջոցին՝ երկրացիներէն երկու կամ երեք պատանիք քնոյս մէջ ինչպէս երեւոյս հետաքրքրութեամբ տես-

նել ուզելով, մեքենային վրայ ցատկեր և կամաց կամաց երեսիս մօտ եկեր են ։

Անոնցմէ մէկը, որ պահապան զօրաց պաշտօնատար էր, իր փոքրիկ նիզակին սուր ծայրը քթիս ձախ ծակին մէջ բաւական ներս կը խօթէ, որ յարդի նման քիթս խտտղելով, ուժգնութք մը զիս կը փռնգտացընէ ։ Ասոր վրայ՝ լռելեայն կը փախչին, բայց իմ այսպէս յանկարծ արթննալուս պատճառը աս ըլլալը հազիւ երեք շաբաթէն ետքը իմացայ ։ Ինչ և իցէ՝ մինչև իրիկուն շատ երկայն ճամբայ ըրինք, ու գիշերը հանգստանալու համար՝ տեղ մը կեցանք, ուր երկու կողմըս հազար հոգի կը սպասէին, որոնց կէսին ձեռքը ջահեր, ու միւս կէսինը աղեղներ և նետեր բռնած պատրաստ կը կենային, որպէս զի շարժում մը ըրած ատենս՝ նետերնին վրաս արձակեն ։

Հետևեալ օրը արևը ծագելուն պէս՝ ճամբանիս շարունակեցինք, ու կէս օրուան մօտ՝ քաղաքին դռներէն երկու հարիւր կանգունի չափ հեռու տեղ մը հասանք ։ Կայսրն և բոլոր պալատականքը դուրս ելան մեզի դիմաւորելու ․ բայց իր մեծ պաշտօնեայքը կայսեր չթողուցին որ զինքը վտանգի մէջ դնելով վրաս ելնէ ։

Կառքին կեցած տեղը՝ վաղեմի տաճար մը կար, որ բոլոր աէրութեան ամենամեծ տաճարը կը սեպուէր· ասոր մէջ քանի մը տարի առաջ բնականէ դուրս մարդասպանութիւն մը ըլլալուն՝ երկրացիք իրենց կրօնական կարծեացը համեմատ՝ պղծուած համարեր էին զան, և անոր մէջի բոլոր զարդարանքը վերցընելով, հասարակաց գործածութեանը համար ձգուեր էր. Ահա աս շէնքին մէջ իմ բնակարանս որոշուեր էր. Հիւսիսային կողմը նայող ասոր մեծ դուռը գրեթէ չորս ոտք բարձր, և երկու ոտք լայն ըլլալուն՝ դիւրաւ կրնայի յափփիթերս անցնել ասկէ. Աս դրան երկու կողմը մէկ մէկ փոքրիկ պատուհաններ կային, որոնք գետնէն վեցը բթաչափէն աւելի բարձր չէին.

Կայսեր երկաթագործը իննսուն և մէկ հատ շղթայ բերաւ, ձախ կողմի պատուհանին հաստատեց, որոնք Եւրոպիոյ տիկնոջ մը ժամացուցէն կախուած շղթային կը նմանէին, ու գրեթէ անոնց չափ մեծ էին, և ձախ ոտքէս անցընելով, զանոնք երեսուն և վեց կախածոյ փականակներով (1) կղպեց.

(1) Ասմա քիլիտ.

Ո՛ւր տաճարին դիմացը՝ արահետ ճամբուն միւս կողմը քսան ոտք հեռաւորութբ և գրեթէ հինգ ոտնաչափ բարձր աշտարակ մը կար . կայսրը իր երևելի լորտերուն ընկերութեամբը ասոր վրայ պիտի ելնէր, որ առանց ինձ երևնալու՝ դիւրութեամբ զիս տեսնէ, ինչպէս որ ինծի պատմեցին ։ Կարծեօք աս միջոցին՝ հարիւր հազար հոգիէն աւելի անձինք քաղաքէն դուրս ելեր էին, ու կրնամ ըսել թէ՝ պահապանացս հաճունը դէմ ատեն ատեն սանդուղներով վրաս ելողներուն թիւը տասն հազարէն պակաս պիտի չըլլար . բայց աս բանն արգիլելու համար՝ իսկոյն կայսերական հրաման մը ելաւ՝ դէմ կեցողին մահ սպառնալով ։ Երբ գործաւորք տեսան թէ շղթաներս խորտակելով, այնուհետև ազատութիւն հնար չէր, զիս կապող բոլոր չուանները կըտրեցին . անատեն ոտքի վրայ ելայ կանգնեցայ անանկ տխրագին զգացմամբ, որուն նմանը կենացս մէջ բնաւ չէի զգացեր ։ Ելնել ու քալելս տեսած ատեննին՝ աս ժողովրդեան հանած աղաղակն ու ցուցուցած զարմանքը պատմելը անկարելի է ։ Ձախ ոտքիս կապուած շղթան երկու կանգունի չափ երկար ըլլալուն՝

չէ թէ կիսաբոլորակի մը մէջ ասդին ան-
դին պտըտելու ազատութիւն ունէի,
հապա դունէն չորս ըթաչափ հեռաւո-
րութեամբ կապուած ըլլալուն՝ յափխի-
թերս ներս մտնել ու տաճարին մէջ բո-
լոր երկայնութեամբս պառկիլ կրնայի ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

*Լիլլիփութի կայսրը քանի մը ազնուականաց ընկերութեամբը՝ հեղինակը բանտին մէջ տեսնելու կու գայ։ Կայսեր անձին ու զգեստուցը ստորագրութիւնը։ Գիտնական անձինք կը սահմանուին իրենց լեզուն հեղինակին սորվեցընելու։ Հեղինակը իր քաղցր բընաւորութեամբը սիրելի կ՚ըլլայ։ Իր գրպանները քըննուելով իր սուրն ու ատրճանակները իրմէ կ՚առնուի։*

Երբ ոտքի վրայ ելայ կանգնեցայ, ու աչքերս չորս դիս դարձուցի, շիտակը այսպիսի զուարճալի տեսարան մը բընաւ չէի տեսած։ Շրջակայ երկիրը շարունակ պարտէզներու կը նմանէր, ու անոնց մէջի ցանկապատ դաշտերը, որոնք ընդհանրապէս քառասուն քառակուսի ոտք էին, ծաղկանց նոյնչափ ածուներ(1) կը ձեւանային աչքիս։ Այս դաշտերուն մէջ տեղ տեղ կէս ձողաչափ մեծութեամբ անտառներ կային ու ծառոց ամենէն բարձրը ըստ իմ դատողութեանս եօթը ոտնաչափ բարձր ըլլալու էր։ Աչքս ձախ կողմը դարձընելով, քաղաքը տեսայ, որ թատրոնի վարագոյրի վրայ նկարուած տեսարանի կը նմանէր։

(1) Ծաղկոց։

Քանի մը ժամէ ի վեր բնութեան պիտոյքը վճարելու հարկը սաստիկ կը նեղէր զիս . աս զարմանալու բան չէր , որովհետեւ գրեթէ երկու օր էր որ աս պիտոյքը չէի վճարած . մէկ կողմէն բատիպումը, միւս կողմէն ամչնալը մեծ դժուարութեանց մէջ ձգեր էին զիս ։ Ալ ուրիշ ճար չգտնալով տունս մտայ , դուռը գոցեցի , ու շղթայիս ներածին չափ հեռու երթալով, զիս անհանգիստ ընող ծանրութիւնը պարպեցի , բայց սա՛ անգամ միայն ասանկ անմաքուր գործողութեամբ մը յանցաւոր գտնուելուս՝ կը յուսամ որ բարեմիտ ընթերցողս վիճակիս ու զգացած տագնապիս վրայօք հասուն ու անկողմնակէր դատողութիւն ընելէն ետքը , աս պակսութեանս ներողամիտ կ՚ըլլայ ։ Այնուհետեւ սովորութիւն ըրեր էի՝ քունէս ելածիս պէս , շղթայիս ներածին չափ՝ դռնէն դուրս ելնելով, բաց օդուն մէջ աս գործս կը կատարէի , ու ամեն առտու՝ դեռ քովս մարդիկ չհաւաքուած՝ յատկապէս երկու՝ ծառայից միջոցաւ աս աղտեղութիւնը միանիւ սայլակաց մէջ դնելով, հեռացընելու մասնաւոր հոգ կը տարուէր ։ Թէ որ մաքրութեան մասին ինքզինքս ամե-

նաւն առջին արդարացընելը հարկաւոր սեպած չըլլայի, առանց երկար բարակ պիտի չխօսէի այնպիսի պարագայի մը վրայ, որ դուցէ ի սկզբան խիստ կարեւոր չերեւար. ականջիս անանկ եկաւ թէ իմ նախաձորդներէս ոմանք աս և ուրիշ առանց առիթներու մէջ մաքրութեանս վրայ կասկածելու բարեհաճեր են։

Այս գործողութենէս ետեւ՝ զովօդ վայելելու համար նորէն տունէս դուրս ելայ. արդէն կայսրը աշտարակէն իջեր, ձի հեծեր, ու դէպ ի ինձ կու գար, բայց քիչ մնաց որ աս բանս իրեն սուղի պիտի նստէր. քանզի իր տակի անասունը թէեւ շատ աղէկ կրթուած էր, սակայն իր աչքը առանց տեսքի ամենեւին վարժուած չըլլալուն՝ իբր շարժուն լեռ մը կ'երեւայի իրեն. մէկէն ետեւի երկու ոտից վրայ ելաւ կանգնեցաւ, բայց կայսրը քաջ ձիավար ըլլալուն՝ ինքզինքը ձիուն վրայ աղէկ բռնեց, մինչեւ որ իր սպասաւորները վրայ հասնելով, ձիուն սանձէն բռնեցին, որով նորին վեհափառութիւնը վար իջնալու միջոց ունեցաւ։ Նատէն՝ մեծ զարմանքով չորս դիս զննեց, սակայն զգուշութեան համար միշտ շղթայիս երկայնութեամբը հեռու կը պահէր զինքը ինձմէ,

Հրաման ըրաւ իր խոհարարաց ու տակառապետաց որ ուտելիք և խմելիք տան ինծի, որոնք արդէն ամէն բան պատրաստած ըլլալով, տեսակ մը անուաւոր սայլերու մէջ դրած դէպ ի ինձ ա՛յնչափ հռեցին, որ երկննալով կրցի առնել զանոնք, ու շուտով պարպեցի: Սայլերուն քսանը միսով ու տասնը ըմպելիքով լեցուն էին: Իւրաքանչիւր սայլերուն մէջի միսերը երկու կամ երեք աղւոր պատառ կ'ըլլային ինծի· ու ըմպելիները, որոնք հողէ տասը ամաններու մէջ լեցուցած էին, մէկ սայլի մէջ պարպելով, ամէնը մէկ ի մի ումպ խմեցի· Նմանապէս մնացածներն ալ ասանկով կերայ լմնցուցի:

Կայսրուհին ու իշխանազունները բազմաթիւ տիկնանց ընկերութեամբը թէև ինձմէ քիչ մը հեռու աթոռներու վըրայ նստեր էին, սակայն վերոյիշեալ ձիուն դէպքին վրայ՝ աթոռներէն իջնալով, կայսեր մօտեցան, որուն անձին նկարագրութիւնը հոս պիտի ընեմ հիմա:

Նորին Վեհափառութիւնը գրեթէ եղունգիս լայնութեամբը, իր բոլոր պալատականներէն աւելի բարձր է· որով

միայն զինքը տեսնողները ահ ու դողի մէջ ձգելու բաւական է․ դէմքը ահար-կու և ոյրական, քիթը արծուենի, շրթունքը աւստրիական, երեսը ձիթա-գոյն, կեցուածքը արի, բոլոր անձն ու անդամները աղէկ համեմատ, ընթացքն ու շարժուածքը վեհ ու շնորհալի։

Իմ տեսած ատենս՝ իր ծաղիկ հասակը անցած էր, բայց քսան և ութը տա-րեկան ու ինը ամսական էր, և եօթը տարիէ ի վեր խիստ բարօրութեամբ ու ընդհանրապէս յաղթող գտնուելով կը թագաւորէր։ Ինքը աւելի դիւրու-թեամբ տեսնելու համար քովընտի պա-կեցայ, այնպէս որ երեսս իր անձին հա-ւասար կու գար․ ինքն ալ ինձմէ միայն երեք կանգուն հեռու կանգնեցաւ․ Ինչ և իցէ՝ ետքը զինքը շատ անգամ ձեռ-քիս մէջ առած ըլլալուս՝ ըրած նկարա-գրութեանս մէջ չեմ կրնար սխալիլ։

Իր հագուստը շատ պարզ ու անզարդ էր, և անոր ձեւը՝ կէս մը Եւրոպական, ու կէս մը Ասիական․ գլուխը՝ ադամանդ-ներով զարդարուած ոսկեղէն թեթեւ սաղաւարտ մը ունէր, որուն գագաթը փետուր մը կար։ Իր սուրը մերկացած ձեռքը բռներ էր, որպէս զի եթէ պա-

տահմամբ շղթաս կտրելու ըլլամ՝ անով ինքզինքը պաշտպանէ ։ Նոյն սուրը գրեթէ երեք բթաչափ երկայն էր , որուն դաստապանը ( 1 ) ու պատեանքը ( 2 ) ոսկեղէն՝ և վրան ադամանդներով զարդարուած էր ։ Ձայնը սուր էր , բայց արտասանութիւնը շատ յստակ և որոշ , անանկ որ ոտից վրայ ելած կանգնած ատենս՝ որոշակի կը լսէի իր ձայնը ։

Տիկիններն ու պալատականները այնպէս փառաւոր հագուած էին , որ կարծես թէ ոսկի ու արծաթ թելերով նըկարակերտուած շրջազգեստ մը տարածուած էր կեցած տեղերնուն վրայ ։

Նորին կայսերական մեծափառութիւնը շատ անգամ հետս խօսեցաւ , ու ես անոր պատասխանը տուի · բայց երկուքս ալ բառ մը չէինք կրնար հասկընալ ։ Իր քահանաներէն ու օրէնսգէտներէն շատերը հոն ներկայ էին ( ինչպէս որ ես անոնց զգեստներէն գուշակեցի ) , որոնք կայսերական հրամանովը հետս տեսութիւն ըրին · ու ես իմ բոլոր հարեւանցի գիտցած լեզուներովս անոնց հետ խօսեցայ · որոնք են՝ Վերին և Ստորին Հօլանտերէն , Լատիներէն , Գաղղիարէն ,

(1) Սուրի կոթ ։ (2) Գըն ։

Սպանիերէն, Իտալերէն, և Փրանքերէն. բայց զուր տեղը.

Երկու ժամէ ետքը բոլոր աս պալատականները քաշուեցան գացին՝ քովս առուար գունդ մը պահապան զօրք ձըգելով, որ քաղաքին խառնիճաղանճ բազմութեան լրբութիւնն ու հաւանականաբար չարութիւնը զսպեն, որոնք անհամբերութեամբ կրցածնուն չափ մօտէն չորս դիս կը խռնէին. և անոնցմէ ոմանք բնակարանիս դրան քով նստած ատեննին՝ նետերնին վրաս պարպելու յանդգնեցան. աս նետերէն մէկը մազ մնաց որ ձախ աչքս հանէ։ Ասոր վրայ՝ հազարապետը հրաման ըրաւ որ անոնց պարագլուխներէն վեցը հոգին բռնուին, և իբր արժանաւոր պատիժ կապուած ձեռքս յանձնուին։ Ասոնք զինուորներէն ոմանք խոկոյն բռնեցին կապեցին զանոնք ու նիզակաց տափարակ ծայրովը դէպ ի ինծի հրեցին։ Ես զանոնք ամէնը մէկ տեղ՝ աջ ձեռքիս մէջը առի, անոնց հինգը վերարկուիս գրպանին մէջը դրի, և վեցերորդին անանկ դէմք մը ցուցուցի, որ կարծեց թէ ողջ ողջ պիտի ուտեմ զինքը։ Ողորմելին վախէն այնպիսի ահռելի ձայն մը ձգեց որ հազարապետն ու իր պաշ-

տօնակալքը շատ մեղքցան անոր, մանաւանդ երբ տեսան թէ գրպանէս զմելքինս կը հանեմ. Բայց ես խեղճին վախերնին փարատեցի. քանզի քաղցրութեամբ մը անոր նայելով, զինքը կապող չուանները կտրեցի, ու կամաց մը գետնի վրայ դրածիս պէս՝ մէկէն փախաւ. միւսներն ևս մէկ առ մէկ գրպանէս հանելով, հետերնին նոյն կերպով վարուեցայ. Շատ վերայ՝ տեսայ որ թէ զինուորները և թէ ժողովուրդը այս իմ ցուցցած մարդասիրութեանս համար չափազանց ուրախացան, ու աս անցքը մինչև պալատին մէջ գովութեամբ պատմուեցաւ.

Երբ սկսաւ մթննալ՝ դժգոհութեամբ տունս մտայ, ու հոն գետնի վրայ պառկեցայ. տասն և հինգ օր շարունակ այս կերպով կը պառկէի, սպասելով որ կայսեր ինծի համար ապսպրած անկողինը պատրաստուի. Ուստի հասարակ մեծութեամբ վեց հարիւր անկողին կառքերու մէջ դրուած տուն բերին. ասոնց հարիւր յիսունը ըստ լայնութեան ու ըստ երկայնութեան քովէ քով կարուած անկողին մը ձևացաւ, բայց չորս խաւ (1) ընելով, հազիւ թէ տանս հարթ

(1) Գաթ.

քարոյատակին կարծրութիւնը քիչ մը պակսեցուց ։ Ըստ նոյն հաշուի՝ սաւաններ(1), վերմակներ(2), ու սպիտակ ծածկոյթներ պատրաստեցին ինծի համար, որոնք այնչափ երկար նեղութեանց սովոր մարդու մը բաւական ձեռք կու տային ։

Ձան հանելուս լուրը տէրութեան բոլոր երկիրները տարածուածին պէս՝ անթիւ մարդիկ թէ՛ հարուստ, թէ՛ դատարկասուն և թէ հետաքրքիր սկսան զիս տեսնելու գալ, այնպէս որ գրեթէ բոլոր գիւղերը պարպուեցան, և եթէ կայսրը աս անտեղութեան առաջը առնելու համար զանազան հրովարտակներ ու հրամաններ չհրատարակէր՝ երկրիս մշակութիւնն և առտնին գործերը մեծ զանցառութեամբ երեսի վրայ մնալով, մեծ վնաս պիտի ըլլար ։ Աս հրովարտակներով կայսրը կը հրամայէր որ արդէն զիս տեսնողները տեղերնին դառնան, ու առանց արքունական մասնաւոր հրամանագրի՝ տունէս յիսուն կանգուն հեռուէն աւելի մօտ գալու մարդ չհամարձակի ։ աս հրամանագիրները գրելու համար՝ տէրութեան ատենադպիրները

(1) Չարշաֆ ։ (2) Եօրղան ։

մեծ գումարներ վատնելու առիթ ունեցան ։

Այս միջոցիս՝ կայսրը տանը ժողովք կընէ, որպէս զի որոշում ընեն թէ ինչ ճամբով պէտք են հետս վարուիլ. արքունեաց ինծի համար մեծ տագնապի մէջ ըլլալնին՝ ես ետքը ազնուականէ մը իմացայ, որ միւս ազնուականաց չափ աս գաղտնեաց հաղորդ և իմ մասնաւոր բարեկամս էր ։ Անոնք կը վախնան եղեր որ չըլլայ թէ շղթաներս խորտակեմ ու ազատիմ, և թէ զիս սնուցանելը շատ ծախուց կարօտ ըլլալուն՝ չըլլայ թէ սով մը պատճառեմ ։ երբեմն զիս անօթի մեռցընելու, կամ գոնէ երեսս ու ձեռացս թունաւոր նետեր նետելով, իսկոյն զիս սպաննելու որոշում ըրեր են ։ Բայց միանգամայն կը մտածեն եղեր որ այսպիսի ահագին դիի մը հոտը կրնայ մայրաքաղաքին ժանտախտ պատճառել, և հաւանականաբար տէրութեան բոլոր երկիրը տարածուիլ ։

Անոնք աս խորհրդածութեանց վրայ զբաղած միջոցին՝ պահապան պաշտօնակալներէ քանի մը հոգի բարձր ատենին դրանը քով կ'երթան. ասոնցմէ երկուքը ներս ընդունուելով, վերոյիշ-

նալ վեցը յանցաւորաց հետ ինչ կերպով վարուիլս հան կը պատմեն ։ Ըս պատմութիւնը կայսեր ու բոլոր ատենակալաց սրտին այնպիսի յաջող ազդեցութիւն մը կ՚ընէ ի շնորհս իմ, որ կայսերական հրաման մը կը հրատարակուի՝ մայրաքաղաքէն ինը հարիւր կանգուն հեռու գըտնուող բոլոր շրջակայ գեղացիներուն, պատուիրելով որ ամեն առտու սննդեանս համար վեցը եղն, բաւական ոչխար, և կերակրեղէնք, միանգամայն և անոնց որքանութեանը համեմատ՝ հաց, գինի, և ուրիշ ըմպելիք բերեն, որոնց գինը իր գանձէն վճարելու համար՝ կայսրը իր գանձապետին հրաման կու տայ ։ Վասնզի կայսեր եկամուտը գլխաւորաբար իր բուն կալուածներէն է ․ իր հպատակներն ևս իրենց ծախուքը պատերազմի երթալու պարտաւորեալ ըլլալուն՝ անոնցմէ տուրք չառներ, մինչև որ երևելի պատահմունք զինքը չպարտաւորեն ։

Ինծի ապաստանութիւն ընելու համար վեցը հարիւր հոգի որոշեցին, որոնց կերակուրը ձրի տրուելէն զատ՝ դրանս երկու կողմը անոնց համար շատ հանգիստ վրաններ (1) շինեցին ․ Նմանապէս երեք

(1) Չադըր ։

Հարիւր դերձակաց հրաման եղաւ որ քա-ղաքացւոց ձեւոյն համեմատ ինծի հագ (1) մը զգեստ շինեն, և թէ կայսերական քաջ վարժապետներէն վեցը հոգի լեզունին ինծի սորվեցընեն. վերջապէս՝ կայսեր, մեծամեծաց, ու պահապան զօրաց ձիե-րը միշտ առջիս բերեն ու կրթութիւն ը-նեն, որպէս զի ան անասունները ինծի ընտանենան:

Բոլոր աս հրամանները անթերի ի գործ դրուեցան, ու գրեթէ երեք շաբաթուան միջոցին՝ իրենց լեզուին մէջ շատ յառա-ջադիմութիւն ըրի: Այս միջոցին՝ կայսրը իր յաճախ այցելութիւններովը պատ-ուեց զիս, ու վարժապետներս ինծի դաս տուած ատեննին՝ անոնց օգնելու կը բա-րեհաճէր:

Արդէն կայսեր հետ կերպով մը խօ-սակցիլ սկսայ, և առջի սորված խօսքերս ազատութիւնս շնորհելուն համար ունե-ցած փափաքս յայտնող խօսքեր էին, որոնք ամեն օր անոր առջին ծունկի վը-րայ գալով կը կրկնէի: Հասկցածիս չափ՝ անոր պատասխանը աս եղաւ թէ՝ « Աս խնդիրքը ժամանակի կարօտ է, ու մինչև

(1) Գաթ.

որ ժողովքին խորհրդականաց ասոր մե-րայօք խորհուրդ չհարցընեմ՝ չեմ կրնար որոշում մը ընել”։ Եւ թէ նախ պէտք եմ լռելոս ձեռքին փէտաց փեսմար լծն էնֆօղա, այսինքն՝ իրեն և իր ուխտութեանը հետ հաշտութեամբ ապրելու երդում ընեմ։ Անատէն ամէն մարդ հետս մարդասիրութեամբ պիտի վարուի։ Խրատեց զիս միանգամայն որ համբերութեամբ և զգաստ վարմունքով իրեն և իր հպատակաց բարի համարումը ձեռք ձգելու ջանք ընեմ։ “Կ՚աղաչեմ, ըսաւ, չըլլայ որ ուրիշ մտքի երթաս, թէ որ վրադ քննել տալու համար՝ քանի մը մասնաւոր պաշտօնակալաց հրաման ընեմ։ Քանզի հաւանական է որ վրադ զանազան զէնք ունենաս, որոնք եթէ ահագին մեծութեանդ հաւասար բաներ են՝ անշուշտ վտանգաւոր կրնան ըլլալ։ — Ձեր մեծափառութիւնը հաճեցընելու համար, պատասխան տուի անոր մասամբ խօսքով և մասամբ նշաններով, պատրաստ եմ ձեր առջին մերկանալու և գրպաններս պարպելու։ — Տէրութեան օրինաց համեմատ, կրկնեց կայսրը, երկու պաշտօնակալաց ձեռքովը վրադ պիտի նայուի։ գիտեմ որ աս բանիս մինչև որ հաւա-

նութիւն ու օգնութիւն չտամ՝ ըլլալիք բան չէ· բայց ես վեհանձնութեանդ ու արդարութեանդ վրայ աղէկ կարծիք ունենալուս՝ մարդիկս ձեռքդ յանձնելու կը վստահիմ, և թէ ինչ որ վրայէդ առնուի՝ աս երկրէն մեկնելու ժամանակդ ետ կը տրուի քեզի, կամ պահանջած գինդ հատուցուելով կ'առնուի"։

Երբ աս երկու պաշտօնակալք եկան, ձեռացս մէջ առնելով զանոնք, նախ վերարկուիս գրպաններուն (1) մէջ դրի, ետքն ալ վրաս գտնուած բոլոր գրպաններուս մէջ խօթեցի՝ բաց ի ժամացուցի երկու գրպաններէս և ուրիշ մէկ գաղտուկ գրպանէս, որոնք քննելու միտք չունէի· քանզի անոնց մէջ այնպէս մանր մունր հարկաւոր բաներ ունէի, որոնք միայն ինձ կը վերաբերէին։ Աս ժամացուցի գրպաններուս մէկին մէջը՝ արծաթեայ ժամացոյց մը կար, ու միւսին մէջը քսակ մը՝ մէջը քիչ մը ոսկւով։

Աս պաշտօնակալները հետերնին թուղթ, գրիչ, ու մելան բերեր էին, և բոլոր տեսած բաներնին մի առ մի գրի առին։ Երբ գործերնին լմնցուցին, ուզեցին որ վար իջեցընեմ զիրենք, որպէս

(1) Ճէպ·

զի նոյն ցուցակը կայսեր ներկայացընեն ։

Աս ցուցակը ես ետքը Անգղիարէնի բառ առ բառ այսպէս թարգմանեցի ։

«Նախ և առաջ՝ մեծ լեռ-մարդուն (քանզի Քուինպուս Ֆլէսդրին խօսքը այսպէս կը թարգմանեմ), վերարկուին աջ կողմի գրպանը խիստ մեծ զգուշութեամբ քններնիս ետև՝ միայն հաստ կտաւի մեծ կտոր մը գտանք, որ ձեր վեհափառութեան հանդիսի մեծ սրահին օթոց ըլլալու բաւական մեծութիւն ունի ։ Ձախ կողմի գրպանին մէջ՝ ահագին արծաթ տուփ մը գտանք, որ նոյն մետաղէ խուփ(1) մը ևս ունի ․ աս տուփը մեք չկրցանք տեղէն վերցընել ։ Ուստի աղաչեցինք որ բանայ զան, ու մեզմէ մէկը անոր մէջը մտնելով, մինչև ծունկերը տեսակ մը փոշիի մէջ խրեցաւ ․ աս փոշիէն քիչ մը երեսնուս թռելով, երկուքս մէկէն բաւական ատեն փռընգտալէն աչք չկրցինք բանալ ։

«Իր բաճկոնին (2) աջ դիի գրպանին մէջ՝ ամուր պարանով փաթթուած գրեթէ երեք մարդու մեծութեամբ ու մէկ մէկու վրայ ծալլուած ճերմակ ու բարակ

(1) Կափակ ։ (2) Եէլէկ ։

նիւթերու ահագին ծրար մը գտանք․ անոնց վրայ ու նշաններ գծած կային, որոնք ըստ մեր նուաստ կարծեաց՝ գիր ըլլալու են․ աս գիրերուն ամեն մէկը մեր ափին (1) կէսին չափ մեծ է․ Ձախ գլխի գրպանին մէջ տեսակ մը մեքենայ կար, որուն ետեւի կողմէն՝ ձեր վեհափառութեան պալատին առջեւի վանդակաց նման քսան հատ երկայն ժանիք ցըցուած էին․ կարծենք թէ լեռ-մարդը անով իր գլուխը կը սանտրէ, քանզի անոր բան մը հասկըցնելը շատ դժուար ըլլալուն՝ միշտ հարցմունք ընելով չուզեցինք նեղութիւն տալ։

“Իր միջին ծածկոյթին աջ կողմին վըրայ եղած մեծ գրպանին մէջ, (քանզի այսպէս կը թարգմանեմ ռանֆու-լօ բառը, որով վարտիքս ըսել կ'ուզէին), գըրեթէ մարդու մը երկայնութեամբ մէջը-խոռ երկաթի սիւն մը տեսանք՝ ամուր փայտի կտորի մը վրայ հաստատուած․ աս փայտը երկաթէն աւելի մեծ է, ու սեան մէկ կողմին վրայ այլանդակ ձեւերով երկաթի ուրիշ կտորներ դուրս ցըցուած են․ ասոր ինչ ըլլալը չկրցինք

(1) [illegible]։

հասկընալ. Ձախ գրպանին մէջ՝ նոյն մեքենային նման ուրիշ մեքենայ մը եւս կար։ Աջ կողմի փոքրագոյն գրպանին մէջ՝ ճերմակ ու կարմիր մետաղներէ շատ մը կլոր ու տափակ զանազան մեծութեամբ կտորուանք կային. աս ճերմակներէն մէկ քանին, որոնք արծաթէ կ'երեւային, ա՛յնպէս մեծ ու ծանր էին, որ ես ու ընկերս միատեղ հազիւ թէ կըրցինք վերցընելու։ Ձախ գրպանին մէջ՝ անկանոն ձեւով երկու սեւ սիւներ կային. մենք աս գրպանիս յատակը իջնալով՝ անոնց գագաթը դժուարութեամբ կը հասնէինք։ Անոնց մէկը ծածկած ըլլալուն՝ միապաղաղ (1) կ'երեւար, բայց միւսին յետին ծայրը գրեթէ գլուխնուս երկուքին մեծութեամբը կլոր ու ճերմակ բան մը կ'երեւար։ Անոնց ամէն մէկին մէջ տեղը պողպատի ահագին տախտակներ կային. հրամայելով պարտաւորեցինք զինքը որ մեզի ցուցընէ զանոնք, քանզի վախցանք որ չըլլայ թէ վտանգաւոր մեքենաներ ըլլան։ Լեռ-մարդը իրենց տուփերէն հանեց զանոնք, ու ըսաւ մեզի թէ իր երկիրը գտնուած ատեն՝ անոնց մէկովը մօրուքը կ'ածիլէ ու միւսովը միս կը մանրէ եղեր։ Իր միջին ծածկոյ-

թին վերի կողմը երկու գրպաններ կային , որոնք փորին սեղմելովը գոց ըլլալուն՝ չկրցինք մէջը մտնել․ ասոնք ինքը ժամացուցի գրպան կ'անուանէր ։

“Աս աջ դիի ժամացուցի գրպանէն դուրս՝ արծաթի մեծ շղթայ մը կախուած էր , որուն ծայրը ահագին մեքենայ մը կար ։ Հրաման ըրինք որ շղթային ծայրինը գրպանէն դուրս հանէ ու ցուցընէ մեզի ։ Երբ հանեց՝ կէս արծաթ ու կէս թափանցիկ մետաղէ շինուած գունդ մը տեսանք , որուն թափանցիկ կողմին վրայ շուրջանակի քանի մը այլանդակ պատկերներ գծուած էին․ կարծեցինք թէ կրնանք դպչիլ անոնց , բայց տեսանք որ աս թափանցիկ նիւթը մատերնուս արգելք եղաւ ։ Երբ աս մեքենան ականջնուս մօտեցուց , ջրաղացքի նման անդադար խղուըրտիւն (1) կը հանէր , ու մենք կարծենք թէ՝ աս կամ անծանօթ կենդանի մ'է , և կամ իր պաշտած Աստուածը․ բայց մեր խելքը վերջի կարծիքնուս աւելի կը հակէր․ վասնզի ինքը մեզ ապահովեց , ( թէ որ ըսածը շիտակ հասկըցանք , որովհետև խիստ անկատար կերպով իր միտքը կը յայտնէ , ) թէ առանց անոր խորհուրդ հարցունելու՝

(1) Մեքենաներու չփոթ ձայն ։

շատ քիչ անգամ կը պատահի որ գործ տեսնայ։ Ինքը իր պատգամը կը կոչէր զայն, ու միշտ ըսաւ թէ կենացը մէջ ըրած բոլոր գործոց ժամանակը ան կը ցուցընէր։ Ձախ ժամացուցի գրպանէն ուռկան մը հանեց, որն որ գրեթէ ձըկնորսի մը համար բաւական մեծ էր. բայց քսակի մը պէս կը բացուէր ու կը գոցուէր, և ինքը քսակի տեղ կը գործածէր. ասոր մէջ՝ գեղին մետաղի զանազան ծանր կտորուանք գտանք, որոնք թէ որ իրաւ ոսկի են՝ անչափ արժէք ունենալու են։

« Ահա այսպէս ձեր կայսերական հրամանին հնազանդելով, զգուշութեամբ բոլոր գրպանները քննելնէս ետև՝ մէջքը ահագին կենդանիի մը կաշիէ շինուած գօտի մը կապած տեսանք, որուն ձախ կողմէն հինգ մարդու երկայնութեամբ սուր մը կախեր էր, ու աջ դիէն՝ երկու խորշի բաժնուած քսակ կամ մախաղ մը, որուն իւրաքանչիւր խորշին մէջ՝ ձեր վեհափառութեան հպատակաց երեքը կրնան պարունակիլ. Ու խորշերուն մէկուն մէջ խիստ ծանր մետաղէ բազմաթիւ գունդեր կամ գնդակներ կային, որոնք գլուխնուս չափ մեծ էին, ու զանոնք

վերցընելու համար շատ ուժով ձեռք պէտք էր · միւս խորշին մէջ՝ կոյտ մը սև հատեր կային , բայց շատ մեծ ու ծանր չէին , ինչու որ անոնց յիսունէն աւելին ափերնուս մէջը կրնայինք առնելու ։

“ Ահա աս է լեռ-մարդուն վրայ գըտնուած բաներուն ճիշդ ցուցակը , որ շատ մարդավարութեամբ հետերնիս փարուելով , ձեր կայսերական հրամանին արժանաւոր ակնածութիւն ցուցուց ։

“ Ստորագրեալ և կնքեալ ձեր վեհափառութեան բարեբաստիկ թագաւորութեան ութսուն և իններորդ լուսնին չորրորդ օրը ։

“ՖԼԷՍՍԷՆ ՖՐԷԼՈՔ

“ՄԱՐՍԻ ՖՐԷԼՈՔ”.

Երբ աս ցուցակը կայսեր առջին կարդացուեցաւ , կայսրը հրամայեց ինծի , թէև խիստ քաղաքավար խօսքերով , որ իմ վրաս գտնուած քանի մը մասնաւոր բաները իրեն յանձնեմ · Նախ դաշոյնս ուզեց , որն որ պատեանով և ամէն բանովը հանելուս պէս՝ իսկոյն հրաման ըրաւ իր հետը գտնուող երեք հազար ամենընտիր զօրաց , որ քիչ մը հեռուէն չորս կողմս պաշարեն , ու աղեղնին և նե-

տէրնին պատրաստ բռնեն ։ Բայց նոյն վայրկենին աչքս կայսեր վրայ տնկած բըլալուս՝ աս բանս չգիտեցի ։ Այնուհետեւ՝ ուզեց որ դաշոյնս մերկացնեմ ․ Թէեւ ծովու ջրէն անոր մէկ մասը ժանգոտեր էր, սակայն դեռ մեծ մասը խիստ փայլուն մնացեր էր ․ իր աս հրամանն եւ կատարելուս մէջ՝ բոլոր խումբը մեկէն կէս մը վախով, եւ կէս մը զարմանքով խառնաշփոթ աղաղակ մը ձգեցին ․ քանզի սուրս ասդին անդին ճօճելով, արեւուն ճառագայթներէն պատճառած ցոլացում մը աչքերնին կը խտղտէր ․ Նորին վեհափառութիւնը, որ շատ վեհանձն թագաւոր մ՚է, կարծածիս չափ չվախցաւ, այլ հրամայեց որ նորէն պատեանին մէջ դնելով, կարելի եղածին չափ կամաց մը գետինը նետեմ զան՝ շղթայիս ծայրէն վերը ոտքի չափ հեռու ։

Ետքը՝ մէջը-խոր երկաթի սիւներուն մէկը ուզեց, որով գրպանի ատրճանակներս (1) ըսել կ'ուզէր ․ գրպանէս դուրս հանելով զան, անոր ինչպէս գործածուիլը՝ իր փափաքանացը համեմատ եւ կրցածիս չափ իրեն բացատրեցի ․ միայն վառօդով լեցնելով զան, քանզի բա-

(1) Փիշով ։

յեբաղդաբար վառօդի ամանս աղէկ գոցուած ըլլալուն համար՝ մէջի վառօդը ծովու ջրէն չէր թրջուած. (ըստ որում՝ ամէն խոհեմ նաւավարներ մասնաւոր հոգ կը տանին ամանի մէջ վառօդը աղէկ պահելու)։ Կայսեր իմաց տալէս ետքը որ չվախնայ՝ զէնքս օդուն մէջ պարպեցի։ Անատեն անոնց ցուցցած զարմանքը դաշոյնս տեսածնէն խիստ շատ աւելի եղաւ։ Հարիւրաւոր անձինք իբր կայծակէ զարնուած գետինը փռուեցան, ու կայսրն ալ թէպէտև կանգնած տեղէն չշարժեցաւ, բայց շուտով չկրցաւ ինքը-զինքին գալ։ Դաշոյնս յանձնածիս պէս՝ երկու ատրճանակներս, վառօդի ամանս ու գնդակներս անոր յանձնեցի, աղաչելով որ վառօդի ամանը կրակէն հեռու պահուի. վասն զի խիստ պզտիկ կայծէ մը բռնկելով, կայսերական պալատը օդը վերցընելու կարող ըլլալը հասկցուցի։ Նմանապէս յանձնեցի ժամացոյցըս, որն որ կայսրը շատ հետաքրքրութիւն ունէր տեսնելու։

Իր ամէնէն բարձրահասակ թիկնապահ զօրականներէն երկու հոգիի հրամայեց որ ձողի (1) մը անցընելով, ուսերնուն

(1) Սըրըգ։

վրայ առնեն տանին՝ Անգղիոյ մէջ սայլորդաց գարեջրի տակառ տարածնուն պէս։ Կոյրը անոնց հանած անդադար ձայնին, ու րոպէն ցուցընող սլաքին վրայ ապշեցաւ մնաց, որուն շարժիլը դիւրաւ կրնար տեսնել· որովհետեւ անոնք մեզմէ աւելի սրատես են։

Նոր փոյթս իր գինականաց կարծիքը հարցուց, որ հոս կրկներս հարկ չէ· ընթերցողը կրնայ երեւակայել ինչ կերպ կերպ և օտար կարծիք ընելնին, թէև ստոյգ է որ ես ալ շատ աղէկ չէի կրնար հասկընալ անոր բառերը։ Ետքը յանձնեցի նաև արծաթ ու պղինձ ստակներս, քսակս՝ մէջը ինը մեծ ու քանի մը մանր ոսկի դրամներով, դանակս, ածելիս, սանտրս, քթախոտի արծաթ տուփը, թաշկինակս ու օրագիրքս։ Դաշոյնս, ատրճանակներս, և փառօղի ամանս կառքով արքունական զինարանը տարուեցան, բայց մնացածները ետ տրուեցան ինծի։

Գաղտուկ գրպանի մը մէջ որն որ ինչպէս առաջուց ալ յիշեր եմ թէ չքննուեցաւ, աչքնոցս, (զոր աչացս տկարութեանը աղագաւ երբեմն կը գործածեմ), գրպանի դիտակ մը, և ուրիշ

քանի մը մանր մունր բաներ կային, որոնք Թագաւորին հարկաւոր չըլլալուն՝ զանոնք ցուցընելը ինծի պարտք չսեպեցի, ու կը վախնայի որ եթէ ձեռքէս հանելու ըլլամ՝ կամ կը կորսուին և կամ կ'աւրուին ։



## ԳԼՈՒԽ Գ.

*Հեղինակը տարօրինակ կերպով մը կը զբօսցընէ կայսրն ու անոր աւագանիները ։ Կիլիկութեի պալատին զբօսանաց առօրագրութիւնը ։ Քանի մը պայմաններով իր ազատութիւնը կը ստանայ ։*

Իմ քաղցր ու բարի վարմունքս՝ Թագաւորին ու իր պալատականաց, մանաւանդ զօրաց ու ժողովրդեան վրայ մեծ աստիճան ազդեցութիւն ըրին, որ սկսայ ազատութիւնս քիչ ատենի մէջ ձեռք ձգելու յոյսեր ընել։ Ստէպ ձեռքէս եկած ամեն հնարքը բանեցուցի, որ միշտ ամենուն սիրելի ըլլամ. երթալով բնակչաց ինծի ունեցած վախը ևս պակսեցաւ. երբեմն պառկելով անոնց հինգին կամ վեցին թող կու տայի որ վրաս ելնեն կաքաւեն։ Բայց վերջապէս տղայք ու նաև աղջիկները մազերուս մէջ պահուըտուըկ խաղալու համարձակեցան։

Մինչև ան ատեն անոնց լեզուին մէջ աղէկ յառաջդիմութիւն ըրած ըլլալուս՝ բաւական կը հասկընայի և կը հասկըցընէի։ Օր մը կայսրը ուզեց որ երկրին խաղերէն քանի մը տեսակը աչքիս խաղցընել տալով, զիս զբօսցընէ. որովհետև անոնք

ռս խաղուց մէջ թէ՛ ճարտարութեան և թէ՛ մեծագործութեան կողմանէ ճանչցած բոլոր ազգերէս կը գերազանցէին։ Այս խաղերուն մէջ ամենէն աւելի զիս զուարճացընողները էին լարախաղացները, որոնք գետնէն երկու ոտք ու գրեթէ տասներկու ըթաչափ բարձր լարուած բարակ ու ճերմակ դերձանի մը վրայ կը խաղային. ասոնց վրայօք քիչ մը երկար խօսիլ ուզելուս՝ կը խնդրեմ որ ընթերցողս ներողամիտ ըլլայ։

Այս խաղերը խաղցողները՝ արքունեաց մէջ երևելի ըլլալու և մեծ պաշտօններու հասնելու հետամուտ եղող մարդիկըն են, որոնք իրենց պզտիկութենէն աս արհեստին մէջ կը կրթուին՝ թէև միշտ ազնուականցի մը կամ ազատ կրթութիւն առած մարդիկ չեն։ Մէկին մեռնելովը կամ պաշտօնէն ինկալովը, որ շատ անգամ կը պատահի, երևելի պաշտօն մը պատարկ մնացածին պէս՝ անոնցմէ հինգ կամ վեցը հոգի կայսեր աղերսագիր մը կը մատուցանեն, որ չուանի վրայ խաղ մը խաղալով, զինքը և իր պալատականները ըզբօսցընեն. ու ով որ առանց ինկալու ամենէն վեր ցատկէ՝ պաշտօնը անոր տըրուի։

Շատ անգամ առաջին պաշտօնէից եւս հրաման կ'ըլլայ որ իրենց ճարտարութիւնը ցուցընեն, եւ իրենց յաջողակութիւնը դեռ կորսնցուցած չըլլալնին փորձով յայտնեն կայսեր: Ֆլիմնափ գանձապետը բոլոր տէրութեան մէջ գտնուող որ եւ իցէ լորտէ մը առ նուազն բթաչափ մը աւելի բարձր ու պիրկ լարուած չուանի վրայ ցատկռտելու ճարպիկութիւնը ունի: Անգղիոյ հասարակ առասանէ մը բարակ չուանի վրայով դետեղուած տախտակի մը վրայ անոր քանի մը անգամ մէկէն գլխիվայր թաւալելը տեսած եմ: Ռէլտրէսալ բարեկամս, որ կայսերական առաջին խորհրդարանին առաջին ատենադպիրն է, ըստ իմ կարծեացս թէ որ կողմնասիրութիւն չէ ըրածս՝ ճարտարութեան կողմանէ գանձապետէն ետքը ան կու գայ, մնացած մեծ պաշտօնակալքն եւ իշխանք վար չեն մնար:

Աս խաղերէն շատ անգամ մահաբեր դիպուածներ կը ծագին, որոնց խիստ շատերուն պատմութիւնը արձանագրուած է: Ես աչքովս տեսած եմ որ աս պաշտօնի հետամուտներուն երկու կամ երեքը իյնալով հաշմանդամ(1) եղան· բայց վը-

(1) Սաքաթ:

տանգին խիստ մեծը՝ պաշտօնէից իրենց ճարպիկութիւնը ցուցընելու համար հրաման եղած ատենը կը պատահի. ինչու որ ատոնք իրենց ընկերները գերազանցելու, և իրենց կարողութենէն աւելի յաջողակութիւն ցուցընելու համար՝ ինքզինքնին ա՛ն ատափձան կը նետեն, որ ոմանք երկու կամ երեք և կամ գոնէ մէկ անգամ վար կը գլորին. Ֆլիմնափին համար կը պատմեն թէ իմ հոն գալէս մէկ կամ երկու տարի առաջ մազ մնացեր է որ իյնալով գլուխը ջախջախէ, թէ որ պատահմամբ հոն գետնի վրայ մնացած թագաւորին բարձերուն մէկը անոր իյնալուն ուժը պակսեցընելով չի պաշտպանէր։

Ուրիշ խաղ մը եւս կայ, որ մասնաւոր պարագայից մէջ միայն կայսեր, կայսրուհւոյն, և առաջին պաշտօնէին առջին կը խաղցուի. Կայսրը սեղանին վրայ վեց բթաչափ երկայնութեամբ երեք գեղեցիկ մետաքսեայ նուրբ թելեր կը դնէ՝ մէկը կապոյտ, մէկը կարմիր և միւսը կանաչ. Երբ ոմանց մասնաւոր շնորհք մը ընել ուզէ՝ սա թելերը իբր մրցանակ անոնց կ'առաջարկէ.

Աս արարողութիւնը նորին վեհափառութեան հանդիսի մեծ սրահին մէջ կը կատարուի ․ ուր՝ աս նշանիս հետամուտները իրենց ճարտարութեան փորձը ցուցընելու քննութենէ պիտի անցնին ։ Աս փորձը առջինէն շատ տարբեր է, որուն նմանը հին և նոր աշխարհի որ և իցէ քաղաքաց մէջ բնաւ չեմ տեսած ։ Կայսրը ծայրերը հորիզոնին հաւասար գաւազան մը կը բռնէ ձեռքը, ու աս նշանիս հետամուտները մէկ առ մէկ յառաջ գալով, երբեմն գաւազանին վրայէն կը ցատկեն, ու երբեմն տակէն դէպ ի ետ և դէպ ի յառաջ ծռելով, կ'անցնին՝ վեր կամ վար բռնուածին համեմատ ։ Երբեմն կայսրը գաւազանին մէկ ծայրը կը բռնէ, ու միւս ծայրը իր առաջին պաշտօնէին բռնել կու տայ ․ երբեմն ամբողջ գաւազանը պաշտօնեայն միայն կը բռնէ ։ Խաղցողներուն ամենէն ճարպիկը, և ցատկելու ու գաւազանին տակէն անցնելու աւելի դիմացողը՝ կապուտակոյն մետաքսեայ թելը կ'առնու ․ կարմիրը՝ երկրորդին այսինքն անկէ վար գըտնուողին կը տրուի ․ իսկ կանաչը՝ երրորդին ։ Ասոնք աս թելերը իբր գօտի մէջքերնին երկու անգամ փաթթելով կը կա-

*պէն, ու պալատին մէջ շատ քիչ մեծ անձինք կը տեսնուին, որոնք աս գունաւոր թելերուն մէկը մէջքերնին կապած չըլլան ։*

*Ձիանակին ու կայսերական ախոռներուն ձիերը ամէն օր աս ձիու բերուելուն՝ առանց ինձմէ խրտչելու՝ աներկիւղ մինչև ծունկերուս մօտ կու գային ։ Ձեռքս գետնի վրայ դրած ատենս՝ ձիաւորները ձիերնին ձեռքիս վրայէն կը ցատկեցընէին ։ Կայսեր որսորդաց մէկը մեծ ու պատուական նժոյգի մը վրայ հեծած այնպէս սանձարձակ քշեց, որ ոտքիս կօշկին վրայէն ցատկեց անցաւ, որն որ իրաւցընէ հրաշալի բան մ'էր ։*

*Օր մը՝ խիստ տարօրինակ կերպով կայսրը զբօսցընելու բաղձաւոր գտնուեցայ ։ Աղաչեցի զան որ երկու ոտք բարձրութեամբ ու հասարակ գաւազանի հաստութեամբ փայտեր ինձ բերելու հրաման ընէ, կայսրը անմիջապէս իր անտառապետին հրամայեց որ խնդիրքս կատարուի ։ Հետևեալ առտու, վեցը փայտահար՝ ութնական ձիերէ լծուած վեցը կառք լեցուն փայտերով եկան ։ Ես աս փայտերէն ինը փայտ առի, ու երկուք ու կէս ոտնաչափ քառանկիւնի ձևով*

գետնի վրայ պինդ մը մխեցի զանոնք· ուրիշ չորս փայտ ևս առի, ու ամեն մէկ անկիւնին հետ հաւասար հեռաւորութեամբ և գետնէն գրեթէ երկու ոտնաչափ բարձր կապեցի· ետքը՝ թաշկինակս ինը տնկուած գաւազանաց կապելով, անոնց վրայ տարածեցի ու թըմբուկի պէս պրկեցի զան· չորս հաւասար գաւազանները, որոնք թաշկինակէս հինգ բթաչափ վեր մնացեր էին, ամեն կողմէն շրջանակի պէս կը բանէին·

Գործս լմնցընելէս ետև՝ կայսեր աղաչեցի որ իր հեծեալ գունդէն քսան ու չորս ընտիր ձիաւորաց հրաման ընէ որ աս տափարակ տեղին վրայ գան կրթութիւն ընեն։ Նա իշխանը առաջարկութեանս հաւանելով, երբ անոնք սպառազինած ու ձիերու վրայ նստած՝ զիրենք կրթող մասնաւոր պաշտօնակալաց հետ եկան, մէկ առ մէկ ձեռացս մէջ առի զանոնք, ու ան տեղին վրայ դրի· կարգաւ շարուելնուն պէս՝ երկուքի բաժնուեցան, և սկսան կեղծ կռիւներ ընել, բութ նետեր նետեցին, սուրը ձեռքերնին՝ փախչողներուն ետևէն վազեցին, զարնուեցան, ետ քաշուեցան· կարճ ընեմ՝ այնպէս աղւոր զինուորական

կրթութիւն մը ըրին, որ բնաւ չէի տեսած ։ Ան զուգահաւասար գաւազանները վերենք ու իրենց ձիերը ասպարիզէն վար իյնալէն ապահովեցին ։

Կայսրը աս զբօսանաց վրայ այն աստիճան զուարճացաւ, որ քանի մը օր եւս նորէն կրկնել տուաւ ։ Անգամ մը ուզեց որ զինքը աս անցքին վրայ գնեմ, որպէս զի իրեք հրամայէ զինուորաց, ու շատ դժուարութեամբ զկայսրուհին համոզեց որ գահաւորակին մէջ նստած թողու որ զինքը վեր վերցընեմ ասպարիզէն երկու կանգուն հեռաւորութեամբ · ուստից ան բոլոր կրթութիւնները աղէկ կրնար տեսնել ։ Բաղդէս աս զբօսանաց մէջ վնասակար դիպուած մը չպատահեցաւ, միայն՝ հարիւրապետաց մէկուն շատ կրակոտ ձին դափը հատանելու (1) ատենը՝ թաշկինակս ծակեց, ու ոտքը ծակին մէջը սահելով, վրայինին հետ գետինը ինկաւ · բայց ես շուտով զանոնք վեր վերցուցի, և մէկ ձեռքովս ծակը գոցելով, մէկալովս ալ ձիաւորները վեր հանած կերպովս մէկ առ մէկ վար իջեցուցի ։ Խնող ձիուն ձախ թիկունքը միայն ճըմլուեցաւ · բայց բարեբաղդաբար հեծ-

(1) Ձիուն՝ ոտքով գետինը զարնելը ։

նոցին վնաս մը չըրաւ․ ետքը՝ թէև կըրցածիս չափ Թաշկինակս կարկտեցի, սակայն այսպիսի փտանգաւոր ձեռնարկութեանց մէջ՝ անոր ուժին չապաւինեցայ։

Ազատութիւնս ստանալէս երկու կամ երեք օր առաջ, երբ պալատականք աս կերպ խաղերով կը զբօսցընէի․ մանաւանդ սուրհանդակ մը եկաւ կոյսեր իմացընելու թէ իր հպատակաց մէկ քանին իմ առջի գտնուած տեղէս մօտ ձիով անցած ատենին՝ կոյսեր պառկած սենեկին լայնութեամբը, եզերքը շուրջանակի տարածուած, մէջ տեղը մարդու մը բարձրութեան չափ վեր ցցուած, ձեւը խիստ այլանդակ, գոյնը սև, մեծ առարկայ մը հոն գետնի վրայ տեսեր են․ Կենդանի չէ եղեր, ինչպէս որ նախ տեսած ատեննին՝ փախցեր են, որովհետև նայեր են թէ խոտին վրայ անշարժ կը կենայ․ իրենցմէ ոմանք քանի մը անգամ անոր չորս դին պտըտելէն ետև՝ իրարու թիկանց վրայ կոխելով, անոր գագաթանը վրայ ելեր են, որ տափակ ու հարթ է եղեր, ու ոտքովնին անոր վրայ զարնելով, մէջը պարապ ըլլալը հասկըցեր են․ Իրենց տկար կարծեացը համեմատ՝ աս առարկան կարելի է լեռ-մարդուն վերաբերեալ

քան մը ըլլայ, և թէ որ նորին վեհափառութիւնը հաճութիւն տայ, միայն հինգ ձիով բերելու կը խոստանան։ Ինչ ըսել ուզերին իսկոյն հասկըցայ, ու աս լուրը առնելուս չափազանց ուրախացայ։

Ինծ կը թուի թէ մեր նաւաբեկութենէն ետքը ցամաքը հասած ատեն՝ անանկ շփոթութեան մը մէջ էի որ քունս տարած տեղս չզգացած գլխարկս գլխէս ինկեր է. որն որ թի քաշած ատենս առասանով մը գլխուս կապեր էի. ու լողացած ատենս գլուխս էր։ Ես կը կարծէի թէ առանց տեսնելուս առասանը պատահմամբ կտրուելով ծովուն մէջ կորսուած է։ Ուստի գլխարկիս ինչ ըլլալը և ինչ բանի գալը նորին կայսերական վեհափառութեանը նկարագրելով, աղաչեցի զան որ կարելի եղածին չափ շուտով ինծ բերուելու հրաման ընէ, հետևեալ օրը սայլորդները առին բերին զայն, բայց շատ յոռի վիճակի մէջ. ըստ որում՝ անոր եզերքէն գրեթէ մէկ ու կէս թզաչափ ներսէն երկու ծակ բացեր էին, որոնց մէջ երկու ճանկեր անցուցեր էին. աս ճանկերը մէկ մէկ երկայն չուանով ձիերուն լանջապանակներէն կապելով, անգղիական կէս մղոնի չափ հեռաւորութե-

նէ քաշկռտելով բերեր էին։ Բայց այն երկրին հողը խիստ կակուղ ու հարթ ըլլալուն՝ գլխարկս կործածիս չափ վնասուած չէր։

Աս դիպուածէս երկու օր ետև՝ կայսրը՝ անսովոր կերպով մը ինքզինքը զբօսցընել ուզելով, հրամայեց որ մայրաքաղաքին և անոր շրջաբնակ զօրաց հանդէս մը ըլլայ, և աղաչեց ինծի որ կրցածիս չափ սրունքս բանալով, հսկայաձև արձանի պէս կանգնիմ· անատեն հրաման ըրաւ իր զօրավարին (որ ծերունի ու փորձ հրամանատար մը, ու իմ մեծ պաշտպանս էր) որ զօրքը շարելով, հետևակները՝ քսան և չորսական ու ձիաւորները տասն և վեցական հոգի մէկ կարգ երկու սրունքիս մէջ տեղէն անցընէ՝ թմբուկները զարնելով, դրօշակները բացած, ու նիզակները վեր բըռնած։ Աս բանակը երեք հազար հետևակ ու հազար ձիաւոր զօրքէ կը բաղկանար։ Նորին վեհափառութիւնը մահ սպառնալով՝ պատուիրեց բոլոր զինուորաց, որ սրունքացս մէջ տեղէն անցնելու ատեննին՝ խիստ զգուշանան ինծի անվայել բան մը ընելէն։ Ի վերայ այսր ամենայնի՝ երիտասարդ պաշտօնակալներէն

ոմանք անցնելու ատեններն՝ աչքերնին վեր առնելով՝ զիս կը դիտէին, ու ճշմարիտը՝ անատեն վարտիքս այնպէս յոռի վիճակի հասեր էր, որ սաստիկ ծիծաղելու և զարմանալու առիթներ տուաւ անոնց ։

Այնչափ աղերսագիրներ խրկեր էի ազատութեանս համար, որ կայսրը վերջապէս՝ նախ արքունական խորհրդարանին ու ետքը ժողովքին մէջ աս նիւթիս վըրայօք խօսք բացաւ, ուր բնաւ դէմկեցող մը չեղաւ՝ բաց ի Սքայրէշ Պօլկօլամէն, որ առանց պատճառի ինծի ոխերիմ թշնամի ըլլալու բարեհաճեր էր ։ Բայց բոլոր ատեանը անոր դէմ գըրաւ, կայսրն ևս ատենակալաց կարծիքը հաստատեց ։ Աս պաշտօնեան, որ Կալպէթ այսինքն տէրութեան մեծ ծովապետն էր, իր գործունէութեամբը կայսեր սիրելի եղած, բայց նեղսիրտ ու կոխերես մէկն էր ։ Թէպէտ վերջապէս ինքն ալ համոզուեցաւ աս բանիս, սակայն ոտք կախեր էր որ ազատութեանս վրայօք ըլլալու յօդուածներն ու պայմանները, որոնց վրայ երդում պիտի ընէի՝ ինքը գրէ ։

Աս յօդուածները Սքայրէշ Պօլկօլամ ինքը անձամբ առաւ բերաւ ինծի՝ ըն-

կերութեամբ երկու ստորին քարտուղարի ու քանի մը պատուաւոր անձանց։ Պայմանները առջիս կարդացուելէն ետև՝ խնդրեցին որ զանոնք կատարելու համար երդում ընեմ, որն որ կատարեցի նախ՝ ըստ երկրին սովորութեանը և ետքը՝ իրենց օրինաց համեմատ՝ ձախ ձեռքիս աջ ուսքս բռնելով, ու աջ ձեռքիս միջամատը գլխուս սկաւառակին վրայ դընելով, և բթամատս աջ ականջիս ծայրին դպցնելով երդում ըրի. բայց որովհետև ընթերցողը աս ժողովրդին մասնաւոր եղած գրութեն ոճոյն ու խօսից ձևերուն, մասնաւանդ ազատութեանց համար գրուած յօդուածոց վրայօք գաղափար մը ունենալու հետաքրքրութիւն կրնայ ունենալ, ուստի այն բոլոր գրուածքը ձեռքէս եկածին չափ մօտ բառ առ բառ թարգմանելով հոս՝ հասարակութեան կը նուիրեմ։

Կօլպասթօ Մօմարէմ Էվլամէ Կուրտիլօ Շէֆին Մուլլի Ուլլի Կուէ ամենազօր կայսր Լիլիփութի, աշխարհիս բերկրութին ու սարսափը, որուն տէրութիւնը հինգ հազար պլ—ըսթրու—քս (գրեթէ տասներկու շրջապատ մղոն) ընդարձակութեամբ

երկրագնտիս ծայրերը կը հասնի · Ինքնակալաց Ինքնակալը, Ադամայ որդւոց ամենամեծը · որուն ոտքը մինչև երկրիս կեդրոնը կը ճնշէն, ու գլուխը մինչև արեւը կը հասնի · որուն մէկ ակնթարթը երկրիս իշխանաց ծունկերը կը դողացընէ · գարնան պէս սիրելի, ամառուան պէս փայլուն, աշնան պէս պտղալի, ձըմեռուան պէս սոսկալի · Նորին ամենաբարձր վեհափառութիւնը՝ մօտերս մեր երկնային երկիրը եկող լեռ-մարդուն այս հետևեալ յօդուածները կ'առաջարկէ՝ պարտաւորելով զան որ զանոնք կատարելու համար հանդիսաւոր երդում ընէ ։

Ա․ Առանց մեր մեծ կնքով կնքուած հրամանագրին՝ լեռ-մարդը մեր երկիրներէն պէտք չմեկնի ։

Բ․ Առանց մեր մասնաւոր հրամանին՝ մեր մայրաքաղաքը մտնելու պէտք չհամարձակի, որպէս զի երկու ժամ յառաջ քաղաքացւոց ծանուցուի որ տներնէն դուրս չելլեն ։

Գ․ Յիշեալ լեռ-մարդը միայն մեր

երեւելի արահետ փողոցաց մէջ պէտք պտըտի · ցորենի դաշտի կամ մարգագետնի վրայ ոչ պառկելու համարձակելու է, և ոչ քալելու ։

Դ · Յիշեալ փողոցաց մէջ պտըտելու ատենը՝ ձեռքէն եկած ամենամեծ ըզգուշութիւնը ընելու է որ մեր սիրելի հպատակաց, անոնց ձիերուն ու կառաց վրայ չկոխէ, և ոչ առանց անոնց հաճութեանը՝ մեր հպատակաց մէկը իր ձեռաց մէջ պիտի առնէ ։

Ե · Եթէ արտաքոյ կարգի մասնաւոր սուրհանդակ մը ղրկել պէտք ըլլայ՝ լեռ–մարդը պիտի պարտաւորի սուրհանդակը ձիովը մէկ տեղ իր գրպանին մէջ դընելով, վեցը օրուան ճամբայ տանիլ ամիսը անգամ մը, ու յիշեալ պատգամաբերը (թէ որ պահանջուի) ողջ ու անվնաս կայսեր առջին պիտի բերէ նորէն ։

Զ · Պլէֆուսքու կղզւոյն մէջի մեր թըշնամեաց դէմ՝ մեզի նիզակակից պիտի ըլլայ, և իր յետին ճիգը ընելու է անոնց նաւատորմիղը փճացընելու, որն որ հիմա վրանիս յարձակելու համար կը պատրաստեն ։

Է. Յիշեալ լեռ-մարդը պարապ եղած ատենը՝ մեր մեծ պարտէզին ու կայսերական ուրիշ շէնքերուն պատերուն մնացածը լմնցընելու համար՝ մեր գործաւորները քանի մը մեծ քարեր անոնց վրայ հանելու ատեններն՝ անոնց օգնելու ու ձեռնտու ըլլալու է ։

Ը. Յիշեալ լեռ-մարդը երկու լուսնի մէջ մեր տէրութեան ծովեզերքին չորս դին պտտելով՝ բուն իր քայլերուն հաշուովը անոր շրջապատին ընդարձակութիւնը մեզ պիտի գիտցընէ ։

Ի վերջոյ՝ բոլոր աս վերոյիշեալ յօդուածները կատարելու համար հանդիսական երդումն ընելէն ետև՝ յիշեալ լեռ-մարդը իր օրական պարէնին համար մեր 1728 հպատակաց բաւական եղած ուտելիքն ու խմելիքը պիտի ունենայ ։ մեր կայսերական անձին քովը ազատ պիտի մտնէ ելնէ, ու մեր շնորհաց ուրիշ նշաններուն պիտի արժանանայ ։

Տուեալ ի Պելֆապորաք, մեր պալատին մէջ, մեր թագաւորութեան իննըսուն և մէկերորդ լուսնոյն երկոտասաներորդ օրը ։

Աս յօդուածոց մէկ քանին թէպէտեւ ուզածիս չափ պատուաւոր չէին, որոնք Սքայրէշ Պօլկօլամ մեծ ծովապետին չարութեան արդիւնքն եղան, այսու ամենայնիւ մեծ ստախօսութեամբ ու գոհ սրտիւ անոնց վրայ երդում ընելով ստորագրեցի, ուստի անմիջապէս շղթաներս արձըկեցին ու բոլորովին ազատ թողուցին զիս։

Ազատութեանս արարողութիւնը ի գործ դրուած ատենը՝ կայսրը իր ներկայութեամբը պատուեց զիս․ ուստի խորին երախտագիտութիւնս յայտնելու համար՝ երբ նորին վեհափառութեան ոտքը ինկայ, հրամայեց որ ելնեմ կանգնիմ, ու հետս քաղցրութեամբ խօսակցելէն ետեւ՝ որոնք սնապարծութեան ստգտանքէն փախչիլ ուզելուս՝ հոս կրկնել չեմ ուզեր, խօսքին վրայ աս ալ յաւելցուց, ըսելով․ "Կը յուսամ որ մեզի օգտակար ծառայ մը կ'ըլլաս, ու քեզի արդէն ըրած եւ ապագայ ընելիք բոլոր շնորհացս խիստ արժանաւոր կը հանդիսանաս"։

Կարծեմ ընթերցողը կը հաճի դիտել թէ ազատութեանս համար գրուած յօդուածոց վերջինին մէջ կայսրը բարեհաճեցաւ 1728 Լիլիփութցիի բաւական

ըլլող ուտելիքն ու խմելիքը ինծի տալ։ Քիչ մը ատեն ետքը՝ երբ պալատական բարեկամիս մէկուն հարցուցի թէ ինչ պատճառաւ այսչափ որոշեալ թուով ինձ ուտելիք ու խմելիք տրուելու վճռուեցաւ, պատասխանեց թէ՝ “Կայսերական մաթեմաթիկոսները քառորդ գործիքի միջոցաւ բարձրութիւնդ առած ըլլալնուն, ու գտեր մեզի հետ համեմատելով, հաստատեցին թէ քու անձդ գրեթէ մեզի պէս 1728 անձ կը բովանդակէ. ու ատի այնչափ Լիլիփութցիի բաւական ըլլալու կերակուրը քեզի տալ հարկ եղաւ”։ Ասկէ ընթերցողը կրնայ գաղափար մը ունենալ սա ժողովրդեան հանճարոյն, մանաւանդ այնպիսի մեծ իշխանի մը խոհական ու ճիշդ խնայողութեան վրայօք։

## ԳԼՈՒԽ Դ.

*Լիլիփութի Միլտէնտօ մայրաքաղաքին ու կայսերական պալատին նկարագրութիւնը։ Այն տէրութեան գործոց վրայօք հեղինակին ու առաջին ատենադպրին մէջ եղած խօսակցութիւնը։ Հեղինակը խօսք կու տայ կայսեր ծառայելու իր պատերազմաց մէջ։*

ԱԶԱՏՈՒԹԻՒՆՍ ձեռք ձգելէս ետև՝ առջի անգամ ըրած աղաչանքս Միլտէնտօ մայրաքաղաքը տեսնելու հրաման ուզելս եղաւ, որուն առանց ընդդիմութեան կայսրը հաճեցաւ, բայց աս մանաւոր պատուէրով որ ոչ բնակչաց և ոչ տանց վնաս մը հասցրնեմ։ Քաղաքը այցելութեան երթալու դիտաւորութիւնս՝ յայտարար գրով մը հրատարակուեր էր ժողովրդեան։ Այս քաղաքս չըրջապատող պարիսպը երկուք ու կէս ոտք բարձր ու գրեթէ տասն և մէկ ըթաչափ լայն է, այնպէս որ անոր վրայէն կառք մը և ձիեր կրնան անվտանգ անցնիլ, ու իրարմէ տասն ոտք հեռաւորութեամբ ամուր աշտարակներ կանգնած էին անոր վրայ։ Ես աս պարսպին արևմտեան կողմի

մեծ դրան վրայէն անցնելով, ներս մը-
տայ, ու երկու երեւելի փողոցաց մէջէն
յուշիկ ու կողմնակի քալելով անցայ՝
կարճ բաճկոնս միայն հագած՝ վախնա-
լով որ չըլլայ թէ վերարկուիս քղանց-
քովը յարկերուն և ջրի խողովակներուն
վնաս մը հասցընեմ: Չափազանց զգու-
շութիւն ըրի անցած ատենս՝ որ փողոց-
ները մնացած ո՛ք և իցէ անգործ պոռ-
տողներէն մէկու վրայ չկոխեմ, թէև սաս-
տիկ հրաման եղած էր՝ որ վտանգէ ա-
զատ ըլլալու համար՝ ամեն մարդ իր տու-
նը քաշուի մինչև անցնիլս: Տանց վեր-
նայարկի պատուհաններն ու տանիքը այն-
չափ անթիւ բազմութիւն լցուեր էին
զիս տեսնելու համար, որ կարծէի թէ
ճամբորդութեանս մէջ ասկից աւելի
բազմամարդ տեղ մը չէի տեսած: Պարս-
պին իւրաքանչիւր կողմը հինգ հարիւ-
րական ոտք երկայն ըլլալուն՝ քաղաքը
ճիշդ քառակուսի ձև մը ունի: Երկու
մեծ փողոցները, որոնք հնգական ոտք
լայնութիւն ունին, խաչաձև մէկ մէկու
մէջէ անցնելով, քաղաքը չորս հաւասար
թաղի կը բաժնեն: Նրբափողոցները, ո-
րոնց մէջ չէի կրնար մտնել, միայն թէ
անցած ատենս տեսայ, տասներկուքէն

մինչև տասն և ութը ըթաչափ լայնութիւն ունին ։ Այս քաղաքին մէջ հինգ հարիւր հազար հոգի կրնայ բովանդակել ։ Տուները երեքէն մինչև հինգ դստիկոն բարձր են․ և խանութներն ու շուկաները ամէն տեսակ ապրանքով լեցուն են ։

Կայսեր պալատը քաղաքին մէջ տեղը կառուցեալ է, ուր աս երկու մեծ փողոցները իրարու կը հանդիպին ։ Այս պալատին չորս դին երկու ոտք բարձրութեամբ և չէնքերէն քսան ոտք հեռաւորութբ պատ մը քաշուած է ։ Այս պատին վրայէն անցնելու համար՝ կայսրէն հրաման առեր էի ։ Պալատին ու պատին մէջ տեղի միջոցը այնչափ ընդարձակ էր, որ պալատը ամէն կողմէն դիւրաւ կը տեսնէի ։ Արտաքին գաւիթը քառասուն ոտք քառակուսի հրապարակ մ'է, ու մէջ տեղը երկու ուրիշ հրապարակներ կը պարունակէ ։ Խիստ ներքին գաւթին մէջն են կայսերական բնակարանները, զորոնք տեսնել շատ կը բաղձայի, բայց խիստ դժուար էր․ ինչու որ մէկ գաւթէն միւսը անցնելու համար շինուած մեծ դուները հազիւ տասն և ութը ըթաչափ բարձր, ու եօթը ըթաչափ լայն էին ։ Ոսկէ դառ՝

արտաքին գաւթին շէնքը գրեթէ հինգ ոտք բարձր ըլլալուն՝ անկարելի էր անոնց վրայէն անցնիլը՝ առանց յարկի քարերուն ծանր վնասներ հասցընելու, թէպէտ շէնքին պատերը՝ բանուած ու չոր ըթաչափ հաստ քարերովամուր շինուած էին։

Կայսրն նմանապէս շատ կ'ուզէր որ իր պալատին շքեղութիւնը տեսնեմ, բայց երեք օրէն առաջ չկրցի տեսնել զան, որովհետեւ քաղաքէն հարիւր կանգուն չափ հեռու կայսերական պարտէզին ամենամեծ ծառերէն մէկ քանին դանակովս կտրելով, երկու անյենարան աթոռակներ շինեցի, որոնց ամէն մէկը երեք ոտնաչափ բարձրութիւն ունէր, ու իմ ծանրութիւնս կրնար վերցընել։ Քաղաքացւոց նորէն իմաց տրուելէն ետեւ՝ աթոռակները ձեռքս առած՝ կրկին քաղաքին մէջէն անցնելով պալատը գացի, երբ արտաքին գաւթին կողմը եկայ, աթոռակին մէկը գետինը դնելով վրան ելայ, միւսն ալ ձեռքս առի ու տանիքին վրայէն անցընելով զան, առաջին ու երկրորդ գաւթին անջրպետին վրայ կամաց մը իջեցուցի, որն որ ութը ոտնաչափ ընդարձակութիւն ունէր. Եւ քը՝

շէնքին վրայէն ոտքս աս աթոռակին վը-րայ նետելով , միւս կողմը անցայ , ու առջի աթոռակը ձանկաւոր փայտով մը քաշեցի առի ։

Ա՛հա աս ճամբով մինչև խիստ ներքին գաւիթը մտայ , ուր գովլնտի գետնի վը-րայ սողալով , երեսս միջին դստիկոն-ներուն պատուհանացը մօտեցուցի , ո-րոնք գիտմամբ բաց թողուած էին ։

Ա՛ս սենեակները այնպէս սքանչելի ու փառաւոր զարդարուած էին , որ մարդ չկրնար երևակայել ։ Հոս՝ թագուհին և երիտասարդ իշխանուհիները տեսայ՝ ի-րենց յատկացեալ սենեկաց մէջ ու ի-րենց երևելի սպասաւորներէն շրջապա-տեալ . կայսրուհին խիստ շնորհալի քըմ-ծիծաղով մը պատուեց զիս , և ձեռքը պատուհանէն դուրս երկնցուց որ համ-բուրեմ ։

Բայց աս նկարագրութիւններով չեմ ուզեր հոս ընթերցողս ձանձրացընել , քանզի ուրիշ մեծագոյն աշխատութեան համար պահած եմ զանոնք , որ գրեթէ հիմա պատրաստ է տպուելու . անոր մէջ աս տէրութեան անոր սկըզ-բնաւորութենէն ի վեր հետզհետէ տի-րող իշխանաց , նմանապէս անոնց պատե-

տաղմաց , քաղաքականութեան , օրինաց , գիտութեան , կրօնից , տնկոց , կենդանեաց , իրենց մասնաւոր ձեւերուն , սովորութեանց , և ուրիշ խիստ հետաքրքրական և օգտակար նիւթոց վրայօք եղած ընդհանուր նկարագրութիւնը կը բովանդակէ : Իմ այժմեան գլխաւոր դիտաւորութիւնս՝ այս տէրութեան մէջ ինը ամիսի չափ մնացած ատենս՝ միայն ինծի կամ, հասարակուն պատահածները պատմել է :

Ազատութիւնս ստանալէս գրեթէ տասըն և հինգ օր ետքը՝ առտու մը Ռէլդրէսալ տէրութեան մասնաւոր գործոց առաջին ատենադպիրը (ինչպէս որ անոնք աս տիտղոսը կու տան անոր ) հետը միայն ծառայ մը առած տունս եկաւ , ու հրամայելով կառավարին որ քիչ մը հեռու սպասէ իրեն , խնդրեց որ մէկ ժամի չափ հետը տեսնուիմ . և ես իր պատուոյն ու անձնական արժանաւորութեանցը , և մանաւանդ ատեանը թախանձանք ըրած ժամանակներս ինծի ըրած բարեկամութեանցը համար՝ անոր առաջարկութիւնը իսկոյն ընդունեցի . ուզեցի գետնի վրայ պառկիլ , որպէս զի ականջիս մօտ ըլլայ , բայց ինքը խնդրեց որ մինչև խօսքիս լմննալը՝ զինքը ձեռքս բռնեմ .

Ակսաւ նախ ազատութիւնս շնորհաւորել, ու բսաւ. «Սա բանիս ես ալ քիչ մը պատճառ եղած կրնամ սեպուիլ»։ բայց և աս յարեց՝ «Թէ որ կայսեր ներկայ գործերը աս վիճակին մէջ չըլլային, գուցէ չէր կրնար այսպէս շուտով ազատութիւնդ ստանալ։ Վասն զի օտարականաց առջև որչափ որ լուսաւորեալ աստիճանի հասած կ'երևինք, այնչափ երկու ահեղ չարեաց ներքևը ինկած կը տառապինք. որոց մէկն է ներքին սաստիկ երկպառակութիւն, և միւսը՝ արտաքին խիստ զօրաւոր Թշնամիի մը վրանիս յարձակելուն վտանգը։»

Սօջի բսածիս վրայօք պարտիս գիտնալ որ եօԹանասուն լուսնէ ի վեր աս տէրութեան մէջ երկու հակառակ կողմի բաժնուած են. մէկը Թրանէջեան ու միւսն Ալընէջեան անունով։ Սա անուններ իրենց մուճակաց բարձր կամ ցած կրունկներէն (1) առնուած են. որով իրարմէ կը զանազանին։ Թէպէտև բարձր կրունկները մեր հին սահմանադրութեանց խիստ յարմարըլլալը հաստատութիւն գտած է. բայց այսու ամենայնիւ կայսրը որոշած է որ կառավարութեան ամեն պաշտօնաց

(1) Քօքչէ.

մէջ միայն ցած կրունկները գործածուին, ինչպէս որ դուք ևս կրնաք դիտել։ Նորին կայսերական մեծափառութեան կրունկները իր մը և կէս պալատականաց կրունկներէն առ նուազն դրըրր մը ցած են, (դրըրրը՝ բթաչափի մը գրեթէ տասն և չորրորդ մասն է)։

Սա երկու հակառակ կողմին սաստիկ ատելութիւնը ա՛ն աստիճան հասած է, որ մէկ տեղ ո՛չ կ'ուտեն, ոչ կը խմեն, և ոչ կը խօսակցին։ Թրամեքսանները կամ բարձր կրունկները թուով մեզմէ շատուոր են. բայց իշխանութիւնը բոլորովին մեր ձեռքն է։ Միայն սա կը վախնանք որ թագաժառանգ Նորին կայսերական բարձրութիւնը բարձր կրունկներուն կողմը հակամիտեալ չըլլայ. գոնէ յայտնի կը տեսնենք որ իր կրունկաց մէկը մէկալէն աւելի բարձր է, և որուն համար քալած ատենը քիչ մը կը կաղայ։

Արդ այս ներքին երկպառակութեանց մէջ՝ Պլէֆուսքու կղզիէն վրանիս յարձակելու սպառնալիք մը ևս ունինք, որ աշխարհիս միւս մեծ տէրութիւնն է, ու գրեթէ մերինին չափ ընդարձակ ու ահեղ է. քանզի թէպէտև դուն հաստատել ուզեցիր թէ աշխարհիս մէջ ու-

րիչ տէրութիւններ ու երկիրներ կան , որոնց բնակիչները քեզի չափ մեծ են . բայց մեր փիլիսոփաները աս բանիս վըրայօք շատ կը տարակուսին , ու աւելի կը կարծեն թէ դուն լուսնի կամ աստղերուն մէկուն մէջէն ինկած ես . ըստ որում ստոյգ է որ քեզի պէս հարիւր չափ անձինք քիչ ատենի մէջ նորին բարձրութեան երկիրներուն մէջ գտնուած բոլոր արջառներն (1) ու պտուղները կը փճացընէին ։ Նոյէ դառ՝ մեզը հազար լուսնէ ի վեր գրուած մեր պատմութենց մէջ Լիլիփութի ու Պլէֆուսկուի երկու մեծ տէրութեանց երկիրներէն զատ ուրիշ երկրի վրայօք բան մը չէ յիշուած ։ Այս երկու ահարկու տէրութիւնները , ինչպէս որ պիտի ըսէի , երեսուն և վեցը լուսնէ ի վեր սաստիկ կամակորութեամբ պատերազմի բռնուած են , որուն պատճառը աս հետևեալն է ։

Ամենուն յայտնի է թէ՝ հաւկիթ մը՝ ուտելնէս առաջ կոտրելու նախնական սովորութիւնը տափակ ծայրէն կոտրել է ․ բայց ներկայ կայսեր հաւը (2) իր մանկութեան ժամանակը հաւկիթ մը ուտել ուզելով , զան ըստ նախնական սովորու-

(1) Տաւար ։ (2) Տէտր ։

թեանը կարելու առենը՝ պատահմամբ մատին մէկը կը կարէ ։ Ասոր վրայ՝ իր հայրը հրովարտակ մը կը հանէ՝ իր բոլոր հպատակաց սաստիկ պատիժ սպառնալով, որ այնուհետեւ ամեն մարդ իր հաւկիթները սուր ծայրէն կոտրէ ։ Աս հրամանին վրայ՝ ժողովուրդը ա՛ն աստիճանի կը կատղի, որ մեր պատմութեանց նայելով՝ վեց անգամ ապստամբութիւն ծագեր է մէջերնին ։ Աս պատճառաւ կայսերաց մէկը կեանքը ու միւսը իր աթոռը կորսնցուցեր է ։

Պլէֆուսքուի ինքնակալները աս քաղաքական յուզմունքը միշտ արծարծեր են, ու երբ խռովութիւնը զսպուեր է, յանցաւորները իբր ապաստանարան անոր տէրութեան երկիրը փախեր են ։ Այնպէս կը հաշուի թէ՝ տասն և մէկ հազար հոգի զանազան ժամանակ աւելի աղէկ սեպեր են մեռնիլ, քան թէ իրենց հաւկիթները սուր ծայրէն կոտրելու զիջանիլ ։ Աս վէճին վրայօք հարիւրաւոր մեծ հատորներ հրատարակուած են ․ բայց հաւկիթը տափակ ծայրէն կոտրողներուն գըրքերը երկար ատեն արգիլուեցան ու օրէնք եղած է՝ որ անոնց բոլոր կոչմա-

կանները կառավարութեան գործոց մէջ չկրնան մտնել։

Այս խռովութեանց մէջ Պէֆուսքուի կայսրները իրենց դեսպանաց միջոցաւ մեզմէ շատ անգամ տրտնջեցին՝ ամբաստանելով թէ Պլընտէքրալին այսինքն քուրանին յիսուն և չորրորդ գլխուն մէջ Լուսթրօգ մեր մեծ մարգարէին գրած հիմնական օրինաց մէկուն դէմ մեղանչելով, կրօնքնուս մէջ հերձուածողութիւն մը կը հանեմք։ Սակայն աս բաժնին՝ բնագրին միտքը քաշկռտել է. որովհետև բնագրին խօսքը ասոնք են. «Ճշմարիտ հաւատացեալները հաւկիթնին իրենց խիստ յարմար եկած կողմէն կոտրեն»։ Իսկ իմ տկար կարծեացս յարմար ծայրին որը ըլլալը որոշելը ամէն մարդուն իր խղճմտանքին պէտք է ձգել, կամ գոնէ առաջին դատաւորին որոշմանը յանձնել։ Բայց տափակ ծայրէն կոտրող աքսորեալները Պէֆուսքուի կայսեր քով այնչափ պատիւ գտան, ու հոս գտնուող իրենց կողմնակիցներէն այնչափ գաղտնի օգնութիւն ու քաջալերութիւն ստացան, որ երեսուն և վեց լուսնէն ի վեր արիւնալից պատերազմ մը կը շարունակուի աս երկու տէրութեանց մէջ,

երբեմն մէկը և երբեմն միւսը յաղթող գտնուելով։ Այնչափ միջոցին մէջ՝ քառասուն պատերազմական մեծ նաւեր, նոյնչափին աւելի փոքր նաւեր, և միանգամայն երեսուն հազար ընտիր զինուոր ու նաւազներ կորսնցուցինք․ Թշնամեաց կորուստը մերինէն աւելի ծանր կը հաշուի։ Սակայն հիմա նորէն ահարկու նաւատորմիղ մը պատրաստելով, վրանիս յարձակելու վրայ են, ու նորին կայսերական վեհափառութիւնը ուժիդ ու արիութեանդ վրայ մեծ վստահութիւն ունենալուն՝ հրամայեց ինծի որ գամ ու իր այս գործոց վիճակը մանրամասնաբար քեզ պատմեմ։

Աղաչեցի ատենադպրին որ խոնարհ ակնածութիւնս կայսեր ներկայացընելէն ետև՝ ծանուցանէ թէ օտարական մը ըլլալուս՝ որչափ որ իր տէրութեան քաղաքականութեանը խառնուիլս յարմար չէ, այսու ամենայնիւ նորին վեհափառութեան անձը ու տէրութիւնը յարձակողներէն պաշտպանելու համար կեանքս վտանգի մէջ դնելու պատրաստ եմ։



## ԳԼՈՒԽ Ե.

*Հեղինակը արտաքոյ կարգի դաւով մը Թշնամեաց յարձակման դէմ կը դնէ ։ Մեծ տիտղոս մը կը շնորհուի իրեն ։ Գլէֆուսքուի կայսեր կողմէն դեսպաններ կու գան հաշտութիւն խնդրելու համար ․ Կայսրուհւոյն բնակարանը պատահմամբ կրակ կ'առնէ , ու հեղինակին ձեռնտուութեամբը պալատին մնացած մասը կ'ազատի ։*

ԳԼԷՖՈՒՍՔՈՒԻ տէրութիւնը Լիլիփութի հիւսիսային արեւելեան կողմին վրայ կղզի մ'է , ու անորմէ ութը հարիւր կանգուն լայն կիրճով մը կը բաժնուի ։ Ես դեռ Գլէֆուսքուն տեսած չէի , ու աս յարձակիլ ուզելնուն լուրը ա՛ռածիս պէս՝ ծովեզերքը երթալէս զգուշացայ , որ չըլլայ թէ Թշնամեաց նաւերուն մէկէն զիս տեսնեն , որոնք իմ վըրայօքս լուր մը առած չէին ։

Աս երկու տէրութեանց մէջ եղած հաղորդակցութիւնը պատերազմի ժամանակ խստութք արգիլուեցաւ՝ չհնազանդողը ի մահ դատապարտուելու հրամանաւ , ու մեր կայսրը արգիլեց թէ՝ ո՛ր և իցէ նաւ ո՛չ իր նաւահանգստէն դուրս ել-

նելու կարող ըլլայ. և ոչ գրաւէն ներս մտնելու ։ Թշնամեաց բոլոր նաւատորմիղը յափշտակելու համար գտած մէկ հնարքս կայսեր հասկըցուցի. քանզի անոնց նաւերը՝ մեր լրտեսներուն հաստատութեանը նայելով՝ նաւահանգստի մէջ խարսխի վրայ կեցած և առջի յաջող հովմով առագաստելու ու վրանիս յարձակելու պատրաստ կը կենային ։ Ես աս կիրճին խորութեանը վրայօք խիստ փորձառու նաւազներու խորհուրդ հարցուցի, որոնք կապարեայ գնտով շատ անգամ անոր խորութիւնը չափած ըլլալով, պատասխանեցին ինծի թէ ջրին խիստ բարձրացած ատենը՝ անոր մէջ տեղի խորութիւնը եօթանասուն կլը-մկլը-ֆֆս է, որ Եւրոպական չափով գրեթէ վեցը ոտնաչափ ըսել է, ու միւս կողմերուն խիստ խորութիւնը յիսուն կլը-մկլը-ֆֆս ։

Ուստի դէպ ի հիւսիսային ու արևելեան ծովեզերքին կողմը գացի, որ չէտակ Պլեֆուսքուի դէմը կ'իյնար, ուր բլրակի մը ետևի դին պառկեցայ, և գրըպանէս պզտիկ դիտակս հանելով, խարսխի վրայ եղող նաւատորմիղը աղէկ մը աչքէ անցուցի, որ յիսունի չափ պատերազմական, ու պաշարակիր բազմաթիւ

նաւերէ կը բաղկանար։ Երբ՝ նորէն տունս դարձայ, ու հրաման ըրի որ շատ մը խիստ ամուր պարաններ ու երկաթէ ձողեր պատրաստեն, (որոնց համար հրամանագիր ունէի)։ Այս պարանները՝ գրեթէ առասանի չափ հաստ, ու երկաթեայ ձողերը՝ գուլպայի ասեղի չափ հաստ ու երկայն էին. պարանները աւելի դիմացկուն ըլլալու համար եռապատկեցի. նոյն իսկ պատճառաւ՝ ձողերուն երեքն ևս մէկ տեղ բերելով ոլորեցի, ու ծայրերնին ծռելով, կեռ ճանկ ձևացուցի։

Այս ճամբով յիսուն ճանկերը նոյնչափ պարաններու կապեցի, ու նորէն ելայ ծովեզերքին հիւսիսային արևելեան կողմը դարձայ. ուր վերարկուս, մուճակներս և գուլպաներս հանելով, միայն կաշեայ փարտըքովս՝ մակընթացութենէն գրեթէ կէս ժամ առաջ՝ կըցածիս չափ արագութեամբ ծովին մէջէն քալեցի. երբ մէջ տեղը հասայ, երեսուն կանգունի չափ տեղ լողացի, մինչև որ ոտքս յատակը դպաւ։ Ասանկով կէս ժամ չըլեց՝ նաւատորմիղը հասայ։ Թշնամիները զիս տեսածնուն պէս՝ այնպէս սաստիկ զարհուրեցան, որ ամէնը մէկէն

նաւերնէն ծովը նետուեցան, ու բոլո-րով ցամաքը հասան, որոնք երեսուն հազարէն պակաս չէին կրնար ըլլալ։

Աս միջոցիս՝ գործիքս առնելով գացի իւրաքանչիւր նաւին առաջակողմի ծա-կէն մէկ մէկ ճանկ անցուցի, ու ճանկե-րուն չուաններն իրարու կապեցի, Աս գործքով զբաղած միջոցիս՝ թշնամիք հա-զարաւոր նետեր կը պարպէին վրաս, ո-րոնց շատը ձեռացս ու երեսիս վրայ խը-րելով, ինծի չափազանց կսկիծ տալէն զատ՝ գործքիս նաեւ շատ շփոթութիւն տուին։ Իմ մեծ վախս աչացս համար էր, որոնք անշուշտ պիտի կորսնցընէի, թէ որ յանկարծ աս հետեւեալ հնարքը միտքս չգար։ Ակնոցս քանի մը մանր մունր հար-կաւոր բաներուս հետ գաղտնի գրպա-նիս մէջ պահեր էի, որն որ ինչպէս ա-ռաջ ալ ըսի՝ կայսեր քննիչներէն առանց քննութեան մնացած էր։ Գրպանէս հա-նելով քթիս անցուցի զան, ու կարելի եղածին չափ պիրկ մը կապեցի. այսպէս սպառազինեալ՝ սկսայ գործքս քաջու-թեամբ առաջ տանիլ թշնամեացս նետից չնայելով, որոնց շատը ակնոցիս ապակեաց զարնելով, զանոնք տեղերնէն շարժելէն ուրիշ բան չէին կրնար ընել։ Վերջապէս

բոլոր ճանկերը անցընելով, ու պարաններուս հանգոյցը (1) ձեռքս առնելով. սկսայ ետեւէս քաշել զանոնք. բայց նաւերը խարսխած ըլլալուն՝ անոնցմէ մէկն իսկ տեղէն չշարժեցաւ։ Ուստի գործիս դժուարագոյն մասը հասած ըլլալուն՝ չուանս ձեռքէս ձգեցի, խարսխաց պարանները արիութեամբ կտրեցի, և երկու հարիւրի չափ նետեր երեսիս ու ձեռացս զարնուելէն ետեւ՝ ճանկերուն կապուած չուաններուն հանգոյցը նորէն ձեռքս առի և թշնամեաց մեծագոյն նաւերէն յիսուն նաւ խիստ դիւրութեամբ ետեւէս քաշել սկսայ։

Պլեֆուսքուի բնակիչները ինչ ընել ուզելս չկրնալով հասկընալ, ի սկզբան զարմանքով ապշեցան չփոթեցան. Պարանները կտրելս տեսնելով, կարծիք բրին թէ նաւերը ալեաց ձգելու կամ իրարու զարնելու միտք ունիմ։ Սակայն երբ բոլոր նաւատորմիղը կարգաւ ետիս ձգած տանիլս տեսան, այնպիսի յուսահատական ու ցաւալի ճիչ մը ձգեցին, որ պատմելը կամ երեւակայելը գրեթէ անհնարին է. Վտանգէն հեռացածիս պէս՝ քիչ մը կանգ առնելով, ձեռացս ու ե-

(1) Տէլիմ.

ձեռքս վրայ մխուած նետերը հանեցի , ու անոնց տեղերը այն իւղով շփեցի , որըն որ նոյն քաղաքը հասած ատեննիս՝ ինծի տալերնին արդէն ըսեր եմ : Ատենը ակնոցս հանեցի , ու գրեթէ ժամ մը հոն սպասեցի , մինչև որ մակընթացութիւնը քիչ մը իջաւ , ու բեռովս ջրին մէջէն անցնելով , անվնաս Լիլիփութի կայսերական նաւահանգիստը հասայ :

Կայսրն ու բոլոր իր պալատականները ծովեզերքը կանգնած աս երևելի գործին յաջող վախճանը տեսնելու կըսպասէին : Մեծ կիսալուսնի ձեւով նաւերուն դէպի յառաջ շարժիլը կը տեսնէին , բայց ես մինչև կուրծքս ջուրի մէջ ըլլալուս՝ զիս չէին կրցեր տեսնել : Կիրճին մէջ տեղը մօտեցած ատենս՝ մինչև պարանոցս ջրին մէջ ըլլալուս համար՝ աւելի ցաւեր էին : Կայսրը կարծեր է թէ խեղդուեցայ , ու թշնամւոյ նաւատորմիղը իրենց վրայ յարձակելու կը մերձենայ : Բայց շատ չանցած սիրտը հանդարտեր է . քանզի որչափ յառաջ կը քալէի , ջրին խորութիւնն ալ այնչափ կը պակսէր : Երբ ձայնս լսուելու չափ մօտեցայ , նաւատորմիղը կապուած առասանին հանգոյ-

ցը վեր վերցընելով, բարձր ձայնով մը պոռացի. «Կեցցէ Իլլիփուլթի ամէնազօր կայսրը»։ Ցամաքը հասածիս պէս՝ կայսրը ըստ կարի գովեստներ ընելով, զիս ընդունելէն ետև՝ նոյն կէտին նարպաջութեան աստիճանը շնորհեց ինծի, որ իրենց պատւոյ ամէնաբարձր աստիճանն է։

Նորին վեհափառութիւնը աղաչեց զիս որ ուրիշ հնարքով մը թշնամիին մեռած նաւերն իսկ իր նաւահանգիստները բերեմ։ Իշխանաց փառասիրութիւնը ա՛ն աստիճան չափ չունի, որ աս կայսրը կարծես թէ ուրիշ բան չէր մտմտար, բայց միայն Պլեֆուսքուի բոլոր տէրութիւնը իր երկրին մէկ գաւառը ընել, փոխարքայի մը կառավարութեանը տակ ձգել, տափակ կողմէն հաւկիթ կոտրող աքսորեալները ջնջել, ու պարտաւորել ան ժողովուրդը որ սուր ծայրէն կոտրեն, որով բոլոր աշխարհիս միապետը կարենայ ըլլալ. բայց ես քաղաքական ու արդարութեան անթիւ փաստերով աս դիտաւորութենէն զինքը հեռացընելու ջանք ըրի. ու բացարձակապէս բողոքեցի թէ՝ «Ազատ ու արի ժողովուրդ մը գերութեան տակ բերելու գործիք ըլլալ երբէք չեմ ուզեր»։ Աս նիւթիս վրայօք՝

ժողովքին մէջ խորհուրդ եղած ատենը՝ պաշտօնէից իմաստնագոյն մասին կարծիքը իմինիս համաձայն էին ։

Իմ աս բացարձակ ու անվեհեր յայտարարութիւնս կայսեր գաղափարացը ու քաղաքականութեանը այնպէս հակառակ էր, որ ինքը չէր կրնար ներել ինծի ։ Սա բանս խիստ վարպետ կերպով մը ժողովքին հասկըցուցած ատենը՝ խիստ խելացիներէն ոմանք ըսին ինծի թէ՝ գոնէ լուռ կենալով իմ կարծիքէս ըլլանին յայտնի ըրեր են. բայց ինծի թըշնամի եղողները չկրնալով դիմանալ՝ քանի մը անանկ խօսքեր փախուցեր են բերաններն որ անուղղակի կերպով ինծի կը դպչին ։

Ան օրէն՝ կայսեր ու պաշտօնէից մէջ ինծի դէմ անիրաւութեամբ մեքենայուած դաւ մը սկսաւ ծագիլ, որն որ բարեբաղդաբար երկու ամիս չքշեց՝ երեւան ելաւ, ու քիչ մնաց որ բոլորովին կործանմանս պատճառ պիտի ըլլար ։ Եթէ մէկը չուզեր թագաւորաց կիրքը կուրօրէն հաճեցընել՝ անոնց համար ըրած ամենամեծ ծառայութիւններն անգամ թեթեւ բան մը կը համարուին ։

Ըրած շահատակութենէս երեք շա-

բաթի չափ ետև՝ Պլէֆուսքուէն մեծ հանդէսով դեսպաններ եկան, և խոնարհական խոստմունքով հաշտութիւն խնդրեցին, որն որ մեր կայսեր համար խիստ շահաւէտ պայմաններով հաստատուեցաւ, զորոնք մանրամասն պատմելով, չեմ ուզեր ընթերցողիս ձանձրութիւն տալ: Դեսպանները վեցը հոգի էին և հետևրնին հինգ հարիւրի չափ շքադիր ունէին. ասոնց քաղաքէն ներս մտնելու հանդէսը՝ իրենց տէրոջը մեծութեան, և իրենց գործին կարևորութեանցը յարմար խիստ շքեղութեամբ կատարեցաւ: Դաշնադրութիւնը լմնցընելէն ետև, որուն համար՝ իմ ան միջոցին ունեցած կամ գոնէ ունենալ երևցած ազդեցութեամբս պալատին մէջ շատ աշխատեր էի, նոցին վսեմութիւնները՝ իրենց ինչ աստիճանի բարեկամ ըլլալս գաղտուկ իմանալով, հանդիսաւոր կերպով ի պաշտօնէ այցելութեան եկան ինծի, և սկսան արիութեանս և վեհանձնութեանս վրայ շատ մը գովեստներ ընել. կայսեր կողմանէ իրենց երկիրը հրաւիրեցին զիս, և խնդրեցին որ ահագին ուժիս քանի մը փորձերը իրենց ցուցընեմ, որուն վրայօք շատ զարմա-

նալի բաներ լսեր էին · իսկոյն խնդիրք-նին կատարելով, գոհ ըրի զիրենք, բայց մի բան միօջէ պատմելով, չեմ ուզեր ձանձրութիւն տալ ընթերցողիս ։

Բաւական ատեն նոցին վսեմութիւն-ները զբօսցընելէս ետև, որոնք չափէ դուրս զարմանք ու հաճութիւն զգացին, աղաչեցի որ ամենախոնարհ յարգանքս իրենց կայսր տիրոջը ներկայացընելու բարեհաճին, որուն առաքինութեանց համբաւը իրաւամբ տարածուած էր բո-լոր աշխարհիս վրայ, ու հայրենիքս չի դարձած՝ իրենց կայսրը անձամբ երթա-լու տեսնելու դիտաւորութիւն ունե-նալս իսկ իմացուցի ։ Ուստի՝ հետևեալ անգամին Լիլիփութի կայսրը տեսնա-լու պատիւ ունեցած ատենս՝ հրաման խնդրեցի որ Պլէֆուսքուի ինքնակալին ներկայանամ ։ Կայսրը թէպէտև հաճե-ցաւ շնորհել աս խնդիրքս, բայց ցուրտ կերպով մը հրաման տալը յայտնի տես-նելով, պատճառը ինչ ըլլալը չկրցի կռահել (1), մինչև որ մարդուն մէկը ականջիս կամաց մը ըսաւ · “ Ֆլիմնափ և Պոլկոլամ՝ կայսեր հասկցուցին թէ դես-

(1) Իմանալ ·

պանայ հետ ըրած խօսակցութիւնդ քու անհաւատարմութեանդ նշանն էր ": Ճշմարիտը՝ խղճմտանքս ալ կողմանէ բոլորովին հանդարտ էր · և ահա աս ժամանակէն պալատականաց ու պաշտօնակալաց ինչ ըլլալնուն փոյթօք սկսայ անկատար գաղափար մը ունենալ:

Պէտք է գիտնալ որ աս դեսպանները Թարգմանի մը բերնով հետս խօսեցան, ըստ որում իբր Եւրոպական երկու տարբեր լեզու՝ աս երկու տէրութեան լեզուները իրարմէ կը զանազանին · իւրաքանչիւր ազգ իր լեզուին հնութեանը, գեղեցկութեանը, և ազդուութեանը վրայ պարծենալով, յայտնապէս ուրիշին լեզուն կ'անարգէ : Սակայն մեր կայսրը անոնց նուաստութիւնը յափշտակած ըլլալով՝ վրանին իշխանութիւն մը ունենալուն՝ պարտաւորեց անոնց դեսպանները որ Լիլիփութի լեզուաւ վկայական թղթերնին ներկայացընեն իրեն, և իրենց առենաբանութիւնը ընեն :

Ան ալ խոստովանելու է՝ որ աս երկու տէրութեանց մէջ եղած առևտրական մեծ հաղորդակցութիւնը, փոփոխակի իրենց մէջ շարունակ աքսորեալներ ընդունելնուն, և իւրաքանչիւր տէրու-

թեան աղնուական պատանիները ու հարուստներուն զաւակները՝ աշխարհ տեսնելով և մարդս ու անոր բարքը ճանչնալով կրթուելու համար՝ իրարու երկիր դրկելու սովորութեանը պատճառաւ ծովեզերեայ կողմերը բնակող թէ երևելի անձերէն, թէ վաճառականներէն. և թէ նաւաստիներէն շատ քիչ հոգի կը գտնուին, որ աս երկու լեզուները խօսիլ չգիտնան, որուն այսպէս ըլլալը քանի մը շաբաթէ ետև՝ Պլէֆուսքուի կայսեր յարգանքս մատուցանելու գացած ատենս՝ աղուոր տեսայ. Աս բանս յիրաւի շատ օգուտ ըրաւ ինծի՝ Պլէֆուսքու գացած ատենս՝ թշնամեաց չարութեամբը գլուխ եկած ծանր դըժբաղդութեանց մէջ, որն որ ըստ տեղւոյն պիտի պատմեմ.

Ընթերցողը կը յիշէ կարծեմ թէ ազատութիւնս ստանալուս համար ստորագրած պայմանացս մէջ՝ թէև քանի մը ծառայական նուաստ յօդուածներ կային, որոնք ես չէի ախորժեր, բայց նեղը ըլլալուս՝ ընդունելու պարտաւոր էի, հիմա որ նարտաքութեան ամենաբարձր աստիճանին հասայ, այսպիսի ծառայութիւնները իմ պատուոյս անվայել երև-

նալուն՝ ձիտակը բռնելով կայսրը անոնց վրայօք ամենևին խօսք չըսաւ ինծի : Ինչ և իցէ շատ չանցաւ՝ իրեն խիստ երևելի ծառայութիւն մը ընելու պատեհութիւնը ունենայ, կամ գոնէ անատեն անանկ կարծեցի թէ բրածս մեծ բան մ՚է .

Կէս գիշերուան մը մօտ՝ հարիւրաւոր անձինք դրանս առջին աղաղակ մը ձգելով, շփոթած արթնցայ, և լսեցի որ անդադար պուրկլըմ կը պոռային · կայսեր պալատականներէն քանի մը անձինք բազմութիւնը ճեղքելով, քովս եկան և աղաչեցին որ անմիջապէս պալատը հասնիմ · « Քանզի, ըսին, պատուաւոր օրիորդաց մէկը վիպասանութիւն կարդացած ատենը անհոգութեամբ քնանալուն՝ մեծափառ կայսրուհւոյն սենեակը կրակ առեր կայրի ». Ես լսածիս պէս՝ մէկէն անկողնէս ցատկեցի · պալատականները հրաման ըրին որ ժողովուրդը ճամբայ բանայ ինծի , ու լուսնին լուսովը առանց մէկու վրայ կոխելու պալատը հասնելու կարող եղայ · Նայեցայ որ արդէն սենեկոց պատերուն սանդուղներ (1) մօտեցուցեր , և դոյլերը(2) պատրաստեր էին ,

(1) Մէրտիւպան : (2) Գօվա :

բայց ջուրը քիչ մը հեռու էր ։ Այս դոյլերը մեծ մառանոցի չափ էին , ու խեղճ ժողովուրդը ըստ կարի շուտով ջուր կը հասցընէին ինծի · սակայն կրակը այնպէս սաստիկ բորբոքած էր , որ մեծ օգուտ մը չըրաւ ։ Վերարկուս անոր վրայ ծածկելով , դիւրաւ կրնայի մարել զան · բայց շտապաւ քալելու ատենս՝ դժբաղդաբար տունս ձգած էի , ու միայն կաշիէ հանդերձս հագած էի ։ Այս պատճառաւ աս դէպքը բոլորովին յուսահատելի ու աղէտալի կ'երևար , և անշուշտ աս երևելի պալատը հիմնովին մոխիր պիտի դառնար , թէ որ մտքիս զարմանալի արթնութիւն մը գալով , հետևեալ հնարքը չխորհէի ։

Առջի իրիկուանէն կլիմիկրիմ ըսուած խիստ պատուական , բայց խիստ միզեցուցիչ գինիէն շատ մը խմեր էի , (որուն՝ Պլէֆուսքուի բնակիչները ֆլընէկ անունը կու տան , բայց մեր երկրի գինին աւելի աղնիւ սեպուած է ) և աղէկ որ խմածէս բան մը սպառած չէի ։ Քանի որ բոցերուն աւելի մօտեցայ , տաքին սաստկութիւնը , ու կրակը մարելու համար կըրած անհնարին աշխատանքս միզելու ներգործութիւն մը տալ սկսան · ուստի

ա՛յնչափ առատութեամբ միզեցի ու ա՛յնչափ յարմար տեղերուն իսկոյն հասցուցի, որ երեք վայրկենի մէջ կրակը բոլորովին մարեցաւ, և այս երևելի շէնքին մնացած մասը, որուն շինութեանը համար այսչափ դարեր սպառեր էին, կործանմանէ ազատեցաւ ։ Արշալոյսը ծագելուն՝ տունս դարձայ, և կայսեր խընդակցութիւնս յայտնելու չսպասեցի · քանզի թէև բրածս խիստ մեծ ծառայութիւն մ'էր, բայց չէի գիտեր թէ արդեօք կրակը այսպէս մարելուս կայսեր սիրտը նեղացա՞ծ էր՝ թէ չէ · ինչու որ այս տէրութեան սկզբնական օրինացը համեմայն՝ ո՛վ և իցէ աստիճանի մարդ պալատին շրջապատներուն մէջ մեզը եթէ միզէ՝ գլխապարտ կը համարուի · Սակայն այս մասին սիրտս քիչ մը հանդարտեցաւ, երբ կայսեր կողմէն մէկը գալով, ծանոյց թէ՝ կայսրը մեծ դատաւորին հրաման պիտի ընէ, որ ըստ օրինի ներողութեանըս թուղթը ինծի ղրկուի, որն որ երբեք չկրցայ ձեռք բերել · ծածկաբար իմացայ թէ կայսրուհին այս բրածէս խիստ շատ զզուելով, պալատին խիստ ներքին կողմը քաշուեր, ու հաստատ միտքը դըրեր է՝ որ այնուհետև այն շէնքը իր գոր-

*ծածութեանը համար երբէք չնորոգուին, և իր երևելի հաւատարմոց առջին երդմամբ հաստատեր է որ ինձմէ վրէժ պիտի առնէ ։*



## ԳԼՈՒԽ Զ.

*Լիլիփութի բնակիչները. Իրենց գրագիտութիւնը. օրէնքն ու սովորութիւնները. Իրենց զաւակները կրթելու կերպը. Հեղինակին ինչ կերպով ապրիլը նոյն երկրին մէջ. Երեւելի տիկնոջ մը ջատագով ըլլալը.*

Թէեւ ես տէրութեան նկարագրութիւնը մասնաւոր ճառով մը ընելու միտք ունիմ, սակայն հոս քանի մը ընդհանուր տեղեկութիւններ տալով, կ'ուզեմ հետաքրքիր ընթերցողս գոհ ընել. Բնակչաց ընդհանուր հասակը վեց բթաչափէն քիչ մը պակաս է, անանկ ալ բոլոր կենդանեաց, մանաւանդ տընկոց ու ծառոց մէջ ճիշդ համեմատութիւն մը կայ. Օրինակի համար՝ խիստ բարձր ձիերը ու կովերը գրեթէ չորս—հինգ բթաչափ բարձր են. ոչխարները՝ մէկ ու կէս բթաչափ, կամ աւելի պակաս, սագերը՝ ճնճղուկի չափ, ահա այսպէս կարգաւ մինչեւ ամենափոքրիկ միջատները համեմատաբար պզտիկ են, որոնք գրեթէ անտեսանելի էին ինծի. Բայց բնութիւնը ամեն բան Լիլիփութ-

ցուց աչքին յարմար բրած է, զորոնք շատ ճշտիւ կը տեսնեն՝ բայց ոչ հեռուէն. Անոնց մօտէն սրատեսութեանը վրայ շատ զարմացայ, երբ խոհարարի մը հասարակ ճանճի մեծութեամբ արտուտ մը բրդելը ու նորահաս օրիորդի մը անտեսանելի ասեղէ անտեսանելի դերձան անցընելը տեսայ։

Ամենամեծ ծառերը եօթը ոտնաչափ բարձր են, և ան կայսերական պարտէզին մէջի քանի մը հատը ըսել կ'ուզեմ, որոնց գագաթին բռնցած ձեռքովս կըրնայի հասնիլ։ Միւս բուսականներն ևս մի և նոյն համեմատութիւնը ունին, բայց աս բանս ընթերցողիս երևակայութեանը կը թողում։

Ես այժմ աս ժողովրդեան ուսման վրայօք համառօտիւ խօսելու եմ, որ շատ դարերէ ի վեր իր ամեն ճիւղերովը անոնց մէջ ծաղկած էր։ Իրենց գիր գրելնուն կերպը շատ տարօրինակ է. քանզի ոչ Եւրոպացւոց պէս՝ ձախ կողմէն աջ կողմը կը գրեն, ոչ Արաբացւոց պէս՝ աջ կողմէն ձախը, և ոչ իսկ Չինացւոց պէս՝ վերէն վար, այլ խոտորնակի թըղ-

թին մէկ անկիւնէն միւսը Անգղիայի ոսկի-նանց դրամին պէս:

Մեռեալին գլխիվայր կը թաղեն, քանզի այնպէս կը կարծեն՝ թէ տասն և մէկ հազար լուսնէ ետև՝ ամեն մարդ նորէն յարութիւն պիտի առնէ. աս միջոցին՝ երկիրը (զոր տափակ կը կարծեն) տակ-նուվրայ պիտի գայ, ու այսպէս յարու-թիւն առած ատեննին՝ ոտից վրայ կանգ-նած պիտի գտնուին: Իրենց քահանայան-ները աս վարդապետութեան անտեղու-թիւնը կը խոստովանին, բայց դեռ աս սովորութիւնը ի գործ կը դրուի ռամիկ ժողովուրդը չգայթակղեցնելու համար:

Աս տէրութեան մէջ՝ քանի մը զարմա-նալի օրէնք ու սովորութիւններ կան, որոնք եթէ ուրիշ հայրենեաց օրինաց ու սովորութեանց ուղղակի դէմ չըլլա-յին, պիտի ջանայի զանոնք արդարացը-նելու, որովհետև ցանկալի էր որ աս օրէնքն ու սովորութիւնները աղէկ ի գործ դրուէին:

Առաջին օրէնքը՝ որ պիտի յիշեմ, մատ-նիչներուն կը վերաբերի. հոն՝ տէրու-թեան դէմ եղած բոլոր յանցանքը մեծ խստութեամբ կը պատժուին, բայց եթէ ամբաստանեալ մարդ մը դատաստանին

մէջ իր անմեղ ըլլալը յայտնապէս հաստատելու ըլլայ, ամբաստանողը անմիջապէս խայտառակ մահուամբ կը սպանուի, և անոր ինչքն ու ստացուածքը դրաւուելով անմեղին կը տրուի՝ իբր իր կորսնցուցած ժամանակին, կրած վտանգին, բանտարկուելուն, և զինքը պաշտպանելու համար՝ ըրած ամէն ծախուցը քառապատիկ փոխարէն մը. և եթէ անոր ստացուածքը չբաւեն՝ պակասը տէրութեան կողմէն լիովին կը վճարուի. կայսրը իր շնորհաց հրապարակական մէկ նշանը անոր ընծայելով, բոլոր քաղաքին մէջ անոր անմեղ ըլլալը կը հրատարակուի:

Անոնց համար նենգութիւնը (1) գողութենէն աւելի մեծ յանցանք մ'է. ուստի շատ քիչ կը պատահի, որ նենգաւոր մը առանց ի մահ դատապարտուելու ձգուի. քանզի կը հաստատեն թէ մարդ հոգատարութեամբ, աչքաբացութեամբ, և եթէ քիչ մ'ևս հասարակ խելք ունենայ, կրնայ իր ստացուածքը գողերէն պահպանել: Բայց ուղղամտութիւնը զինքը հնարիմաց խորամանկութենէն պաշտպանելու պատուար չու-

(1) Ճիկէ.

նի, և որովհետև առուտուրի մէջ նեն-գաւորը պատժելու օրէնք չկայ, աննենգ առուտուր ընողին բանը միշտ յետի է, ու նենգաւորը կը շահի։ Մոզբէս չլսե՞ր անգամ մը յանցաւորին մէկուն համար (որ իր տէրոջը հրամանաւ մէկէ մը բաժակի մեծ գումար մը ընդունելով, աներ փախչեր էր), կայսեր բարեխօսու-թիւն ըրած ատենս՝ անոր յանցանքը թե-թեւցընելու դիտմամբ՝ ըսի․ «Նոր ըրա-ծը հաւատարմութեան գործ մ'է»։ Իմ խօսքս կայսեր շատ այլանդակ երեւ-ցաւ, որ յանցանքը ծանրացընող կերպով զան պաշտպանել կ'ուզէի, ու ճշմարիտ՝ «Օտարազգի ազգք զանազան սովորու-թիւն ունին» ըսելէն ուրիշ պատասխան մը չկրցայ տալ․ սակայն աս ալ ըսեմ՝ շատ անցաւ։

Թէպէտ և հասարակօրէն կըսենք՝ թէ հատուցումն ու պատիժը երկու ծխնիք են, որոնց վրայ կառավարութիւնը կը դառնայ, սակայն Անգղիացւոցմէ զատ ուրիշ ազգ մը չտեսայ, որ աս սկզբունքը ի գործ դնէ։

Ան որ իր քաղաքին օրէնքը եօթանա-սուն և երեքերորդին ճշդիւ պահելը բա-ւական փաստով ցուցընել կարենայ, իր

աստիճանին ու հանգամանացը համեմատ քանի մը արտօնութեանց իրաւունքը ունի · նմանապէս՝ աս գործին համար պատրաստուած գրամագլխէն ստակի գումար մը , ու սնիլփըլլ կամ օրինաւոր ըսուած տիտղոսը կ'ընդունի , որ իր անուան վըրայ կը յաւելնայ , բայց զաւկէ զաւակ չանցնիր · Ու երբ անոնց ըսի թէ մեր օրինաց մէջ հատուցման անունը չըլլալէն զատ՝ մեր օրէնքը տուգանքով միայն հաստատուն կեցած են , աս ըսածս մեր քաղաքականութեան մէջ ահագին պակասութիւն մը սեպեցին · Աս պատճառաւ է որ իրենց դատաստանարանին մէջ Արդարութեան արձանը վեցաչեայ շինուած է՝ աչաց երկուքը առաջակողմը , երկուքը ետեւի կողմը , և միւս երկուքը երկու կողմերը՝ շրջահայեցութիւն նըշանակելու համար · արձանին աջ ձեռքը ոսկի լեցուն քսակ մը կայ , ու ձախ ձեռքը՝ պատեանով սուր մը , ցուցընելու համար թէ՝ աւելի պատրաստ է վարձատրել քան թէ պատժել ·

Պաշտօնի մը համար մարդ ընտրելու ատեննին՝ անոր մեծ հանճարէն աւելի՝ կը նային որ աղէկ բարոյական ունենայ , և որովհետեւ մարդկային սեռին կառա-

վարուԹիւնը հարկաւոր է , այնպէս կարծեն Թէ չափաւոր խելք ունեցող մէկը որ և իցէ պաշտօնի յարմար կու գայ , բայց ի երբ ուսման պէտք ունենայ . ՆախախնամուԹեան դիտաւորուԹիւնը ան չէ որ հասարակաց գործոց առաջնուԹիւնը միայն գերագոյն հանճար ունեցող քանի մը անձանց հասկանալի գաղտնիքը ընէ . որովհետև մէկ դարու մէջ այսպիսի մարդոց երեքը մէկ տեղ աշխարհք գալը քիչ անգամ պատահած է . բայց անոնք կարծեն Թէ ճշմարտուԹիւնը , արդարուԹիւնը , բարեխառնուԹիւնը , և ուրիշ առաքինուԹիւնները ամեն մարդու ձեռքն են , և Թէ որ և իցէ մարդ ասոնց առաքինուԹեանց հետ եԹէ փորձառուԹիւն ու բարի դիտաւորուԹիւն ունենայ , իր քաղաքին ծառայելու յարմար կրնայ սեպուիլ : Համոզեալ են Թէ մտաց գերագոյն ձիրքը բարոյական առաքինուԹեանց պակասուԹեան տեղը չեն կրնար բռնել երբեք , և Թէ այսպիսի յատկուԹիւններ ունեցող անձանց ձեռքը պաշտօններ յանձնելէն աւելի վտանգաւոր բան չկրնար ըլլալ : Գանէ ողջամիտ մարդուն ուղղօրէն գործած սխալմունքը հասարակաց օգուտ

այնչափ աղէտալի հետեւանք չեն պատճառեր բնաւ, որչափ՝ այն մարդուն գործը, որ մոլութեան հակամիտած է, ու իր մոլութիւնները գործածելու, պաշտպանելու և բազմապատկելու մեծ յաջողակութիւններ ունի :

Նաև՝ Երկնային Նախախնամութեան չհաւատացողը բնաւ կարող չէ հասարակութեան գործին մէջ մտնել. և որովհետև Թագաւորները իրենքզիրենքին Նախախնամութեան փոխանորդները ըսել կը պնդեն, Լիլիփութցիք կ՚ըսեն թէ ասկէ աւելի անտեղի բան մը չըլլար իշխանի մը համար, որ իր իշխանութեան տէրը այսինքն Նախախնամութիւնը ուրացող մարդիկը գործածէ :

Աս ու հետևեալ օրէնքը պատմած ատենս՝ անոնց հիմնական կարգադրութիւնները միայն հասկըցնել կ՚ուզեմ, և ոչ թէ այժմեան խիստ գայթակղեցուցիչ ապականութիւնները, որոնց մէջ այս ժողովուրդը մարդկային վատթարացեալ բնութեամբը ինկած է. ինչպէս են մեծ պաշտօնները հանելու համար չուանի վրայ խաղալուն, կամ պատուոյ նշաններ առնելու համար գաւազանաց վրայէն ցատկելուն, ու ծռելով տակէն

անցնելուն ամօթալի գործողութիւննե-
րը ։ Ընթերցողը գիտնալ պէտք է թէ աս
սովորութիւնները առաջի անգամ ժո-
ղովրդեան մէջ մտցընողը արդի իշխող
կայսեր հաւն է , ու հիմա բանը մինչև
աս աստիճանի հասած է կուսակցու-
թեանց ու երկպառակութեանց կամաց
կամաց շատնալովը ։

Աս ժողովրդեան մէջ ապերախտութիւ-
նը մահապարտութեան յանցանք է ։ աս
օրէնքը ուրիշ քանի մը երկիրներու
մէջ ալ ըլլալը պատմութեանց մէջ կը
կարդանք ։ Վանզի անոնք այնպէս կ'ըսեն
թէ՝ այն մարդը , որ կարող է իր բարե-
րարին չար հատուցում ընել , ի հարկէ
թշնամի է ուրիշներուն՝ որոնց պարտա-
կանութիւն մը չունի , և հետևաբար
այսպիսի մարդուն ապրիլն ևս արժանի
չէ ։

Ծնողաց ու զաւակաց պարտուցը նը-
կատմամբ իրենց գաղափարները մերին-
ներէն խիստ շատ կը տարբերին , ինչու
որ մարդկային սեռը տարածելու և բազ-
մացընելու համար արուին և էգին միա-
ւորութիւնը բնութեան սկզբնական օրինաց
վրայ հիմնած ըլլալով , Ճինացիք կը
հաստատեն թէ աս երկուքին միաւորու-

*թիւնը՝ ուրիշ կենդանեաց նման՝ ցան-
կութեան պատճառներէ յառաջ եկած
է, ու իրենց զաւակաց վրայ ունեցած
գութն ու գորովը նոյն իսկ բնական բա-
կզբունքէ կը ծագին. ուստի ամենեւին
չեն ընդունիր որ զաւակ մը՝ իր հօրը
ծնուցանելուն, և իր մօրը զինքը աշխարհ
բերելուն համար պարտականութիւն մը
ունենայ. մարդկային կենաց թշուառու-
թեանցը նայելով՝ ծնողաց այս ըրածը ոչ
ըստ ինքեան երախտիք մ՚էր և ոչ իսկ
դիտաւորութիւննին ան ըներ էր, այս
թէ ոչ՝ պէտք էր որ իրենց սէրը ուրիշ
կերպիւ կատարէին: Ասոր ու ասոր նման
պատճառներէ եւս իրենց կարծիքը աս
է թէ՝ զաւակի մը կրթութեան առջի հո-
գը ծնողաց չվերաբերիր. ուստի ամեն
քաղաքաց մէջ հասարակաց ուսումնա-
րաններ հաստատած են, ուր գործաւոր-
ներէ ու գիւղականներէ զատ՝ ամեն ծը-
նողք իր զաւակները, թէ՛ արու ըլլայ և
թէ էգ, քսան ամսուան եղածին պէս՝
մեծցընելու ու կրթելու համար հոն ղը-
կելու պարտական են, քանզի անոնք աս
հասակին մէջ դիւրաւ կը կարծուին:
Աշակերտաց սեռին ու աստիճանին հա-
մեմատ՝ վարժարանները զանազան տեսակ*

են, որոնց մէջ քաջ ուսուցիչներ կան՝ զանոնք իրենց տաղանդին, հակամիտութեանը և իրենց ծնողացը աստիճանին յարմար կրթելու։ Նախ՝ տղոց վարժարանաց վրայօք քիչ մը բան պիտի խօսիմ, և ետքը՝ աղջկանց։

Ազնուական կամ երևելի գերդաստանէ տղայոց ուսումնարանաց մէջ ծանրագլուխ ու գիտնական վարժապետներ կան, որոնք օգնականներ ալ ունին։ Տղայոց հագուստը և ուտելիքը պարզ և մաքուր են։ Խիստ պատուոյ, արդարութեան, սըրտոտութեան, պարկեշտութեան, գթութեան, հաւատոյ և հայրենասիրութեան սկզբունքը կը սորվին։ Միշտ գործով զբաղած են, բայց ի կերակուր ուտելու և քնանալու ատենէն, որ շատ կարճ միջոց մ՚է. երկու ժամ ալ անձնական կըրթութիւն ընելու համար խաղալու թոյլտուութիւն ունին։ Մինչև չորս տարեկան ըլլալնին՝ ծառաներ կան որոնք կը հագուեցընեն զիրենք, ու աս հասակէն ետև՝ մինակ հագուելու պարտական են՝ որչափ մեծի զաւակ կ՚ուզէ՝ ըլլայ, ու կինճապատուոյները, որոնք համեմատաբար մեր քաղաքի յիսուն տարեկան ըն-պատաւորաց չափ տարօք են, միայն ըն-

նական առաջնորդոյն ծառայութիւնները կ'ընեն։ Աշակերտաց ամենեւին թոյլտուութիւն չկայ ծառայից հետ խօսելու, այլ բազմութեամբ կամ քանի մը հոգի մէկ տեղ զբօսանքի կ'երթան, և այն՝ միշտ ուսուցիչի կամ վերակացուի մը առջին, որպէս զի հեռացընէ անոնցմէ մանուկ հասակին մոլութեանց ու յիմարութեանց յառաջ տպաւորութիւնները, որոնց մեր ազգը ենթակայ են։

Ծնողք տարին երկու անգամ միայն զաւակնին տեսնելու թոյլտուութիւն ունին, և աս այցելութիւնը ժամէ մը աւելի պիտի չտեւէ, ու զաւակնին երկու անգամ համբուրելու են՝ անգամ մը եկած, և անգամ մը երթալու ատեն։ Աս միջոցին վարժապետ մը հոն ներկայ կը գտնուի և չթողուր որ ծնողք զաւակնուն ականջին փսփսան, զանոնք գըգուեն, փայփայեն, կամ խաղալիկ ընծաներ, անուշեղէններ, և կամ ասանց նման բաներ բերեն անոնց։

Տղու մը կրթութեան ու սննդեան տարեկան ծախքը եթէ ծնողք ժամանակին չհատուցանեն՝ կայսերական պաշտօնեայք կը ժողվեն զանոնք։ Հասարակ քաղաքացւոց, մեծ վաճառականաց ու

արհեստաւորաց զաւակներուն ուսումնա-
րանները համեմատաբար նոյն կերպով կարգադրուած են, միայն թէ վաճառականութեան համար որոշուած աշակերտները տասն և մէկ տարեկան ըլլալնուն պէս՝ վաճառականի մը քով աշակերտութեան կը դրուին, այլ ընդ հակառակն ազնուականաց զաւակները իրենց ուսումունքը մինչև տասն ու հինգ տարեկան ըլլալնին կը շարունակեն, որ մեր մէջը քսան և մէկ տարեկան ըսել է, սակայն վերջի երեք տարիները՝ այնչափ խստութեամբ չեն պահեր աշակերտները դըպրատան մէջ։

Աղջկանց ուսումնարանաց մէջ՝ ազնուականաց օրիորդները գրեթէ տղոց պէս կը կրթուին, միայն թէ կին ծառաները զիրենք կը հագուեցընեն միշտ վարժապետի կամ վերակացուի մը առջև. հինգ տարեկան ըլլալնէն ետև՝ ալ մինակ կը հագուին։ Թէ որ իմացուելու ըլլայ՝ թէ աս սնուցիչները՝ աղջիկները զբօսցընելու համար՝ երկիւղալի և յիմարական պատմութիւններ, կամ մեր սնոտուաց պէս յիմարութիւններ ըսելու համարձակին, հրապարակաւ ձաղկելով երեք անգամ քաղաքին բոլորտիքը կը դարձընեն զա-

նանք, ու տարի մը բանտը դնելէն ետեւ՝ երկրին խիստ հեռու մէկ կողմը կ'աքսո-րեն, ուր մինչեւ ի մահ կը մնան ։

Այն երկրին օրիորդները մարդոց պէս իրենց ամօթ կը համարին վատ ու թե-թեւամիտ ըլլալ, եւ կ'անարգեն անձնական բոլոր զարդերը, որոնք վայելչութեան ու մաքրութեան չեն վայելեր ։ Ես երկու սեռին կրթութեանը մէջ ալ տարբե-րութիւնը միայն դիտեցի, որ աղջկանց ուսումը այնչափ բարձր չէ՝ որչափ տղոցը, թէեւ մի եւ նոյն ուսումն է, միայն՝ աղ-ջկանց քիչ մը տնտեսական գիտութիւն ալ կը սորվեցընեն ։ Քանզի ասած մը ունին անոնք թէ՝ Ազնուականաց մէջ կին մը պէտք է որ հաճելի եւ խելացի ընկեր ըլլայ իր էրկանը, որովհետեւ միշտ երի-տասարդ չկրնար մնալ ։ Երբ աղջիկները տասներկու տարեկան կ'ըլլան, որ իրենց մէջ ամուսնանալու հասակ կը սեպուի, իրենց ծնողքը կամ խնամածուները կ'առ-նեն տունը կը տանին զանոնք՝ ուսուցիչ-ներէն խորին երախտագիտութեամբ շը-նորհակալ ըլլալէն ետեւ, ու քիչ անգամ կը պատահի որ զատուող օրիորդն ու իր ընկերները չլան ։

Ստորին կարգի աղջկանց ուսումնարանաց մէջ իրենց սեռին ու զանազան աստիճանացը համեմատ՝ ամէն տեսակ գործերը կը սորվեցընեն · անոնք որ աշկերտութեան մտնելու որոշուած են, եօթը տարեկան եղածնուն պէս՝ դպրատունէն կ'ելնեն ու մէկալները մինչև տասն ու մէկ տարեկան կը պահուին ։

Արհեստաւորները, որոնք աս ուսումնարանաց մէջ զաւակներ ունին, պարտական են տարեկան թօշակէն զատ՝ որ կարելի եղածին չափ թեթև գումար մը է, ամէն ամիս իրենց վաստըկածնուն փոքրիկ մէկ մասը իբր իրենց զաւակին օժիտ ուսումնարանին տեսուչին հաստուցանելու · և ասոր համար ամէն ծնողաց ընելիք ծախքը՝ օրինօք սահմանի տակ դրուած է ։ Քանզի Լիլլիփութցիք կարծեն թէ ասկէ աւելի անիրաւ բան չկըրնար ըլլալ ժողովրդի մը համար, որ իրենց ախորժակացը ծառայելով զաւակի տէր ըլլան, ու անոր ապրելուն ծանրութիւնը հասարակութեան վրայ ձգեն ։ Բայց ազնուականք՝ իրենց վիճակին համեմատ՝ իրենց իւրաքանչիւր զաւակին ստակի գումար մը յատկացընելու երաշխաւորութիւն կու տան, և աս ստակը

խիստ աղէկ ու արդար հոգողութեամբ կը գործածեն ։

Վարձականներն ու գործաւորները իրենց զաւակները տան մէջ կը պահեն՝ իրենց գործքը միայն հերկել ու մշակել ըլլալուն համար ․ ուստի անոնց կրթեալ ըլլալը կամ չըլլալը հասարակութեան օգուտ չունի ․ սակայն անոնց ծերոց ու ախտացելոց համար հիւանդատուններ կան, ըստ որում մուրացկանութիւնը աս տէրութեան մէջ անծանօթ արհեստ մը է ։ Աս երկրին մէջ ինը ամիս և տասն ու երեք օր մնացած միջոցիս՝ իմ ինչ կերպ ապրելուս վրայօք եթէ քանի մը խօսք խօսելու ըլլամ՝ գուցէ հետաքրքիր ընթերցողս զբօսնու ։

Բնականաբար մեքենական արհեստին հակամէտ, ու հարկաւորութենէ ստիպեալ ըլլալուս՝ ինծի համար կայսերական պարտէզին մեծ ծառերէն բաւական վայելուչ սեղան ու աթոռ մը շինած էի ։ Երկու հարիւր կար կարող կանայք կը պատրաստէին շապիկներ, ու անկողնոյս և սեղանիս համար կտաւեղէններ շինելու իրենց ամենահաստ և դիմացկուն կտաւներէն, զորոնք քանի մը անգամ ծալլելով ու մէջը լեցընելով կա-

ըելու պարտաւոր էին · որովհետեւ սո կտաւներուն ամենէն հաստը նուրբ բե-հեզէ (1) աւելի բարակ էր ։ Իրենց կտաւը հասարակօրէն երեք բթաչափ լայն է, ու ամեն մէկ կտորը երեք ոտք երկայնութիւն ունի ։

Գետնի վրայ պառկած առենս՝ դերձակները չափս կ՚առնուին, որոնց մէկը կուրծքիս վրայ, եւ մէկը սրունքս (2) մէջ տեղը կանգնելով, դիմացկուն չուան մը ծայրերէն բռնած կ՚երկնցընէին, ուրիշ դերձակ մը եւս բթաչափ մը երկայնութեամբ չափով չուանին երկայնութիւնը կը չափէր · ետքը՝ աջ բթամատս չափելով, ուրիշ տեղս չափել չէին ուզեր · քանզի մաթեմաթիքական հաշուով երկու անգամ բթամատիս շրջաբերական չափը՝ մէկ անգամ դաստակիս (3) չափը կ՚ընէ · նոյն միջոցաւ պարանոցիս եւ մէջքիս չափը կ՚իմանային ։

Ինն շապիկս օրինակի համար առջեւնին փռելով, ճիշդ նմանը շինեցին ։ Զգեստներս շինելու համար երեք հարիւր դերձակ կ՚աշխատէին, բայց ասոնք ուրիշ միջոցաւ չափս կ՚առնուին · ես ծնկան վրայ կու գայի, ասոնք պարանոցիս սանդուղ

(1) Չիւլպէնտ ։ (2) Պաճաքներու ։ (3) Պիքէ ։

մը կը կաթնցընէին, և մէկը անոր վրայ ելնելով, չուանի կապած կապարեայ գունդ մը օձիքէս (1) մինչև գետինը կը կախէր, որն որ ճիշդ վերարկուիս երկայնութեան չափն էր․ բայց միջքիս ու թևերուս չափը ես ինքս կ'առնուի: Երբ լաթերս լմնցան, որոնք իմ տանս մէջ շինուեցան (որովհետև իրենց ամենամեծ տունը չէր բովանդակեր զանոնք), Անգղիացի օրիորդաց մանր կտորներով կարած պատատանին կը նմանէին, միայն սա տարբերութիւնը կար՝ որ անոնց նման գոյնզգոյն չէին:

Տանս մօտերը շինուած փոքր խրճիթներուն մէջ կերակուրս եփելու համար երեք հարիւր խոհարար ունէի, որոնք իրենց ընտանեօքը հոն կը բնակէին, ու իւրաքանչիւր խոհարար երկու աման կերակուր կ'եփէր ինծի համար: Սպասաւորներէն քսանը վեր առնելով, սեղանիս վրայ կը դնէի․ հարիւրէն աւելի ուրիշ սպասաւորներ ալ սեղանին ներքևը կը սպասէին՝ ոմանք կերակուրի ամաններ բռնած, ու ոմանք գինիի և ուրիշ ըմպելեաց տակառներ շալկած,

(1) Եագա:

զորոնք ուզած ատենս՝ սեղանիս վրայի սպասաւորները շատ ճարտարութեամբ քանի մը չուաններու միջոցաւ վեր կը քաշէին՝ Եւրոպայի մէջ դոյլով հորէն ջուր քաշածնուն պէս ։ Անոնց մէկ ամանն կերակուրը՝ աղ ու պատառ մը, ու մէկ տակառ խմելիքը՝ չափաւոր ու մէկ մը կ՚ըլլար ։ իրենց ոչխարի միսը մերինին չափ աղէկ չէ, բայց կովու միսը շատ պատուական է ։ Օր մը եզան այնպէս մեծ Թիկնամէջք (1) մը բերին, որ երեք պատառ եղաւ ։ բայց և աս գիտնալ պէտք է որ այսպէսը շատ քիչ կը պատահի ։ Ծառաներս զարմացան մնացին, երբ տեսան Թէ ես ոսկորներով ու ամեն բանով կերայ զան, ինչպէս որ մենք մեր երկիրը արտուտի (2) սրունք մը կ՚ուտենք ։ Անոնց սագերուն և հնդկահաւերուն ամէն մէկը ամբողջաբար մէկ պատառ կ՚ընէի ու ճշմարիտը՝ մերիններէն խիստ գերազանց են ։ փոքրիկ Թռչնոց քսանը կամ երեսունը դանակիս ծայրին վրայ առնելով, կրնայի ուտել ։

Օր մը՝ կայսրը իմ ինչպէս կերակուր ուտելս լսելով, խնդրեց որ իր կայսրուհւոյն ու իր իշխանազուն զաւակաց ըն-

(1) Արգա օրթասը ։ (2) Չայըր գուշու ։

կերպութեամբը հետս ճաշելու հաճութիւնը ունենայ. ու սոր երբ եկան, արքայական աթոռներով զանոնք սեղանիս վրայ ճիշդ դիմացս դրի իրենց պահապաններով շրջապատեալ։ Ֆլիմնափ մեծ գանձապետն ալ սպիտակ գաւազանը ձեռքը բռնած՝ հետերնին էր, որ շատ անգամ վատ աչքով ինծի կը նայէր. բայց ես ան իր նայուածքը չտեսնել կը ձեւացընէի, ու սովորականէս աւելի կ'ուտէի ի պատիւ սիրելի հայրենեացս և մանաւանդ պալատականները հիացընելու համար։

Քանի մը մասնաւոր իրաւամբք կարծեմ թէ կայսեր ան այցելութենէն Ֆլիմնափ առիթ գտաւ զիս իր տիրոջը քով վար զարնելու։ Ան պաշտօնեայն միշտ իմ ծածուկ թշնամիս եղած էր, թէեւ դրսէն այնպէս քաղցրութեամբ կը խօսէր հետս, որ իր սովորական վիսութենէն (1) չէր յուսացուեր. Ֆլիմնափ կայսեր կը ներկայացընէ թէ իր գանձը կարօտ վիճակի մէջ ըլլալուն՝ խիստ ծանր վաշխով ստակ փոխ առնելու ստիպուած է, և արքունական գանձուն մուրհակները հարիւրին ինը հասարակ գինէն վար իջած են, և թէ ես նորին կայսերական վեհափառութեան միլիոն ու կէսէն աւելի սփր—կ

(1) Թիթիզլիք.

վճար տուած եմ (ոսկին իրենց ամենէն մեծ ոսկի դրամն է և մահանակի (1) չափ մեծ է ,) և վերջապէս առջի յարմար առթիւ զիս ճամբելու չյապաղէ (2) :

Հոս՝ ազնուական տիկնոջ մը յարգն ու հաճոյք պաշտպանելու պարտական եմ, որ իմ պատճառաւս անմեղ տեղը բանտարկուած էր էր : Պանձապետին խելքին կը փչէ որ իր կնոջմէն նախանձի՝ քանի մը չար լեզուներէ գրգռուելով, որոնք իրեն զրպարտութիւն ըրեր էին թէ իր ամուսինը իմ վրաս մեծ սէր ունի . աս զրպարտութիւնը արքունեաց մէջ ա՛ն աս-տիճանի հասաւ, որ մինչև անգամ ըսել սկսան թէ աս տիկինը օր մը մինակ բնա-կարանս եկեր է : Աս հանդիսաւոր երդ-մամբ կը հաստատեմ թէ աս անարժան սուտ մ՚է, ինչու որ այն ազնիւ տիկինը բարեկամութեան ու վստահութեան ան-մեղ նշաններով հետս վարուելու բա-րեհաճեր էր : Իրաւ՝ շատ անգամ բնա-կարանս եկաւ, բայց միշտ հրապարակաւ, ու կառքին մէջ հետը երեք կամ աւելի հոգի պակաս չէին, որոնք սովորաբար իր քոյրը, երիտասարդ աղջիկն ու քանի մը մտանաւոր ճանչուորներն էին . ինչպէս որ

(1) Փուլ . (2) Չուշանայ .

պալատի տիկնանց շատերը աս կերպով ինծի կու գային ։ Քովս գտնուող ծառաներս ես վկայ կը կոչեմ թէ ընաւ կառք մը տեսա՞ծ են դրանս առջին, որ մէջիններուն ո՞վ ըլլալը ճանչցած չըլլան ։ Ըստ որում՝ աս պարագաներու ատենը՝ ծառայիս մէկը կու գար կը ծանուցանէր ինծի ու ես ըստ սովորութեան շուտով դուռը կը վազէի, ու յարգանքս մատուցանելէս ետև՝ մեծաւ զգուշութեամբ կառքն ու անոր լծած երկու ձիերը երկու ձեռացս մէջ առնելով (քանզի մէջը ձի լծուած ատենը՝ կառավարը չորս ձիերը կը հանէր), սեղանի մը վրայ կը դնէի, որուն բոլորտիքը հինգ ըթաչափ բարձր շարժուն շրջանակ մը քաշեր էի, որ վար չիյնան ։ Շատ անգամ այնպէս պատահեր է՝ որ բազմութեամբ լցուած չորս կառք՝ անոնց ձիերովը մէկտեղ սեղանիս վրայ դրած եմ· և ես աթոռիս վրայ նստած, ու երեսս անոնց դարձուցած՝ երբ մէկ կառքին մէջիններուն հետ խօսքի բռնուէի, միւս կառավարները՝ կառքերը սեղանին չորս դին կամաց մը կը քաշէին ։

Շատ իրիկուններ անոնց հետ զուարճութեամբ անցուցած եմ, բայց ես յառ-

պարէզ կը հրաւիրեմ զանձապետն ու իր Պլուօթրիլ և Տրունիօ լրտեսները (որո՛նք եթէ կրնան՝ թո՛ղ ինքզինքնին պաշտպանեն) որ եթէ ծպտեալ մէկու մը քսու զալը տեսած են՝ թո՛ղ հաստատեն, բաց ի Մէլորէալ ատենադպրէն, որ ինչպէս վերը յիշեր եմ, կայսերական յատուկ հրամանաւ եկած էր։

Անիւթիս վրայօք այսչափ երկար բարակ պէտք չխօսէի, թէ որ այսպիսի երեւելի տիկնոջ մը պատուոյն վերաբերեալ բան մը չըլլար։ Իմ պատիւս մէկդի մնայ, թէև ես անատեն Նարփաշ* ըլլալու պատիւը ունեցեր էի, որ աս զանձապետը չունէր, և բոլոր աշխարհ գիտէ թէ ան սոսկ կլո–կլո–Տ մ'է, որ Նարփաշէն աստիճան մը վար է, ինչպէս Անգղիոյ մէջ մարքէզ մը դուքսէ։ Սակայն իր պաշտօնին մէջ ինձմէ մեծ ըլլալը չեմ ուրանար։

Աս սուտ համբաւները, որո՛նք ես ետքը ա՛յնպիսի դիպուածով մը լսեցի, որ հոս յիշելը անվայելուչ է, պատճառ տուին զանձապետին, որ իր կնոջը ատեն մը խօժոռ դէմքով նայի, ու ինձ ալ անկէ աւելի· և թէպէտ ետքը իր սխալանքը ճանչցաւ, ու կնոջը հետ հաշ-

տուեցաւ, բայց վրաս համարում չունեցաւ, և ան պատճառաւ կայսեր քով անգամ նոյն համարումը շուտով կորսնցուցի · ինչու որ Ֆլիմնափ Նորին վեհափառութեան մտացը վրայ չափէ դուրս կը տիրէր ։



## ԳԼՈՒԽ Է.

*Հեղինակը՝ զինքը քրէական յանցանօք ամբաստանելու դիտաւորութիւնները լսելով․ Պլէֆուսքու կը փախչի ։ Հոն ինչպէս ընդունուիլը կը պատմէ ։*

Լիլլիփութի տէրութենէն ինչպէս մեկնիլս պատմելէս առաջ՝ երկու ամիսէ ի վեր ինծի դէմ մեքենայուած գաղտնի միաբանութեան մը վրայօք ընթերցողիս տեղեկութիւն տալը կարծեմ վայելուչ է ։

Աստիճանիս նուաստութեանը համար՝ մինչև այն ժամանակը արքունիքը չէի ճանչնար․ իրաւ՝ մեծամեծ իշխանաց ու պաշտօնէից բնաւորութեանը վրայօք թէ և բաւական լսեր ու կարդացեր էի․ բայց մեզմէ այսչափ հեռու աշխարհի մը մէջ, ուր որ քաղաքական կառավարութեանց սկզբունքը Եւրոպայի քաղաքական սկզբունքէն շատ տարբեր ըլլալ կը կարծէի, բնաւ չէի յուսար որ անոնց բնաւորութեանը այսպիսի սարսափելի ազդեցութիւնը հոն պիտի գտնեմ։

Երբ կը պատրաստուէի Պլէֆուսքու ի

Կայսեր երթալ յարգանքս մատուցանելու համար, երեւելի պալատական մը (որ առենօք կայսերական բարձրութեան աչքէն ինկած ըլլալուն՝ անոր մեծ ծառայութիւն մը ըրեր էի) գիշերով մինակ տունս եկաւ գոց պատգարակով (1) մը և ով ըլլալը չիմացուցած՝ ներս մտնել ուզեց: Պատգարակը բերողներուն ճամբայ տալէն ետև՝ նորին վսեմութիւնը պատգարակով մէկտեղ վերարկուիս գըրպանին մէջ դնելով, հաւատարիմ ծառայիս մէկուն ապսպրեցի որ եթէ մէկը գալու ըլլայ, անհանգիստ ըլլալուս համար պառկեր եմ ըսէ. տանս դուռը գոցելով, պատգարակը սեղանիս վրայ դրի, ու ըստ սովորութեան՝ անոր քովը նստայ: Սովորական ողջոյնները տալէն ետև՝ տեսայ որ նորին վսեմութիւնը երեսէն շատ տրտում ու խռոված կ'երևար, ուստի պատճառը հարցուցի. “Կը խնդրեմ, ըսաւ, որ համբերութեամբ ականջ դնես ըսելիքիս, որոնք կենացդ ու պատուոյդ խիստ շատ վերաբերութիւն ունին”: Ըսածները այս հետևեալներն են, որոնք ինքը գացածին պէս՝ համառօտիւ գրի առի:

(1) Թէզկէրէ:

«Գիտցած ըլլաս, ըսաւ, որ խիստ գաղտնի կերպով ժողովք մը եղաւ մօտերս քու վրայօքդ, ու երկու օր է, որ նորին վեհափառութիւնն եւ հաստատ որոշում մը ըրաւ.

«Կարծեմ որ աղէկ ճանչցած ես թէ Սկայրէշ Պօլկօլամ (կալպէթ կամ տէրութեան մեծ ծովակալը,) գրեթէ քու աս երկիրը գալէդ ի վեր քու մահու չափ թշնամիդ է. իր բուն պատճառները ինչ են՝ չեմ գիտեր. բայց Պլէֆուսքուի դէմ ըրած այն մեծ յաղթութենէդ ի վեր իր ատելութիւնը աւելցած է, որովհետեւ իր ծովակալական փառքը խիստ նսեմացաւ. Աս լորտը եւ Ֆլիմնափ գանձապետը, որուն իր ամուսնոյն համար քեզի դէմ ունեցած թշնամութիւնը աշխարհի ծանօթ է. Լիմթօք զօրապետը. Լալքօն սենեկապետը. ու Պալմուֆ մեծ դատաւորը մէկ տեղ՝ քրէական ու ուրիշ մահապարտութեան յանցանաց համար ամբաստանութեան յօդուածներ պատրաստեր են քեզի դէմ».

Աս յառաջաբանութենէս ան աստիճան այլայլեցայ, որ մէկէն անոր խօսքը ընդմիջել ուզեցի, ինչու որ իմ արժանաւորութիւնս ու անմեղութիւնս լաւ

գիտէի. բայց ան՝ «Կ'աղաչեմ որ լռես, ըսելով, այսպէս շարունակեց. —

«Ինծի ըրած շնորհացդ փոխարէն՝ երախտագիտութիւնս յայտնել ուզելով, ամբաստանութեանց վրայօք ամեն տեղեկութիւնները ձեռք ձգած եմ, ուանոր յօդուածոց մէկ օրինակն իսկ քովս է. աս ծառայութիւնը քեզի ընելու համար գլուխս վտանգի մէջ դրած եմ՝ գիտցած ըլլաս»:

## ՔՈՒԻՆՊՈՒՍ ՖԼԵՍԹՐԻՆԻՆ

ԱՅՍԻՆՔՆ

## ԼԵՌ-ՄԱՐԴՈՒՆ ԴԷՄ

ԵՂԱԾ ԱՄԲԱՍՏԱՆՈՒԹԵԱՆ

## ՅՕԴՈՒԱԾՆԵՐԸ

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Որովհետեւ Նորին Տէ Ֆար Փլում մեհափառ կայսեր օրումը հաստատուն կարգադրութեամբ վճիռ եղած է թէ՝ ով որ կայսերական պալատին շրջապատին մէջ տեղերը միզելու ըլլայ՝ քրէական

յանցանաց պահանջած տանջանօք և պատիժներով պիտի դատապարտուի, ի վերայ այսր ամենայնի՝ վերոյիշեալ Գուինպուս Ֆլեսթրինը յիշեալ օրէնքին դէմ յայտնապէս մեղանչելով, վեհափառ կայսեր ամենասիրելի ամուսնոյն սենեկին մէջ բռնկած կրակը մարելը պատրուակ բռնելով, չարութեամբ, նենգութեամբ, ու դիւաբար միզեց, և արգիլեալ օրինաց ու իր պարտաւորութեանը դէմ կայսերական պալատին շրջապատին մէջ՝ յիշեալ սենեկին մէջի բռնկած կրակը մարեց։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

‘ Յիշեալ Գուինպուս Ֆլեսթրինը Պլեֆուսքուի նաւատորմիղը կայսերական նաւահանգիստը բերելէն ետև՝ վեհափառ կայսրը հրաման ըրաւ իրեն, որ երթայ յիշեալ տէրութեան միւս նաւերը նաև բռնէ բերէ․ որպէս զի այնուհետև այն տէրութիւնը գաւառ մը ձևանալով, անոր կառավարութիւնը փոխարքայի մը ձեռաց տակը ըլլայ, ու ոչ միայն ան քաղաքը աքսորուած՝ հաւկիթը տափակ ծայրէն կոտրողները սպաննէ,

այլ նաև նոյն հերետիկոսութիւնը անմիջապէս ձգել չուզող այն տէրութեան բոլոր ժողովուրդը · բայց յիշեալ Պլէսթրինը երբև նենգաւոր մատնիչ մեր բարեբաստիկ ու պայծառ կայսերական վեհափառութեանը աղաչանք ըրաւ որ յիշեալ պաշտօնը իրեն յանձնուի՝ անմեղ ժողովրդեան մը կեանքն ու ազատութիւնը ջնջել ու անոնց խղճմտանքը բռնադատել չուզելը պատճառ բերելով։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

· Որովհետև քանի մը պատգամաւորք եկան Պլէֆուսքուի արքունիքէն, որ նորին վեհափառութեան հետ հաշտութի̃ ընելու աղերսեն, յիշեալ Պլէսթրինը նենգաւոր մատնիչի մը պէս օգնեց, թելադրեց, քաջալերեց և զօրացուց յիշեալ դեսպանները, թէև գիտէր թէ անոնք այնպիսի իշխանի ծառաներն էին, որ մօտերս իր վեհափառ կայսեր յայտնի թշնամին, ու անոր դէմ յայտնի պատերազմ բացած է։

# ՅՕԴՈՒԱԾ Դ.

‘Յիշեալ Փունիպուս Չէսօթրինը հաւատարիմ հպատակի մը պարտուց հակառակ՝ ճամբորդութի ընելու կը պատրաստուի Պէլֆուսքօւի կայսեր և արքունեաց այցելու երթալու, որու համար միայն բանիւ բերանոյ հրաման առած է նորին կայսերական մեծափառութենէն, ու սա հրամանին պատրուակաւը մանութեամբ ու ննգութեամբ յիշեալ ճամբորդութիւնը ընելու միտք ունի, որպէս զի օգնէ, թելադրէ, ու քաջալերէ Պէլֆուսքօւի կայսրը, որ մտերմ իւր մեծափառ կայսեր թշնամին, ու անոր դէմ յայտնի պատերազմ բացած է’։

“ Կան ուրիշ քանի մը յօդուածներ ևս, բայց ես անոնց ամենահարկաւոր եղածներուն համառօտութիւնը միայն կարդացի քեզ։

“ Այս ամբաստանութեանց վրայօք դանազան վիճաբանութիւններ եղած ատենը՝ չմոռնալը բաւ պէտք է՝ կայսրը քու վրադ մեծ գթոյ նշաններ ցուցուց, և իրեն ըրած ծառայութիւններդ շատ ան-

գամ յիշելով, յանցանքդ թեթեւցընե-
լու ջանք ըրաւ : Բայց գանձապետն ու
ծովապետը ոտք կոխեցին որ գիշերը տու-
նըդ կրակի տալով խիստ անգութ և խայ-
տառակ մահուամբ սպաննուիս · և զօրա-
պետը թունաւոր նետերով զինեալ քսան
հազար զօրքով սպասելու էր որ ձեռացդ
և երեսիդ վրայ նետ քաշեն : Նմանապէս՝
ծառաներդ ոմանց գաղտուկ հրաման
պիտի տրուէր որ շապիկիդ ու սաւան-
ներուդ վրայ թունաւոր հիւթ մը տարա-
ծեն, որպէս զի իսկոյն մարմինդ չարաչար
պատռտելով, սաստիկ տանջանօք մեռ-
նիս : Զօրապետին կարծիքն ևս շատ հա-
մաձայնեցան, այնպէս որ անգամ մեծ
մասը երկար ատեն քեզի դէմ էին · բայց
կայսրը, որ միտքը դրեր էր քու կենա-
ցըդ խնայելու, սենեկապետը վերջապէս
իր կողմը շահեցաւ :

“ Աս միջոցիս կայսրը՝ Ռէլտրէսալ ա-
ռաջին դիւանադպրին հրաման ըրաւ որ
իր կարծիքը խօսի, ան ալ, որ քու հա-
ւատարիմ բարեկամդ ըլլալը միշտ իրօք
յայտնած է, կայսեր հրամանը կատարեց,
և քու անոր վրայ ունեցած բարի համա-
րումդ յիրաւի արդարացուց : “ Թէև ա-
նոր յանցանաց մեծ ըլլալուն խօսք չկայ,

ըսել, բայց և ներելու արժանի է, որովհետև գթութիւնը իշխանի մը ամենագովելի առաքինութիւնն է, և ահա նոյն այս առաքինութեամբ նորին վեհափառութիւնը իրաւամբ հռչակուած է։ Իմ անոր հետ ունեցած բարեկամութիւնըս այն աստիճան աշխարհի ծանօթ է, որ գուցէ այս պատկառելի ատեանը զիս կողմնապահ կարծէ. բայց ինչ և իցէ՝ կայսեր հրամանին հնազանդելու համար՝ կարծիքս ազատօրէն խօսիմ։ Թ՛է որ ձեր կայսերական վեհափառութիւնը անոր ըրած ծառայութեանցը նկատմամբ, ու ձեր գթալից բնաւորութեանը համեմատ՝ անոր կենացը խնայելու բարեհաճի, ըստ իմ տկար կարծեացս՝ այս միջոցաւ չափով մը արդարութիւն ըրած կ'ըլլայ, և բոլոր աշխարհիս առջին ձեր կայսերական մարդասիրութիւնը, ինչպէս նաև ձեր վեհափառութեան խորհրդակից ըլլալու պատիւը ունեցողներուն արդարակորով և վեհանձնական գործքը պիտի գովաբանուին։ Նոր աչաց հանուիլը՝ անձնական ուժին արգելք մը չըլլալով, դեռ ձեր վեհափառութեան կրնայ ծառայել։ Կուրութիւնը անոր քաջութիւնը աւելցընող և մեզմէ վտանգները հեռա-

ցընող բան մ'է · Թշնամին նաւատորմիղը բերելու առենը՝ անոր ամենէն մեծ դժուարութիւնը իր աչացը համար ունեցած վախն էր, ու անոր բաւական է որ պաշտօնէից աչօքը տեսնէ, ինչպէս որ ամենազօր Թագաւորներն անգամ այսպէս կ'ընեն»:

«Բոլոր ատեանը աս առաջարկութեան յետին տհաճութիւն մը ցուցուց · Պօլկոլամ ծովակալը իր բարկութիւնը չկրնալով զսպել, կատղութեամբ ոտք ելաւ, ու ըսաւ · «Կը զարմանամ որ ատենադպիրը այնպիսի մատնիչի մը կենացը խնայելու համար՝ այսպիսի կարծիք մը տալու ինչպէս համարձակեցաւ · անոր ըրած ծառայութիւնները՝ տէրութեան հարազատ օրինաց նայելով՝ իր յանցանքը կը ծանրացընեն · կայսերական սենեկին հրդեհը միզելով մարելու կարող եղողը (աս խօսքը սարսափելով արտասանեց,) կրնայ ըլլալ որ ուրիշ անգամ նոյն կերպով հեղեղ մը յարուցանելով, բոլոր պալատը ողողէ · և նոյն ուժով, որ կարող եղաւ Թշնամին նաւատորմիղը հոս բերելու, բանէ մը նեղացածին պէս՝ կրնայ զան նորէն ետ տանիլ · Շատ իրաւունք ունիմ կարծելու՝ Թէ ան իր սըր-

տէն՝ հաւկիթը տափակ կողմէն կոտրողներէն է․ քանզի մանուութիւն մը յայտնապէս երեւան ելնելէն առաջ՝ սրտի մէջ ծագիլ կը սկսի․ աս պատճառաւ զան իբրեւ մատնիչ կ՚ամբաստանեմ, եւ անոր ի մահ դատապարտուիլը կը պնդեմ"։

«Գանձապետը այսր կարծեացը համաձայն ըլլալուն՝ «Գիտէ՞ք արդեօք, ըսաւ, թէ զան սնուցանելու համար կայսերական գանձուն եկամուտը ինչ աստիճան նեղը ինկած է, եւ եթէ այսպէս շարունակուի, շատ չերթար՝ անտանելի կ՚ըլլայ․ ատենադպրին ըսածը, այսինքն՝ անոր աչքը հանելը՝ աս չարեաց դարման չըլլալէն զատ՝ հաւանական է որ նոյն իսկ չարիքը սաստկացընէ, ինչպէս հասարակ սովորութենէն յայտնի է թէ՝ տեսակ մը հաւուց աչքը կուրցընելէն ետեւ՝ անոնք աւելի շուտ ուտելով, աւելի կը գիրնան"։ Նորին սրբազան վեհափառութիւնն ու ժողովքը, իրենց խղճմտանքովը քու յանցուոր ըլլալուդ բոլորովին համոզուեցան, եւ այս համոզում մը բաւական փաստ մը համարուեցաւ քու ի մահ դատապարտուելուդ՝ առանց օրէնքին պահանջած քուն ապացոյցներուն դիմելու․

Բայց կայսրը միտքը դրած ըլլալով որ

դեղ մեռցընել չուայ, մարդասիրաբար հաճեցաւ ըսել թէ՝ “Որովհետեւ ծողովքը անոր աչաց հանուիլը շատ թեթեւ պատիժ մը կը համարի, կրնանք անոր վրայ ուրիշ պատիժ մը եւս դնել”։ Քու ատենադպիր բարեկամդ խոնարհաբար աղաչեց որ քու անձգեանդ ծախուց մեծութեանը համար՝ գանձապետին ըսածներուն դէմ՝ նորէն իր ըսելիքին մտիկ ընեն. “Ձեր վսեմութիւնը, ըսաւ, որուն կայսերական եկամուտ տնօրէնութիւնը յանձնուած է, կրնայ դիւրաւ աս չարեացս առաջքը առնել՝ անոր ուտելիքը կամաց կամաց քիչցընելով. ան ատեն՝ բաւական ուտելիքի պակսութենէ տկարանալով, ու ախորժակը կորսնցընելով, քանի մը ամսոյ մէջ կը հալի եւ կը մաշի. ուստի հետեւաբար՝ կիսով չափ սպառած ըլլալով, անոր դիին գարշահոտութիւնը այնչափ վտանգաւոր չի կրնար ըլլալ։ Եւ մեռածին պէս՝ նորին վեհափառութեան հպատակներէն հինգ կամ վեցը հազար հոգի երկու կամ երեք օրուան մէջ կրնան անոր միսերը ոսկորներէն զատել, եւ ժանտահոտութիւն չպատճառելու համար՝ կառքերով տանիլ հեռու տեղ թաղել զանոնք. իսկ

անոր ոսկորները մեզմէ ետեւ աշխարհք եկողներուն իբր զարմացման յիշատակարան մը թողուլ”.

“Ահա այսպէս ատենադպրին մեծ բարեկամութեամբը բոլոր գործը միահաւան վճռուեցաւ, և սաստիկ հրաման եղաւ որ զքեզ կամաց կամաց անօթութենէ մեռցընելու որոշէլնին գաղտուկ պահեն. բայց աչքդ հանելուն վճիռը արձանագրաց մէջ անցաւ. մէկը դէմ չկեցաւ աս բանիս՝ Պոլկոլամ ծովակալէն զատ, որ կայսրուհւոյն կամքէն կախեալ մէկը ըլլալուն՝ անոր անդադար թելադրութեամբը կը պնդէր որ սպաննուիս. որովհետեւ կայսրուհին՝ իր սենեկին հրդեհը ապօրինաւոր ու անարժան կերպով մարելուդ համար՝ քեզմէ միշտ վրէժ առնել կ՚ուզէ.

“Երեք օրէն ատենադպիր բարեկամիդ հրաման պիտի ըլլայ որ տունդ գայ, և ամբաստանական յօդուածները առջիդ կարդալէն ետեւ՝ կայսեր ու ժողովքին մեծ գթութիւնն ու շնորհքը քեզ յայտնէ, որ միայն աչքդ հանելու դատապարտեցին զքեզ. և թէ նորին վեհափառութիւնը չերկբայիր թէ աս վճռոյն երախտագիտութեամբ ու խոնարհօրէն պիտի

հնազանդիս ։ Այս գործողութիւնը գետինը պառկած ատենդ պիտի կատարուի․ խիստ սրածայր նետեր աչացդ բիբերուն դարձնելով, աչքդ պիտի հանուի, և կայսերական վիրաբոյժներէն քանի հոգի ներկայ պիտի գտնուին նորին մեծափառութեան հետ, որպէս զի սա գործողութեան ըստ պատշաճի ի գործ դրուիլը տեսնեն ։

« Աւ քու խոհեմութեանդ կը թողում, որ ուզած ճամբադ բռնես․ բայց ես կասկածի տեղի չտալու համար՝ պէտք եմ եկածիս պէս գաղտուկ շուտով ելնել երթալ »։

Նորին վսեմութիւնը աս ըսելով, ձգեց գնաց, ու ես մինակ մնալով, կասկածանքն ու մտատանջութիւնը զիս պատեցին ։

Այս կայսրն ու իր պաշտօնեայքը, ինչպէս որ ըսեցի, առջի ժամանակաց սովորութենէն տարբեր սովորութիւն մը հաստատեր էին, որով երբ ատեանը՝ ինքնակալին վրէժխնդրութիւնը կամ անոր մէկ սիրելիին չար կամքը կատարելու համար՝ մէկուն վրայ դատապարտութեան վճիռը տար, կայսրը իր խորհրդարանին

մէջ ատենաբանութիւն մը կ՚ընէր, որուն մէջ իր քաղցրութիւնը և գթութիւնը իբրև աշխարհածանօթ յատկութիւններ կը յայտնէր: Այս ատենաբանութիւնը իսկոյն բոլոր տէրութեան մէջ կը հրատարակուէր: Նորին մեծափառութեան գթութեանը վրայօք եղած ներբողներուն չափ այն ժողովուրդը սոսկացընող բան մը չկար: Քանզի յայտնի էր թէ աս գովեստները որչափ հաստատուն ու ընդարձակ կերպով ըլլային, պատիժն ևս այնչափ անգութ ու պատժուողը այնչափ աւելի անմեղ կ՚ըլլար:

Բայց պէտք եմ ճշմարիտը խոստովանիլ, որ թէ՛ ծննդեանս և թէ կրթութեանս ազգաւ պալատական ըլլալու երբէք ընտրուած չըլլալուս՝ այսպիսի նիւթերու վրայօք այնպէս թերի դատում ունէի, որ չէի կրնար որոշել թէ ինծի դէմ եղած վճիռը մե՞ղմ էր թէ սաստիկ: Բայց կարծեմ (գուցէ սխալմամբ) թէ աւելի դառն էր քան թէ մեղմ: Երբեմն կը մտածէի որ դատի կանգնիմ, բայց որո՞ւմ. թէպէտ յօդուածոց մէկ քանիին մէջ յիշուած գործերը չէի կրնար ուրանալ, բայց դեռ կը յուսայի որ դատաւորք քիչ մը թեթևցընելու կը ջանային: Շատ

անգամ դատերու ներկայ գտնուելովս, և դատաւորներու հրամայածին պէս՝ դատերուն լմննալը միշտ տեսած ըլլալովս, չէի համարձակեր այնպիսի զօրաւոր թըշնամեաց դէմ վտանգաւոր բանադատութեան մտնելու որոշում մը ընել: Երբեմն մտքէս կ'անցնէր որ անոնց դէմ դընեմ, ինչու որ ձեռքս ոտքս կապուած չըլլալով, հազիւ թէ նոյն տէրութեան բոլոր ոյժը կրնար զիս զսպել, ու զիբաւ կրնայի մայրաքաղաքը քարկոծելով կործանել: բայց աս դիտաւորութիւնս երկիւղով իսկոյն մերժեցի, յիշելով կայսեր ըրած երդումս, անորմէ ընդունած շնորհներս, և մանաւանդ անոր ինծի տուած նարդաքութեան բարձր տիտղոսը:

Վերջապէս՝ որոշում մը ըրի, որուն համար հաւանական է՝ քիչ մը արդար մեղադրանաց տակ իյնամ. քանզի իրաւը ըսեմ՝ իմ ազնուութենէս և անփորձառութենէս ես աչքս ու հետևաբար ազատութիւնս պաշտպանել ուզեցի. թէ որ անատեն թագաւորաց ու պաշտօնէից բարքը ճանչցած ըլլայի, ինչպէս որ ժամանակէ ետև ուրիշ արքունեաց մէջ ճանչցայ, և թէ որ ինծի չափ յանցաւոր չեղողներուն ինչ պատիժ կրելը ա-

ւելի աղէկ գիտնայի, այսպէս մեղմ պատժի մը մեծ ուրախութեամբ ու յօժարութեամբ պիտի հնազանդէի։ Բայց երիտասարդական եռանդէն գրգռուելով, Պէֆուրքուի կայսեր այցելութեան երթալու համար՝ Նորին կայսերական վեհափառութենէն հրաման առած ըլլալուս, երեք օրը չանցուցած՝ ատենադըպիր բարեկամիս նամակ մը գրեցի, որով նոյն առտուն Պէֆուրքու երթալու դիտաւորութիւնս իրեն ծանուցի և առանց պատասխանի սպասելու՝ մեր նաւատորմիղը կեցած կողմի ծովեզերքը գացի։ Պատերազմական մեծ նաւու մը առջի կողմէն պարան մը կախեցի, և խարիսխը վեր առնելով, լաթերս հանեցի (վերմակիս հետ, որ անթիս (1) տակը առեր էի) նաւին մէջ դրի, ու սկսայ նաւը ետեւէս քաշել, և լողալով Պէֆուրքուի Թագաւորական նաւահանգիստը հասայ, ուր ժողովուրդը երկար ատենէ ի վեր ինծի կը սպասէր։ Նաւէն՝ երկու առաջնորդ տուին ինծի, որ նոյն անունով մայրաքաղաքին ճամբան ցուցընեն։ Աս առաջնորդները մինչև քաղաքին մեծ դրունէն երկու հարիւր կանգուն հեռու ձե-

(1) Թեւին տակը.

ռացս մէջ առի բերի, ու անատեն աղաչեցի որ երթան տէրութեան ատենադպիրներէն մէկուն գալուստս յայտնեն, ու ըսեն թէ ես հոն կայսերական հրամանին կը սպասեմ ։

Դրեթէ ժամ մը ետեւ՝ պատասխան առի թէ նորին վեհափառութիւնը իր կայսերական ընտանեացն ու պալատին երեւելի պաշտօնականաց ընկերութեամբը զիս ընդունելու կու գայ ։ Ըստատեն՝ հարիւր կանգուն դէպ ի առաջ քալեցի . կայսրն ու իր ուղեկիցքը ձիերնէն, նմանապէս կայսրուհին և տիկինները կառքերնէն իջան, և նայեցայ որ ամենեւին երկիւղ կամ շփոթութիւն մը չցուցուցին ։ Ուստի կայսեր ու կայսրուհւոյն ձեռքը համբուրելու համար գետինը պառկեցայ, ու կայսեր ըսի . "Ըստ իմ խոստմանս ու իմ կայսր տիրոջս հրամանաւը եկած եմ՝ ձեզի պէս զօրաւոր թագաւոր մը տեսնելու պատիւը ունենալու, և ձեռքէս եկած ծառայութիւնը (միայն թէ կայսերս հակառակ չըլլայ) ձեր վեհափառութեան մատուցանելու համար". բայց աչքէ լինալուս վրայօք խօսք մը չըրի . որովհետեւ մինչև ցայսօր կա-

նոնաւոր տեղեկութիւն մը առած չէր , և այնպէս դիտաւորութիւն ունենալնին իսկ չէր գիտեր · ասկէ զատ՝ իրաւամբ կը կարծէր թէ կայսրը պիտի չյայտնէր աս գաղտնիքը , քանի որ նա իր իշխանութեաններքևը չէր գտներ · սակայն աս բանիս մէջ խաբուած ըլլալը շուտով յայտնի եղաւ ։

Պլէֆուսքուի արքունիքէն գտած ընդունելութիւնս (որ այնպիսի իշխանի մը մեծափառութեանը վայելուչ կերպով եղաւ), և տան ու անկողնոյ պակասութեան համար՝ վերմակս փաթթուելով, գետնի վրայ պառկելու ստիպուած ատենս՝ ունեցած նեղութիւններս պատմելով, չեմ ուզեր ընթերցողիս ձանձրութիւն տալ ։



## ԳԼՈՒԽ Ը.

*Հեղինակը յաջող դիպուածով մը Պլեֆուսքուին ծովերու մակոյկ մը կը գտնէ. ու քիչ մը դժուարութիւններ կրելէն ետեւ՝ անվնաս իր հայրենիքը կը դառնայ։*

Պլեֆուսքու հասնելէս երեք օր ետքը՝ հետաքրքրութենէ դրդուեալ կղզւոյն հիւսիսային արեւելեան ծովեզերքը պտըտած ատենս՝ կէս փարսախ չափ հեռու բան մը տեսայ ծովուն մէջ՝ որ տակն ու վրայ դարձած նաւակի կը նմանէր։ Ուստի մուճակներս և գուլպաներս հանելով, ծովուն մէջէն երկու երեք հարիւր կանգուն տեղ քալեցի և նայեցայ որ տեսած առարկաս մակընթացութեան (1) զօրութենէն դէպ ի ցամաքը կը մօտենար. անատեն անոր նաւակ ըլլալը յայտնապէս տեսայ, որ խիստ կարծեօքս՝ ալէկոծութեան ժամանակ նաւէ մը անջատուելով, հոն բերուած էր, ատոր վրայ անմիջապէս քաղաքը դարձայ, և աղաչեցի վեհափառ կայսրը, որ իր

(1) Ծովու ջուրին բարձրանալը։

նաւատորմիղը կորսնցընելէն ետև՝ մնացած մեծագոյն նաւերէն քանի նաւ և միանգամայն երեք հազար նաւաստի՝ իր փոխանորդ ծովապետին հրամանատարութեան ներքեւ՝ ինձ յանձնէ ։

Երբ նաւատորմիղը առագաստ պարզելով դէպ ի հոն ուղղեցաւ, ամենէն կարճ ճամբայէ մը նաւակը առջի անգամ տեսած տեղս գացի, և նայեցայ որ նաւակը ջուրին մակընթացութենէն աւելի մօտեցեր էր ցամաքին ։ Նաւաստիք պատրաստ չուաններ առեր էին հետերնին, զորոնք ես առաջուց ոլորել տալով, բաւական դիմացկուն ըրեր էի ։ Երբ նաւերը մօտեցան, հանուելով ջուրը մըտայ, ու մինչև նաւակէն հարիւր կանգունի չափ հեռու քալեցի, այնուհետև պարտաւորեցայ լողալ, մինչև որ գացի անոր հասայ ։ Նաւաստին պարանին ծայրը ինձ նետեցին, և ես անոր մէկ ծայրը նաւակին առջի կողմին վրայ եղած ծակէն, և միւս ծայրը պատերազմական նաւերէն մէկուն կապեցի ․ բայց աս աշխատանքս օգուտ մը չըրաւ, վասն զի ջրին խորութէն ոտքս յատակը չդպչելուն համար չէի կրնար աշխատիլ ։ Ուստի հարկ եղաւ նաւակին ետևէն լողալ, ու կրցածիս չափ մէկ

ձեռքովս զան դէպ 'ի յատակ մղել (1), և մակընթացութե՛ն օգնութեամբը ո՛ր-չափ յատակ գացի, որ ջուրը կզակիս հասնելով, ոտքս գետինը կրցի դպցընել։

Հոս՝ երկու — երեք վայրկեան կանգ առնելէս ետև՝ սկսայ նորէն նաւակը մղել, ու այսպէս ո՛րչափ յատակ գացի, մինչև որ ջուրը այլ անութներէս վե՛ր չէր ելներ․ անատեն՝ գործոյս խիստ դը-ժուար մասը լմնցուցած ըլլալուս՝ ուրիշ պարաններ առի, որո՛նք նաւերուն մէ-կուն մէջ դիզուած էին, ու նախ նա-ւակին, և ետքը հոն սպասող ինը նա-ւերուն կապեցի զանոնք․ Հովը յաջող ըլլալուն՝ նաւաստիք կը քաշէին զան, և ես ետևէն կը մղէի, մինչև որ ծովեզեր-քէն քառասուն կանգունի չափ հեռու հասանք․ անկէ ետև՝ տեղատուութեան(2) սպասելով, ոտքով նաւակը գացի, ու չուաններու, մեքենաներու և երկու հա-զար անձանց օգնութեամբը նաւակը շի-տակ դարձընելով, նայեցայ որ խիստ քիչ վնաս կրեր էր․

Քաշած նեղութիւններս պատմելով ընթերցողիս ձանձրութիւն չտամ․ բա-ւական է գիտնալ որ տասը օր աշխա-

(1) Հրել․ (2) Ծովու ջուրին քաշուիլը․

տեցայ քանի մը Թիակներ շինելու համար, որոնցմով նաւակը Պէքֆուրտու Թագաւորական նաւահանգիստը կրցի բերել, ուր մեծ բազմութիւն մը ժողվուեցաւ և այսպիսի ահագին նաւ մը տեսնելով, չափազանց զարմացած կը մնար։ « Իմ բարի բաղդս, ըսի կայսեր, այսպիսի նաւակ մը հանեց առջևս, որով այնպիսի տեղ մը պիտի երթամ, ուրկէ մինչև հայրենիքս կրնամ հասնիլ »։ Ըղձացեցի զան որ նաւակին պատրաստութեանը համար հարկաւոր եղած նիւթերը ինծի տրուելու հրաման ընէ, և միանգամայն ճամբայ ելնելուս Թոյլտուութիւն տայ։ կայսրը քաղցրութեամբ քիչ մը ատոր դէմ դնելէն ետև՝ հաճութիւն տուաւ։

Բոլոր աս միջոցիս մեծ զարմանքի մէջ էի Թէ ինչպէս Լիլիփութի կայսրը զիս փնտռելու համար Պէքֆուրտու մարդ չէր խրկած։ Բայց ետքը ծածկաբար իմացայ Թէ նորին վեհափառութիւնը, ամենևին միտքէն չանցընելով Թէ ես իր դիտաւորութիւնները գիտեմ, կարծեր է Թէ խոստմունքս կատարելու համար ու իր հրամանին համեմատ, որ իր ատենակալաց իսկ ծանօԹ է, Պէքֆուրտու գացած եմ, ու այցելութիւնս կատա-

ընելէս ետև՝ քանի մը օրէն պիտի վերադառնամ. Բայց վերջապէս տեսնելով որ կ՚ուշանամ՝ սկսեր է նեղանալ . ուստի գանձապետին ու դաւակից գաղտնի ժողովքին մէջ խորհուրդ ընելէն ետև՝ ինծի դէմ եղած ամբաստանական յօդուածոց օրինակը ազնուականի մը ձեռքով իսկոյն Պլէֆուսքու ղրկեց .

Աս պատգամաւորին պատուէր եղած էր որ՝ միայն աչքս հանելով իր կայսեր տիրոջը զիս պատժելու մեծ մարդասիրութիւնը Պլէֆուսքուի ինքնակալին հասկցընէ , նաև իմ արդարութենէ փախչիլս իմացընէ , և եթէ երկու ժամէն ետ չդառնամ՝ նարդաքութեան տիտղոսէն զրկուելով , մատնիչ պիտի համարուիմ. Պատգամաւորը այս ալ աւելցուց թէ՝ իր թագաւորը կը յուսայ որ այս երկու տէրութեանց մէջ խաղաղութիւնըն ու բարեկամութիւնը անվրդով մընալու համար՝ Պլէֆուսքուի թագաւորը իմ ոտքս ձեռքս կապել տալով , զիս Լիլիփութ խրկելու կը բարեհաճի , որպէսզի իբր մատնիչ պատժուիմ .

Պլէֆուսքուի կայսրը աս գործին վրայօք խորհելու համար երեք օր ատեն ուզելէն ետև՝ շատ քաղաքավար ու խո-

հեմ կերպով Նորին վեհափառութեան այսպէս պատասխան ղրկեց · “Օ՛ն կապել ու ղրկելը բոլորովին անհնարին է · և թէպէտ իմ նաւատորմիղս յաջողակողը ան է, սակայն հաշտութեան տեն ինձ ըրած շատ մեծ ծառայութեանցը համար ստիպուած եմ երախտագէտ ըլլալ · Մայսը ամէնայնիւ՝ քիչ ժամանակէն երկուքս ալ պիտի ազատինք · ըստ որում ան՝ ծովեզերքին քով ահագին նաւ մը գտաւ, որ զինքը Ջրին երեսը վերցնելու չափ բաւական մեծ է, և իր օգնականութեամբն ու իմ հրամանաւս ալ նաւը պատրաստուածին պէս՝ Ճամբայ պիտի ելնէ, որով կը յուսամ թէ այսպիսի անտանելի նեղութենէ մը երկուքս ալ շուտով պիտի ազատինք”։

Պատգամաւորը աս պատասխանս առնելով, Լիլլիփութ դարձաւ, ու Պլէֆուսքուի կայսրը բոլոր աս եղածը ինձ պատմեց, և միանգամայն թէ որ իր ծառայութեան տակ հոն մնալ ուզեմ, իր մարդասիրական պաշտպանութիւնը խոստացաւ ինծի (բայց գաղտնի և մտերմաբար)։ Թէպէտև ասոր ըրած խոստմունքը անկեղծ ըլլայ, այսու ամենայնիւ այնպէս միտքս դրեր էի որ՝ այ-

նաւհետև որչափ որ կարելի է՝ որ և իցէ իշխանի և պաշտօնէայի չապաւինիմ. Ուստի իր բարի դիտաւորութեանցը համար ըստ արժանւոյն երախտագիտութիւնս յայտնելով, խոնարհաբար աղաչեցի որ ներողամիտ ըլլայ և զիս ազատ թողու. « Ու որովհետև, բախ, բարի կամ չար բաղդս ազնիւ նաւ մը հանեց, ուստի միտքս դրի ինքզինքս Ովկիանու յանձնել, քան թէ այսպէս երկու զօրեղ կայսերաց մէջ տեղը գժտութեան մը պատճառ ըլլալ»։ Նայեցայ որ կայսրը աս խօսքիս ամենևին տհաճութիւն չցուցուց, ու պատահմամբ գիտեցի որ ոչ միայն ինքը, այլև իր պաշտօնէից մեծ մասը աս որոշմանս վրայ շատ ուրախացան։

Աս խորհրդածութիւններէս ստիպեալ՝ որոշեալ ժամանակէս աւելի յառաջ ճամբայ ելնելու աճապարեցի. և արքունականները իսկ՝ որ յառաջ զիս ճամբելու՝ անհամբերութիւն ցուցընելով, մեծաշտապաւ նպաստամատոյց եղան ինծ։ Նաւուս երկու առագաստ շինելու համար՝ հինգ հարիւր գործաւոր պարապեցան, և իմ հրամանացս համեմատ՝ երկրին ամենէն հաստ կտաւը առած ու երեք ծալք ընելով և մէջը լեցընելով կարեցին. Մեծ

աշխատանքով իրենց ամենահաստ ու դիմացկուն ճուաններուն տասնը, քսանը կամ երեսունը մէկտեղ ոլորելով, ճուաններ և պարաններ (1) շինեցի: Ծովեզերքին վրայ երկար ատեն փնտռելով, բարեբաղդաբար մեծ քար մը գտայ, որ խարսխի տեղ ծառայեց ինծի: Նաւուս և ուրիշ գործածութեանց համար երեք հարիւր կուլի ճարպ տուին ինծի: Թի և կայմ շինելու համար՝ քանի մը մեծագոյն ծառեր կտրելու ատենս՝ չափազանց նեղութիւն քաշեցի, թէև կայսերական նաւ շինող ատաղձագործք՝ ծառերը կտրելու և զանոնք յղկելու համար ձեռնտու եղան ինծի:

Գրեթէ ամիս մը եւս՝ երբ ամէն բան պատրաստ եղաւ, գացի որ Նորին վեհափառութենէն ճամբայ ելնելու հրամանը խնդրեմ, և իմ հրաժարական ողջոյնս տամ անոր: Կայսրը իր ընտանեացը հետ պալատէն դուրս ելաւ, ու ես իսկոյն երեսի վրայ պառկեցայ, որ անոր ձեռքը համբուրեմ. կայսրը մեծ մարդասիրութեամբ ձեռքը ինծի երկնցուց, նոյնպէս ըրին և Թագուհին ու իշխանազուն որդիքը: Նորին վեհափառութիւնը յիսուն

(1) Հալաթ.

քանի պարգև տուաւ ինծի, որոց իւրաքանչիւրին մէջ երկու հարիւր սփրուկ կային, նաև իր ամբողջ քաշուած կենդանագիրը ինծի շնորհեց, զոր առածիս պէս՝ ձեռնոցիս մէջը դրի որ չաւրուի։ Մեկնելու ատենս եղած արարողութիւնները պատմելը երկար ըլլալուն՝ ընթերցողիս գլխացաւութիւն չտալու համար՝ հոս զանց կ'ընեմ։

Նաւին մէջ հարիւր մորթած եզն (1) ու երեք հարիւր ոչխար լեցուցի, և չափով խմելիք, հաց, ու չորս հարիւր խոհարարի (2) եփել կրցածին չափ միս, մէցը կենդանի կով, նոյնչափ ևս ոչխար և նոխազ առի հետս․ միտքս զանոնք հայրենիքս տանել և անոնց սերունդը աճեցընել էր։ Նաւուն մէջ զանոնք կերակրելու համար կապ մը խոտ ու պարկ մը լեցուն ցորեն առի։ Շատ ուրախ պիտի ըլլայի, թէ որ կարենայի բնակիչներէն երկոտասանեակի (3) մը չափ հետս բերել․ բայց կայսրը ամենևին հրաման չտուաւ և գրպաններս զգուշութեամբ փնտռել տալէն զատ՝ պատուոյս վրայ երդում ընել տուաւ որ իր հպատակնե-

(1) Սըղըր։ (2) Աշճը։ (3) Տուզինա։

րէն մէկն իսկ հետս չտանիմ, թէև իւրենք փափաք ու հաճութիւն ցուցընեն ։

Կրցածիս չափ ամեն բան պատրաստելէս ետև՝ 1701, Սեպտեմբերի 24ին, առտուան ժամը վեցին առագաստ պարզելով ճամբայ ելայ · ու երբ դէպ ի հիւսիս չորս փարսախի չափ ճամբայ ըրի, հողմը հարաւային-արևելեան ըլլալուն՝ իրիկուան ժամը վեցին՝ հիւսիսային-արևմտեան կողմը կէս փարսախի չափ հեռաւորութեամբ փոքրիկ կղզի մը աչքիս երևցաւ ։ Նաւը յառաջ վարելով, այս կղզիին՝ հովէն ապահոված և ինձ անմարդաբնակ երևցած կողմը խարիսխ նետեցի ։ Հոն քիչ մը բան ուտելէս ետև՝ երկընցայ պառկեցայ · կարծեօք գրեթէ վեցը ժամ քնացեր եմ, վասն զի երբ արթընցայ՝ արշալոյսը երկու ժամ ետքը ծագեցաւ ։ Գիշերը պայծառ էր, ու արևը չծագած նախաճաշիկ ընելէս ետև՝ խարիսխը քաշեցի, և հողմին յաջողութեամբն և գրպանի կողմնացուցիս առաջնորդութեամբը առջի օրուան չափ ճամբայ ըրի · քանզի միտքս ան էր, որ եթէ կարելի է՝ Վան Տիմէնի երկրին հիւսիսային-արևելեան կողմը կարծեօք գըտնուած կղզիներէն մէկը հանիմ ։

Բոլոր այն օրը բան մը չնշմարեցի, բայց հետեւեալ օրը, գրեթէ կէս օրէն երեք ժամ ետքը՝ երբ ըստ իմ հաշուիս՝ Պլէֆուսքուէն քսան ու չորս փարսախի չափ հեռացած էի, աչքիս նաւ մը երեցաւ, որ դէպ ի հարաւային — արեւելք կ'երթար, այլ իմ ճամբաս ուղղակի դէպ ի արեւելք էր։ Ձայն տուի անոր, բայց պատասխան մը չկրցայ առնել. սակայն նայելով որ հովմին նուաղելովը նաւուն հասնելու վրայ եմ, ամեն առագաստներս բացի, ու կէս ժամէն ետեւ նաւէն զիս տեսնելով, դրօշակ մը քաշեցին, ու թնդանօթ մը նետեցին։

Սիրելի հայրենիքս ու հոն ձգած սիրասուն զաւակներս նորէն տեսնելու անակնկալ յոյսիս վրայ զգացած ուրախութիւնս նկարագրելը դիւրին բան չէ։ Նաւը իր առագաստները իջեցընելով, անոր քովը հասայ, Սեպտեմբերի 26ին, իրիկուան ժամը հինգին կամ վեցին. բայց սիրտս թունդ ելաւ, երբ Անգլիական դրօշակը տեսայ։ Կովերն ու ոչխարները վերարկուիս գրպաններուն մէջ դընելով, ունեցած պաշարովս նաւուն մէջ մտայ։

Ես անգղիացի վաճառականի մը նաւ էր, որ Հարաւային և Հիւսիսային ծովերէն անցնելով, Լոնտոնէն կու գար, ատոր Տէփֆըրտցի Ճօն Պիտլ նաւապետը շատ քաղաքավար և նաւարկութեան ներհուն մարդ մ՚էր։ Հոս տեղս հարաւային լայնութեան երեսներորդ աստիճանին տակն էինք․ նաւուն մէջ գըրեթէ յիսուն հոգի կային, որոնց մէջ Փիթըր Ուիլեըմս անուամբ վաղեմի ընկերներէս մէկը գտայ, որ զիս նաւապետին գովեց։ Ասոր և այս պարոնը հետս քաղցրութեամբ վարուելով, խնդրեց որ վերջի անգամ ո՛ւրկէց առագաստելս, և հիմա ո՛ւր երթալս իրեն իմացընեմ․ քանի մը խօսքով համառօտիւ անոր պատասխանելս՝ կարծեց թէ կը զառանցեմ, և թէ քաշած վտանգներէս խելքս ցըրուած է․ Ասոր վրայ՝ գրպանէս սև արջառներս ու ոչխարներս հանեցի, որոնք անոր մեծ զարմանք տալէն զատ՝ ըսածներուս ճշմարիտ ըլլալուն համոզուեցաւ։ Ետքը Պլէֆուսքուի կայսեր տուած ոսկիները, անոր ամբողջ կենդանագիրը, ու նոյն երկրին քանի մը հազուագիւտ բաներէն անոր ցուցուցի։ Երկու հա-

րիւրական «սփրուգ» պարունակող քսակնե-
րէն երկուքը իրեն տուի , ու Անգղիա
հասած ատենս՝ յղի կով մը և յղի ոչխար
մը իրեն ընծայ ընելու խոստացայ ։

Չեմ՛ ուզեր ընթերցողիս գլխացաւու-
թիւն պատճառել այս ճամբորդութիւ-
նըս մանրամասն պատմելով, որ ըստ մե-
ծի մասին խիստ յաջող եղաւ ։ 1702 ,
Ապրիլ 13ին Տընս հասանք ։ Միայն ան
դժբաղդութիւնը ունեցայ , որ նաւուն
մէջ մկները ոչխարիս մէկը առեր տարեր
էին , որուն ոսկորները աղէկ մը կրծուած՝
ծակի մը մէջէն գտայ ։ Արջառներուս
մնացածը անվնաս ցամաքը հանեցի , ու
Կրինիչի գալար խոտերուն վրայ արա-
ծուելու ձգեցի , ուր որ աղէկ մը փո-
րերնին կշտացուցին , թէև միշտ անոր
հակառակը ըլլալէն կը վախնայի ։ Այս-
չափ երկար ճամբորդութեանց մէջ ամե-
նեւին պիտի չկրնայի զանոնք ողջ առողջ
պահել, թէ որ նաւապետը իր ընտիր
պաքսիմատէն քանի մը հատ չտար ինծի,
զոր ծեծելով փոշիի պէս կը բարակցընէի,
ու ջրով խառնելով կը կերցընէի անոնց։

Անգղիա գտնուած կարճ միջոցիս՝ ար-
ջառներս շատ ազնուականներու և ու-
րիշ անձանց ցոյց տալով , բաւական ըս-

տակ չաջնեցայ, ու երկրորդ ճամբորդութիւնս չըրած՝ 600 լ՟րայի ծախեցի զանոնք ։ Վերջին անգամ ճամբորդութենէս դառնալուս՝ նայեցայ որ ասոնց սեռը շատցեր էր, մանաւանդ ոչխարինը, որոնք կը յուսամ թէ բրդեղէն գործարանաց շատ օգտակար պիտի ըլլան իրենց բրդերուն ազնուութեանը համար ։

Միայն երկու ամիս մնացի կնոջս ու ընտանեացս քովը, քանզի օտար երկիրներ տեսնելու համար ունեցած անյագ փափաքս չէր թողուր որ երկար ատեն հայրենիքս մնամ ։ Կնոջս հազար հինգ հարիւր լ՟րա ձգեցի, ու Ռէտրիֆ փողոցը աղէկ տուն մը վարձեցի անոր համար ։ Իսկ քովս մնացած դրամագլուխս՝ շատցընելու յուսով՝ կէսը սակ և կէսը ապրանք ընելով, հետս առի ։

Ջոն մեծ հօրեղբայրս՝ Էփինկի մօտ տարին երեսուն լ՟րայի չափ եկամուտ բերող կալուած մը ձգեր էր ինծի ։ Եւ ես Ֆէթր Լէյնի մէջ Պլաք Պուլ անունով կալուածքս երկար ատենուան համար վարձու տալով, յիշեալ եկամուտին չափ եկամուտ կ'առնէի անկէ, այնպէս որ ընտանիքս մեր թեմին ողորմութեանը կարօտ մնալու ամենեւին վախ չունէր ։ Ջոն

տղաս, որուն իմ հօրեղբօրս անունը տուեր էի, Գրէմմէր ըսուած դպրատունը կ'երթար, ու հնազանդ զաւակ մ'էր։ Պէթի աղջիկս (որ հիմա կարգուած և զաւկի տէր է,) անատեն ասեղնագործութեան կը պարապէր։ Ուստի կնոջս, տղուս, և աղջկանս մնաք բարև ըսելով, ամենքս շատ արցունք թափելէ ետև՝ Ատվէնչիւր ըսուած նաւը մտայ, որ երեք հարիւր տակառաչափ բեռ վերցընող վաճառականի նաւ մ'էր՝ Լիվըրփուլցի Ճօն Նիքըլաս նաւապետին հրամանին տակը, որ Սուրաթ երթալու պատրաստ էր։ Բայց աս ճամբորդութեանս պատմութիւնը երկրորդ ճամբորդութեանս մէջ պիտի ընեմ։



# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ



# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

# Ի

# ՊՐՈՊՏԻՆԿՆԱԿ

# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

# Ի

# ՊՐՈՊՏԻՆԿՆԱԿ



## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ.

*Հեղինակը սաստիկ ալեկոծութիւն մը կը նկարագրէ: Նաւակը ջուր բերելու համար ցամաքը խրկուելով. ինքն ալ մէկ տեղ կ'երթայ. ուր միայնակ մնալով. երկրացող մէկուն ձեռքը կ'իյնայ. ու երկրագործի մը տունը կը տարուի: Հոն զինքը ինչպէս ընդունեցին եւ իրեն ինչ դիպուածներ պատահիլը կը պատմէ: Բնակչաց վրայօք նկարագրութիւն մը կ'ընէ.*

ԱՆՀԱՆԳԻՍՏ ու վրդովալի կեանք մը անցնելու համար բնութենէ ու բաղդէս դատապարտուած ըլլալով, երկու ամիս հայրենիքս կենալէն ետեւ՝ նորէն Տրնսէն մեկնեցայ, 1702, Յունիսի 20ին, Ատվէնչիւր անուն նաւը մտայ, որ Քօրնիշցի Ճօն Նիքըլսոն նաւապետին հրամա-

նաւարութեան ներքեւ Սուրաթ քաղա-
քը երթալու էր ։ Մինչև Բարեյուսոյ-
Գլուխը շատ յաջող հողմ ունէինք ։ Երբ
անկէ ջուր առնելու համար ցամաքը
ելանք , նայելով որ նաւերնիս ծա-
կուեր է ու մէջը ջուր կ՚առնէ , մեր ապ-
րանքները ցամաքը հանեցինք ու ամբողջ
ձմեռը հոն անցուցինք ։ քանզի այս մի-
ջոցիս և նաւապետը սաստիկ տենդէ մը
բռնուելուն՝ մինչև Մարտի վերջը չկրը-
ցինք մեկնիլ անկէ ։ Նաւն նորէն ա-
ռագաստ պարզելով , մինչև Մատակա-
կարի նեղուցը անցնելնիս՝ հողմը շատ
յաջող էր ։ սակայն երբ այն կղզւոյն
հիւսիսային կողմը՝ գրեթէ հարաւա-
յին լայնութեան հինգերորդ աստիճա-
նին տակը հասանք , հողմերը , որ այս
ծովերուն մէջ Դեկտեմբերի սկիզբէն
մինչև Ապրիլի սկիզբը հիւսիսէն և արև-
մուտքէն մէջ տեղէն շարունակ մի և նոյն
սաստկութեամբ կը փչեն , Մարտի 19էն
սկսան աւելի սաստիկ բռնութեամբ մա-
նաւանդ սովորականէն դուրս արևմտ-
եան հողմ փչել , որ շարունակ քանի օր
տևելով , զմեզ քիչ մը Սօլուքեան կղզ-
զեաց արևելեան կողմը ու երեք աստի-
ճան չափ հարաւակածին հիւսիսակող-

մը բշեր էր, ինչպէս որ Նաւապետանիս Մայիսի չին բրած դիտողութենէն իմացաւ. աս օրէն ետեւ՝ հովմը դադրելով, ծովը եւ կատարելապէս խաղաղցաւ, որուն վրայ շատ ուրախացայ. Բայց Նաւապետը աս ծովերուն մէջ խիստ փորձառու մարդ մը ըլլալուն՝ ամենուս ապսպրեց որ գալիք սաստիկ փոթորիկի մը դէմ պատրաստութիւն տեսնենք. Հետեւեալ օրը աս ըսածը կատարեցաւ, ըստ որում՝ հարաւային կանոնաւոր հովմը սկսաւ փչել.

Եւ որովհետեւ հաւանական էր որ երթալով աւելի սաստկանար, նաւուն ցռուկակայմին (1) փոքրիկ առագաստը ծածկեցինք ու Նոյն կայմին մեծ առագաստը գոցելու պատրաստուեցանք. բայց օդը սաստկանալուն՝ բոլոր թնդանօթները լաւ մը կապեցինք, ու խելակայմին (2) առագաստը գոցեցինք։ Նաւը ցամաքէն խիստ հեռու էր, ու ափի ջրերուն երեսը տատանելով նեղութիւն չկրելու համար՝ Նաւը հովին առաջնորդութեան ձգելը աւելի լաւ սեպեցինք. Ցռուկակայմին մեծ առագաստը ամփոփեցինք, կայմե-

(1) Նաւուն առաջակողմի միաւոր կայմը. (2) Նաւուն ետեւի (զէկին. փի—ֆ..) կողմի կայմը.

րուն ստորին առագաստները ևս իջ՚ցուցինք , ու ղեկը դէպ ի հովին փչած կողմը ծռեցինք · սանկով նաւը շատ աղէկ կ՚երթար ։ Առաջնակայմին (1) մեծ առագաստը կապելու տեղէնին՝ պատռեցաւ , ուստի առագաստակալը իջեցընելով , զայն նաւուն մէջ ժողվեցինք ։

Այս աշխատութիւնը խիստ տհաճելի էր , ու ալիքը այլանդակ և վտանգաւոր կերպով նաւուն կը բաղխէին ։ Նաւուղին մինակ կառավարել չկրնալուն համար՝ ղեկին բռնատեղերը (2) ձեռք առնելով , անոր օգնութեան հասանք ։ Թակաւորի առագաստը չուզեցինք վար իջեցընել , բայց որով նաւը աղէկ կառավարուելով շատ յառաջ կ՚երթար ։

Երբ աշխատութիւնք դադրեցաւ , ցռկակայմին և միջնակայմին մեծ առագաստները պարզելով , նաւը աւելի յառաջացուցինք ։ Այսուհետև խեբակայմին առագաստը , միջնակայմին և առաջնակայմին վերին առագաստները բացինք ։ Մենք դէպ ի հիւսիսային - արևելք կը նաւէինք , իսկ հովը՝ հարաւային - արևմտեան էր · ուստի առագաստ-

(1) Նաւուն առջի կամ ցռկակայմին քովի կայմը ։

(2) Բռնելու տեղ · կոթ ։

ներն ու ղէկը այնպէս դարձուցինք , որ հողմը կողմնակի կը փչէր մեզ ։

Այս ալէկոծութեան միջոցին՝ սաստիկ հարաւային - արեւմտեան հողմ մը ելնելով, ըստ իմ հաշուիս՝ հինգ հարիւր փարսախի չափ դէպ ի արեւելք քշեր տարեր էր մեզ, այնպէս որ մեր նաւուն ամենէն ծեր ու փորձ նաւաստին անգամ, աշխարհիս որ կողմը ըլլալնիս չէր գիտեր ։ Պաշարնիս աղէկ դիմացաւ ։ նաւերնիս դիմացկուն ըլլալուն՝ ջուր չէր առներ , ու բոլոր նաւաստեաց առողջութիւնը տեղն էր ։ բայց ջուրի կողմանէ խիստ շատ նեղութեան մէջ էինք ։ Այսու ամենայնիւ աւելի աղէկ սեպեցինք բռնած ճամբանիս շարունակել , քան թէ դէպ ի հիւսիս դառնալ , որով կարելի էր Մեծ Թաթարաց հիւսիսային - արեւմտեան կողմը , կամ Սառուցեալ Ծովը տանիլ մեզ ։

1703 , Յունիսի 16ին , մանչնաւազ (1) մը կայմի գագաթանը վրայէն ցամաքը տեսաւ ։ և 17ին՝ մեծ կղզի կամ ցամաք մը (քանզի որը ըլլալը չէինք գիտեր) առջեւնիս ելաւ , որուն հարաւային կողմէն

(1) Կէս միջօրու ։

փոքրիկ լեզու մը ծովին մէջ ցցուած էր, ու շատ ծանծաղ (1) խորշ (2) մը կար, որուն մէջ հարիւր տակառաչափէն (3) աւելի վերցընող նաւ մը չէր կրնար մտնել։

Այս խորշէն գրեթէ փարսախ մը հեռու երկաթ նետեցինք, ու նաւապետը իր մարդոցմէն տասն ու երկու հոգի աղէկ սպառազինած և ջրի ամաններով մակոյկը (4) իջեցուց որ ցամաքը երթան և անոյշ ջուր գտնեն բերեն։ Նաւապետէն հրաման առի որ անոնց հետ մէկտեղ ցամաքը ելնեմ, որպէս զի քաղաքը տեսնեմ, և եթէ հնար է՝ նոր գիւտեր գտնեմ։

Երբ ցամաքը հասանք, ոչ գետ տեսանք, ոչ աղբիւր, և ոչ բնակչաց նշան մը։ Ուստի մեր մարդիկը ծովեզերքին մօտ աւազին անդին անոյշ ջուր գտնելու համար պտըտած ատեննին՝ ես ալ մինակ ծովեզերքին միւս կողմը մղոնի մը չափ քալելով յառաջ անցայ, և նայեցայ որ երկիրը բոլորովին անբերրի ու ժայռուտ էր․ անատեն վրաս ձանձրութիւն մը գալով, ու հետաքրքրութեանս հաճելի բան մը չգտնելով, կամաց կամաց դէպ ի խորշը

(1) Սիղ։ (2) Ծովու ծոց։ (3) Տակառաչափը Տաճկաստանի տասն և ութը կենդինարն է։ (4) Սանդալ։

դարձայ, և նայեցայ որ մեր մարդիկը արդէն մակոյկը մտեր էին, ու իրենց կեանքերը ազատելու համար ոգւով չափ արագութեամբ թի կը քաշէին : Անոնց ետևէն պոռալու վրայ էի, թէպէտև մեծ օգուտ մը պիտի չըներ, երբ յանկարծ մարդ մը տեսայ, որ կրցածին չափ շուտով ծովուն մէջէն վազելով կը հալածէր զանոնք · Ջուրը անոր ծնկերէն վեր ըլլալուն՝ ահագին քայլեր կ'առնէր · բայց որովհետև մեր մարդիկը անորմէ կէս փարսախ չափ յառաջ գացած էին, և ան տեղի ջրերուն յատակը սայրասուր ժայռեր կային, ուստի հսկան մակոյկին չի կրցաւ հասնիլ : Ես այսպէս ըլլալը ես ետ-քը լսեցի, ինչու որ այս դիպուածին վերջը տեսնելու համար հոն կենալու չի համարձակելով, կրցածիս չափ արագութեամբ դէպ ի առջի գացած ճամբաս քալեցի, և ետքը զառ ի վեր բը-լուրի մը վրայ մագլցելով ելայ, ուրկէց քաղաքը քիչ մը կրցի տեսնել, որ բոլորովին մշակուած էր : Բայց ամէնէն առաջ ինծի զարմանք բերողը՝ խոտերուն երկայնութիւնն էր, որոնք կ'երևէր թէ շորցընելու համար չէին հնձած, գրեթէ քսան ոտք բարձրութիւն ունէին :

Խիստ լայն փողոց մը մտայ, ինչպէս որ ինծի այնպէս երևցաւ, Թէպէտև տեղացիներուն համար՝ գարիի դաշտի մը մէջ տեղը եղած նեղ ճամբայ մ՚էր. Քիչ մը ատեն դէպ ի յառաջ քալեցի, բայց հունձքի ժամանակը մօտ՝ ու ցորենը գրեթէ քառասուն ոտնաչափ բարձրացած ըլլալուն՝ երկու դիէս շատ բան չէի կրնար տեսնել։ Քամ մը քալելէս ետև՝ հազիւ դաշտին ծայրը հասայ, որ գրեթէ հարիւր քսան ոտք բարձր պատով մը ցանկապատեալ էր. Ծառերը այնչափ բարձր էին, որ չկրցի զանոնք աչքով չափել.

Աս դաշտէն միւսը անցնելու համար՝ չորս աստիճանաւ պատ մը կար, որուն վրայ քար մը դրուած էր, ուր կոխելով քովի դաշտը կ՚երթըցուէր. Աս աստիճանաց ամէն մէկը վեցը ոտք՝ ու վերայի քարը գրեթէ քսան ոտնաչափ բարձըր ըլլալուն համար՝ անկէ անցնիլը ինձ անհնար էր. Աս պատէն անցնելու համար՝ տեղ մը գտնելու ջանք ըրած ատենս՝ միւս դաշտին մէջ երկրացիներէն մէկը տեսայ, որ դէպ ի պատը կը յառաջանար, և մակոյկին ետևէն փողոցին չափ բարձր էր. Աս մարդը հասարակ

զանգակատունն մը չափ բարձր կ՚երեւար ինծ, ու ըստ իմ դատողութեանս՝ ամեն քոյլրփոխին՝ տասը կանգունի չափ տեղ մէկէն կ՚առնէր · վերջին աստիճանի մոխ ու զարմանք մը զիս պատելով, փախայ և ցորեններուն մէջ պահուեցայ, ուրկէց աս հսկայ մարդը տեսայ, որ պատին վրայ ելած և գլուխը աջ կողմի դաշտին վրայ դարձուցած կը նայէր, ու ձայնատուր փողէ մը շատ աւելի բարձր ձայնով կը կանչէր, այնպէս որ անոր հնչումը օդոյն մէջ ան աստիճան կը դոռար, որ ի սկզբան երկինք որոտումն կարծեցի ։ Ես ձայնին վրայ՝ իրեն պէս ուրիշ եօթը հատ հրէշներ դէպ ի իրեն մերձեցան՝ ձեռքերնին մանգաղներ (1) բռնած, որոնց իւրաքանչիւրը վեցը գերանդիի (2) մեծութեան չափ կար ։ Ես եկողները առաջինին պէս հագուած չըլլալնուն՝ անոր գործաւորները կամ ծառաները ըլլալ կ՚երեւային · ինչու որ երբ ան հրաման մը բրաւ, իսկոյն եկան այն դաշտին ցորենը հնձելու, որուն մէջ ես պառկեր էի ։

Կարելի եղածին չափ անոնցմէ հեռացայ · բայց չափազանց դժուարութեամբ

(1) Օրագ ։ (2) Մեծ մանգաղ ։

յառաջ կ'երթայի, ինչու որ տեղ տեղ ցորենին եղէգները երբեմն մէկմէկէ տասնաչափ մը աւելի հեռու չըլլալուն՝ հազիւ թէ սպրդելով կրնայի մէջերնէն անցնիլ. ինչ և իցէ հնարքով մը յառաջ երթալով, վերջապէս դաշտին այնպէս մէկ կողմը ելայ, ուր ցորենը հովէն ու անձրևէն պառկած ըլլալուն՝ քայլ մը յառաջ երթալը կարելի չէր. քանզի խոտերուն կոթերը այնպէս խառնուեր էին մէկզմէկու, որ մէջերնէն չէի կրնար անցնիլ ու վար ինկած խոտին քիստերը (1) այնպէս հաստ ու սուր էին, որ լաթերէս անցնելով, մարմինս անգամ կը ծակծըկէին. Ն՝ մէջցին՝ ետևէս հնձողներուն ձայնը լսեցի, որոնք հարիւր կանգունէն աւելի հեռու չէին. Ուստի բոլորովին վհատած ու չարաչար յոգնած ըլլալուս՝ երկու ակօսներուն մէջ տեղը պառկեցայ, և յօժարակամ կը բաղձայի որ հոն մեռնիմ. Նաստեն վշտացին կ'ողբայի կնոջս ու հայրագուրկ զաւակացս վրայ, կ'ողբայի իմ բուն յիմարութեանս և կամակորութեանս վրայ, որ բոլոր ազգականացս ու բարեկամացս խրատները մտիկ չընելով, երկրորդ անգամ ծովը ելլելու համարձակեցայ.

(1) Ցորենի հասկին փշոտ մազը. Գըլճէ.

Աս սոսկալի մտատանջութեանս մէջ՝ Լիլլիփութը մինչեւ չէր ելներ, ուր աշխարհիս ամենէն մեծ հրաշքը կը համարուէր, եւ ուր մէկ ձեռքով կրցեր էի նաւատորմիղ մը ետեւէս քաշել ու այնպիսի գործեր կատարել, որոնց յիշատակը այն տէրութեան արձանագրաց մէջ յաւիտեանս պիտի պահուին, եւ մեզմէ ետքը եկող մարդիկ դժուարաւ պիտի հաւատան այն ամեն եղածներուն, զորոնք Լիլլիփութի բոլոր ազգը կը հաստատէ։

Կը մտածէի թէ ո՛րչափ ամօթ պիտի ըլլար ինծի աս ժողովրդեան աչքին նուաստ երեւիլ, ինչպէս Լիլլիփութցի մը մեր մէջը այնպէս պիտի երեւէր․ սակայն եւ այս՝ դժբաղդութեանցս ամենէն փոքրը կը համարէի․ ըստ որում՝ մարդկային արարածները հասարակօրէն ո՛րչափ բարձրահասակ են, ա՛յնչափ եւ վայրենի ու անգութ կ'ըլլան․ ուստի ուրիշ բան չէի յուսար, բայց եթէ աս վայրենի մարդոց մէկուն պատառ մը կերակուր ըլլալ։

Անշուշտ փիլիսոփաները իրաւամբ ըսեր են թէ՝ առանց բաղդատութեան բան մը ո՛չ մեծ կրնայ ըլլալ եւ ոչ փոքր։ Ո՞վ գիտէ բաղդը այնպէս երկիր մը

գտնել տար Լիլլիփութցւոց · որուն բը-նակիչները իրենց այնչափ չէին երեւային, ինչպէս որ իրենք ինծի երեւցան · և ոչ գիտեմ թէ մեզի ծանօթ չեղած աշխարհին հեռու մէկ մասին մէջ՝ այս ահագին մարդկանոցուոց ցեղէն աւելի ահարկաւ մարդկանոցուք չեն գտնուիր ։

Թէև սաստիկ երկիւղի և շփոթութեան մէջ էի, բայց դարձեալ աս մըտածմունքը մտքէս չէին հեռանար ։ Երբ հնձողին մէկը պառկած տեղէս տասն կանգունի չափ հեռու մօտեցաւ, խելքս գլխէս գնաց, որ եթէ քայլ մը ևս առնելու ըլլայ, վասն կոխելով զիս ոտքին տակը պիտի ճմլէ, կամ ձեռքի մանգաղովը զիս երկու կտոր պիտի ընէ ։

Ուստի երբ տեսայ որ նորէն շարժում ընելու վրայ էր, սաստիկ զարհուրած՝ բոլոր ուժովս սկսայ պոռալ · ասոր վրայ հրէշը չորս դին ու կոխած տեղը նայելով, փոքրիկ քայլեր առաւ, ու վերջապէս զիս գետնի վրայ պառկած գտաւ ։ Յանկարծ կանգ առնելով, զիս այնպիսի ըզգուշութեամբ մը դիտեց, ինչպէս որ վտանգաւոր պզտիկ կենդանի մը բռնելու ատեններս կը խորհինք որ չըլլայ թէ կենդանին մեզ խածնէ կամ ճանկռտէ,

և ինչպէս ես իմքս Լոնտոնոյ մէջ երբեմն ալքիս (1) բռնելու ատենս՝ այնպէս բրած եմ։

Վերջապէս՝ համարձակութիւն առնելով, բթամատովս ու ցուցամատովս մէջքէս բռնելով վերցուց, ու երբեք կանգուն հեռաւորութեամբ աչացը մօտեցուց որ աւելի ուշադրութեամբ կերպարանքս դիտէ։ Նոր դիտաւորութիւնը գուշակեցի, ու առանց շփոթելու թողուցի որ զիս քննէ, թէև բռնած տեղերը, այսինքն երկու կողերս սաստիկ կերպով կը ցաւէին։ Օխս գետնէն վաթսուն ոտքէն աւելի բարձր բռնած ըլլալուն՝ կը վախնայի որ չըլլայ թէ մատներուն մէջ տեղէն սղրտելով վար իյնամ· միայն աս համարձակութիւնը կըցի ունենալ, որ աչքս դէպ ի արևը տնկելով ու ձեռքս աղերսարկու գիրքով մէկմէկու վրայ դնելով, ցած ու տրտում ձայնով մը դժբաղդ վիճակիս վրայ քանի մը խօսք խօսեցայ· քանզի ամեն վայրկեան կը վախնայի որ չըլլայ թէ զիս գետինը զարնելով սպաննէ, ինչպէս մենք սովորաբար որ և իցէ ատելի փոքր կենդանի մը սպաննելու ատեններս կ'ընենք։ Բայց բաղ-

(1) Կէյմինկք։

դէս՝ կ'երևար թէ ձայնիս ու շարժմանցս հաւնելով, հետաքրքրական բանի մը պէս ինձ կը նայէր, և երբ խօսքեր արտասանելս լսեց՝ շատ զարմացաւ, թէպէտ և ըսուածներս չէր կրնար հասկընալ.

Սա միջոցիս՝ իմ հեծեծանքս և արտասուքս չէի կրնար զսպել, և գլուխս երկու կողմն դարձընելով, կրցածիս չափ հասկցընել կ'ուզէի իրեն՝ թէ մատներուն սեղմելուն շատ ցաւ կը զգայի. Կ'երևի թէ միտքս հասկցաւ. քանզի վերարկուիս քղանցքը (1) վերցընելով, կամաց մը զիս մէջը դրաւ, ու անմիջապէս վազեց իր տիրոջը տարաւ, որ չափաւոր ունեւոր երկրագործ մը՝ ու դաշտին մէջ առջի տեսած մարդս էր.

Երկրագործը իր ծառայէն իմ վրայօքս տեղեկութիւն առնելով (ինչպէս որ խօսքէնէն մակաբերեցի), գաւազանի մը չափ յարդի ցօղուն (2) մը առաւ, ու անով վերարկուիս քղանցքը վեր վերցուց. Կ'երևի թէ բնական ծածկոյթ կարծեց զանոնք. և մազերս փչելով մէկ դի բրաւ, որպէս զի երեսս աւելի աղէկ տեսնէ, և իր գեղջուկ ծառաները քովը

(1) Հագուստին վարը կախուած ծայրերը.

(2) Բուսոց բունը, ծիղք. չեօփ.

կանչելով, հարցուց անոնց (ինչպէս որ ետքը ինծի պատմեցին), թէ ինծի նըմանող փոքր կենդանի մը երբէք տեսա՞ծ են արտերուն մէջ։ Ասա՝ կամաց մը չորս ոտից վրայ գետինը դրաւ զիս, բայց ես իսկոյն ելայ կանգնեցայ, ու փախչելու միտք չունենալս իրենց ցուցընելու համար՝ սկսայ ծանրութեամբ երթալ գալ։

Երբ շարժուածքս աւելի աղէկ դիտելու համար՝ չորս դին բոլորուելով գետինը նստան, ես գլխարկս հանելով, գետնէն երկրպագործին խոնարհութիւն ըրելէս ետև՝ ծնկան վրայ եկայ, աչքս ու ձեռքս վեր անկելով, և կրցածիս չափ բարձր ձայնով քանի մը խօսք խօսեցայ։ Յետ այնորիկ՝ գրպանէս ոսկւով լեցուն քսակ մը հանեցի, ու խոնարհաբար անոր ներկայացուցի։ Ձեռքը բանալով ընդունեց զան, ու անոր ինչ ըլլալը տեսնելու համար աչացը մօտեցուց, և դընդասեղի մը ծայրովը (որն որ իր թեզանիքին (1) վրայէն հանեց) քանի մը անգամ դարձուց զան, բայց բան մը չկըրցաւ հասկընալ։

Ասոր վրայ՝ նշան ըրի անոր որ ձեռքը

(1) Զգեստի թև։

դետնի վրայ դնէ, ու քսակը առնելով բացի, և մէջի բոլոր ոսկիները անոր ափին մէջ պարպեցի, որոնք մէջը կար Սպանիոյ ոսկի (1) և քանի կամ երեսուն հատ առանցմէ փոքր ոսկիներ էին. Նայեցայ որ իր ճկոյթը (2) լեզուին դպցնելով թրջեց, ու մեծագոյն ոսկիներէն մէկուն դպցնելով վեր վերցուց, և ետքը ուրիշ մը ևս նոյնպէս ըրաւ. բայց կ՚երևար թէ անոնց ինչ ըլլալուն վրայօք ամենևին տեղեկութիւն չունէր. վասնզի նշան ըրաւ որ զանոնք նորէն քսակս լեցընեմ և դարձեալ գըրպանիս մէջ դնեմ. ուստի զան քանի մը անգամ անոր մատուցանելէս ետև որ ընդունի, գրպանիս մէջ դնելը յաւագոյն սեպեցի.

Ընատեն՝ երկրագործը իմ բանական կենդանի ըլլալուս համոզուեցաւ. շատ անգամ հետս խօսեցաւ, և թէպէտ իր ձայնին հնչիւնը ջրաղացի (3) ձայնին չափ ականջս կը ծակէր, սակայն իր խօսքը բաւական որոշ էին. Զանազան լեզուակրցածիս չափ բարձր ձայնով պատասխան տուի, և ան շատ անգամ երկու կան-

(1) Տուպլօն. կամ Տանձկաստանի 361 դահեկանի արժողութեամբ ոսկի: (2) Փոքր մատ. (3) Սու՚տէյիրմէնի:

գոտնի չափ հեռաւորութեամբ ականջ-ները ինձ կը մօտեցընէր · բայց դուր-տեղը, ինչու որ ամենևին իրարու խօս-քը չէինք հասկընար ։

Այնուհետև իր ծառաները գործեր-նուն խրկելով, Թաշկինակը գրպանէն հա-նեց, ու երկու ծայրը բռնելով, զան իր ձախ ձեռացը վրայ տարածեց, ձեռքը բացաւ, գետնի վրայ դրաւ, և ինձ նը-շան ըրաւ որ անոր վրայ ելնեմ · աս ը-սածը դիւրաւ կրցի ընել, որովհետև ձեռքին հաստութիւնը ոտնաչափէ մը աւելի չէր · ուստի յօժարակամ հնազան-դեցայ, և որպէս զի չըլլայ թէ վար ի-նամ՝ բոլոր երկայնութեամբս Թաշկինա-կին վրայ պառկեցայ, որուն մէջ բոլոր անձս ամփոփեց · ահա այս կերպով ա-ռաւ զիս իր տունը տարաւ, ու իր ա-մուսինը կանչելով, զիս անոր ցուցուց · բայց ան զիս տեսածին պէս՝ Անգղիոյ կանանց սարդ (1) կամ արջնագորտ (2) մը տեսած ատեն ըրածնուն նման՝ ահ-ռելի ճիչ մը ձգելով, ետ փախաւ ։ Ինչ և իցէ՝ քիչ մը ատեն ընթացքս, ու իր էրկանը ինձ ըրած նշանները աղէկ դի-տելս տեսնելով, նորոյն հանդարտեցաւ,

(1) Էօրիւմճէկ ։ (2) Գարա գուրպաղա ։

ու երթալով չափէ դուրս գութ ունեցաւ վրաս։

Այս օրուան մօտ, ծառային մէկը՝ գիւղացիի մը պարզ վիճակին համեմատ աման մը մսեղէն սննդարար կերակուր բերաւ, աս ամանին տրամագիծը քսան ու չորս ոտնաչափի կը հասնէր.

Սեղան նստողներն էին երկրագործը և իր կինը, իր երեք զաւակները, ու ծերունի հանի (1) մը. երկրագործը զիս իրմէ քիչ մը հեռու սեղանին վրայ դրաւ, որ գետնէն երեսուն ոտք բարձր էր։ Սոսկալի երկիւղով մը կրցածիս չափ սեղանին եզերքէն դէպ ի ներսի դին կը քաշուէի, որ չըլլայ թէ վար իյնամ։ Կինը միսի կտոր մը առնելով մանրեց, ափսէի մը վրայ դրաւ, և քիչ մը հաց փշրելով առջևս հրեց. խոնարհութիւն մը ընելով, դանակս ու պատառաքաղս հանեցի, և սկսայ ուտել, որով չափազանց զուարճացուցի զանոնք.

Տիկինը իր աղախինը ղրկելով, փոքրիկ բաժակ մը բերել տուաւ, որ երկու գալօնի (1) չափ բան կ՚առնէր, ու ըմպելիքը լեցնելով՝ ինձ տուաւ. երկու ձեռքովս դժուարաւ վերցուցի զան, ու խիստ

(1) Նէնէ.   (2) Մէկ կալօնը 1000 տրամ է։

ակնածութեամբ տիկնոջս կենացը խմեցի՝ կրցածիս չափ բարձր ձայնով խօսքերս Անգղիարէն յայտնելով, որուն վրայ սեղանակիցներս ան աստիճան բարձրաձայն ծիծաղ մը ձգեցին, որ գրեթէ ականջներս խլցան ։

Աս ըմպելիքը թեթեւ մրգօղիի (1) համ ունէր, ու անհաճոյ չէր ։ Ինկէ ետեւ՝ տանուտէրը նշան ըրաւ որ իրեն մօտենամ ։ Ուստի՝ սեղանին վրայ քալած ատենս՝ (ինչ մեծ շփոթութեան մէջ ըլլալս ներողամիտ ընթերցողս իսկ դիւրաւ կրնայ երեւակայել) պատահմամբ մը ոտքս հացի կողինձի (2) մը զարնելով, երեսի վրայ ինկայ ։ բայց վնաս մը չկրելով իսկոյն ցատկեցի ոտքի վրայ ելայ, եւ նայեցայ որ աս բարի մարդիկը շատ ցաւեր էին ինծի համար ։ ուստի գլխարկս ձեռքս առնելով որ պարկեշտութեան համար անթիւ տակը կը կրէի, ու գլխուս վրայէն քանի մը անգամ դարձընելով, երեք անգամ ուրախութեան ձայներ հանեցի՝ ցուցընելու համար թէ իյնալէս վնաս մը կրած չէի ։ Երբ դէպ ի տիրոջս կողմը յառաջացայ (որուն այսուհետեւ այս անունը պիտի տամ, (կրտսերագոյն զաւակը, որ

(1) Ցնկլէ շէրապը ։ (2) Հացի կեղև ։ Փնճոլ ։

անոր քովը նստեր էր, ու գրեթէ տասը տարեկան չար տղայ մ' էր, սրունքէս բռնելով, օդուն մէջ անանկ վեր վերցուց, որ երկիւղէս բոլոր անդամներս ոսկրան դողաց ։ բայց հայրը զիս անոր ձեռքէն յափշտակելով, անոր ձախ երեսին մյնակէս ապտակ մը իջեցուց, որ Նուբարայի ձիաւոր զօրաց պուլուկ մը գետինը զարնելու չափ ուժով էր, ու հրրամայեց որ տեղւնէն վերցընեն զինքը ։ բայց վախնալով թէ տղան ինծի ոխ կը պահէ, ու մեր տղոց՝ ճնճղուկներուն, կատուի ձագերուն ու շան լակոտներուն վրայ բնականաբար ինչ սաստիկ անգթութիւն ունենալնին, և անոնց ըրած վնասնին աչքէ յիշելով՝ ծնկան վրայ եկայ, ու մատովս տղան ցուցընելով, կըրցածիս չափ հասկըցուցի տիրոջս թէ իր զաւկին ներումը շնորհելը կը խնդրեմ ։ Հայրը խնդիրքս կատարեց, ու երբ տըղան եկաւ նորէն տեղը նստաւ, գացի ձեռքը պագի ։ Հայրն ալ տղուն ձեռքէն բռնելով, անոր թաթիկովը կամաց մը ինծի զարկաւ ։

Ճաշին ատենը՝ տիկնոջս սիրական կատուն իր ծնկերուն վրայ ցատկեց ելաւ ։ Ետևի կողմէս ձայն մը լսեցի, որ երկո-

տասան գուլպայ հիւսողներուն աշխատած ատեննին եղած ձայներուն կը նմանէր. գլուխս ան կողմը դարձընելով, նայեցայ որ լռած ան կենդանւոյն խորթալու ձայնըն էր, որ եղնէ մը գրեթէ երեք անգամ մեծ կ'երեւէր ինձ, ինչպէս որ տիկնոջս ցան կերակրելու եւ գգուելու ատենը՝ անոր գլուխն ու թաթերը տեսնելով կըրցի դատել։

Աս կենդանւոյն դիմաց կատղութիւնը բոլորովին չփոթեց զիս, թէպէտեւ անորմէ յիսուն տարէն աւելի սեղանին միւս ծայրը կը գտնուէի, ու տիկինս պինդ մը բռներ էր զան, փախնելով որ չըլլայ թէ ցատկէ. ու վրաս յարձակի. բայց այսպիսի վտանգ մը չպատահեցաւ հոն. ինչու որ տէրս երբ զիս բռնելով, անոր երեք կանգուն հեռու նստեցուց, ամենեւին կատուին հոգը չեղաւ։ Նա որովհետեւ շատ անգամ լսած՝ ու ճամբորդութեանց մէջ փորձով ալ տեսած եմ՝ թէ կատուի կենդանիի մը առջեւէն փախչիլը կամ անոր վախ մը ցուցընելը վրադ յարձակելուն կամ ետեւէդ իյնալուն մի միայն ստոյգ ճամբան ցոյց տալ է։ Ասոր՝ աս վտանգաւոր կացութեանս մէջ՝ միտքս դրի որ ամենեւին չփոթութեան կերպա-

բանք մը ցուցնեմ․ Աս պատճառաւ քաջութեամբ հինգ կամ վեցը անգամ կատուին գլխուն առջեւէն անցայ դարձայ, ու կէս կանգուն հեռաւորութեամբ իրեն որ մօտեցայ, եղած տեղէն ետ քաշուեցաւ, իբր թէ ան ինձմէ աւելի կը վախնար․ Շուներէն այնչափ չէի վախնար, որոնցմէ երեքը կամ չորսը սեղանակը եկան՝ գեղացւոց տանց սովորութեան համեմատ․ Ասոնցմէ մէկը գամփռ (1) էր, որ մեծութեան կողմանէ չորս փղի չափ կար․ եւ միւսը որսական բարակ (2) մը, որ գամփռէն քիչ մը աւելի բարձր էր, բայց անոր չափ գեր չէր։

Սեղանէն ելնելու մօտ՝ սանտուն (3) մէկ տարեկան երախայ մը գրկած սենեակը եկաւ․ աս տղեկը զիս տեսածին պէս՝ տղայոց սովորական կերպով այնպէս ճիչ մը ձգեց, որ Լոնտոնի կամուրջէն մինչեւ Չէլսի կը լսուէր, ու կ՚ուզէր որ իբր խաղալիկ մը զիս իրեն տան․ Մայրը անոր սիրտը չկոտրելու համար՝ զիս բռնեց ու անոր առջին դրաւ․ եւ ան մէջքէս բռնածին պէս՝ գլուխս բերնին մէջ խօթեց․ անատեն՝ բոլոր ձայնովս այնպէս պոռալ մը ձգեցի, որ աս չար տղան վախուն զիս ձեռքէն թողուց, եւ

(1) Մեծ կամ պահապան շուն․ (2) Թազը․ (3) Սիւտանա․

թէ որ մայրը իր գոգնոցը (1) տակն բըռ-նած չըլլար, անշուշտ գետինը իյնալով, գլուխս պիտի ջախջախէր։ Ստնտուն տը-ղան հանդարտեցընելու համար՝ սկսաւ անոր մէջքէն պարանով կախուած բոժո-ժը երերցընել, որ մէջը դատարկ ու մեծ քարերով լեցուն տեսակ մը աման էր․ բայց օգուտ մը չըրաւ, ու սուր ճարը հա-նելով, երբ յետին դեղ՝ ծիծը անոր բե-րանը տալու պարտաւորեցաւ․ Ճշմարիտը՝ աս ստնտուին ահագին կուրծքէն աւելի զզուելիք բան մը տեսած չէի, զոր չեմ գիտեր ինչի՞ նմանցընեմ՝ հետաքրքիր ընթերցողիս անոր մեծութեանը, ձեւին, և գոյնին վրայօք գաղափար մը տալու համար։ Վեցը ոտնաչափ դուրս ցցուած էր, ու շրջապատը տասն ու վեցը ոտնա-չափէն պակաս չէր․ Ստիններուն պըտ-կունքը (2) գլխուս կէսին չափ մեծ էին․ ստեանց ու անոնց պտկանց գոյնը՝ արատ-ներով, պալարներով ու պխակներով այնպէս գունաւորեալ էին, որ անկէ ա-ւելի զզուանք բերող տեսք մը չէր կըր-նար ըլլալ։ Ստնտուն գտնուած տեղին դիմացը նստած ըլլալուն՝ ամէն բան կըր-նայի տեսնել։

(1) Փրօշթեկա կամ պոտեւ։ (2) Ծիծին ծայրը։

Մը տեսքը մեր Անգղիացի տիկնանց գեղեցիկ մորթը միտքս ձգեց, որոնց մարմնոյն մեզի այնպէս գեղեցիկ երեւնալուն պատճառը՝ միայն մեր հասակին համեմատ ըլլալուն համար է, և եթէ զանոնք խոշորացոյցով նայելու ըլլանք, անատեն իրենց ամենափափուկ ու հարթ մարմինը մեզի այլանդակ ու տգեղ կ'երեւի։

Կը յիշեմ թէ Լիլիփութ գտնուած ատենս՝ ան կարճ մարդոց գեղեցկութիւնը հիանալի կ'երեւար ինծ․ առնիւթիս վրայ օր մը ան երկրին գիտնականին մէկուն հետ, որ իմ մտերիմ բարեկամն էր, խօսեցած ատենս՝ ըսաւ, «Գետնէն քեզի նայած ատենս՝ երեսդ աւելի գեղեցիկ ու ողորկ կ'երեւար, քան թէ երբ զիս ձեռացդ մէջ առնելով, երեսիդ մօտեցընէիր․ և յիրաւի առաջին անգամ շատ ահռելի երեւցար․ մորթիդ վրայ մեծ ծակեր կան․ մօրուքիդ մազերը խոզի մազերէ տասն անգամ աւելի կարծր են, ու երեսդ զանազան գոյներէ բաղկացած ըլլալով, խիստ տգեղ կ'երեւիս»։ Գիտնալ պէտք է թէ ես իմ սեռիս ու քաղաքացւոցս խիստ շատերուն պէս խարտեաշ (1) եմ, ու արեւէն

(1) Գու. մրուղ ։

խիստ քիչ սեւցած ։ Անգամ մը եւս կայսեր պալատի տիկնանց վրայօք խօսելու ատեննիս՝ ես բարեկամս կ'ըսէր թէ՝ մէկը պիսակներ (1) , միւսը խիստ լայն բերան , և ուրիշ մը խիստ մեծ քիթ ունի ․ Ես այս պակասութեանց և ոչ մէկը նշմարեր էի անոնց վրայ ․ Ճշմարիտը ըսեմ՝ անոնք ընդհանրապէս գեղեցիկ ազգ մը կը ներկայացընեն ։

Թէպէտ վերոյիշեալ խորհրդածութիւնները ոմանց անօգուտ կրնան երեւիլ, բայց այս հսկայ արարածներուն իրօք ազնիւ ըլլալը ընթերցողիս ցուցընելու համար՝ հոս կը նշանակեմ զանոնք ։ Տէրը՝ վաթսուն ոտք բարձրէն տեսած ատենս՝ խիստ գեղեցկադէմ անձ մը կ'երեւէր ինձ ։

Ճաշէն ետև՝ տէրս իր գործաւորներուն քովը երթալու ատենը՝ ըրած շարժմունքէն և ձայնէն հասկըցայ թէ իր ամուսնոյն սաստիկ հրաման ըրաւ որ ինծի աղէկ հոգ տանի ։ Շատ հոգնած ըլլալուս՝ քունս եկաւ ․ տիկինս ալ որ տեսաւ՝ տարաւ զիս իր բուն անկողնոյն մէջ պառկեցուց , և ճերմակ ու մաքուր

(1) Պէնկ ․

Թաշկինակ մը վրաս ծածկեց, որ պատե-
րազմական նաւու մը մեծ առագաստէն
աւելի մեծ ու հաստ էր։

Երկու ժամու չափ քնացայ, ու երա-
զիս մէջ տեսայ որ կնոջս ու զաւակացս
հետ եմ, և աս բանս՝ երբ արթնցայ՝
ցաւերս սաստկացուց, ու նայեցայ որ
երկու կամ երեք հարիւր ոտք լայն,
և երկու հարիւր ոտքի չափ բարձր լայ-
նատարած սենեկի մը մէջ կը գտնուիմ,
ու քսան կանգուն լայնութեամբ անկող-
նոյ մը մէջ միս մինակ պառկած եմ։
Տիկինս իր առտնին գործոցը գացած ըլ-
լալուն՝ դուռը վրայէս կղպեր էր։ պառ-
կած անկողինս գետնէն ութը կանգուն
բարձր էր, և թէպէտ բնական հարկա-
ւորութիւնները կը պահանջէին որ վար
իջնամ, բայց տիկինս կանչելու չէի հա-
մարձակեր, և եթէ կանչէի իսկ՝ ձայնս
չհասնելով զուր տեղը պիտի ըլլար պո-
ռալս, որովհետև սենեակս խոհարա-
նէն (1) շատ հեռու էր։

Այս միջոցիս՝ երկու մուկ անկողնոյս
վարագոյրներէն վեր ելան, ու հոտոտե-
լով անկողնոյն վրայ աստիս անդին վա-
զեցին։ Անոնց մէկը երբ գրեթէ մինչև

(1) Աշխանէ։

երեսիս մօտեցաւ՝ ահուդողով մը ցատ-կեցի ելայ, ու ինքզինքս պաշտպանելու համար դաշոյնս մերկացուցի։ Աս սոս-կալի կենդանիները երկու կողմէս վրաս յարձակելու յանդգնեցան, ու անոնց մէկը առջևի թաթերը երկնցընելով օձի-քէս բռնեց, բայց շատ բաղդաւոր գտ-նուեցայ որ ինծի վնաս մը չհասցուցած՝ դանակս անոր փորը խոթեցի, որով ո-տիցս ներքեւը ինկաւ սատկեցաւ, իսկ միւսը իր ընկերին գլխուն եկածը տես-նելով, փախչելու ատենը՝ գանկին այն-պէս հարուած մը իջեցուցի, որ անցած տեղերը բոլորովին արեամբ ներկեց։

Աս քաջութենէս ետեւ՝ սկսայ անկող-նոյս մէջ պտըտիլ, որ շունչս տեղը գայ ու խելքս գլուխս։ Աս կենդանիները գամփռի մեծութիւնը ունէին, բայց ա-նոնք շատ աւելի կատաղի ու արագաշարժ էին, այնպէս որ եթէ պառկելէս առաջ սուրիս կամարը մէջքէս հանած ըլլայի, զիս կտոր կտոր ընելով, անտարակոյս պի-տի լափլիզէին։ Սատկեցուցած մուկիս պոչը չափեցի, նայեցայ որ երկու կան-գունէն բթաչափ մը պակաս էր, բայց անոր սատակը քաշելով անկողնէս վար նետելու ջանեցայ։ Ու որովհետեւ տա-

կաւին կենդանութեան նշան կու տար , կոկորդին սաստիկ հարուած մը տալով սպաննեցի զան ։

Շատ չանցաւ՝ տիկինս եկաւ ու զիս արիւնաշաղախ տեսնելով , վազեց բռնեց զիս ու ձեռացը մէջ առաւ · Ժպտելով մը սատկած մուկը ցուցրցի , և նշաններով հասկըցուցի անոր թէ վիրաւորեալ չէի ։ Նոր միայ՝ չափազանց ուրախանալով , իր աղախինը կանչեց որ ունելիքով մը սատկած մուկը բռնէ ու պատուհանէն դուրս նետէ ։ Այնուհետև զիս սեղանի մը վրայ դրաւ , ու ես արեամբ շաղախած դաշոյնս անոր ցուցրցի , և զան վերարկուս քղանցքովը մաքրելով , նորէն պատեանին մէջ դրի ։

Այս միջոցին՝ խիստ սոփյուած ըլլալով , նշաններով հասկըցուցի տիկնոջս թէ վար իջնալ կ՚ուզեմ · ու երբ իջեցուց , մատովս դուռը ցուցրնելէն ու զանազան անգամ խոնարհութիւն ընելէն ուրիշ բան մը հասկըցընելու կ՚ամչնայի ։ Այս բարի կինը շատ դժուարութեամբ վերջապէս միտքս հասկըցաւ , ուստի նորէն զիս ձեռքին մէջ առնելով , պարտէզը տարաւ , ու հոն վար դրաւ զիս ։ Երկու հարիւր կանգունի չափ հեռու մէկդի

քաշուելով, նշան ըրի որ ինձ չնայի կամ ետեւէս չգայ, և Թրլմնջուկի (1) երկու ոտքներու մէջ տեղը պահուելով, բընութեան պահանջած պէտքը վճարեցի։

Կը յուսամ որ ազնիւ ընթերցողս ներողամիտ պիտի ըլլայ ինծի՝ աս և ուրիշ ասոնց նման պարագայից վրայօք երկարարակ խօսելուս համար, որոնք թէպէտև ռամկաց աչքին տղայական կամ ամօթալի բաներ կ'երևին, այսու ամենայնիւ կարող են փիլիսոփաներուն մըտաց մէջ մանաւորի կամ հասարակութեան օգտին համար գործնական դարափարներ ծագել տալ, որն որ իմ ճամբորդութեանցս հրատարակութեանը միակ նպատակն է։ Ուստի գիտութաբար առանց ոճով կամ գիտութեամբ զարդարելու՝ ճշմարիտը պատմելու հոգ տարի։ Իմ ճամբորդութեանս մէջ պատահածները ամենչափ ազդութիւն ըրին ինձ, ու մտացս մէջ ամենպէս խորունկ հաստատուեցան, որ ամենևին կարևոր պարագայ մը դուրս ձգած չեմ։ Այսու ամենայնիւ՝ գրութիւնս վերստին աչքէ անցուցած ատենս՝ քանի մը տղայական

(1) Բոյս մը։ Գառնուկ Գուռլոյպ։

անցքը աւրեցի, որպէս զի իբրև չարա-
խօս կամ գլուխ ցուցընող չրամիա-
սուիմ, ինչպէս որ շատ ճանապարհորդ-
ներ աս պատկառութեանց մէջ ինկած են։



# ԳԼՈՒԽ Բ.

*Երկրագործին աղջկան նկարագրութիւնը ։ Հեղինակը վաճառաշահ քաղաք մը կը տարուի ․ և անկէ մայրաքաղաքը ։ Իր ճամբորդութեան մասնաւոր պարագաները ։*

ՏԻԿԻՆՍ ինը տարեկան աղջիկ զաւակ մը ունէր, որ տարիքին պզտիկութեանը նայելով՝ ասեղնագործութեան մէջ շատ յաջողակ էր, և իր պաճուճապատանքը (1) շինելու ու հագուեցնելու արհեստին մէջ խիստ ճարպիկ ։ Աղջիկն ու իր մայրը աշխատեցան պաճուճապատանքին օրօրոցը շինելու որ գիշերը անոր մէջը պառկիմ․ աս օրօրոցը փոքր դարանի մը մէջ դրուած և մուկներէն փախերնուն՝ առաստաղէն կախեալ դարակի մը վրայ տեղաւորուած էր, որչափ ժամանակ որ այս մարդոց հետ բնակեցայ՝ իմ անկողինս ան եղաւ․ և երբ անոնց լեզուն քիչ մը սորվեցայ և կրցի պէտք եղածը հասկցընել՝ աւելի հանգիստ եղայ ։ Նա երիտասարդ աղջիկը

(1) Պէպէք ։

այնպէս յաջողաձեռն էր, որ մէկ երկու անգամ՝ աչքին հանուելով, այնուհետեւ կրնար զիս հագուեցընել ու հանուեցընել, թէեւ ես աս նեղութիւնը ամենեւին իրեն տալ չէի ուզեր։ Ինծի եօթը շապիկ ու քանի մը ուրիշ կտաւեղէն շինեց՝ ըստ կարի գտնուած բարակ կտաւներէ, որ արդարեւ տոպրակ շինելու կը-տաւներէն աւելի հաստ էր, ու ինքը միշտ իր ձեռօքը կը լուար զանոնք։ Լեզուն սորվելու համար իմ վարպետուհիս ան էր. մատովս բան մը ցուց տուած ատենս՝ ան իր լեզուաւ անոր անունը կուտար, այնպէս որ քանի մը օրուան մէջ ուզածս կրնայի բերնով յայտնել։ Շատ աղէկ բնութիւն մը ունէր, ու իր անձին բարձրութիւնը, որ տարիքին նայելով կարճ էր, քառասուն ոտքէն աւելի չէր։ Անունն Կլըմտըլքլիչ դրաւ, որ ընտանիքն իսկ գործածելով, բոլոր տէրութեան մէջ շուտով տարածուեցաւ։ Սա բառը Լատիներէն՝ նանունգուլուս, Իտալերէն՝ օմընչելլինօ, ու Անգղիարէն՝ Մէնիքին բառերուն նշանակութիւնը ունի, որ և Հայերէն մարդապատիկ կը նշանակէ։

Սա քաղաքին մէջ պահպանուելուս

համար գլխաւորաբար աս աղջկանը պարտական եմ․ քանի որ հոն կը գտնուէի, բնաւ իրարմէ չէինք զատուեր․ ու ես զինքը Կլմտալքլիչ կը կոչէի, կամ պզտիկ սնուցիչս ։ Խիստ ապերախտ պիտի սեպուէի, թէ որ վրաս ունեցած սիրոյն ու հոգածութեան պատուելի յիշատակը մոռնայի ։ Յօժարակամ կը բաղձամ որ կարող ըլլամ անոր ինծի ըրած ծառայութեանց փոխարէնը ընել, այլ կը վախնամ որ պատճառ եղած պիտի ըլլամ անոր իր հօրը աչքէն իյնալուն, թէպէտև աս պարագային մէջ ես յանցաւոր չեմ ։

Ան ատեն բոլոր դրացեաց մէջ տարածուեցաւ թէ երկրագործ տէրս՝ դաշտին մէջ Սփլաքնուքի մեծութեամբ սպլանդակ կենդանի մը գտած է, որ ամենայն մասամբ մարդկային ստեղծուածի կը նմանի, և իր ամէն գործողութեանց մէջ մարդէ երբէք չորոշուիր ։ Կը թուի թէ տեսակ մը իրեն յատուկ լեզու ունի, որ ինքը միայն կը հասկընայ և թէ արդէն իրենց լեզուաւ քանի մը խօսք կը խօսի ։ Երկու ոտից վրայ շիտակ կանգնած կը քալէ, ընտանի ու բարեբարոյ է, կանչուած ատենը կու գայ, իրեն հրամայուածը կ՚ընէ, աշխարհիս մէջ ամե-

ռէն ազնիւ անդամները ունի, իր երեսի գոյնը երեք տարեկան ազնուական աղջկան մը երեսի գոյնէն աւելի գեղեցիկ է։

Արկղագործ դրացին մէկը, որ տիրոջս մտերիմ բարեկամն էր, երբ աս պատմութիւնս ստուգելու համար յատկապէս այցելութեան եկաւ, անմիջապէս զիս անոր առջին հանեցին, ու սեղանի մը վրայ դրին, ուր հրամաննուն համեմատ քալեցի, դաշնակս մերկացուցի, ու նորէն տեղը դրի, տիրոջս հիւրին յարգանքս մատուցի, և իրենց լեզուաւը՝ ճիշդ պզտիկ սնուցչիս սորվեցուցածին համեմատ՝ Բարի էք էկեր, Ի՞նչպէս էք, Աղէ՞կ էք, ըսի։ Աս մարդը ծեր ու կարճատես մէկը ըլլալուն՝ ակնոցը քիթը դրաւ որ զիս աղէկ մը տեսնէ. ասոր աս ըրածին վրայ չկրնալով, բարձրաձայն ծիծաղեցայ. քանզի անոր աչքը՝ սենեկի մը երկու պատուհաններէն ներս ծագած լրացեալ լուսնի նման կը փայլէին։ Մեր տնեցիք խակ ծիծաղելուս պատճառը հասկընալով, սկսան հետս ծիծաղիլ. ասոր վրայ ծերը յիմարաբար սկսաւ բարկանալ, ու դէմքը կնճռել։ Աս ծերը երեսանց խիստ կծծի կ'երևար, և իր աղահութիւնը իմ անբաղդութենէս խկոյն յայտնի ըրաւ՝

տիրոջս խրատ տալով որ առաւօտուրի օ-րեր մեր տունէն քաշն ու երկու մղոն հե-ռու քաղաքին մէջ ստակով զիս ժողո-վրդեան ցուցընէ. աս քաղաքը ձիով երթալու համար կէս ժամ կը քշէր. Տիրոջս և իր բարեկամին երկար ատեն մէկտեղ փափսալով խօսելէն և երբեմն մատով զիս ցուցընելէն կռահեցի թէ իմ վրաս չարութիւն մը կը խորհին, ու վախս ինձ երևակայել տուաւ որ իրենց խօսքին մէկ քանիին լսեցի ու հասկցայ.

Բայց հետևեալ առտուն՝ Գլիմտալքլիչ իմ պզտիկ սնուցիչս ամէն բան ինձ պատ-մեց, որ վարպետութեամբ մօրը բերնէն առեր էր. Խեղճ աղջիկը զիս իր գիրկը առնելով, սկսաւ լալ. Կը վախնար որ չըլլայ թէ ան բիրտ ու շինական անձե-րէն փորձանք մը գայ գլուխս, որոնք զիս ձեռքերնին առնելով, կարելի էր որ սեղմելով հոգիս հանեն, կամ անդամներս մէկը կոտրեն. Նոյնութեամբ ո՛րչափ պար-կեշտ ու պատուոյ ի՛նչչափ հոգ ունե-նալս աղէկ գիտած ըլլալով, սրտանց կը ցաւէր որ ստակի համար խիստ հասա-րակ ժողովրդեան հետաքրքրութիւնը հը-րապարակաւ պիտի լեցընեմ. աս բանը ինձ ո՛րչափ անպատուութիւն համարելս

շատ աղէկ կը հասկընար ։ « Հայրս ու մայրս , ըսաւ աղջիկը , ինծ խօսք տուեր էին որ Ֆրիտէրիկ իմս ըլլայ , բայց հիմա կը տեսնեմ որ անցած տարի ըրածնուն պէս ընել կ՚ ուզեն , որոնք ինծ գառնուկ մը տուին , ու երբ գիրցածին պէս մսավաճառի մը ծախեցին զան » ։ Ստոյգ կրնամ ըսել թէ ես սնուցչիս չափ չխռովեցայ ։ Շատ մեծ յոյս ունէի թէ օրին մէկը ազատութիւնս ձեռք կը ձգեմ ։ իսկ իբր հրէշ տաղիս անդին ի ցոյց տարուելու խայտառակութեան համար մտածեցի թէ ան երկրին մէջ ես բոլորովին օտարական ըլլալով , Անգղիա գացած ատենս՝ այսպիսի դժբաղդութիւն մը ինծ անարգանք չկրնար սեպուիլ ։ որովհետեւ իմ տեղս Մեծին Բրիտանիոյ Թագաւորը ինքը ըլլար , աս նեղութիւնները կրելու պիտի համբերէր ։

Տէրս իր բարեկամին խրատուցը հետեւելով , սնտուկի մը մէջ դրաւ զիս և հետեւեալ օրը իր պզտիկ աղջիկը ձիուն գաւակին վրայ առած մերձակայ քաղաքին վաճառատեղին տարաւ ։ Սնտուկը ամէն կողմէն գոցած էր , միայն փոքրիկ դուռ մը թողուցած էր որ ներս մտնեմ ելնեմ , ու օդ առնելու համար փոքրիկ

գչերով (1) քանի մը ծակեր բացած էր ։

Աղջիկանը վրան ունեցած հոգը այնչափ շատ էր որ իր պաճուճապատանքին անկողնոյն վերմակը անոր մէջը դրեր էր որ վըրան պառկիմ ։ Ինչ և իցէ՝ իրաւ այս ճամբորդութիւնը միայն կէս ժամ անեց, բայց շատ անհանգիստ եղայ սաստիկ ջարդմունքէն ․ քանզի ձին ամեն մէկ քայլափոխին՝ քառասուն ոտնաչափ տեղ առներուն՝ այնչափ բարձրէն կ'ընթանար, որ ոյս տատանեալ մը ալէկոծ նաւու մը երերին կը հաւասարէր, բայց աւելի ստէպ էր ։ Մեր ընելու ճամբան՝ Լոնտոնէն մինչև Սէյնթ Ալբընս երթալու հեռաւորութենէն քիչ մը աւելի էր ։

Տէրս իր սովորական պանդոկը իջաւ, և պանդոկապետին հետ քիչ մը ատեն խորհուրդ ընելէն, ու քանի մը հարկաւոր ըլլալու պատրաստութիւններ տեսնալէն ետև՝ կրուլթրուտը այսինքն մունետիկը (2) վարձքով բռնեց, որ երթայ բոլոր քաղաքին մէջ բարձրաձայն ծանուցանէ թէ՝ Կանանչ Արծուի նշանը ունեցող պանդոկին մէջ այլանդակ կեն-

(1) Պուրղու ։ (2) Թէլլալ ։

դանի մը ի ցոյց պիտի դրուի, որ սփլաք-նըքի մը չափ] կայ (սփլաքնըքը ան երկրին մէջ խիստ գեղեցկատեսիլ ու գրեթէ վեցը ոտնաչափ երկայնութեամբ կենդանի մ'է,) և ամեն կողմանէ մարդու կը նմանի, կրնայ քանի մը խօսք խօսիլ, ու հազար և մէկ զուարձալի խաղեր ընել:

Պանդոկին ամենէն մեծ սրահին մէջ գրեթէ երեք հարիւր քառակուսի ոտնաչափ մեծ սեղանի մը վրայ դրին զիս: Իմ պզտիկ անուցիչս սեղանին մօտ՝ ցած աթոռի մը վրայ նստած էր, որ իմ վրաս հոգ տանի, ու ընելիքս ինծի ցուցընէ: Տէրս խուռն բազմութենէ զգուշանալու համար, ամեն մէկ անգամին՝ միայն երեսուն հոգի կը ձգէր որ ներս մտնեն: աղջկան հրամանին համեմատ՝ ես սեղանին վրայ աստիս անդին կը պտըտէի, ու իրենց լեզուին մէջ ունեցած կարողութեանս համեմատ հարցմունք կ'ընէր ինծի, և ես ըստ կարի բարձր ձայնով կը պատասխանէի: Շատ անգամ ժողովըրդեան դառնալով, խոնարհ յարգանքս կը մատուցանէի, Բարի էք էկեր, և ուրիշ սորված քանի մը խօսքս ըսելով: Խմելիքով լեցուն մատնոց մը առի, որ բաժակի տեղ Կլիմտալքլիչ ինծի տուեր էր,

հանդիսատեսներուն կենացը խմեցի · դաշոյնս մերկացուցի, ու Ընգզիոյ մէջ արախադ վարժապետաց պէս ճօճեցի · Սնուցիչս յարգի կտոր մը տուաւ ինձ, ու ես երիտասարդութեանս մէջ նիզակախաղութիւնը սորված ըլլալուս՝ իբր նիզակ զան ձեռքս առնելով, կրթութիւններ կ՚ընէի ·

Ան օրը տասն ու երկու անգամ երեսնական հանդիսատեսներ եկան, ու նոյնչափ անգամ այս այլանդակ գործողութիւնները ընելու պարտաւորեցայ, այնպէս որ աշխատութենէս ու սրտնեղութենէս գրեթէ կիսամեռ եղայ · քանզի զիս տեսնողները դուրս ելածնուն պէս՝ այնպէս զարմանալի լուրեր կը հրատարակէին, որ գրեթէ ժողովուրդը ներս մտանելու համար դուները կոտրելու կը պատրաստուէին ։ Տէրս իր բուն շահուն համար չէր ձգեր որ սնուցիչս զատ մէկը ինծի դպչի, ու վտանգը խափանելու համար՝ ինծի չդպչելու չափ հեռաւորութեամբ նստարաններ դրեր էին սեղանին չորս դին ։ Բայց դպրատուն գացող չար տղուն մէկը գլխուս նշան առնելով, կաղին մը նետեց, և քիչ մնաց որ գլխուս պիտի զարնէր · սակայն այնպէս ուժով

նետած էր, որ եթէ զարնելու ըլլար, անշուշտ ուղեղս պիտի ցրուէր, որովհետեւ նետած կաղինը գրեթէ փոքրիկ դըդումի չափ մեծ էր. բայց ուրախութեամբ տեսայ որ սա անզգամին աղէկ ծեծ մը քաշելով, դռնէն դուրս վըռընտեցի։

Տէրս հրապարակաւ ծանուցում ըրաւ թէ հետեւեալ առուտուրի օրը զիս նորէն ի ցոյց պիտի հանէ, եւ աւելի հանգիստ կառք մը պատրաստեց ինծի համար, ինչու որ առջի ճամբորդութենէս, ու հանդիսատեսներս ութը ժամ՝ շարունակ զբօսցընելս այնչափ յոգնած էի, որ հազիւ թէ կրնայի ոտից վրայ կանգնիլ կամ խօսք մը խօսիլ, ու հազիւ երեք օրուան մէջ ոյժս նորէն տեղը եկաւ։

Կարծես թէ տանս մէջ իսկ զիս հանգիստ չձգելու համար՝ հարիւր մղոն հեռու բնակող ազնուականները համբաւս լսելով, տիրոջս տունը կու գային։ Ոմանք իրենց կիներովը և զաւկներովը երեսուն հոգիէն պակաս չէին (քանզի սա երկիրը խիստ բազմամարդ է), ու տէրս տանը մէջ զիս ցուցցած ատենը՝ լեցուն սենեկի մը վարձք կ՚ուզէր, թէեւ եկողները միայն առանձին ընտանիք մը իսկ ըլլային,

այնպէս որ շաբթուան ամեն օրը (բացի Չորեքշաբթի օրէն, որ իրենց Սիրակին է) քիչ անգամ կ'ըլլար որ հանգստութեամբ անցընէր, թէև քաղաքը տարուած չըլլայի։

Երբ տէրս նայեցաւ որ կրնամ շատ շահ բերել իրեն, միտքը դրաւ զիս տէրութեան խիստ երևելի քաղաքները տանիլ։ Ուստի երկար ճամբորդութեան համար բոլոր պէտք եղածները պատրաստելով, ու իր քաղաքին մէջ ունեցած գործերը կարգի դնելով, կնոջը իր հրաժարական ողջոյնը տուաւ, ու 1703, Օգոստոս 17ին, իմ հոն հասնելէս երկու ամիսի չափ ետքը՝ մայրաքաղաքը երթալու ճամբայ ելանք, որ նոյն տէրութեան գրեթէ մէջ տեղը կառուցած ու մեր տընէն երեք հազար մղոնի չափ հեռու է։ Տէրս իր Կլըմտալքլիչ աղջիկը իր ձիուն ետևը հեծցուց, որ զիս մէջքէն կապած սնտուկի մէջ դնելով, իր ծունկերուն վրայ բռնած էր․ աս սնտուկին ներքին ամեն կողմը՝ կարելի եղածին չափ գըտնուած խիստ բարակ չուխայով պատեր, ու իր պաճուճապատանքին անկողինը անոր մէջ դրեր էր․ կառուէղէն և ուրիշ ամեն պէտքս հոգալով, հետը առեր էր։

Տանը մանչէն զատ ուրիշ ճամբու ընկեր չունէինք, որ կահ կարասեաց հետ ձիով ետեւնէս կու գար:

Տիրոջս դիտաւորութիւնը ճամբուն վրայ գտնուող բոլոր քաղաքաց մէջ զիս ի ցոյց հանել, ու իր ճամբէն դուրս՝ մինչեւ յիսուն կամ հարիւր մղոն հեռու ուր եւ իցէ գիւղ կամ ազնուականի մը տունը երթալ էր, ուր որ հետաքրքիրներ գտնել կը յուսար: Օրը հարիւր քառասուն կամ հարիւր վաթսուն մղոնէն աւելի ճամբայ չէինք ընէր հանգստութեան համար· վասնզի Գլիմտալքլիչ ինձ խնայելու դիտաւորութեամբ գանգատ կ'ընէր՝ թէ ձիուն ընդոստ ընթացքէն յոգնած է· շատ անգամ՝ ուզած ատենս՝ զով օդ առնելու եւ երկիրը տեսնելու համար սնտուկէն դուրս կը հանէր զիս· բայց միշտ անթերուս տակէն չուան մը անցնելով, զիս պինդ մը կը բռնէր: Հինգ - վեցը գետերէ անցանք, որոնք Գանգէսէն շատ աւելի լայն ու խորունկ էին, եւ հազիւ թէ Լոնտոնի կամուրջին տակէն անցնող Թէյմզ գետին չափ փոքր վտակ մը տեսանք: Մեր ճամբորդութիւնը տասը շաբաթ տեւեց, ու ես տասն եւ ութը քաղաքաց մէջ ի ցոյց դրուեցայ՝ ա-

ռանց բազմաթիւ գիւղերը և մասնաւոր գերդաստանները հաշուելու ։

Հոկտեմբերի 26ին՝ մայրաքաղաքը հասանք, որ իրենց լեզուաւ Iջրպըր—Լիրոփ, կամ Պարծանք Լ․ձասրհի կրկոչուէր ։ Տէրըս արքունական պալատին մօտ՝ քաղաքին երևելի փողոցին մէջ բնակարան մը բռնեց, ու ըստ սովորութեան յայտարարական թղթերով անձիս ու յատկութեանցս ճիշդ նկարագրութիւնը հրատարակեց ։ Նախ երեք չորս հարիւր ոտք լայնութեամբ մեծ սրահ մը վարձեց, անոր մէջ վաթսուն ոտք տրամագիծով սեղան մը դրաւ, որուն վրայ իմ խաղալիկութիւններս պիտի ընէի, և որուն եզերքին չորս դին երեք ոտք ներսէն և երեք ոտք բարձրութեամբ ցցապատնէշ մը քաշեց որ վար իյնալս խափանէ ։ Օրը տասն անգամ ի ցոյց կը հանէր զիս ի զարմացումն և ի հաճութիւն բոլոր ժողովրդեան ։

Անտեն ես իրենց լեզուն ըստ բաւականին կրնայի խօսիլ, ու բոլոր ըսածնին կատարելապէս հասկընալ ։ Ասկէց զատ՝ իրենց այբուբէնն իսկ սորված էի, և թէ որ ջանք ընէի՝ կրնայի կարդացածիս մեկնութիւնը տալ. քանզի թէ՛ իր հօրը

տունը եղած ատեններս, և թէ ճամբորդութեան պարապ ժամանակացս մէջ Սըմոուքըլէչ ինծի վարժապետութիւն կ'ընէր։ Իր գրպանին մէջ փոքրիկ գիրք մը ունէր, որ Սանսընի Ռոլայէն շատ մեծ չէր, ու երիտասարդ աղջկանց գործածութեանը համար՝ իրենց կրօնքին համառօտ պատմութեանը վրայօք գրուած մ'էր. աս գրքիս վրայ կը սորվեցընէր ինծի այբուբէնը, ու բառերը կը թարգմանէր։



## ԳԼՈՒԽ Գ.

*Հեղինակը պալատը կը կանչուի ։ Թագուհին՝ զինքը երկրագործէն ծախու կ'առնէ , ու Թագաւորին կընծայ կ'ընէ ։ Հեղինակը նորին մեծափառութեան գիտնականաց հետ հակաճառութիւն կ'ընէ ․ Պալատին մէջ իրեն համար բնակարան մը կը պատրաստուի ։ Թագուհւոյն շատ սիրելի կըլլայ ։ Իր հայրենեաց պատիւը կը պաշտպանէ ։ Թագուհւոյն թզուկին հետ կը կռուի ։*

Ամէն օրուան քաշած այսպիսի ծանըր աշխատանքէս՝ առողջութիւնս քանի մը շաբաթուան մէջ խիստ մեծ փոփոխութիւն ստացաւ ․ քանզի տէրս որչափ կը վաստըկէր , այնչափ աչքը չէր կշտանար ։ Ախորժակս բոլորովին կորսնցընելով , գրեթէ կմախք(1) մը դարձեր էի ։ Երկրագործը իմ աս վիճակս դիտելով , ու մակաբերելով թէ շատ չերթար պիտի մեռնիմ՝ որոշեց որ կրցածին չափ օգուտ քաղէ ինձմէ ։ Այսպէս խորհած ու իր դիտաւորութեանը հաստատութիւն տուած ատենը՝ Թագաւորին պալատէն սարփէղ կամ զինակիր ասպետ մը

(1) Ցնուելի ոսկոր ։

եկաւ, ու հրամայեց տիրոջս որ զիս առնէ պալատը տանի՝ Թագուհին ու անոր տիկինները զբօսցընելու համար :

Ես վերջիններէն մէկ քանին արդէն եկած ու զիս տեսած ըլլալով, իմ գեղեցկութեանս, վայելուչ կերպարանքիս ու քաղաքավարութեանս վրայօք արտաքոյ կերպով գովութիններ ըրեր էին : Թագուհին ու քովը գտնուողները չափէդուրս հաճութիւն զգացին իմ ըրածներուս վրայ. Ծունկի վրայ գալով աղաչեցի որ վեհափառ կայսրուհւոյն ոտքը համբուրելու պատիւը ունենամ. բայց աս ողորմած իշխանուհին, զիս սեղանին վրայ դնելէն ետեւ՝ իր ճկոյթը դէպ ի ինծ երկընցուց, զոր երկու թեւերուս գրկելով, յետոյ յարգանօք անոր ծայրը շրթանցս դպցուցի :

Իմ հայրենեացս ու ճամբորդութեանցըս վրայօք քանի մը ընդհանուր հարցմունք ըրաւ, որոնց կըցածիս չափ կարճ ու որոշակի խօսքով պատասխան տուի : Ասոր վրայ՝ “Կուզե՞ս, ըսաւ, պալատին մէջ կենալ” : Մինչե սեղանին տախտակը ծռելով՝ խոնարհաբար պատասխանեցի անոր. “Ես տիրոջս գերին եմ, և թէ որ ձեռքս ըլլայ՝ կեանքս ձեր վեհափա-

տութեանը ծառայութեան նուիրելը պատիւ կը համարէի ինձ”։ Անատեն դարձաւ տիրոջս հարցուց թէ արդեօք կ՚ուզէ՞ ծախել զիս. տէրս այս առաջարկութեան վրայ շատ ուրախացաւ, որովհետեւ կը վախնար թէ ամիս մը եւս պիտի չապրիմ. ու սակի հազար կտոր ոսկի ուզեց, որ իսկոյն Թագուհւոյն հրամանաւը վճարուեցաւ. այս ոսկիներուն ամեն մէկը ութը հարիւր մոյտորի (1) չափ մեծ էին. բայց նոյն քաղաքին ու Եւրոպիոյ մէջ տեղը եղած ամեն բաներուն համեմատութեանը նայելով, և անոնց մէջ ոսկին բարձր գին ունենալուն՝ այս գումարը հազիւ թէ Անգղիոյ մէջ հազար կինէի (2) արժողութեան կը հանէր։

Անատեն՝ դարձայ Թագուհւոյն ըսի. «Որովհետեւ հիմա ձեր վեհափառութեան ամենախոնարհ ծառան և գերին եղայ, բարեհաճեցէք, կ՚աղաչեմ, ձեր ծառայութեան մէջ ընդունիլ նաև Գլիմտալ-քլիչը, որպէս զի միշտ իմ վարժապետուհիս ու սնուցիչս ան ըլլայ. ըստ որում մինչև հիմա խնամք ու մարդասիրութիւն ունեցաւ վրաս, և ինձ

(1) Գրեթէ 143 ղուրուշնոց արժողութեամբ փորթուգալի ոսկի մը. (2) Մէկ կինէն 21 շիլին է։

խնամատար ըլլալու ամէն կերպը գիտէ ։ Թագուհին աղերսանքս ընդունեց, և գիրութեամբ երկրագործին կամքը ըրաւ, որ իր զաւակը պալատէն ուզուելուն շատ ուրախ էր․ իսկ բարեսիրտ աղջիկը այնչափ գոհ էր, որ իր ուրախութիւնը ծածուկ չէր կրնար պահել։ Երկրագործը՝ “Ա՛նաս բարով, ահա քեզ աղէկ ծառայութեան մէջ կը թողում”, ըսելով՝ ձգեց գնաց, որուն պատասխան մը չտալով՝ միայն գլուխս ծռեցի ։

Թագուհին իմ այս ցուրտ կերպով վարմունքս դիտելով, երկրագործը սենեակէն դուրս ելնելէն ետև՝ պատճառը հարցուց, ու ես համարձակութիւն առնելով, պատասխանեցի․ “Նախկին տիրոջս ունեցած պարտականութիւնս միայն դիպուածով զիս իր դաշտերուն մէջ գտած ատենը՝ չսպաննելուն համար է ։ Իսկ ես պարտականութիւնս լիովին փոխարինուած է՝ տէրութեան կիսով չափ քաղաքաց մէջ զիս տանելով ի ցոյց հանելովս ու հիմա իմ գնոյս համար առած ոսկիովը ։ Անոր ձեռքը իյնալէս ի վեր անցուցած կեանքս այնչափ աշխատալի էր, որ եթէ ինծմէ տասն անգամ աւելի ուժեղ կենդանի մը ըլլար՝ պիտի

չկրնար գլխանալ. Օրն ի բուն խառնիճաղանճ ժողովուրդը զբօսցընելու համար կրած անդադար նեղութեանց՝ առողջութիւնս խիստ շատ աւրուած է, և եթէ տէրս իմ կեանքս վտանգի մէջ ըլլալը չկարծէր՝ ձեր վեհափառութիւնը պիտի չկրնար այնպէս աժան գնով զիս ձեռք ձգել. բայց ձեզի պէս վեհանձն, բարի, բնութեան զարդ, բոլոր աշխարհի սիրելի, հպատակաց զուարճութիւն, և արարածոց փիւնիկ թագաւորի մը պաշտպանութեան ներքևը գտնուելով, այսուհետև առաջուան պէս զժբաղդ կեանք մը անցընելու վախ չունիմ, ու կը յուսամ որ նախկին տիրոջս իմ կենացս վըրայօք ունեցած վախերը անհիմն պիտի ըլլան. քանզի ձեր օգոստափառ ներկայութեան ազդեցութիւնը արդէն ինձ ոգի տուաւ»:

Ահա աս եղաւ սխալներով ու կակազելով տուած պատասխանիս բովանդակութիւնը, որուն եարի մասը գլխովին իրենց լեզուին սեպհական եղած ոճովը ձևացուցի. քանզի Կոմսալբէյն զիս պալատը բերելու ատենը՝ իրենց լեզուին քանի մը ոճերը սորվեցուցեր էր ինծի:

Թագուհին խօսքիս մէջ ըրած պակասութեանցս ներելով, ինծի նման չնչին կենդանիի մը հանճարոյն ու խելքին վերայ կը զարմանար։ Ուստի զիս ձեռացը մէջ առնելով, Թագաւորին տարաւ, որ իր սենեկին մէջ առանձնացեր էր։ Նորին վեհափառութիւնը խիստ ծանրաբարոյ ու խստաբարոյ ըլլալուն, և ինձ նայած ատենը՝ կերպարանքս աղէկ մը չդիտելուն, ցուրտ կերպով մը հարցուց Թագուհւոյն. "Որչափ ատեն է որ սփլանըքը սիրել սկսար". վասն զի Թագուհին զիս աջ ձեռքին վրայ կուրծքին մօտ դրած ըլլալուն՝ կ՚երևար թէ Թագաւորը իրաւցընէ սփլանըք կարծեր էր. բայց աս իշխանուհին, որ չափազանց զուարթամիտ և բարակամիտ էր, կամաց մը դրասեղանին վրայ կանգնեցուց զիս, ու հրամայեց որ իմ վրայօքս պատմութիւն մը ընեմ։ Նորին վեհափառութեանը, զոր համառօտիւ մը ընելէս ետև՝ Գլումտալքլիչ իսկ, որ սենեկին դըրան քովը կը սպասէր, աչքին առջևը չըլլալուս չկրնալով դիմանալ՝ ներս մըտաւ, ու իր հօրը տունը հասած օրէս ի վեր բոլոր եղածներուն վրայօք հաստատութիւն տուաւ։

Թագաւորը՝ թէև իր հպատակացը չափ գիտնական էր, ու փիլիսոփայական ուսմանց և մանաւանդ մաթեմաթիգական գիտութեանց աղէկ տեղեակ էր, խօսիլ սկսելէս առաջ՝ ճշգիւ կերպարանքս դիտեց, ու երբ կանգուն քալելս տեսաւ՝ կարծեց թէ խելացի արհեստաւորէ մը հնարուած շինծու մեքենայ մը եմ, (քանզի մեքենականութեան արհեստը նոյն երկրին մէջ խիստ մեծ կատարելութեան հասած է)։ Սակայն ինչ ատեն ձայնս լսեց, ու նայեցաւ որ բանաւոր և կանոնաւոր կերպով կը խօսիմ, չկրցաւ իր զարմանքը ծածկել։ Երբ իր տէրութեան մէջ ինչ կերպով գալս պատմեցի՝ ամենևին գոհ չեղաւ, այլ կարծեց թէ Կլմտալքլիչէն ու անոր մշակ հօրմէն հնարուած պատմութիւն մ'է ըսածս, որ զիս աղէկ գնով ծախելու համար քանի մը խօսք սորվեցուցած էին։ Ըս մտածման վրայ՝ ուրիշ զանազան հարցմունք ըրաւ, ու նորէն բանաւոր պատասխաններ առաւ․ պակասութիւնս միայն օտարականի հնչումս ու լեզուին մէջ կատարեալ տեղեկութիւն չունենալս էր․ ասոնցմէ զատ՝ քանի մը ռամկական խօսից ոճեր գործածեցի, որոնք երկրագործին տունը

եղած ժամանակս սորված ըլլալով, պալատին մէջ խօսուած մաքուր ոճոյն չէին յարմարեր։

Կայսրը իր երեք մեծ գիտնականները կանչել տուաւ, որոնք ալ միջոցին երկրին սովորութ͞ը համեմատ իրենց շաբաթական պաշտօնը կատարելու համար պալատի մէջ կը բնակէին։ Աս պարոնները խիստ շատ ուշադրութեամբ կերպարանքըս քննեցին եւ՝ զանազան կարծիք ունեցան վրաս. սակայն միաբան հաստատեցին թէ բնութեան կանոնաւոր օրինաց համեմատ ես չէի կրնար գոյութիւն ունենալ. ինչու որ արագընթացութեամբ, կամ ծառերու վրայ ելնելով, կամ գետինը ծակեր փորելով, կեանքս պաշտպանելու կարողութիւն մը ի ծնընդենէ ինծի տրուած չէր։ Ակռաներս խիստ զգուշութեամբ քննելով, որոշեցին թէ մսակեր կենդանի մը եմ. բայց չորքոտանեաց խիստ մեծ մասը ինծմէ գերազանց, ու դաշտի մուկերը եւ ուրիշ կենդանիները ինծմէ արընթաց ըլլալնուն՝ չէին կրնար երբեք երեւակայել թէ մինչեւ որ խխունջ եւ ուրիշ սողուններ չուտեմ՝ ինչպէս կրնամ ապրիլ, ու ասոնք ուտել չկրնալս խելացի փաստերով ապացուցանելու ջանք ըրին։

Աս գիտուններէն մէկը կ'երեւար թէ կը խորհէր որ ես սաղմին կամ պակաս ծնած եմ. բայց աս կարծիքը միւս երկու գիտուններէն մերժուեցաւ, որոնք իմ անդամոցս կատարեալ ու լման ըլլալը գիտեցին. ասկէ զատ՝ շատ տարիէ ի վեր ապրած ըլլալս մօրուքէս յայտնի կը տեսնուէր, որուն արմատները խոշորացուցի միջոցաւ պարզապէս տեսան։ Պզտիկութիւնս ամէն աստիճանի բաղդատութենէ վար ըլլալուն՝ թզուկ մ'է ըսելու իսկ չէին կրնար. ինչու որ թագուհւոյն սիրելի թզուկը, որ աս տէրութեան մէջ տեսնուած ամէն թզուկէ պզտիկ էր, երեսուն ոտնաչափի մօտ բարձրութիւն ունէր։ Շատ մը վէճէ ետեւ՝ միաբերան եզրակացուցին թէ՝ ես ուրիշ բան չեմ, բայց միայն րէլփլըմ սքալ-քաթ, որ բառ առ բառ լատիններէն՝ լուսուս նադուրէ, այսինքն՝ բնութեան խաղալիկ կը նշանակէ։ Ասոնց ըսածը՝ Եւրոպիոյ այժմեան փիլիսոփայից ըսածին խիստ ճշդութեամբ կը յարմարի, որոնք մարդկային գիտութիւնը անպատմելի կերպով յառաջացուցած ըլլալնուն համար՝ բնութեան ամէն դժուարութեանց

բնութեան խաղալիկ ըսելով, ու զարմանալի լուծմունքը հնարեցին, արժան չհամարելով հին առնել ի վեր սովորական եղած ծածուկ պատճառաց մեկնութիւնը գործածել, որով Արիստոտելի աշակերտները պարապ տեղը կ՚աշխատէին իրենց տգիտութիւնը ծածկելու ։

Աս վճռական որոշումէն ետև՝ քանի մը խօսք խօսելու ազատութիւն խնդրելով, նորին վեհափառութեան հաստատեցի թէ՝ ես այնպէս երկիր մը կու գամ, որուն մէջ իմ հասակաւ արու և էգ միլեօնաւոր անձինք կան, և ան երկրի կենդանիները, ծառերը, տուները, և ամէն բան իմ համեմատութեանս են, ու ձեր վեհափառութեան հպատակները հոս ապրուստ և պաշտպանութիւն գտածնուն պէս՝ ես ալ նոյնը հոն կը գտնեմ։

Աս խօսքով պարոններուն առաջարկութեանցը իբրև պատասխան մը տուի․ բայց անոնք աս ըսածներուս՝ արհամարհական ժպիտով մը միայն պատասխանեցին ըսելով․ "Երկրագործը ինչ աղէկ դաս է տուեր քեզ"։ Թագաւորը, որ միւսներէն շատ նրբամիտ էր, իր գիտունները դուրս հանելով, երկրագոր-

ծը կանչել տուաւ , որ բարեբաղդաբար դեռ քաղաքէն մեկնած չէր · Նախ զանռաւանձնակի քննելէն ետեւ՝ զիս ու երիտասարդ աղջիկը անոր հետ մէկտեղ բերելով, երեքնուս ըսածը բաղդատեց , և սկսաւ հաւատալ թէ զրուցածնիս կրնար իրաւ ըլլալ · Ուստի աղաչեց Թագուհւոյն որ վրաս մասնաւոր հոգ տարուելու համար հրաման ընէ , ու Կլմտալքլիչի հետ սիրով կապուած ըլլալնիս տեսնելով, հըրամայեց որ իմ վրաս ըլլալիք խնամքը միշտ անոր յանձնուած մնայ · վասն որոյ Կլմտալքլիչի համար պալատին մէջ բնակարան մը պատրաստուեցաւ , և անոր կրթութեանը համար վարժապետուհի մը , լաթերը հագցընելու համար աղախին մը , և երկու ուրիշ սպասաւորներ սահմանուեցան ստորին կարգի ծառայութեանց համար ։ Բայց վրաս ըլլալու հոգողութիւնը բոլորովին Կլմտալքլիչի յանձնուեցաւ ։

Թագուհին իր երեսնագործին (1) ապսպրեց որ իմ ու Կլմտալքլիչի հաւնած ձեւոյն համեմատ՝ պահելու սենեկի համար սնտուկ մը շինէ ինծի · Նա մարդը խիստ վարպետ արհեստաւոր մ՚էր ,

(1) Ինճէ տօղրամաճը ·

ու իմ խորհրդոյս երեք շաբաթուան մէջ տասն ու վեցը քառակուսի ոտք լայն , ու տասն ու երկու ոտք բարձր փայտէ սենեակ մը շինեց մէկ դուռով , պատուհաններով , ու Լոնտոնի պառկելու խուցի նման երկու փոքրիկ դահլիճներով : Թագուհւոյն կահագործին (1) նոր շինած անկողինը անոր մէջը դնելու համար՝ առաստաղին տախտակը երկու ծխնիներու (2) վրայ այնպէս շինուած էր , որ վեր կը վերցուէր ու վար կ՚իջեցուէր . Առտուընէ ամեն օր անկողինը օդ առնելու համար անկէց դուրս կը հանէր , և իր ձեռօքը զան չխռկելէն ետև՝ գիշերը նորէն տեղը կը դնէր , ու վրայէն ձեղունը կը կղպէր :

Ճարտար արհեստաւոր մը , որ մանր խաղալիկներ շինելու համար շատ համբաւաւոր էր , փղոսկրի նման նիւթէ մը երկու աթոռ , երկու սեղան , և զգեստներըս դնելու համար պահարան մը շինեց : Զիս տանողներուն անհոգութենէն դիպուած մը չպատահելու , ու կառքի մը մէջ տարուած ատենս՝ կառքին ցնցման ոյժը խափանելու դիտաւորութեամբ՝ սենեկին ամեն կողմը պաստառներով

(1) Կարասիք շինող . (2) Ռեզէ .

պատած էր, մանաւանդ յատակը և ա-
ռաստաղը։ Մեծ ու պզտիկ մկներ ներս
չմտնելուն համար՝ ուզեցի որ դրանս
վրայ նիգ մը դրուի։ Դարբինը քանի մը
փորձերէ ետև՝ խիստ փոքր նիգ մը շի-
նեց, որուն նմանը երբէք չէր տեսնուած
իրենց մէջը, բայց ես անկէ աւելի մեծը
Անգղիոյ մէջ պարոնի մը դրան վրայ տե-
սած եմ։ Բանալիքը գրպանիս մէկուն մէջ
դնելով պահել ուզեցի, վախնալով որ
չըլլայ թէ Կլիմտալքլիչ կորսնցընէ զան։
Այնուհետև Թագուհին հրամայեց որ
գտնուածին չափ բարակ մետաքսեղէն-
ներէ ինձ հագուստ շինուի, որոնք Ան-
գղիոյ ասուեղէն վերմակէ խիստ շատ
հաստ չէին. ուստի մինչև անոնց ծա-
նրութեանը սովորիլս շատ նեղութիւն կը-
րեցի։ Զգեստներս նոյն տէրութեան
մէջ հագնուած զգեստներուն ձևը ու-
նէին, և մասամբ Պարսկաց, ու մասամբ
Չինացւոց զգեստին ձևոյն կը նմանէին,
բայց շատ պարկեշտ և վայելուչ հա-
գուստ մ՚էր։

Թագուհին իմ ընկերակցութենէս այն-
չափ հաճութիւն կը զգար, որ առանց
ինծի չէր ճաշեր. իր սեղանին վրայ՝ ճիշդ
իր արմուկին քովը աթոռով սեղան մը

ևս ես ունէի · Ալմուալբլիչ աթոռակի մը
վրայ կանգնած սեղանին քովը կը սպասէր ,
որ ինծի օգնէ ու խնամէ ։ Կարգ մը արծա-
թեղէն պնակներ , սկուտեղներ և ուրիշ
հարկաւոր սպասներ ունէի , որոնք Թա-
գուհւոյն ունեցածներուն հետ բաղդա-
տելով , Լոնտոնի մէջ խաղալիկ ծախող խա-
նութներուն մէջ տեսնուած պաճուճա-
պատանքի սպասներէն խիստ մեծ չէին ։
Աս սպասներս պզտիկ սնուցիչս արծաթ
տուփի մը մէջ դրած՝ իր գրպանին մէջը
կը պահէր , ու սեղանին վրայ ուզած ա-
տեն՝ ինծի կու տար զանոնք , միշտ իր
ձեռօքը մաքրելով ։

Թագուհին միշտ իր երկու արքայա-
զուն աղջկանց հետ սեղան կը նստէր ,
որոնց երիցագոյնը տասնուվեցը տարե-
կան ու կրտսերագոյնը տասնուերեք տա-
րեկան և մէկ ամսուան էր ։ Թագու-
հին պնակս մէկուն մէջ կտոր մը միս
կը դնէր , ուսկէ ուզածիս չափ կտրելով
առջիս կ՚առնուի · իր զուարճութիւնը
իմ մանր պատառներով ուտելս
տեսնել էր · քանզի Թագուհին ( թէև
տկար ստամոքս մը ունէր , ) ամէն մէկ ան-
գամին բերանը դրած պատառը տասն
ու երկու Անգղիացի երկրագործաց մէկ

նստելով կերածնուն չափ կար , ու տես-
նելով , քիչ մը ատեն ինձ մեծ զզուանք
բերաւ ։ Իր ակռաներովը՝ մեծ հնդկա-
հաւի մը թեւէն ինն անգամ աւելի մեծ
արտուտի մը թեւը ոսկորներով և միսով
մէկտեղ կը ծամէր , ու իր պատառին
հետ բերանը դրած հացին ամեն մէկ կը-
տորը տասն ու երկու ճէնինոց երկու նը-
կանակաց չափ մեծ էր ։ Ոսկեղէն բաժա-
կով մը ամեն մէկ խմելուն՝ երեք կըն-
գինարէն աւելի ջուր կը խմէր ։ Իր դա-
նակները մանգաղէ մը կրկնապատիկ մեծ
էին , ու կոթերնուն վրայ շիփ շիտակ
տնկուած շինուած էին ։ Այս համեմա-
տութեամբ էին դրգալները , պատառա-
քաղները , և ուրիշ ամեն գործիները ։
Անգամ մը Գլմտալքլիչ հետաքրքրուէ
համար զիս պալատի սեղաններուն մէկ
քանին ցուցնելու տարաւ , ուր 10 - 12
ահագին դանակներուն ու դրգալներուն
ամենը մէկտեղ շարժելը որ տեսայ՝ շատ
սոսկալի տեսք մը երեւցաւ ինձ ։

Ամեն Չորեքշաբթի ( ինչպէս որ զրու-
ցեր եմ՝ հանգստութեան օր է իրենց
մէջ , ) թագաւորը , թագուհին , ու ի-
րենց արքայազուն արու և էգ զաւակ-
ները նորին վեհափառութեան սրահին

մէջ մէկտեղ կը ճաշէն․ Թագաւորին խիստ սիրելի ըլլալուս՝ պզտիկ աթոռս ու սեղանս դէպ ի անոր ձախ կողմը աղամանին առջևը կը դրուէր․ Թագաւորը մեծ հաճութիւն կը սեպէր Լուդովիկոյ գրականութեան , կառավարութեան , կրօնքին , օրինաց ու սովորութեան վրայ խօսելու և հարցմունք ընելու , որոնց վրայօք կրցածիս չափ աղէկ տեղեկութիւններ կու տայի․ իր միտքը այնչափ սուր , և դատողութիւնը այնչափ ճիշդ էր , որ բոլոր բաժններուս վրայ շատ խելացի մտածմունք ու դատողութիւններ ըրաւ ։ Բայց ճշմարիտը ըսեմ՝ սիրելի հայրենակցացս ծովու և ցամաքի վրայ ունեցած պատերազմաց ու վաճառականութեանց , մեր կրօնական հերձուածոց և քաղաքական կողմնակցութեանց վրայօք քիչ մը ընդարձակագոյն խօսեցած ատենս՝ իր կրթութեան նախապաշարմունքէն գրգռեալ՝ գլխ աջ ձեռաց մէջ առնելով ու ձախովը կամաց մը զարնելով , բարձրաձայն ծիծաղ մը ձգելէն ետև՝ “Արդեօք Ուի՞կ ես թէ Թօրի” , ըսաւ , ետքը դէպ ի իր առաջին պաշտօնեան դառնալով , որ Ռոյալ-Սովրէն նաւուն մեծ կայմին չափ ճերմակ գաւազան մը ձեռքը

բռնած իր ետին կանգներ էր. «Ափսո՛ս, բայց, տե՛ս անգամ մը մարդկային սե-ռին մեծութեան ինչ չնչին բան ըլլա-լը. ինչու որ անարգ զեռուններն անգամ ա-նոր կրնան նմանիլ. աներկբայ եմ թէ ատոնք ալ իրենց մէջ տիտղոսներ և պա-տուոյ նշաններ ունին. պզտիկ բոյներ ու խրճիթներ կը շինեն, զորոնք տուն ու քաղաք կը կոչեն. զէնք հագնելով բա-նակ կը կազմեն. զիրար կը սիրեն, կը կռուին, կը հակառակին, կը խաբեն, կը մատնեն»։ Եւ այսպէս շարունակեց գը-նոց, ինչատեն բարկութենէս շատ ան-գամ գոյնս կը փոխուէր, երբ արուես-տից և գինւոյ մայր, Պաղղիոյ պատիւ, Եւրոպիոյ խրախընտիր, առաքինութեան՝ բարեպաշտութեան՝ պատուոյ և ճշմար-տութեան աթոռ, աշխարհի նախանձ ու պարծանք՝ իմ ազնիւ հայրենեացս այս-պէս նախատանօք անարգուիլը կը լսէի *։

* Ու՛իկ և Թօրի Անգղիոյ մէջ երկու իրարու հակառակ կու-սակցութեանց անուններ են. որ երկար ատեն մեծ գժտութեանց և արիւնհեղութեանց պատճառ ե-ղած են։ Ու՛իկի կուսակցութիւնը հասարակութեան ազատութեանց պաշտպանն է. իսկ Թօրիի կուսակ-ցութիւնը անոր հակառակ՝ ռամկապետական սկըզ-բունքէ խիստ հեռացած՝ ընդհանրապէս թագաւո-րին, եպիսկոպոսաց ... հետ կապուած է։

մէջ մէկտեղ կը ճաշէին․ Թագաւորին խիստ սիրելի ընկերուն՝ պզտիկ աթոռս ու սեղանս դէպ ի անոր ձախ կողմը աղամանին առջեւը կը դրուէր․ Թագաւորը մեծ հաճութիւն կը սեպէր Եւրոպիոյ գրականութեան , կառավարութեան , կրօնքին , օրինաց ու սովորութեան վրայ խօսելու եւ հարցմունք ընելու , որոնց վրայօք կրցածիս չափ աղէկ տեղեկութիւններ կու տայի․ իր միտքը այնչափ սուր , եւ դատողութիւնը այնչափ ճիշդ էր , որ բոլոր ըսածներուս վրայ շատ խելացի մտածմունք ու դատողութիւններ ըրաւ ։ Բայց ճշմարիտը ըսեմ՝ սիրելի հայրենակցացս ծովու եւ ցամաքի վրայ ունեցած պատերազմաց ու վաճառականութեանց , մեր կրօնական հերձուածոց եւ քաղաքական կողմնակցութեանց վրայօք քիչ մը ընդարձակագոյն խօսեցած ատենս՝ իր կրթութեան նախապաշարմունքէն գրգռեալ՝ զիս աջ ձեռաց մէջ առնելով ու ձախովը կամաց մը զարնելով, բարձրաձայն ծիծաղ մը ձգելէն ետեւ՝ "Արդեօք Ուի՞կ ես թէ Թօրի", ըսաւ, ետքը դէպ ի իր առաջին պաշտօնեան դառնալով, որ Ռօյալ-Սըվրէն նաւուն մեծ կայմին չափ ճերմակ գաւազան մը ձեռքը

դառնած իր եօթն կանգներ էր ։ « Ափսոս , ըսաւ , ա՛ս անգամ մը մարդկային սեռին մեծութեան ինչ չնչին բան ըլլալը ինչու որ անարգ զեռուններն անգամ անոր կրնան նմանիլ ։ աներկբայ եմ թէ ասոնք ալ իրենց մէջ տիտղոսներ և պատուոյ նշաններ ունին ։ պզտիկ բոյներ ու խրճիթներ կը շինեն , զորոնք տուն ու քաղաք կը կոչեն ։ զէնք հագնելով բանակ կը կազմեն ։ զիրար կը սիրեն , կը կռուին , կը հակառակին , կը խաբեն , կը մտնեն » ։ Ու այսպէս շարունակեց գընաց , ինչուան բարկութենէս շատ անգամ գոյնս կը փոխուէր , երբ արուեստից և գիտուց մայր , Դաղղիոյ պատիւ , Եւրոպիոյ իրաւընտիր , առաքինութեան՝ բարեպաշտութեան՝ պատուոյ և ճշմարտութեան աթոռ , աշխարհի նախանձ ու պարծանք՝ իմ ազնիւ հայրենեացս այսպէս նախատանաց անարգու իլը կը լսէի * ։

* Ուիկ և Թորի Անգղիոյ մէջ երկու իրարու հակառակ կուսակցութեանց անուններ են . որ երկար ատեն մեծ գժտութեանց և արիւնհեղութեանց պատճառ եղած են . Ուիկի կուսակցութիւնը հասարակութեան ազատութեանց պաշտպանն է . իսկ Թորիի կուսակցութիւնը անոր հակառակ՝ ռամկապետական սկըզբունքէ խիստ հեռացած՝ ընդհանրապէս թագաւորին , եպիսկոպոսաց . . . հետ կապուած է .

Ես որովհետեւ վիճակս վրէժխնդիր ըլլալ չէր ներեր, ուստի աղէկ մը խորհելով՝ սկսայ երկրայել թէ արդեօք աս բաները նախատի՞նք էին թէ չէ: Ինչու որ քանի մը ամիս աս ժողովրդեան տեսքին ու խօսակցութեանը սովորած ըլլալուս, ու ամէն բան իրարու համեմատ մեծութեամբ տեսնելուս՝ իրենց մեծութեան և կերպարանքին վրայ իսկզբան սրտիս մէջ ծագած վախը ինծմէ շատ հեռացաւ: և եթէ յանկարծ՝ թագաւորազունի մը ծննդեան օրուան պաճուճանքովին Անգլիոյ լորտերու և տիկնանց ժողովք մը տեսնելու ըլլայի, որոնք պալատականի սովորութեան համեմատ կը սիգան, կը կոտրտուին, և կը շաղակրատեն, Ճշմարիտը՝ անոնց վրայ այնչափ ծիծաղելու էի, որչափ թագաւորն ու իր մեծամեծները վրաս ծիծաղեր էին: Սակայն ստուգիւ չէի կրնար ծիծաղս զսպել, երբ թագուհին զիս ձեռացը մէջ առած՝ հայելիին առջեւը կ՚անցնէր, որուն մէջ տեսնուած մեր երկու կերպարանքին բաղդատութիւնը խիստ ծիծաղելի էր, այնպէս որ սկսայ երեւակայել թէ ստուգիւ սովորականէն շատ աւելի կարճցեր եմ.

Թագուհւոյն թզուկէն բան մը ինծի աւելի բարկութիւն և նախատինք չէր տար · ինչու որ տէրութեան մէջ ամենէն կարճ մարդը ան կարծուած ըլլալուն (քանզի այնպէս կարծեմ թէ գրեթէ երեսուն ոտք բարձրութիւն ունէր), երբ ինէ կարճը տեսաւ՝ ա́ն աստիճան յանդգնութեամբ կը վարուէր ինծի հետ, որ մինչև թագուհւոյն սենեկին մէջ՝ սեղանի վրայ կանգնած՝ լորտերու կամ տիկնանց հետ խօսեցած ատենս՝ քովէս անցնելով, զիս կը ծաղրէր ու դիմացս վրայ կը ծիծաղէր · և շատ անգամ փոքրկութեանս վրայօք անհամ խօսքերով քարեր կը նետէր · ես միայն վրէժ առնելու համար եղբայր կ'անուանէի զինքը, յասպարէզ կը կանչէի ըմբշամարտելու, և այնպիսի ճարտար պատասխաններ կու տայի, որոնք մանկլաւիկներուն սովորական են ։

Սա չարամիտ լակոտը ինէն ըսած քանի մը խօսքիս վրայ ա́ն աստիճան նեղացեր էր, որ օր մը սեղան նստած ատեննիս՝ թագուհւոյն աթոռին յենարանին վրայ ելաւ, ու երբ ես միամիտ նստեր էի, մէջքէս բռնածին պէս՝ կաթով լեցուն մեծ արծաթ ամանի մը մէջ ձգեց ու ինքն փախաւ ։ Պարանոցաթաղ անոր

մէջ ընկղմեցայ, ու եթէ փորպետ ըղջացող մը չըլլայի, կեանքս վտանգի մէջ էր. Թագուհին այնչափ ահ ու դողի մէջ ինկաւ, որ շփոթելով չկրցաւ ինծի օգնել. աս միջոցիս՝ Կլմտալքլիչ գրպանածով մը սեղանին մէկ ծայրը գտնուելով, շուտով օգնութեան հասաւ, կաթին քառորդ մասը խմելէս ետեւ՝ զիս բռնեց դուրս հանեց, եւ տարաւ անկողնոյն մէջ դրաւ. աս դիպուածէն վնաս մը չկրեցի, բայց հագ մը զգեստներս աւրուեցան, թէպէտեւ խիստ շատ հիներ էին. Թըզուկը մտրակով աղէկ ծեծ մը ուտելէն ետեւ՝ դատապարտուեցաւ նաեւ ան կաթը խմել, որուն մէջ զիս նետեր էր. Աս բրածին վրայ՝ Թագուհւոյն աչքէն ելաւ, ու շատ չանցաւ Թագուհին պատուաւոր տիկնոջ մը ընծայ ըրաւ զան. եւ ես անոր պալատէն հեռանալուն վըրայ շատ ուրախացայ. ինչու որ չեմ գիտեր թէ այսպէս չարաճճի մը իր վրէժխնդրութիւնը ո՞ր աստիճանի պիտի հասցընէր.

Անկէ առաջ՝ զարշելի խաղ մը խաղցեր էր ինծի, որն որ Թագուհին թէպէտեւ շատ ծիծաղցուցած, բայց միանգամայն բարկացուցած էր. այնպէս որ

եթէ ես միջնորդ չըլլայի, թագուհին շու-
տով իշխանութենէն վար պիտի ձգէր
զինքը։ Քանզի մեծհամբաւ կայսրուհին
ոսկորի մը մէջէն ծուծը հանելէն վերջը՝
պնակին մէջ կանգուն դրեր էր զան։
Թզուկը, որ պատեհութեան կը սպասէ
եղեր, Կլմտալքլիչը՝ սեղանի սպասները
դրուած դարանին քովը գացածին պէս՝
ցատկեց ցած աթոռին վրայ ելաւ, ուր
որ Կլմտալքլիչ կերակուրի ատեն կ'ելնէր
կը կանգնէր որ ինձ հոգ տանի, ու երկու
ձեռքս մէկ տեղ բռնելով վերցուց, և
սրունքս քով քովի բերելով, սեղմեց,
ու մինչև պարանոցս աս ոսկորին մէջ խօ-
թեց, ուր քիչ մը ժամանակ խրած մը-
նացի, ու շատ ծիծաղելի դէմք մը ձևա-
ցուցի։ Մինչև որ գլխուս եկածը հաս-
կընալով եկան՝ կարծեմ վայրկեան մը քը-
շեց, ինչու որ պոռալը ինքզինքիս չձգե-
ցի։ Բայց ինչպէս որ թագաւորները շատ
տաք կերակուր չեն ուտեր, անոր հա-
մար սրունքս չայրեցան. միայն թէ գուլ-
պաներս ու վարտիքս գէշ վիճակ մը ըս-
տացան։ Ուստի թզուկը մարակով ծեծ
կերաւ, ու իմ աղաչանքիս վրայ՝ ուրիշ
պատիժ մը չտուին անոր։

Վախկոտութեանս վրայ թագուհին յաճախ զիս կը ծաղրէր, ու կը հարցընէր թէ արդեօք իմ հայրենակիցներս ալ ինծի պէս վախկոտ են։ Իր հարցման պատճառը ալ հետեւեալն է։ Իր տէրութեան մէջ ամառը խիստ շատ ճանճեր կ'ըլլան, որոնց ամեն մէկը մեր երկրին արտուտի չափ մեծ և տաղտկալի միջատներ ըլլալով, անհանգիստ կ'ընէին զիս սեղանը նստած ատենս՝ ականջիս չորս դին շարունակ բզզալով։ Երբեմն կերակուրիս վրայ կ'իջնային, ու իրենց զզուելի կղկղանքը կը ձգէին, որոնք իմ աչացս բացայայտ կ'երեւային, թէպէտ այն երկրի մարդոց չէին երեւեր, որոնց մեծ աչքը փոքրագոյն առարկաներ տեսնելու համար իմինիս չափ սուր չէին։ Երբեմն քիթիս կամ ճակատիս վրայ կ'իջնային և սաստիկ խայթելէն ետև՝ գարշելի հոտ մը ալ կը հանէին։ Ես դիւրաւ կրնայի անոնց այն կպչուն ոտքը նշմարել, որ մեր գիտնականաց կարծիքին նայելով՝ այս տեսակ կենդանեաց ձեղունի վրայ քալելու կարողութիւն կու տայ։

Այս ատելի կենդանիներէն ինքզինքս պաշտպանելու համար շատ նեղութիւն կը կրէի, ու երեսիս վրայ քալած ա-

տեններին՝ չդիմանալով կը ցամքէին. Թը-
զու կը հասարակ սովորութիւն մը ունէր,
որ ձեռօքը աս միջատներէն շատ մը որ-
սալով և ափին մէջ պահելով մեր դըպ-
րատան տղոց ըրածին նման՝ կամաց մը
ձեռքը քթին տակը բերելով, յանկարծ
ափը կը բանար որ ճանճերը Թռչին զիս
փախցընելու և Թագուհին զբօսցընելու
դիտաւորութեամբ. Ուրիշ ճար մը չի
գտնալով, աս կենդանիները Թռչած ա-
տեններին՝ դանակով կոր կոր կ՚ընէի
զանոնք. աս գործողութեանս մէջ ու-
նեցած յաջողաձեռնութիւնս ամենուն
զարմանալի կ՚երևար ։

Շատ մը Եղմալըբէկ զիս ստամուկի մը
մէջ դնելով, պատուհանի մը վրայ դրաւ,
ինչպէս սովորաբար օդը պայծառ եղած
ատեն օրերը կ՚ընէր, որպէս զի զով օդ
առնեմ. (քանզի չէի համարձակեր Թա-
գուհ որ Ինգլիզ մէջ ըրածնուն պէս
սնտուկս պատուհանին դուրս դին քա-
մուած բեւեռ մը անցընելով կախէ),
պատուհանին շրջանակներէն մէկը վեր
վերցընելէս ետև՝ հօն սեղանիս առջև
նստայ որ անուշ հեղէն ուտեմ. ասոր հօ-
տէն քանէն աւելի պիծակներ (1) Թըռ-

(1) Էշէկ արըը.

չերով, սեննակս մտան, որոնց բզզալուն ձայնը՝ քան հովուական սրինկերու ձայնէն աւելի բարձր էր. Ասոնցմէ ոմանք կարկանդակս յօշոտելով, կտոր կտոր առին տարին, և ոմանք գլխուս ու երեսիս չորս դին թռչելնուն ձայնովը գիս կը շփոթէին. անոնց խայթոցները տեսնալով, յետին աստիճան ահ ու դողի մէջ ինկայ: Ինչևիցէ քաջալերուելով պանակս քաշեցի ու օդուն մէջ թռչած ատեններն՝ այնպէս հարուած մը տուի անոնց, որ չորսը մէկէն սատկեցան, ու մնացածները փախան. սակայն շուտով պատուհանը գոցեցի: Ասոր պիծակները կաքաւի (1) չափ մեծ էին. անոնց խայթոցները փըցուցի, նայեցայ որ մէկ ու կէս բթաչափ երկայն ու ասեղի պէս սուր էին. Ասոնց ամէնը զգուշութեամբ պահեցի, ու Եւրոպիոյ զանազան կողմերը գացած ատենս՝ հետաքրքրական ուրիշ քանի մը բաներու հետ ի ցոյց կը հանէի զանոնք. Երբ Անգղիա դարձայ, անոնց երեքը Կրէշհէմ դպրատանը տուի, ու չորրորդը իմ քովս պահեցի:

(1) Քէքլիք.

# ԳԼՈՒԽ Դ.

Երկրին նկարագրութիւնը. Ընդհանուր աշխարհագրական տախտակները սրբագրելու առաջարկութիւն մը։ Թագաւորական պալատը. ու մայրաքաղաքին վրայօք քանի մը խօսք. Հեղինակին ճամբորդութեան կերպը։ Գլխաւոր տաճարին նկարագրութիւնը.

Այս տէրութեան Լօրպրուլկրուտ մայրաքաղաքէն շուրջանակի գրեթէ երկու հազար մղոն հեռու պտըտած քաղաքներուս վրայօք համառօտ նկարագրութիւն մը ընել կ՚ուզեմ ընթերցողիս. քանզի թագուհին, որուն միշտ կ՚ընկերանայի, թագաւորին հետ ճամբորդութեան եղած ատենը՝ անկէ հեռու չերթալով, մինչև թագաւորին՝ սահմանագլուխները աչքէ անցընելով գալը հոս կը սպասէր։ Այս իշխանին երկիրներուն ընդարձակութիւնը երկայնութեան կողմանէ վեց հազար, ու լայնութեան կողմանէ երեք հազարէն մինչև հինգ հազար մղոնի կը հասնի. Ասկէ կրնամ մակաբերել որ Եւրոպայի մեր աշխարհագիրները մեծ սխալանաց մէջ են, կարծելով թէ Ճափոնին

և Պալնիպարպիոյ մէջ տեղը ծովէն զատ ուրիշ բան չկայ ։

Ես միշտ կարծիք մը ունեցեր էի թէ Թաթարստանի մեծ երկրին հաւասարակշիռ ուրիշ ցամաք երկիր մը եւս ըլլալու է հոն ․ Ասոր պէտք է որ իրենց աշխարհագրական տախտակները ուղղեն , ու ընդարձակ ցամաք երկիրը Ամերիկայի հիւսիսային արեւմտեան մասերուն յարելով․ ու մասին աշխարհագիրներուն օգնելու պատրաստ եմ ։

Այս թագաւորութիւնը թերակղզի մ՚է , որ դէպ ի հիւսիսային արեւելեան կողմը երեսուն մղոն բարձրութեամբ լեռներու շղթայով մը կը վերջանայ․ այս լեռները բոլորովին անմատչելի են իրենց գագաթանց վրայի հրաբուղխներուն պատճառաւը․ իմաստ գիտուններն անգամ չեն գիտեր թէ այս լեռներուն անդին կողմը բնակիչ կա՞յ արդեօք , կամ թէ որ կայ՝ ի՞նչ տեսակ բնակիչ են․ թերակղզիին միւս երեք կողմը ովկիանոսը պատած է ։

Բոլոր թագաւորութեան մէջ նաւահանգիստ մը չկայ , ու ծովեզերքին ան կողմը՝ ուր գետերը ծովը կը թափին , այնպէս սրածայր ժայռերով լեցուն է ու ծովը ընդհանրապէս այնպէս ալեկոծեալ՝ որ

իրենց խիստ պզտիկ նաւուն անգամ մէկը հոն մտնելու չհամարձակիր : Աս համար՝ աս ժողովուրդը աշխարհի միւս մասերուն հետ առուտուր ընելէն բոլորովին զուրկ մնացած է :

Բայց մեծ գետերու վրայ շատ նաւեր կան, ու հոն պատուական ձուկեր կը գտնուին · ուստի շատ քիչ անգամ ծովէն ձուկ կը բռնեն, որովհետև իրենց ծովու ձկները Եւրոպիոյ ծովերուն ձկանց մեծութեամբը ըլլալուն՝ ի հարկէ բռնելնին չէր արժեր · ուստի յայտնի է թէ բնութիւնը այսպիսի արտաքոյ կարգի մեծութեամբ տունկեր ու կենդանիներ արտադրելը բոլորովին աս երկրին սեպհականներ է · որուն պատճառը փիլիսոփայից կը ձգեմ որ մեկնեն :

Այսու ամենայնիւ՝ երբեմն ժայռերուն զարնուած կէտը (1) կը բռնեն, որըն որ հասարակ ժողովուրդը ախորժանօք կ'ուտէ : Ես կէտերէն այնպէս մեծը տեսած եմ, որ երկրացի մը հազիւ թէ կրնար ուսերուն վրայ վերցուցած տանիլ · և երբեմն ան ձկներէն կողմներու մէջ գտնելով, հետաքրքրութեան համար Լօպպրուլկրուս կը բերեն : Ես տանց

(1) Ըստ պալըղը · պալէնա :

մէկը՝ իբրև հազուագիւտ բան մը Թագաւորին սեղանին վրայ պնակի մը մէջ դրուած տեսայ. բայց կ'երևար թէ թագաւորը չէր սիրեր զայն, գուցէ կենդանիին մեծութիւնը զզուանք տուած ըլլայ անոր, թէև ես Կոչէնչինայոյ մէջ ասկէ աւելի մեծը տեսած եմ.

Երկիրը բազմամարդ է, քանզի յիսուն և մէկ քաղաքներ, հարիւրի մօտ պարսպապատ աւաններ և աս թիւէն աւելի գիւղեր կը բովանդակէին անոր մէջը. Գետաքրքիր ընթերցողս գոհ ընելու համար՝ միայն Լօրպրուէյրու տինկարագրութինը կրնայ բաւական ըլլալ. Ան քաղաքը գրեթէ երկու հաւասար կողմերու բաժնուած է՝ իր մէջ տեղէն անցած գետին երկու կողմերուն վրայ շինուած ըլլալուն համար: Ասոր մէջ ութսուն հազարէն աւելի տուն կայ, ու մէջը հարիւր հազարի մօտ բնակիչ կը գտնուի. Երկայնութիւնը՝ երեք կիլոմետր է (որ գրեթէ յիսուն ու չորս անգղիական մըղոն կ'ընէ), ու լայնութիւնը՝ երկուք ու կէս կիլոմետր, որն որ ես անձամբ չափեցի արքայական հրամանաւ շինուած աշխարհագրական համառօտ տախտակին վրայ. Այս տախտակը ինծի համար

յատկապէս գետնի վրայ դրուած էր, ու հարիւր ոտք տեղ կը բռնէր․ և ես շատ անգամ՝ բոկոտն անոր վրայ քալելով, անոր տրամագիծը, շրջապատը և աստիճանները համրելով բաւական ճըշդութեամբ կը չափէի։

Թագաւորին պալատը կանոնաւոր շէնք մը չէ, այլ գրեթէ եօթը մղոն շուրջանակի տարածութեամբ շէնքի կոյտ մ'է․ գլխաւոր սենեակները հասարակօրէն երկու հարիւր քառասուն ոտք բարձր են, ու նոյն համեմատութեամբ երկայնութիւն ու լայնութիւն ունին։ Ինծի և Գլիմտալքլիչի կառք մը տուին, որպէս զի մենք անոր վարպետուհւոյն ընկերութեամբը կարող ըլլանք քաղաքին մէջ պտըտել և խանութները երթալ․ Գլիմտալքլիչ զիս տուփիս մէջ դրած՝ միշտ հետը կ'առնէր․ բայց շատ անգամ իմ աղերսանքս չմերժելով, զիս անկէ դուրս կը հանէր և իր ձեռաց մէջ կը բռնէր, որ փողոցներէն անցած ատեններս՝ տներն ու ժողովուրդը աւելի աղէկ տեսնեմ։

Ըստ իմ հաշուիս՝ մեր կառքը Ուէսթ-մինսթրի սրահին քառակուսի մակերևոյթը ունէր, բայց անոր չափ բարձր չէր․ սա

տուած չափիս վրայ գուցէ շատ ստոյգ չեմ.

Օր մը՝ վարպետուհին հրամայեց կառավարին որ քանի մը խանութներու առջին կառքը կեցընէ. իսկոյն մուրացկանները՝ որ այսպէս պատեհութեան կ՚ըսպասէին, խուռն բազմութեամբ կառքին երկու կողմը հաւքուեցան, ու այնպիսի սոսկալի տեսարան մը երևցաւ ինծ, որ երբեք Եւրոպայի աչք մը տեսած չէ.

Ասոնց մէջ՝ կուրծքին վրայ ահագին մեծութը ուռեցած քաղցկեղ (1) հանած կին մը կար, ու խոցին վրայ ան աստիճան մեծ ծակեր կային, որոնց երկուքին կամ երեքին մէջ դիւրաւ կրնայի մտնել, ու բոլոր անձամբս աներևոյթ ըլլալ.

Ուրիշ մէկուն պարանոցին վրայ այնպէս ուռ մը ելած կար, որ բրդի հինգ հակերէ աւելի մեծ էր. Ուրիշ մը՝ գրեթէ քսանական ոտնաչափ բարձր գոյգ մը փայտեղէն սրունքի վրայ կը քալէր.

Բայց ինծ ամենէն զզուելի երևցող տեսարանը՝ անոնց զգեստներուն վրայ քալող ոջիլներն էին. ես իմ աչքովս՝ Եւրոպիոյ մէջ խոշորացուցով նայողներէն աւելի աղէկ և որոշակի կը տեսնէի ատ մի-

(1) Շիրիփէնչէ.

ջատներուն անդամները, ու կը դիտէի որ ցռուկներ ունէին, որոնցմով խոզի նման կը պեղէին։ Ասոնք տաքի անդամ տեսնելս է. եթէ յարմար գործիներ ունենայի, զորոնք եկած ժամանակս դըժբաղդաբար նաւուն մէջ մոռցեր էի, հետաքրքրութեամբ անոնց մէկուն անդամները յօշելու, և զննելու էի. սակայն աս տեսքը այնչափ զզուելի երևցաւ ինծի՝ որ սիրտս բոլորովին տակն ու վրայ ըրաւ։

Կայսրուհին հրամայեց՝ որ հատորակորէն մէջը դրուած մեծ սնտուկէս զատ, տասներկու ոտնաչափ քառակուսի, ու տասը ոտնաչափ բարձր ուրիշ պզտիկ սընտուկ մը ևս շինուի, որպէս զի Կլիմտալքլիչ ծնկերուն վրայ կարենայ առնուլ զան, ինչու որ առաջինը մեծ ըլլալուն՝ նեղութիւն կու տար, ու ճամբորդութեան այնչափ յարմար չէր։ Մի և նոյն արհեստաւորը իմ խորհրդովս շինեց լըմընցուց զան։ Աս ճամբորդութեան սենեակս ճիշդ քառակուսի էր, ու երեք կողմին վրայ մէկ մէկ պատուհան ունէր, բայց երկար ճամբորդութեանց մէջ պատահմունք մը չըլլալու համար՝ ամեն մէկ պատուհանին դրսի կողմը երկաթէ վան-

գաւկներ (1) անցուցած էր։ Զորրորդ կողմին վրայ՝ ուր պատուհան չկար՝ երկու օդամանեակներ գամուած էին, որոնց մէջէն կաշիէ գօտի մը անցընելով, ձի հեծնալու ուզած ատենն՝ զիս մերցընող անձը զան իր մէջքէն կը կապէր։ Սա պաշտօնս միշտ ծանրաբարոյ ու հաւատարիմ ծառայի մը կը յանձնէի Սլեմ-տալբէլչի հիւանդութեան ատենը՝ երբ Թագաւորին ու Թագուհւոյն ճամբորդութեանցը ընկերանայի, կամ պարտէզները տեսնելու երթայի, և կամ տէրութեան պաշտօնեայի կամ երևելի տիկնոջ մը այցելութիւն ընէի․ որովհետև շուտով մեծամեծներէն ճանչցուեցայ ու յարգ ստացայ․ ասոր պատճառը կարծեմ քան իմ արժանաւորութիւնէս աւելի՝ Թագաւորին սիրելի ըլլալս էր։

Ճամբորդութեանց մէջ կառքէն ձանձրացած ատեն՝ ձի հեծած ծառայ մը մտուկս մէջքէն կապելով, իր առջին բարձի մը վրայ կը դնէր․ ու տախ իմ երեք պատուհաններէս երկրին երեք կողմը լիովին կը տեսնէի․ Սա տեսնելիս մէջ կային մէկ գետնանկողին և ձեղունէն կախուած անկողին մը, երկու աթոռ և

(1) փարմաքլըք։

մէկ սեղան, որուն աղէկ մը յատակին վրայ պտուտակով (1) հաստատուած էին, որպէս զի ձիուն կամ կառքին ցնցումէն ազատ մնան։ Երկար ատենէ ի վեր ծովային ճամբորդութեանց սովրած ըլլալուս, ա՛ն ցնցումները՝ թէև երբեմն սաստիկ՝ բայց շատ անհանգստութիւն չէին տար։

Քաղաքը երթալ ու գալ ատենս՝ միշտ աս սնտուկով կը տանէին զիս։ Ալմոալքիչ տեսակ մը վրան բաց պատգարակի մէջ նստելէ ետև՝ ծնկանը վրան կ'առնէր զիս։ Այս պատգարակը՝ ըստ սովորութեան երկրին՝ չորս հոգի ուսերնին բարձած կը տանէին, և ուրիշ երկու անձինք թագու հեռուն նշանգրեաներով անոնց կ'ընկերանային։ Ժողովուրդը շատ անգամ իր համբաւս լսած ըլլալով, մեծ հետաքրքրութեամբ պատգարակին չորս դին կը հաւաքուէր, և Ալմոալքիչ անոնց հաճութիւնը լեցընելու համար՝ մեզ վերցընողները կեցընելով, զիս ձեռքը կ'առնէր որ ամեն մարդ աւելի դիւրութեամբ տեսնէ։

Շատ կը ցանկայի մայր տաճարը, և



(1) Վիտա։

մանաւանդ անոր աշտարակը տեսնել, որ նոյն ուղղութեան մէջ ամէնէն բարձրը կը սեպուի։ Ուսամի ուսուցիչս օր մը դիւհան տարաւ, բայց շիտակը ըսեմ՝ դատարկայոյս ես դարձայ․ ինչու որ աս աշտարակը գետնէն մինչև ամէնէն բարձր գագաթը երեք հազար ոտքէն աւելի բարձրութիւն չունի, որ մեր Եւրոպիոյ մարդոց ու ան ժողովրդեան մէջ եղած հասակի տարբերութեանը նայելով՝ ոչ զարմանք բերելու արժանի մեծ բան մը է, և ոչ իսկ համեմատութեան կողմանէ՝ Ստրասպուրկի զանգակատունը կը հաւասարի (եթէ անոր բարձրութիւնը լաւ կը յիշեմ), բայց այնպիսի ազգի մը համբաւը վար չզարնելու համար, որուն ունեցած չափազանց պարտականութիւնը մինչև յետին շունչս խոստովանելու եմ, իրաւացի է ըսել՝ թէ աս երևելի աշտարակը բարձրութեան կողմանէ ըսելիք չկայ, ինչու որ պատերը հարիւր ոտքի չափ հաստ, ու քանդուած քարերով շինուած են, որոնց ամէն մէկը քառասուն քառակուսի ոտքի մօտ է․ ամէն կողմանէ չաստուածոց ու կոյսերոց մարմարինէ արձաններով զարդարուած է, որոնք կենդանի պատկերներէ աւելի մեծ

են, ու պատերու վրայ բացուած խոր-շերու մէջ դրուած կը գտնուին ։

Ես արձաններէն մէկուն վրայէն փըր-թած ու փլատակաց մէջ մնացած ճկոյթ մը չափեցի, նայեցայ որ ճիշդ չորս ոտք ու մէկ բթաչափ երկայնութիւն ունէր . Աղջամուղջին զան իր թաշկինակին մէջ փաթթելով գրպանը դրաւ, ու տունը տարաւ իր ուրիշ խաղալիներուն հետ պահելու համար, որոնց վրայ իր հասա-կակից մանկանց պէս ան աղջիկը եւ շատ սէր ունէր ։

Թագաւորին խոհանոցը վեցը հարիւր ոտնաչափ բարձրութեամբ կամարակապ հսկայաձեւ շէնք մ՚է . մէջի մեծ փուռը սուրբ Պօղոսի տաճարին գմբէթէն տար բայց նեղ է, ինչպէս որ գիտամբ չա-փելով, ստուգեցի զան Անգղիա դարձած ատեննս ։ Բայց թէ որ խոհանոցին մէջի ահագին կասկարաներուն, անօթներուն, կաթսաներուն, ու շամփուրներուն վրայ դարձող միս պտտաներուն եւ ուրիշ մանուածոր բաներու վրայօք խօսելու ըլ-լայի՝ գուցէ դժուարաւ հաւատայիք ինձ, և անաչառ բանադատ մը մօտէն կրնար անցընել թէ քիչ մը չափազանցութիւն բանեցուցած եմ, ինչպէս ճամբորդնե-

րուն վրայ շատ անգամ աս կասկածը կ'ըլլայ ։ Ես ստգտանքէն ազատ ըլլալու համար՝ վախնամ որ անգլիի ծայրը անցայ ։ Թէ որ աս գրուածքը օր մը Կրապ-ոլինկնակի ( որ նոյն տէրութեան ընդհանուր անունն է , ) լեզուն Թարգմանուելու և նոյն երկիրը տարուելու ըլլայ՝ կարծեմ թէ Թագաւորն ու Ժողովուրդը իրաւամբ պիտի գանգատին որ անիրաւութիւն ըրած եմ իրենց ամէն բանը անհաւատալի կերպիւ ու պզտիկցընելով նկարագրելուս ։

Քիչ կը պատահի որ Թագաւորը իր ախոռներուն մէջ վեցը հարիւրէն աւելի ձի պահէ , որոնք ընդհանրապէս յիսուն ու չորսէն մինչև վաթսուն ոտք բարձր են ․ բայց հանդիսի մեծ օրեր դուրս ելած ատենը՝ հինգ հարիւր ձիաւոր պահապան զօրք ետևէն կ'երթան , որոնք առջի անգամ տեսած ատենս՝ յիրաւի աշխարհիս ամէնէն գեղեցիկ զօրքը կարծեցի զանոնք ․ բայց ետքը երբ բանակին մէկ մասը ճակատեալ տեսայ՝ կարծիքս հաստատուեցաւ , որուն վրայօք ուրիշ առթիւ խօսելու եմ ։



# ԳԼՈՒԽ Ե.

*Հեղինակին պատահած զանազան դիպուածները. Մահա-պարտի մը գլխատումը ; Հեղինակին նաւարկութեան մէջ ունեցած հմտութիւնը ։*

Այն քաղաքին մէջ բաւական հանգիստ կեանք պիտի վարէի, թէ որ փոքրկութիւնս պէս պէս ծիծաղելի ու նեղացուցիչ դիպուածոց մէջ չձգէր զիս. որոնց մէկ քանին հոս պատմելու պիտի համարձակիմ. Կլմտալքլիչ զիս փոքրիկ սնտուկիս մէջ դնելով, շատ անգամ պալատին պարտէզները կը տանէր, երբեմն սնտուկէս կը հանէր զիս ու ձեռացը մէջ կ՚առնէր, կամ գետնի վրայ կը դնէր որ պըտըտիմ ։ Թզուկը դեռ պալատէն չվռնտուած՝ օր մը աս պարտէզներուն մէջ ետեւնէս եկաւ, և ինծի մօտեցաւ կարճ խնձորենիներու քով, ուր սնուցիչս թողուցեր էր զիս. անատեն իմ զուարթախոսութիւնս անոր ցուցընելու դիտաւորութեամբ ծառին և անոր վրայ անխոհեմ բաղդատութիւն մը ըրի. Ասոր վրայ՝ աս փոքրիկ անզգամը, որ վրէժ առնելու

առիթի կը սպասէր, ծառերուն մէկուն ներքեւ ըպտըտած ատենս՝ ուղղակի գլխուս վրայ յանկարծ թոթուեց զայն, որով երկոտասնեակի մը չափ խնձորներ, որոնց ամեն մէկը Պրիսթըլի տակառի չափ կային, ականջներուս քովէն գլորելով վար ինկան. ասոնց մէկը՝ կծկած ատենս կռնակիս վրայ իյնալով, երեսի վրայ գետինը զարկաւ զիս, բայց ուրիշ վնաս մը չկրեցի, ու իմ ուզելուս թզուկին թողութիւն շնորհուեցաւ՝ զայն ես գրգռած ըլլալուս համար։

Ուրիշ օր մը՝ Կլիմտալքլիչ զիս տափարակ մարգի մը վրայ թողուց որ մինակ զբօսնում, ու ինքը իր վարժապետուհւոյն հետ ինծմէ քիչ մը հեռու պտըտիլ ընկաւ. յանկարծ այնպէս սաստիկ կարկուտ եկաւ, որ անոնց բռնութենէն անմիջապէս գետինը զարնուեցայ, ու այնպէս ինկած մնացած ատենս՝ կարկուտները բոլոր անձիս վրայ այնպէս չարաչար հարուած կ'ընէին, որ կարծես թէ մեծ գնտակներով կը քարկոծէին զիս։ Այսու ամենայնիւ՝ չորս ոտից վրայ քալելով, ծոթրինի թաւ փերուն ներքեւ հովին հակառակ կողմը երեսն ի վայր պառկելով ինքզինքս պատսպարեցի. բայց գը-

խէս մինչև ոտքս այնպէս ջախջախուեր էր , որ տասը օր դռնէն դուրս չկրցի ելնել ։ Ասոր վրայ ամենևին զարմանալ պէտք չէ , ինչու որ նոյն երկրին մէջ բնութիւնը իր բոլոր գործողութեանցը մէջ մի և նոյն համեմատութիւնը ունենալուն՝ հոն տեղի կարկուտին մէկ հատը՝ Եւրոպայի կարկուտէն գրեթէ հազար ութը հարիւր անգամ աւելի մեծ է ․ և աս բանս կրնամ հաստատել , ինչու որ հետաքրքրութենէ շարժելով , չափեր և կշռեր եմ զան ։

Բայց ասկէ աւելի վտանգաւոր դէպք մը պատահեցաւ ինծի նոյն պարտէզին մէջ ։ Անգամ մը պզտիկ սնուցիչս կարծելով թէ զիս ապահով տեղ մը դրած է ( որովհետև միշտ աղաչանքս աս էր թէ այնպէս տեղ մը դնէ զիս որ իմ մտածմանցս պարապիմ ) , աս անգամին նեղութենէն փախչելուն համար՝ սնտուկս տունը ձըգած ըլլալով , զիս հոն մինակ թող տուաւ և իր վարժապետուհւոյն ու քանի մը ծանօթ տիկիններու ընկերութեամբը պարտէզին միւս կողմը գացեր էր ․ Երբ ձայնս չլսուելու չափ ինծմէ հեռացեր էր , ՚ գլխաւոր պարտիզպանաց մէկուն սպանիական ճերմակ շունը դիպուածով

մը պարտէզը մտած ու պատահմամբ իմ եղած տեղիս մօտերը եկած ըլլալուն՝ համառութեամբ շիտակ վրաս վազեց, զիս բերնովը բռնածին պէս՝ ուղղակի իր տիրոջը տարաւ, և պոչը երերցընելով, կամաց մը գետինը դրաւ զիս։ Բարեբաղդաբար ես շունը այնչափ աղէկ վարժուած էր, որ զիս ակռաներուն մէջ առած տարած ատենը ամենևին վնաս մը չտալէն զատ՝ լաթերս անգամ չպատռեց։ Բայց աղօրմելի պարտիզպանը՝ որ զիս աղէկ կը ճանչնար, և շատ կը սիրէր ինծի, աս տեսածին պէս՝ ահ ու դողի մէջ ինկաւ։ Ուստի կամաց մը զիս վերցընելով իր երկու ձեռաց մէջը առաւ, և ինչպէս ըլլալս հարցուց. Բայց ես այնպէս խռոված և շնչասպառ էի, որ բերանս չկրցի բանալ. Վերջապէս՝ քանի մը վայրկեանէ ետև՝ խելքս գլուխս եկաւ, ու ան զիս ողջ առողջ տարաւ փոքրիկ սնուցչիս յանձնեց, որ աս միջոցիս զիս ձգած տեղը եկեր և զիս հոն չգտնելուն, ու ձայն տուած ատենը պատասխան չառնելուն համար խելքը գլխէն գացեր էր. Շանը համար խստութեամբ պարտիզպանին յանդիմանեց. բայց աս դիպուածը գաղտուկ պահելով, պալատին մէջ ամե-

նեին չլսուեցաւ · քանզի աղջիկը Թա-
գաւհւոյն բարկութենէն կը վախնար ,
և յիրաւի՝ ես ինձ կը մտածէի թէ այս-
պիսի պատմութեան մը տարածուիլը
պատուոյս կը դպչէր ։

Աս դիպուածին վրայ՝ Կլիմաւքէի հաւ-
տատ միտքը դրաւ որ այնուհետև զիս
իր աչացը առջևէն չպակսեցընէ , և ինչ-
պէս որ երկար առենէ ի վեր կը վախնայի
որ այսպէս որոշում մը չընէ , վասն որոյ
միայնութեանս առեն զգլխաւս եկած մանր
մունր դժբաղդ պատահմունքը իրմէ պա-
հեր էի ։ Ուրիշ անգամ մը՝ ցին (1) մը
յանկարծ վրաս եկաւ , ու թէ որ ես ա-
րիաբար դանակս մերկացընելով , պար-
տէզին վարի կողմը անկուած խիտ ծա-
ռերուն տակը ինքզինքս չպատսպարէի ,
անշուշտ իր ճանկերուն զիս յափշտակե-
լով պիտի տանէր ։

Անգամ մը՝ խլուրդներուն նոր շինած
հողակոյտի մը գագաթին վրայ քալած
ժամանակս՝ մինչև պարանոցս բոյնին ծա-
կին մէջ ինկայ · հան լաթերս աղտոտե-
լուն՝ ինքզինքս արդարացընելու համար
այնպիսի սուտ մը հնարեցի որ յիշելու

(1) Չայլոց

արժանի չէ։ Նմանապէս կը յիշեմ թէ ողորմելի Ինգղիզս փայօք խորհելով պըտըռած տանէն՝ տօքս խիւնջի պատեանի մը դարնելով, ալ օւըքս կտարեցի։

Չեմ կրնար ըսել թէ այսպէս տաւանձին պտըտած ժամանակս՝ հաճու թէեւ էր զգացածս՞ թէ վիշտ, ինչպատէն կը տեսնէի որ ամէնէն փոքրիկ թռչունները՝ աներկիւղ ինձմէ կանգուն մը հեռաւորութեամբ չորս դիս կը ցաթկռտէին որդեր և ուրիշ ուտելիք գտնելու, այնպէս անհոգ ու ապահով կերպով մը՝ որպէս թէ իրենց մօտ բնաւ ուրիշ բուտեղծուած մը չըլլար։ Մինչեւ չըլլէր որ սարիկ (1) մը կատու ցուխը կարկանդակի կըտոր մը ձեռքէս յափշտակելու յանդգնեցաւ, որն որ նախաձաշիկ ընելու համար Արմաւքլիչ դեռ նոր տուած էր ինձ։ Այս թռչուններուն մէկը բռնելու փորձը ըրի, նայեցայ որ աներկիւղ ինձ դէմ դնելով մատներս կացելու ջանալէն ետե՝ նորէն կը դառնար առաջուան պէս անհոգութեամբ որդեր որսալու։

Օր մը՝ հաստ գաւազան մը առի, ու այնպիսի սաստիկ ու ժով և փորպետութեամբ կառաւաքաղի (2) մը վրայ նե-

(1) Արտըճ գուշու։ (2) Քէթէն գուշու։

տեցի զան, որ գետինը փռուեցաւ․ ու ա-
ռի երկու ձեռքովս անոր պարանոցէն
պինդ մը բռնելով՝ յաղթանակաւ վա-
զեցի սնուցչիս տանելու զան։ Թռչունը,
որ հարուածէն միայն թմրած էր, զգա-
տանալուն պէս՝ թեւերովը այնչափ հա-
րուածներ տուաւ գլխուս երկու կողմին,
որ թէպէտ թեւս երկայնութեանը չափ
հեռու բռներ էի զան, սակայն ճանկե-
րէն փախչելով՝ քանի անգամ մտքէս ան-
ցաւ որ թող տամ․ բայց ծառաներէս
մէկը շուտով օգնութեան հասնելով՝
թռչունին վիզը ոլորեց ձգեց, ու հե-
տեւեալ օրը ճաշուն թագուհւոյն հրա-
մանաւը՝ եփած սեղանս բերին զայն։ Ոս-
կտուաքաղը՝ որչափ որ կը յիշեմ, Ան-
գլիոյ կարապէ (1) մը քիչ մը աւելի մեծ,
ու քաղցրաձայն թռչուն մ՚է։

Պատուաւոր տիկիններն միշտ իրենց
սենեակը կը հրաւիրէին զԳլիմտալքլիջը,
ու կը խնդրէին որ զիս իր հետը առնէ,
որպէս զի զիս տեսնելու եւ ինծ դպչելու
հաճութիւնը ունենան։ Անոնք շատ ան-
գամ գլխէս մինչեւ ոտքս զիս մերկացը-
նելով՝ բոլոր երկայնութեամբս գրկեր-
նուն վրայ կը պառկեցնէին․ աս բանս

(1) Թր. գուղու։

շատ զզուանք կու տար ինձ , քանզի իրաւը ըսելով՝ իրենց մարմիններէն շատ գէշ հոտ մը կու գար քթիս ։ Աս յիշելով՝ յիշեալ ազնիւ տիկնանց պատուոյն պակասութիւն բերել չէ միտքս , զորոնք ամէն կերպիւ կը յարգեմ , բայց կարծեմ թէ հաստատութեան զգացողութիւնս՝ փոքրկութեանս համեմատութեամբը անոնց ունեցածէն աւելի սուր էր , և անտարակոյս աս գեղեցիկ տիկինները Անգղիոյ մէջ իրենց համապատիւ տիկիններէն աւելի մեղադրելի չեն այսմ մասին ։ Վերջապէս՝ իրենց սովորաբար գործածած արուեստական հոտերը՝ ընական հոտէն աւելի անտանելի էին , այնպէս որ զիս կը նուաղեցընէին ։ Ալաքէս չէլնէր՝ Լիլիփութ գտնուած ժամանակս մեծերիմ բարեկամիս մէկը՝ տաք օր մը որ շատ աշխատած էի , "Աբայէգ ինչ ծանր հոտ մը կու գայ" ըսելով՝ զանգատելու համարձակեցաւ , թէև աս մասին ես ուրիշ մարդոց չափ գէշ հոտ չունիմ վրաս , բայց կարծեմ թէ իմ հաստատութե̄ կարողութիս Պրոպտինկնակի ժողովուրդէն որչափ սուր էր՝ Լիլիփութցւոյն ալ իմինէս նոյնչափ աւելի էր ։ Աս մասին պէտք է որ արդարութեամբ

ըսեմ թէ Թագուհի տիրուհիս, ու Կլըմ-տալքլիչ սնուցիչս՝ Անգղիոյ ո՛ր և իցէ տիկնոջ պէս փափուկ և անուշահոտ մարմին մը ունէին ։

Սնուցիչս զիս աս պատուադիր տիկնանց քովը տարած ատենը՝ ինծի ամենէն աւելի անհաճոյ երևցած բանը ան էր որ անոնք զիս ցանկութենէ զրկեալ էակի մը տեղ դնելով, որձակ համորձակ հետս կը վարուէին ։ Ինչու որ զիս իրենց հագուելու սենեակնին վրայ կը դընէին ու իրենք աչքիս մինչև շապիկնին կը փոխէին, որով կը ստիպուէի զանոնք մերկանդամ տեսնելու, թէև ճշմարիտը ըսեմ՝ աս տեսարանս մեծ սոսկում ու զզուանք կու տար ։ Ինչու որ իրենց մարմինը շատ կարծր ու անհարթ էր, և տեսակ տեսակ գոյներ ունէր ։ վրանին տեղ տեղ ափսէի մը մեծութեամբ պխտիկներ կային, ու իրենց մազերը բարակ չուաններու հաստութիւնը ունէին ։ ա-ներեցէք՝ իրենց մարմնոյն միւս կողմերուն վրայօք բան չըսեմ ։ ամենևին ամօթ չէին սեպեր քովերնին գտնուած ժամանակս երեք տակառաչափ ամանի մը մէջ առ նուազն երկու տակառաչափ խը-

մածնին պարպել։ Աս տիկնանց ամենէն գեղեցիկը՝ որ տասն ու վեցը տարեկան կայտառ ու զուարթ աղջիկ մ՚էր, երբեմն փարախէքս հանելով, իր մէկ ծիծին պտուկին վրայ կը հեծցրնէր, և աս անսակ ուրիշ շատ խաղեր կ՚ընէր, որոնց վրայօք մասնաւորաբար չխօսելուս անշուշտ ընթերցողս պիտի ների։ Վերջապէս՝ անոր վարմունքէն շատ տաղտկանալով, աղաչեցի Կոմսուհիին որ այնուհետև այն օրիորդին քովը մինակ չթողու զիս։

Օր մը՝ Կոմսուհին վերապետուհւոյն կարիճ երիտասարդ քեռորդին եկաւ ուհրաւիրեց զանոնք որ իր մտերիմ բարեկամին մէկը մեռցընող մահապարտի մը գլխատումը երթան տեսնեն։ Կոմսուհին բնականաբար փափկասիրտ ըլլալուն՝ որչափ որ երթալ չէր ուզեր՝ շատ ստիպուելով՝ ակամայ յանձն առաւ։ Իսկ ես՝ թէպէտև ասանկ տեսարանները չէի սիրեր, բայց յուսալով որ արտաքոյ կարգի բան մը պիտի տեսնեմ, շատ հետաքրքրութեամբ ելայ հետերնին գացի․ մարդասպանը աս գործիս համար յատկացեալ գլխատութեան բեմին վրայ դրուած աթոռի մը վրայ կապեցին, ու քառա-

սուն ոտքի չափ երկայնութեամբ սուրի մը մէկ հարուածովը գլուխը կտրեցին ։ Արիւնը երակներէն ու շնչերակներէն այնպիսի բարձրութեամբ ու առատօրէն կը ցայտէր՝ որ Վէրսայլի մեծ ջրացայտը բան մ' ըսել չէր ասոր քովը ։ Կտրուած գլուխը բեմին վրայէն ինկած ատենը՝ այնպէս թնդիւն մը պատճառեց, որ վախէս սարսափեցայ մնացի, թէպէտև գրեթէ կէս անգղիական մղոն հեռու կը գտնուէի անկէ ։

Թագուհին, որ շատ անգամ ծովային պատմութիւններս պատմել տալով տը-խուր եղած ատենս զիս զբօսցընելու կը ջանար, հարցուց օր մը թէ նաւարկել կամ թի քաշել գիտեմ, և աս տեսակ կրթութիւնը առողջութեանս օգտակար չի՞ կրնար ըլլալ ։ "Երկուքն ալ շատ աղէկ գիտեմ, պատասխանեցի անոր, քանզի թէև պաշտօնս նաւու մէջ վիրաբուժութիւն կամ բժշկութիւն էր, այսու ամենայնիւ շատ անգամ վտանգի մէջ նաւաստիի մը պէս աշխատելու պարտաւորեալ էի ։ Բայց չեմ գիտեր թէ աս բանը ձեր վեհափառութեան երկրին մէջ ինչպէս կրնամ ընել, որովհետև ձեր տէրութեան ամենէն փոքրիկ

նաւակը՝ մեր առաջին կարգի պատերազմական նաւերուն կը հաւասարի․ ասկէ զատ՝ իմ կառավարելու նաւս ձեր տէրութեան որ և իցէ գետին մէջ ամենևին չկրնար դիմանալ։ — Թէ որ կ՚ուզես, պատասխանեց անոր Թագուհին, ատաղձագործս նաւակ մը կը շինէ, ու ես քեզի տեղ մը կը պատրաստեմ, որուն մէջ կարենաս նաւարկել"։ Իր ատաղձագործը ճարտար մարդ մը ըլլալուն, տուած տեղեկութեանս համեմատ՝ տասն օրուան մէջ՝ ամեն հարկաւորութիւնները մէկ տեղ զբօսանաց նաւակ մը շինեց, որու մէջ՝ ութը Լեւրադոցի հանգստութեամբ կրնային նստիլ։

Իր նաւակը լմնցածին պէս՝ Թագուհին այնչափ զմայլեցաւ, որ իր զենջակին մէջ առնելով փոքեց Թագաւորին տարաւ․ և ան հրամայեց որ զիս նաւակին լեցուն ջրամբարի մը վրայ դնեն, բայց ջրամբարը բաւական լայն չըլլալուն՝ երկու փոքրիկ թիերս չէի կրնար բանեցընել։ Սակայն Թագուհին ասկէ առաջ ուրիշ գաղափար մը ունեցեր էր․ հրամայեր էր ատաղձագործին որ երեք հարիւր ոտք երկայնութեամբ, յիսուն ոտք լայնութեամբ, և ութը ոտք խորու-

Թեամբ փայտեայ տաշտ (1) մը շինէ, ու ջուր չառնելու համար կպրով (2) աղէկ մը ծեփէ ։ Այս տաշտը շինելով՝ պալատին դրսի կողմի սենեակներէն մէկուն պատին քովը գետնի վրայ դրուած էր ։ Տաշտին յատակին մօտ ծորակ (3) մը ունէր, ուրկէ ջուրը եթէ հոտելու ըլլար՝ դուրս կը հանէին, և երկու ծառայ կէս ժամու մէջ դիւրաւ կրնային անոր մէջը նորէն ջուր լեցնելու ։

Յիշեալ նաւակին մէջ ես շատ անգամ թի կը քաշէի՝ զիս և միանգամայն թագուհին ու իր տիկինները զբօսցնելու համար, որոնք ճարտարութիւնս ու ճարպիկութիւնս տեսնելով, մեծ զուարճութիւն կը զգային ։ Երբեմն առագաստ կը բանայի և անատեն ղեկը ձեռքս առնելէն զատ աշխատութիւն չունէի. իսկու որ տիկինները իրենց հովահարներովը (4) ուժգին հով կը յարուցանէին. երբ ասոնք կը յոգնէին՝ իրենց սպասաւորներէն մէկ քանին շնչովին միայն նաւակը յառաջ կը տանէին. անատեն իմ արհեստս կը ցուցնէի՝ ուզածիս պէս յաջ կամ յահեակ ղեկավարելով ։ Օ. քսանքիս մեր-ջը՝ Գլիմտալքլիչ միշտ նաւակս կ'առնէր

(1) Թէքնէ ։ (2) Գաթրան ։ (3) Մուսլուք ։ (4) Ելփազէ՝

իր սենեակը կը տանէր ու բեւեռէ մը կը կախէր որ չորնայ։

Աս կրթութեանց մէջ անգամ մը այնպէս դէպք մը պատահեցաւ, որ քիչ մնաց կեանքս պիտի կորսնցնէի. մանկլաւիկներէն մէկը նաւակս տաշտին մէջ դրած ըլլալուն՝ Գլումտալքլիչի վարպետուհին յորգանոք մը զիս բռնեց վեր վերցուց որ նաւակին մէջը դնէ. բայց ինչպէս եղաւ չեմ գիտեր՝ մատներուն մէջէն սըկրդեցայ, ու տարակոյս չկայ որ քառասուն ոտք բարձրէն գետինը պիտի իյնայի, թէ որ իմ յաջող բաղդէս՝ աս ազնիւ տիկնոջ կուրծքին վրայ խօթուած ձանկաւոր գնդասեղ մը զիս չբռնէր։ Աս ասեղին գլուխը շապիկիս ու անդրավարտիքիս կապին մէջ տեղէն անցնելով, օդին մէջ մէջքէս կախուած մնացի, մինչեւ որ Գլումտալքլիչ ինձ օգնութեան հասաւ։

Ուրիշ անգամ մը՝ ծառաներէն մէկը, որուն պաշտօնը երեք օրը անգամ մը տաշտիս մէջը մաքուր ջուր լեցընելն էր, ան աստիճանի անհոգութիւն ունեցեր էր, որ դոյլին մէջի ջրին հետ չտեսնելով ահագին գորտ մը տաշտին մէջ պարպեր է. աս կենդանին մինչեւ նաւարկութեանս օրը հոն պահուեր մնացեր

էր, ու նաւակս ջրին մէջ տնասածին պէս՝ հանգստութեան տեղ կարծելով, մագլելով վրան ելաւ, և այնչափ նաւակը ծռեց, որ բոլոր ոյժս միւս կողմին վրայ ծանրացընելու ստիպուեցայ, որպէս զի նաւակը հաւասարակշռութիւնը չկորսընցընէ, և տակն ու վրայ չդառնայ։ Նոյն առենը յանկարծ ցատկելով՝ մինչև նաւակին կէսը հասաւ, և ետքը՝ գըլխուս վրայէն դէպ ի առջևս ու դէպ ի ետևս ցատկռտեց, և իր գարշելի տիղմովը վրաս գլուխս աղտոտեց։ Իր դիմաց մեծութեամբը ամենատգեղ կենդանի մը կ'երևար աչքիս։ Այսու ամենայնիւ աղաչեցի զԿլըմտալքլիչը որ թողու զիս մինակ անոր հետ մաքառելու։ Ուստի թիերուս մէկովը անոր աղէկ ծեծ մը տալէս ետև՝ վերջապէս պարտաւորեցի որ նաւակէն դուրս ցատկէ։

Աս տէրութեան մէջ գլուխս եկած ամենէն մեծ դիպուածը՝ խոհանոցի գրագիրներէն մէկուն կապիկի մը ինձ ըրածն եղաւ։ Կլըմտալքլիչ գործքի կամ այցելութեան համար տեղ մը գացած ըլլալով, զիս իր խուցին մէջը դրեր՝ վրայէս կղպեր էր։ Օդը շատ տաք ըլլալուն՝ խուցին պատուհանը, ինչպէս նաև իմ

բնակած մեծ սնտուկիս պատուհանները և դուռը բաց էին։ Երբ սեղանիս քովը նստած հանգարտ կը խորհէի, ականջիս ձայն մը եկաւ․ կարծես թէ բան մը խուցին պատուհանէն ներս մտաւ, ու մէկ կողմէն միւսը ցատկեց․ ասոր վրայ թէպէտև շատ վրդովեցայ, բայց դեռ նստած տեղէս չշարժելով, պատուհանէս դուրս նայելու համարձակեցայ։ Անատեն՝ կապիկ մը տեսայ, որ ասդին անդին ցատկելով, մինչև սնտուկիս մօտը եկաւ, ու կ՚երևար թէ մեծ հաճութեամբ և հետաքրքրութեամբ կը նայէր․ երբ ներս մտնելու համար գլուխը դռնէն ու ամէն պատուհաններէն ներս կը խօթէր, ես խուցիս կամ սնտուկիս հեռաւորագոյն անկիւնը քաշուեցայ․ բայց կապիկը ամէն կողմէն ներս նայելուն՝ այնպէս սաստիկ վախ տուաւ ինծի, որ չխաթելով մտքէս անգամ չանցաւ անկողնոյս տակը մտնելով պահուելու, ինչպէս որ դիւրաւ կրնայի ընել։

Աս կենդանին քիչ մը ժամանակ գլուխը ներս ցցելով նայելէն, ակռաները ցուցընելէն՝ կրճըտելէն և շատ խեղկատակութիւններ ընելէն ետև՝ վերջապէս զիս գտաւ։ ու իր թաթերուն

Ձեռքը խուցին դռնէն ներս երկնցուց՝ կտ-տուփ մը՝ մուկը բռնելով հետը խաղա-ցածին պէս, թէև անկէ ազատելու հա-մար շատ անգամ տեղս փոխեցի, բայց անօգուտ եղաւ, ինչու որ թիկնոցիս քը-ղանցքը ձեռք առնելով (որ նոյն երկրի մեծաւորին շինուած ըլլալուն՝ շատ հաստ ու դիմացկուն էր), զիս դուրս քաշեց, ու իր աջ թաթին մէջը առնելով՝ ճիշտ ամանուի մը՝ երախայի ծիծ տուած ա-տենը բռնածին պէս, ինչպէս որ շատ անգամ Լիզբոնայ մէջ տեսեր եմ անոնց կատուի ձագերու հետ ու տեսակ խա-ղալնին։ Երբ իր թաթերուն մէջ հանգարտ չէի կենար, այնպէս սաստիկ ուժով զիս կը սեղմէր, որ հնազանդիլը աւելի խե-լացիութիւնը սեպեցի. իր միւս թաթո-վը շատ անգամ կամաց մը երեսս շոյշա-փելուն՝ իրաւամբ կարծեմ թէ զիս կապ-կի ձագ մը կարծեր էր։

Այս զբօսանաց մէջ, խուցին դրանը մօ-տէն՝ դուռը բացուելու պէս ձայն մը լսուելուն՝ յանկարծ նոյն պատուհանին վրայ ցատկեց, ուրկէ ներս մտեր էր, և անկէ կապարակապ տանիքին ու խո-ղովակներուն վրայ անցաւ իր երեք ոտք-

ցը վրայ քալելով, ու զիս չորրորդօմը բռնելով, մինչև որ մեր տանը քով եղած յարկի մը վրայ մագլելով ելաւ։ Աս միջոցին՝ Կլէմանթինէ բարձրաձայն աղաղակը ականջիս հասաւ։ Ողորմելի աղջիկը գրեթէ յուսահատեալ մնացեր էր, ու պալատին այն կողմը մեծ աղմուկ մը ինկեր էր․ ծառաները սանդուղներ բերելու վազեցին, պալատէն հարիւրաւոր անձինք տեսան որ կապիկը շինքի մը ծայրին վրայ նստեր էր, ու թաթերուն մէկովը մանկիկի մը պէս զիս գրկելով, միւսովը կը կերակրէր՝ կլափին մէկ կողմին վրայ եղած պարկին մէջէն սեղմելով դուրս հանած ուտելիքովը, որոնք բերանս կը խօթէր, և ուտել չուզած ատենս՝ թաթովը անգամ մը ինձ կը զարնէր․ տար վրայ՝ խառնիճաղանճ ժողովուրդէն շատը վարէն ծիծաղնին չէին կրնար զսպել, և շիտակը մեղադրելի չէին, քանզի աս տեսարանը ինծմէ զատ ամենուն բաւական ծաղրաշարժ էր։ Անոնցմէ մէկ քանին կապիկը վար իջեցընելու դիտմամբ վարէն քարեր նետել սկսան․ բայց աս բանս խստութեամբ արգիլուեցաւ, որ չըլլայ թէ նոյն քարերովը գլուխս ջախջախեն։

Ուստի սանդուղներ բերուելով՝ բազմաթիւ մարդիկ տան յարկին վրայ ելան · կապիկը տեսնելով որ գրեթէ զինքը պաշարեր էին, գետնէն հինգ հարիւր կանգուն բարձր յարկին կղմինտրին վրայ զիս ձգեց փախաւ, որովհետև իր երեք ոտիցը վրայ պէտք եղածին չափ արագութեամբ չէր կրնար վազել · Ես հոն քիչ մը ատեն մնացի, ու ամեն վայրկեան կը սպասէի որ հովին բռնութենէն կամ գլխուս դառնալէն գլորելով, տանեաց խողովակներուն մէջ իյնամ · բայց սնուցիչս ծառաներէն մէկը մագլցելով վեր ելաւ, ու զիս իր սանտզեւսոյն գրպանին մէջը դնելով, անվնաս վար իջեցուց :

Կապիկին՝ կոկորդիս մէջ լեցուցած ապտեղի նիւթովը գրեթէ խեղդուելու վրայ էի · իմ սիրելի սնուցիչս փոքրիկ ասեղով մը զանոնք բերնէս դուրս հանելուն պէս՝ փսխեցի, որուն վրայ հանգստացայ : Սակայն այս ատելի անասունին տուած նեղութիւններէն ան աստիճան տկարացեր էի, ու չորս դիս այնպէս ջախջախուած էր՝ որ տասն ու հինգ օր անկողնոյս մէջ մնալու պարտաւորեցայ : Կայսրը, կայսրուհին և բոլոր պալատականները

ամէն օր մարդ զրկելով, առողջութեա-
նըս վիճակը կը հարցընէին, և հիւանդու-
թեանս մէջ թագուհին զանազան ան-
գամ այցելութեան եկաւ ինծի: Կապիկը
սպաննեցին, ու հրաման մը եւս ելաւ,
որ այնուհետեւ պալատին կողմերը այ-
սպիսի անասուն մը չպահուի:

Առողջանալէս ետև երբ թագաւորին
ներկայացայ, որ անոր մարդասիրու-
թեանցը համար շնորհակալութիւնս մա-
տուցանեմ, նորէն վեհափառութիւնը
բարեհաճեցաւ յիշել դէպքին վրայ
կատակներ ընել և հարցուց թէ կապի-
կին թաթերուն մէջ եղած ատենս ինչ
մտածմունք և զգացում ունէի, անոր
տուած ուտելիքը ինչ համ ունէին. թէ
ինչ կերպով կը կերակրէր, և թէ տա-
նիքին վրայի օդը ախորժակս բացա՞
արդեօք: "Կ՚ուզէի գիտնալ, ըսաւ, որ
եթէ այսպիսի դիպուած մը քու երկրիդ
մէջ պատահելու ըլլար՝ ինչ կ՚ընէիր արդ-
եօք": Պատասխան տուի թէ՝ "Հետա-
քըքրութեան համար օտար երկիրներէ
խրկուածներէն զատ՝ մենք Եւրոպիոյ մէջ
կապիկ չունինք, ու անոնք այնպէս մա-
նըր են, որ տասներկուքին մէկ տեղ
կրնամ դէմ դնել, թէ որ յանդգնին.

վրաս յարձակելու ։ Իսկ եթէ զիս բըռնող այն աՀագին անասունին Համար կը Հարցընես (որ յիրաւի փղի մը չափ կար), թէ որ վախը միտքս չփոխելով, իր թաթը սենեկիս մէջ երկնցուցած ժամանակը՝ դաշոյնս գործածելը միտքս գար (առ միջոցին՝ կատաղութեամբ նայելով՝ ձեռքս դաշոյնիս դաստապանին կը զարնէի), կարծեմ այնպէս վիրաւորած պիտի ըլլայի զան, որ թաթը ներս երկնցընելէն աւելի արագութեամբ դուրս պիտի քաշէր զան ”։ Աս խօսքերը այնպիսի մարդու մը վստաՀութեամբն ու քաջութեամբը ըսի, որ սովրեալ է իր պատիւը ուրիշներուն դէմ պաշտպանելու ։ Սակայն՝ իմ աս խօսքերս բարձրաձայն ծիծաղէ զատ՝ ուրիշ բան չպատճառեցին, ու կայսեր չորս դին եղողները ևս անոր արժան եղած յարգանքը մոռնալով, չկրցին ինքզինքնին զսպել ։ Ասոր վրայ մտածեցի թէ որչափ յիմարութիւն է մարդու մը այնպիսի անձերու առջև պարծիլ, որոնք իրեն Հետ ոչ Հաւասարութիւն ունին և ոչ բաղդատութիւն ։ Ճիշդ իմ աս ըրածիս օրինակը Անգղիա դարձած ատենս շատ անգամ տեսած եմ, ուր որ խիստ

անարգ անձ մը, որուն ոչ ծնունդը յայտնի է, և ոչ ազնուականութիւնը, որ ոչ հանճար ունի, և ոչ հասարակ զգացութիւն մը, կ՚ուզէ ինքզինքը մեծ երևցընել, և տէրութեան մեծամեծաց հաւասարիլ:

Ան որ կերպ կերպ ծիծաղելի սրա-մտութիւններ կ՚ընէր պալատականաց, ու Էմմանուէլին թէև չափազանց կը սիրէր զինք, սակայն յիմարական գործ մը ըրած ատենս, թագուհւոյն հաճելի ըլլալու համար՝ կ՚երթար կը պատմէր անոր: Աս աղջիկը քիչ մը տկարացած ըլլալով՝ իր վարպետուհին տուաւ զինքը քաղաքէն կէս ժամ կամ երեսուն մղոնի չափ հեռու գիւղս տարաւ օդափոխութեան համար: Դաշտի մը մէջ կառքէն վար իջան, Էմմանուէլին իմ ճամբորդութեան սնտուկս գետինը դրաւ, և ես մէջէն դուրս ելայ որ պտըտիմ: Այն տեղը կովու քակոր մը կար. ատոր վրայէն ցատկելով ճարպկութիւնըս ցուցընել ուզեցի, բայց դժբաղդաբար վրայէն ուժով մը չկրնալով ցատկել՝ մինչև ծունկերէս վեր ինքզինքս ճիշդ անոր մէջ տեղը գտայ: Ինչ և իցէ՝ քիչ մը նեղութենէ ետև քալելով դուրս ելայ մէջէն, ու ծառաներէն մէկը թաշ-

կինակոխը կ՚ցածին շուփ մաքունց վրաս , որովհետեւ խիստ աղտոտեր էի ։ Նոր վրայ՝ ինու ցիչա մինչև տունը դառնալնիս՝ ննտուկէս դուրս չհանեց զիս · աս բանս շատ տօլ Թագուհւոյն ականջը հասաւ , և ծառաները պալատին մէջ տարածեցին · ուստի աս դէպքը քանի մը օր վրաս ծիծաղիլ տալու պատճառ տուաւ ։

---

## ԳԼՈՒԽ Զ.

*Թագաւորին ու Թագուհւոյն հաճելի ըլլալու համար հեղինակին զանազան գիւտերը ։ Երաժշտութեան մէջ իր ցուցուցած ճարտարութիւնը ։ Թագաւորին՝ Անգլիոյ վրայօք իրեն ըրած հարցմունքը ։ Հեղինակին տուած պատասխանները ։ Թագաւորին անոնց վրայ ըրած դիտողութիւնները ։*

ՇԱԲԱԹԸ մէկ երկու անգամ կայսեր արթննալէն ետեւ՝ անոր այցելութեան երթալու սովորութիւն ունէի, եւ շատ անգամ սափրուած ատենը տեսեր եմ զինքը ․ ի սկզբան աս տեսքը յիրաւի ինծի մեծ սոսկում կու տար, ըստ որում ածելին հասարակ մանգաղէ մը գրեթէ կրկնապատիկ մեծ էր ։ Նորին վեհափառութիւնը՝ ըստ սովորութեան երկրին՝ շաբաթը երկու անգամ միայն կ'ածիլուէր ։ Անգամ մը սափրիչին աղաչելով, թագաւորին երեսէն ածելիով առած օճառախառն մազերէն առի, ու անոնց մէջէն քառասուն - յիսուն հատ ամենէն հաստ մազերը ժողվելէն ետեւ՝ աղուոր փայտի կտոր մը առնելով, սանտրի

մը կռնակի նման կտրեցի, ու անոր վրայ՝ Ակմառալքլիչէն առած խիստ փոքրիկ սան-դուխ՝ հաւասար հեռաւորութեամբ շատ մը ծակեր բացի։ Մատներուն ծայրերը դանակով յղկելով և ծռելով՝ ան ծակերուն մէջ այնպէս վարպետութեամբ անցեցի, որ բաւական աղէկ սանտր մը ձևացուցի։ քանզի բուն սանտրիս ակռաները կոտրուած ու գրեթէ անգործածելի ըլլալուն՝ պէտք եղած ատենը անոր տեղը կը գործածէի, ինչու որ ան երկրին մէջ այնպէս ճարտար արհեստաւոր մը չգտայ որ կարենայ ինծ ուրիշ մը շինել։

Աս բանս միտքս զբօսանք մը ձգեց, որով սպառած ժամանակներս կ'անցընէի։ Թագուհւոյն կին սենեկապետին աղաչեցի որ անոր սանտրուած ատենը գլխէն թափած մազերը ժողվէ ու ինծ տայ։ Աս կերպով բաւական մազ հաւաքեցի, ու սղնխադագործ բարեկամիս հետ խորհուրդ ընելով, որուն հրաման եղած էր թէ ուզած ատենս մանր մանր բաներ շինէ ինծ, ապսպրեցի որ սնտուկիս մէջ ունեցած աթոռիս մեծութեամբը երկու աթոռի շրջանակները շինէ, ու ետքը բարակ հերիւնով (1) փոքրիկ ծակեր բա-

(1) Բիզ։

նայ անոնց յենարանին ու նստարանին չորս դին․ մազերուն մէջէն հատերը ոլորելով՝ աս ծակերուն մէջէն անցուցի ճիշդ Անգղիոյ եղէգնեայ աթոռներուն ձեւովը ։

Երբ աս աթոռները լմնցուցի, Թագուհւոյն ընծայ բրի զանանք, եւ ան իր գանձարանին մէջ պահելով՝ հետաքրքրական բաներու պէս ամենուն կը ցուցընէր, որոնք յիրաւի տեսնողներուն զարմանք կը բերէին ։ Թագուհին ուզեց որ աս աթոռներուն մէկուն վրայ զիս նստեցընէ․ բայց ես բացարձակապէս իրեն հնազանդել չուզեցի, ըսելով թէ՝ Աւելի աղէկ կը համարիմ հազար անգամ մեռնիլ, քան թէ՝ մարմնոյս անպատիւ մասը այն անգին մազերուն վրայ դնել, որոնք ատեն մը վեհափառ կայսրուհւոյն գլուխը կը զարդարէին ։

Այնուհետեւ աս մազերէն (որովհետեւ միշտ մեքենականութեան հանճարը ունէի) հինգ ոտքի չափ երկայնութեամբ ու վրան թագուհւոյն անունը ոսկի գըրերով գծագրեալ փոքրիկ եւ գեղեցիկ քսակ մը շինեցի, ու թագուհւոյն հաւանութեամբը Կլիմտալքլիչին տուի զայն ։ Ստոյգ է որ աս քսակը շատ փառաւոր

էր, բայց մեծ դրամներու ծանրութիւնը վերցընելու չափ դիմացկուն չըլլալուն՝ գործածելու յարմար չէր․ աղջըկանց սիրելի քանի մը մանր խաղալիկներէն զատ՝ Կլմաւլըէն ուրիշ բան չէր դներ անոր մէջը ։

Թագաւորը՝ որ երաժշտութիւնը շատ կը սիրէր , շատ անգամ նուագածութիւններ (1) ընել կու տար պալատը , ուր երբեմն զիս սնտուկով կը տանէին ու սեղանի վրայ կը դնէին որ մինիկ ընեմ․ բայց այնչափ բարձրաձայն աղաղակ մը կը հանէին , որ հազիւ թէ եղանակները կընայի որոշել ։ Ճշմարիտը՝ արքայական բանակի մը թմբուկներուն և փողերուն ամենը մէկէն ականջիդ քովը հնչելու և զարնելու որ ըլլային , անոնց աղաղակին չէին հաւասարեր ։ Աստի՝ սնտուկս նուագածուաց քովէն կրցածիս չափ հեռու տանել տալով՝ անոր դռներն ու պատուհանները կը գոցէի , և պատուհանաց վարագոյրները կ'իջեցընէի , որով երաժշտութիւննին անհաճոյ չէր գար ականջիս ։

Երիտասարդութեանս ժամանակը՝ քիչ մը կէս - տաւիղ (2) զարնել սորվէր էի ,

(1) Ահէնկ ․ (2) Եարըմ չէմպալօ , գլավէն ։

որմէ հատ մը Գլումտալքլիչի սենեկին մէջ կար, ու շաբաթը երկու անգամ վարժիչ մը կուգար որ իրեն սորվեցընէ ։ Սա նուագարանին կէս-տաւիղ ըսի, որովհետեւ քիչ մը անոր կը նմանէր, ու նոյն կերպով կը զարնուէր ։ Կայսրն ու կայսրուհին զուարճացընելու համար՝ ուզեցի որ սա նըւագարանով Անգղիոյ եղանակ մը զարնեմ ։ Բայց սա բանս խիստ դժուար կ'երեւար, ինչու որ յիշեալ նուագարանը վաթսուն ոտքի չափ երկայն էր, ու ստամներուն ամեն մէկը գրեթէ ոտք մը լայն, այնպէս որ թեւերս որչափ իսկ տարածէի՝ հինգ ստամներէն աւելին չէի կրնար հասնիլ, ու ստամները կոխելու համար՝ սաստիկ ուժով մը բռնցի զարնել կը հարկաւորէր, որ խիստ մեծ նեղութիւն ըլլալէն զատ՝ օգուտ մը պիտի չընէր ։ Ուստի սա հնարքը գտայ ․ հասարակ գաւազանի մեծութեամբ՝ մէկ ծայրը հաստ երկու կլոր գաւազան պատրաստեցի ․ սա հաստ ծայրերը մուկի կաշիի կտորուանքով փաթթեցի, որպէս զի ստամներուն զարկած ատենս՝ ոչ անոնց ծայրը աւրեմ, և ոչ ձայնին խափանում մը պատճառեմ ։ Սա նուագարանին առջեւը նստարան մը կար ստամներէն չորս

ոտքի չափ ցած․ գլխս ասոր վրայ դրին, ու ես կրցածիս չափ շուտով յաջ կամ յահեակ կողմնակի վազելով, երկու գաւազաններովս հարկաւոր եղած ատամնե-րուն կը զարնէի, և ճիկ ըսուած անգղիական եղանակը կը նուագէի, որուն վրայ՝ նոցին մեծափառութիւնները մեծ հաճութիւն զգացին․ սակայն այսպիսի մեծ աշխատանք մը ընաւ կրած չէի ։ Ի վերայ այսր ամենայնի՝ տասն ու վեցը ատամներէն աւելին չէի կրնար զարնել և հետևաբար բամը (1) ձայնը ու երեք ատամներուն ձայները մէկ տեղ չէի կըր-նար հանել․ և աս բանը դաշնակութեան մեծ պակասութիւն կը պատճառէր ։

Կայսրը՝ ինչպէս որ առաջուց ըսեր եմ, հանճարեղ մէկը ըլլալով, միշտ կը հրամայէր որ զիս սնտուկիս մէջը դրած բերեն ու իր ներքին սենեկին սեղանին վըրայ դնեն ։ Նաև ինձ կը հրամայէր որ աթոռներուն մէկը սնտուկէս դուրս հանեմ, ու սենեկիս գագաթին վրայ դնելով, իրմէ երեք կանգուն հեռաւորութեամբ նստիմ, որով գրեթէ իր երեսին հաւասար կու գայի ։ Աս կերպով

(1) Նուագարանաց հաստ ձայնը ։

շատ խօսակցութիւններ ըրի անոր հետ․ օր մը համարձակութիւն առնելով ըսի իրեն թէ՝ Եւրոպիոյ և աշխարհիս ուրիշ մասանց դէմ ցուցըրած արհամարհանքը՝ իր մտաց սքանչելի յառաջութեանցը համաձայն չէր երևար, և թէ մարդուս խելքը՝ իր մարմնոյն մեծութեամբը չափուիր․ ընդհակառակն՝ մեր երկրին մէջ փորձուած է թէ ամենէն բարձրահասակ մարդը ամենէն կարճամիտն է․ անասնոց մէջ՝ մեղուները և մրջիւնները՝ ճարտարութեան, նրբամտութեան ու արուեստի կազմանէ՝ իրենցմէ մեծ անասուններէն աւելի համբաւաւոր են․ թէև ձեր վեհափառութիւնը զիս ոչինչ բանի մը տեղ դրած է, այլ կը յուսամ որ ձեզ երևելի ծառայութիւն մը կրնամ ընել”։

Կայսրը ըսածներուս մտադրութեամբ ականջ դնելով՝ սկսաւ առջինէն աւելի աղէկ կարծիք ունենալ վրաս։ Ուստի խնդրեց որ կրցածիս չափ ճշդութեամբ Անգղիոյ կառավարութեան վրայօք պատմութիւն մը ընեմ իրեն, ըսելով թէ որչափ որ իշխանները իրենց բուն սովորութեանցը հակամէտ են ( աս կարծիքը իմ անկէ առաջ ըսած խօսքերէս առած էր, ) այսու ամենայնիւ՝ իրեն հաճելի

դիւր ըլլար այնպիսի պատմութիւն մը լսել, ուսկէ օգուտ կրնար քաղել։

Երեւակայէ անգամ մը, ազնիւ ընթերցող, թէ ան ատեն որչափ կը բաղձայի Գեմոսթենէսի ու Կիկերոնի լեզուն ունենալ, որով կարող ըլլայի իմ սիրելի Հայրենիքըս՝ իր արգեանցն ու բարեբաստութը արժանի կերպով գովաբանելու.

« Մեր տէրութիւնը, ըսի Նորին վեհափառութեան, ինքնակալի մը իշխանութեան տակը երեք հզօր թագաւորութենէ բաղկացեալ երկու կղզիներ են, Ամերիկայի գաղթականներէն զատ »։ Մեր կլիմային բարեխառնութեան, ու մեր հողին արգասաւորութեան վրայօք երկարօրէն խօսելէս ետեւ՝ Անգղիացւոց խորհրդարանը նկարագրեցի։ « Այս խորհրդարանը, ըսի, երկու մասէ կը բաղկանայ, որուն մէկը ատենակալաց տուն կ՚անուանի, ու ասոր անդամները ազնուական տոհմէ և մեծատուն կալուածատէրներ են։ Ասոնց արուեստից և ռազմագիտութեան կրթութեանը համար չափազանց հոգ կը տարուի, որպէս զի կարող ըլլան օր մը թագաւորին և տէրութեան խորհրդական, օրէնսդրութեան մասնակից, արդարութեան բարձ-

րագոյն ատենին դատաւոր, ու իրենց իշխանին և հայրենեացը արիութեամբ, հաւատարմութեամբ ու նախանձաւորութեամբ պաշտպան ըլլալ: Ասո՛նք են տէրութեան զարդերն ու պատուարները· ասո՛նք են արժանաւոր յաջորդք իրենց խիստ մեծահամբաւ նախնեացը, որոնց պատիւը իրենց առաքինութեան արդիւնքը եղած է: Նոյն ժողովքին իբրև անդամ միաւորեալ են նաև քանի մը սրբազան անձինք եպիսկոպոսի տիտղոսով, որոնց մասնաւոր պաշտօնը՝ կրօնքը պաշտպանել, և ժողովրդին կրօնք սորվեցընողներուն վրայ հոգ տանիլ է: Ասոնք Թագաւորին և իր ամենախելացի խորհրդականաց ձեռօքը՝ բոլոր ազգին ա՛յնպիսի քահանայից մէջէն ընտրուած են, որոնք իրենց մաքուր վարուքը և խորին իմաստութեանցը համար խիստ արժանաւորութեամբ երևելի եղած են· ասոնք ստուգիւ կղերին ու ժողովրդին հոգևոր հայրերն են:

Խորհրդարանին միւս մասը հասարակաց տուն անունով երևելի և ազնիւ անդամներէ բաղկացեալ ժողով մ'է, որոնք իրենց տաղանդին, և հայրենասիրութեանը համար ժողովրդէն ազատօ-

րէն ընտրեալ են և բոլոր ազգը կըներկայացընեն ։ Ու երկու ժողովը մէկ տեղ գալով՝ Եւրոպիոյ մէջ ամենէն երևելի խորհրդարանը կը ձևացընեն, ու Թագաւորին միաբանութեամբը տէրութեան բոլոր գործերն ու օրէնքը կը սահմանեն"։

Անկէ ետև մեր արդարութեան ատեանները նկարագրեցի, ու դատաւորները, որոնց պատուաւոր գիտունները և Թարգմանները կը բացին, որոնք մասնաւոր անձանց վէճերը կը վճռեն, յանցաւորը կը պատժեն, և անմեղը կը պաշտպանեն ։ Յիշեցի նաև մեր գանձուն խոհական և խնայողական տնտեսութիւնը, ծովու և ցամաքի վրայ մեր զօրաց քաջութիւնը և յաղթութիւնները ։ Մե՛ր ժողովրդեան թիւը հաշուելով, յիշեցի թէ որչափ միլեօնէ բաղկացեալ տեսակ տեսակ կրօնական ու քաղաքական կուսակցութիւններ կան մեր մէջը ։ Մե՛ր խաղերն ու զբօսանքը անգամ, կամ ուրիշ որ և իցէ մասնաւոր բան, որ կը կարծէի թէ հայրենեացս պատիւը պիտի աւելցընէ, յիշելու դանց չըրի ։ Ի վերջոյ՝ դարէ մը ի վեր Անգղիոյ մէջ պատահած գործերուն ու դիպուածներուն վրայօք

համառօտիւ պատմութիւն մը ընելով խօսքս լմնցուցի ։

Թագաւորը հինգ անգամ երկար ժամերով ինծի ունկնդրութիւն ըրաւ, և մեծ ուշադրութեամբ բառերուս ականջ դնելով, անոնց համառօտութիւնը կը գրէր, և ինձ ընելու խնդիրները կը նշանակէր ։

Վեցերորդ անգամին ալ երկար խօսակցութիւնները վերջ ընելէս ետև՝ կայսրը գրած համառօտ բովանդակութիւնները քննելով՝ իւրաքանչիւր յօդուածին վրայօք շատ մը երկբայութիւններ, խնդիրներ, ու դժուարին ընդդիմութիւններ առաջարկեց ։ Նախ հարցուց թէ երիտասարդ ազնուականաց միտքն ու մարմինը մշակելու համար բռնած ճամբանիս ո՞րն է, ու իրենց կենացը առաջին և բան սորվելու ատենը հասարակօրէն ի՞նչ տեսակ գործով զբաղած են ։ Ազնուական գերդաստան մը եթէ փճանայ, խորհրդարանին մէջ անոր յաջորդելու ի՞նչ կարգադրութիւններ կան ։ Նոր լորտ մը ըլլալու համար ի՞նչ յատկութիւններ ունենալ պէտք է ։ Աս աւագութեան հանելուն պատճառը ի՞նչ է ։ Թագաւորին յօժարութի՞ւնը, թէ

պալատական տիկնոջ մը ստակի գումար մը տրուիլը, կամ հասարակաց օգտին դէմ կողմնակցութիւն մը զօրաւոր ըլլալու դիտաւորութիւնը ։ Աս լորտերը իրենց երկրին օրինաց վրայօք ի՞նչ աստիճան տեղեկութիւն ունին, ու այս տեղեկութիւնին ի՞նչպէս ստացած են, որ իրենց հայրենակցաց իրաւունքը անդառնալի կերպիւ բարձրագոյն ատենի մէջ որոշելու կարողութիւն ունին ։ Արդեօք անոնք ագահութենէ, կողմնակալութենէ կամ չքաւորութենէ միշտ այնչափ ազատ մարդիկ են, որ կաշառառութիւն կամ ուրիշ ո՛ր և իցէ անձնական շահ մը տեղի ունեցած չըլլայ անոնց մէջ ։ Միթէ վերոյիշեալ սրբազան եպիսկոպոսները կրօնական նիւթերու մէջ ունեցած գիտութեանց ու իրենց մաքուր վարուցը համար միշտ ան աստիճանին հասած են ։ Սոսկ քահանայ կամ ազնուականներուտան երէց եղած ատենին՝ արդեօք ինքզինքնին ժամանակին յարմարցուցած չե՞ն · և այս ազնուականներուն ազդութեամբը խորհրդարանի անդամ ընտրուելէն ետև՝ միշտ անոնց կարծեացը ծառայաբար չե՞ն հետևիր ։

Ա· ղեց գիտնալ նաև թէ՝ հասարակաց

տան անգամ ըսածներս ժողովրդենէ ի՞նչ կերպիւ կ՚ընտրուին : Արդեօք քաղաքը լեցուն անծանօթ մէկը ռամիկ քուէարկուաց վրայ ա՛յնչափ ազդեցութիւն չի՞ կրնար ունենալ, որ զինքը՝ իրենց կալուածատէրներէն, կամ մերձակայ երևելի ազնուականէ մը առաջ անգամ ընտրել տայ : Ի՞նչպէս եղեր է՝ որ ամեն մարդ ու խորհրդարանին մէջ մտնելու այսչափ չափազանց փափաք ունի, քանի որ աս ընտրութիւնը անձնական շահ մը չի բերելէն զատ՝ մեծ նեղութեանց ու ծախուց պատճառ կ՚ըլլայ, և թօշակ կամ ամսական մը չըլլալուն համար՝ շատ անգամ բոլոր գերդաստան մը կը կործանէ . քանզի ատենակալաց աս վարմունքը ա՛ն աստիճան առաքինութեան և հասարակութեան վրայ սէր մը կը ցուցընէ, որ նորին վեհափառութիւնը կը կասկածէր թէ անշուշտ բանին տակը շահաւէտ նպատակ մը կայ : Կ՚ուզէր գիտնալ թէ արդեօք այսպիսի բարենախանձ պարօնները իրենց ծախուց ու նեղութեանց փոխարէնը լեցընելու դիտաւորութեամբ կաշառակուրծ պաշտօնէից հետ միանալով, հասարակութեան բարիքը՝ մոլի և ակար իշխանի մը կամացը չէ՞ին զոհեր .

Աս մասին շատ մէջէ մէջ հարցմունք ըրաւ ինձ, և բանծներս կշռելէն և կըշռադատելէն ետև՝ անթիւ ընդդիմութիւններ յառաջ բերաւ, զորոնք հոս կրկնելը կարծեմ թէ խոհեմութիւն և վայելուչ չէ։

Կայսրը ուզեց նաև որ մեր արդարութեան ատեաններուն զանազան մասանց վրայօք տեղեկութիւններ տալով զինքը գոհ ընեմ. աս ուզածը ամէն բանէն աւելի աղէկ կրնայի կատարել, որովհետև ատենօք դիւանատան մէջ երկարժամանակեայ պաշտօն մը ունեցեր էի, զոր թէպէտև փասարկեցայ, բայց շատ սուղի նստաւ ինծի։ Ուստի հարցուց թէ դատաստան մը կտրելու համար սովորաբար ո՞րչափ ժամանակ պէտք էր, և ո՞րչափ ծախք կ'ըլլար։ Միթէ փաստաբաններն ու ատենապաններըը անիրաւ ու բռնի ձանձրացուած դատերու ջատագով ըլլալու ազատութիւն ունի՞ն։ Արդեօք կողմնակցութիւն մը՝ թէ կրօնական ըլլայ և թէ քաղաքական, արդարութեան կշիռքը մէկ կողմը չի՞ կրնար հակել տալ։ Արդեօք աս ջատագով իրաւաբանները արդարութեան ընդհանուր օրինա՞ց տեղեակ են, թէ միայն գաւառական, ազգային, կամ

տեղական սովորութեանց · արդեօք ասոնք կամ դատաւորները իշխանութիւն ունի՞ն ուզածնուն պէս օրէնքը մեկնելու, և նոր նշանակութիւններ տալու անոնց ։ Արդեօք մի և նոյն դատին պաշտպան և հակառակորդ եղած չե՞ն երբեք ։ Միթէ իրաւագէտներու ընկերութիւնը հարո՞ւստ է թէ աղքատ ։ Արդեօք ջատագով ըլլալու կամ իրենց կարծիքը ըսելու համար դրամական փարձք չե՞ն ընդունիր ։ Վերջապէս՝ արդեօք անոնք հասարակաց տան մէջ անդամ չե՞ն ընտրուիր երբեք ։

Ասոնք ձգելով՝ տէրութեան գանձուն կառավարութեանը վրայօք սկսաւ խօսիլ ։ « Կարծեմ, ըսաւ, կը յիշես թէ ձեր տէրութեան տարեկան հարկերը հաշուած ատենդ՝ հինգ կամ վեցը միլիօնի մօտ հանեցիր, ու ծախքը յիշած ատենդ նայեցայ որ երբեմն կրկնապատկէն աւելի կ'ըլլայի ». քանզի աս մասին վրայօք ըրած գիտողութիւնները շատ մասնաւոր կերպիւ էին, և կը յուսար թէ մեր վարմունքին վրայօք տեղեկութիւն առնալը կրնայ իրեն օգտակար ըլլալ · ուստի իր ըրած հաշուին մէջ չէր կրնար սխալիլ ։ « Բայց թէ որ ըսածներդ ճշմարիտ են,

ըրաւ , տակաւին չեմ կրնար հասկընալ
թէ տէրութիւն մը մասնաւոր անձի մը
պէս ինտո՞ր կրնար իր եկամուտէն աւելի
ծախք ընել ”։ Հարցուց նաև թէ մեր
պարտատէրները ո՞վ էին , ու անոնց վըճա-
րելու համար ո՞ւրկէց ստակ կը ճարէինք ·
Մեր մեծ ու բազմածախս պատերազմնե-
րուն և անոնց համար եղած չափազանց
ծախքին մանրամասն պարագաները լսե-
լով շատ կը զարմանար ։ “ Անշուշտ , կ՚ը-
սէր , կամ դուք կռուասէր ժողովուրդ
մ՚էք , և կամ ձեր դրացիները շատ չար
մարդիկ են ”։ Մեր զօրապետներուն հա-
մար կ՚ըսէր թէ մեր թագաւորներէն ա-
ւելի հարուստ պէտք է որ ըլլան ։ “ Ձեր
կղզիներէն դուրս ի՞նչ գործ ունիք , կը
յաւելցընէր թագաւորը , և ձեր վաճա-
ռականութենէն ուրիշ ի՞նչ բան կը փըն-
տռէք հոն · բաւական չէ՞ որ նաւատոր-
միղով ձեր ծովեզերքը պաշտպանէք ”։
Երբ լսեց թէ խաղաղութեան ատեն ու
ազատ ժողովուրդի մը մէջ վարձկան բա-
նակ մը կը պահեմք , ու կը սնուցանեմք՝
աւելի զարմացաւ ։ “ Թէ որ դուք ձեր
բուն հաճութեամբը ձեր կողմանէ պատ-
գամաւորաց ձեռօքը կը կառավարուիք ,
կրկնեց թագաւորը , չեմ կրնար երևա-

կայել թէ փոխերնիդ ուրկէ՞ է, կամ կը-սիւնիդ որո՞ւ հետ, և քու կարծիքդ ինչ է, ըսէ որ լսեմ. չէ՞ որ մասնաւոր անձ մը իր զաւակներուն ու ընտանեօքը աւելի աղէկ կը պաշտպանէ իր տունը, քան թէ ըստ դիպաց փողոցներէ ժողվուած չնչին թոշակաւոր ստահակներով, որոնք հարիւր անգամ աւելի կըրնային փատորկիլ իրենց պաշտպանած անձինքը սպաննելով.

Երբ մեր ժողովրդեան թիւը և մեր կրօնական ու քաղաքական տեսակ տեսակ աղանդները հաշուեցի, սկսայ ծիծաղիլ իմ այլանդակ թուաբանութեանս վրայ (ինչպէս որ իմ հաշիւներուս այսպէս ըսելու բարեհաճեցաւ). “Ես համոզեալ եմ թէ, ըսաւ, հասարակութեան հակառակ կարծիք ունեցող մարդիկ պէտք չեն իրենց կարծիքը փոխել, և ոչ ուրիշներու առջև զանոնք յայտնել. Տերութիւն մը՝ որ կ՚արգիլէ գաղտնի կարծիք ունենալը՝ բռնակալութիւն ըրած կ՚ըլլայ, և այն որ կը թողու մասնաւոր կարծիքը երևան հանել՝ տկարութիւն ըրած կ՚ըլլայ. վասն զի մէկը չկրնար արգիլել որ մարդ մը իր տանը մէջ թունաւոր նիւթեր չպահէ, բայց կրնայ ար-

չիլել որ իբր զօրացուցիչ դեղ հրապարակաւ զանոնք ծախու չհանէ ։

«Կը յիշեմ թէ ձեր ազնուականաց և երևելեաց մէջ եղած զբօսանքը պատմած ատենդ խաղարկութիւն յիշեցիր ․ կ՚ուզեմ գիտնալ թէ աս զբօսանքը հասարակօրէն ի՞նչ հասակի մէջ կը սկսին, ե՞րբ կը ձգեն, ու ո՞րչափ ժամանակ կը վատնեն անոր համար ։ Արդեօք իրենց հարստութեան վնաս մը հասցընելու չափ մեծ գումարով չե՞ն խաղար ։ Արդեօք մոլի ու նուաստ մարդիկ իրենց այդ արհեստին մէջ ունեցած ճարպիկութեանը մեծ հարստութեանց չե՞ն կրնար հասնիլ, ու երբեմն բուն իսկ ձեր ազնուականները անոնց իշխանութեան տակը չե՞ն իյնար ․ որով կը ստիպուին նուաստ ընկերներու հետ տեսնուիլ, իրենց մտաւորական յառաջադիմութիւնը զանց ընել, և իրենց կրած վնասը՝ սորվիլ և ուրիշներու համար ի գործ դնել այն վատ ճարպիկութիւնը, որ իրենց կործանմանը պատճառ եղաւ»։

Երբ ես մեր անցած դարուն պատմութիւնը ըսի՝ թագաւորը չափազանց կերպիւ զարմացաւ ․ «Այս պատմութիւնդ,

ըսաւ, ուրիշ բան չէ, բայց եթէ՝ դաւաճանութեանց, ապստամբութեանց, սպանութեանց, կոտորածոց, խռովութեանց, աքսորանաց կոյտ մը, որոնք ագահութեան, երկպառակութեան, կեղծաւորութեան, նենգամտութեան, անգթութեան, կատաղութեան, խենդութեան, ատելութեան, նախանձու, հեշտասիրութեան, չարութեան, ու փառասիրութեան սոսկալի արդիւնքն են”.

Կայսրը ուրիշ անգամ մը եւս ինծ ունկնդրութիւն ընելով, ու նեղութենէ չի փախչելով՝ ըսածներուս բովանդակութիւնը նորէն գրի առաւ. ըրած հարցմունքը՝ տուած պատասխաններուս հետ բաղդատելէն ետեւ՝ գլխ ձեռքին մէջ առնելով, ու կամաց մը գլխ գգուելով, աս հետեւեալ խօսքերը ըսաւ, որոնք՝ և իր խօսուածքին կերպը երբէք պիտի չմոռնամ. “Իմ Արեւորիկ փոքրիկ բարեկամս, ըսաւ, հայրենեացդ վրայօք խիստ ուշանչելի ներբող մը ըրիր, ու յայտնի հաստատեցիր թէ՝ տգիտութիւնը, ծուլութիւնը, և մոլութիւնը կրնան երբեմն օրէնսդիր մարդու մը յատկութիւնները ըլլալ, և թէ՝ օրէնքը լաւագոյն կերպիկը մեկնուին, և ի գործ կը դրուին այն-

պիսի մարդոցմէ, որոնց շահասիրութիւնը և անյագութիւնը նոյն օրէնքը ապականելու, խառնելու և չգործադրելու կը գրգռեն։ Ի սկզբան ձեր կառավարութեան կերպը կրնար բարեկարգ համարուիլ, բայց բարուց ապականութիւնը բարեկարգութեան կէտը ջնջեր, ու մնացածը բոլորովին այլայլեր է։ Ըսածներէդ ինձ յայտնի կ'երեւի թէ ձեր մէջը պատիւ կամ պաշտօն մը ընդունելու համար՝ հարկ չէ առաքինութիւն մը ունենալ. կը տեսնեմ որ հոն ոչ մարդիկ իրենց առաքինութեանցը համար, ոչ քահանայք իրենց պարկեշտութեան ու գիտութեանը համար, ոչ զինուորք իրենց վարուց կամ քաջութեանը համար, ոչ դատաւորք իրենց արդարութեանը համար, ոչ ծերակուտի անդամք իրենց հայրենասիրութեանցը համար, և ոչ ատենակալք իրենց իմաստութեանը համար իրենց կարգի աստիճանացը հասած են։ Իսկ դուն՝ շարունակեց Թագաւորը, կենացդ մեծ մասը ճամբորդութեան անցուցած ըլլալուդ՝ կրնամ յուսալ թէ երկրիդ մոլութեանց շատերէն ազատ մնացեր ես. բայց քու ամեն ըսածներէդ և իմ դժուարութեամբ բերնէդ առածներէս

կրնամ հետեւցընել թէ՝ հայրենակիցներուդ շատերը՝ այն դարշելի միջատներուն ամենավնասակար սեռին կը նմանին, զորոնք բնութիւնը երկրի վրայ սողալու համար ստեղծած է։

## ԳԼՈՒԽ Ե.

*Հելվետիկեան հանրապետութիւնը ։ Կայսեր խիստ օգտակար առաջարկութիւն մը կ՚ընէ, որն որ կը մերժուի ։ Քաղաքականութեան մէջ կայսեր ունեցած մեծ ազդեցութիւնը ։ Այն երկրին բնակչաց խիստ անկատար և անհամեմատաւոր գիտութիւնք ։ Իրենց օրէնքը · զինուորական գործերը · և քաղաքական կուսակցութիւնները ։*

ՃՇՄԱՐՏԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ միայն ստիպեց զիս որ նորէն մեծ հաճութեան հետ ունեցած խօսակցութեանս վրայ ծածկաբար անցնիմ։ Որչափ նեղանայի՝ վրաս ծիծաղելէն ուրիշ բան չէի ըներ. և իմ սիրելի ու ազնիւ հայրենեացս վրայ այսպէս անխղճաբար խօսուած ատենը՝ համբերութեամբ մտիկ ընելու պարտաւորեալ էի։ Որ և իցէ ընթերցողիս չափ սրտանց կը ցաւիմ որ հայրենեացս վրայ այսպէս խօսուելու առիթ տուի։ Սա իշխանը այնչափ հետաքրքիր էր, ու իւրաքանչիւր նիւթին վըրայ այնչափ մանր կրկտող, որ երախտա-

գիտութեան կամ քաղաքավարութեան դէմ կ՚ըլլար, թէ որ իր հարցուցածներուն՝ կրցածին չափ պատասխան տալով՝ զինքը գոհ ընել չուզէի։ Այսու ամենայնիւ՝ կրնամ ըսել թէ վարպետութեամբ խուսելով, անոր հարցմանց մեծագոյն մասին ուղիղ չէի պատասխաներ, ու ամէն մէկ խնդրոյն՝ ճշմարտութեան ներածէն աւելի յարմար դարձուածք մը կուտայի․ քանզի հայրենեաց համար միշտ այն գովելի կողմնապահութիւնը ունէի, զոր Դիոնէսիոս Ալիկարնացին այնչափ իրաւամբ պատմագրի մը կը հրամայէ։ Հայրենեացս տկարութիւնըն ու տձեւութիւնը ծածկելու, և անոր առաքինութիւններն ու գեղեցկութիւնները առաւելագէս պայծառ ցուցընելու կը ջանայի։ Աս ինքնակալին հետ ունեցած խօսակցութեանս ատենը իմ անմեղ ջանքս աս եղաւ, թէև դժբաղդաբար չյաջողեցայ։

Բայց աշխարհիս միւս մասերէն բոլորովին հեռացած թագաւորի մը համար մեծ ներողամտութիւն պէտք է, վասն զի ուրիշ ազգաց մէջ ամենատարած բարքին ու սովորութեանցը ծանօթ չկրնար ըլլալ․ աս անգիտութեան պակասութիւ-

նը հոն այնպիսի անձրեւ և կերպ մը սահմանաւոր կարծեաց մէջ պատճառ պիտի ըլլայ, որոնցմէ մենք ու Եւրոպայ խիստ լուսաւորեալ քաղաքները բոլորովին ազատ եմք· յիրաւի տարօրինակ բան մը պիտի ըլլար՝ թէ որ այսպէս բացակայ թագաւորի մը՝ մոլութեան ու առաքինութեան վրայօք ունեցած գաղափարները բոլոր մարդկային սեռին իբր սահմանեալ չափ կամ կշիռ առաջարկուէին :

Ըս հիմնական բաղձներս հաստատելու և սահմանաւոր կրթութեան թըշուառ հետևանքը աւելի պայծառ ցուցընելու համար՝ հոս անցք մը պիտի պատմեմ, որ հազիւ թէ հաւատալի պիտի երևի : Նորին վեհափառութեան աւելի սիրելի ըլլալու յուսով՝ երեք կամ չորս հարիւր տարիէ ի վեր գտնուած տեսակ մը փոշի շինելու խօսք բացի, “Որուն մէկ կայտին վրայ եթէ կրակի փոքրիկ կայծ մը իյնայ՝ ըսի, իսկոյն կրնայ զայն բորբոքել· թէև կայտը լեռան մը չափ մեծ ըլլայ՝ կայծակէ մը աւելի որոտում պատճառելով, ամէնը մէկէն օդը կը հանէ : Եթէ փողի մը մէջ աս փոշիէն չափաւոր քանակութեամբ լեցուի, երկաթէ կամ կապարէ գնտակ մը

այնպէս բռնութեամբ ու արագու-
թեամբ կը նետուի, որ բան մը կարող
չէ անոր ուժին դէմ դնել։ Նս կերպով
նետուած խիստ մեծ գունտերը ոչ միայն
բանակի մը բոլոր շարքերը մէկէն կը կոր-
ծանեն, այլ խիստ ամուր պատերն ևս
հարթայատակ կ՚ընեն, հազարական հո-
գի լեցուն նաւերը ծովուն յատակը կ՚ի-
ջեցընեն․ և եթէ այս գունտերը շղ-
թաներով իրարու կապելու ըլլան՝ նա-
ւերուն կայմերն ու կաղմակերպաները մէջ
տեղէն երկուքի կը բաժնեն, հարիւրա-
ւոր անձանց մէջքերնէն երկու կտոր կ՚ը-
նեն, ու այս ջենքին եկածը բոլորովին ջարդ
ու բուրդ կ՚ընեն։ Մենք շատ անգամ աս
փոշին երկաթէ մեծ ու խոր գունտերու
մէջ դնելով, մեքենայի մը միջոցաւ՝ պա-
շարած քաղաքներուս վրայ կը պարպենք․
աս գունտերը քաղաքին տալյատակները
կը քակեն, տուները կը կործանեն, ու
ճաթած ատենը՝ կտորները ամէն կողմ
տարածելով, մօտը գտնուողին ըղեղը կը
ցրուեն։ Նս փոշին բաղադրողնիւթերը
շատ աղէկ կը ճանչնամ, որոնք աժան ու
հասարակ բաներ են, զանոնք բաղադրե-
լու կերպը գիտեմ, և կրնամ ձեր վե-
հափառութեան երկրին ամէն բաներուն

մեծուն համեմատ՝ այս փոքերուն ինչպէս շինուիլը ձեր գործաւորաց սորվեցնել։ Այս փոքերուն ամենէն մեծը հարիւր ոտքէն աւելի երկայն պէտք չէ որ ըլլայ։ Ասոնցմէ քսան կամ երեսուն հատը չափաւոր քանակութեամբ փոշիով ու գունտերով եթէ լցուին, քանի մը ժամու մէջ՝ ձեր երկրին խիստ ամուր քաղաքին պատերը կրնան կործանել, կամ բոլոր մայրաքաղաքը քանդել, եթէ անոնց բնակիչները ապստամբելով, ձեր միապետական իշխանութեանը հնազանդիլ չուզեն։ Աս գիւտը իբր ձեր կայսերական շնորհաց և պաշտպանութեան փոխարէն՝ իմ երախտագիտութեանս չնչին նշան մը խոնարհաբար ձեր վեհափառութեանը կ'ընծայեմ"։

Թագաւորը՝ այս ահաւելի մեքենայից նկարագրութենէն, միանգամայն և իրեն ըրած առաջարկութենէս շուարեալ մնաց՝ թէ ինծի պէս ակար և սողոցող միջատ մը (ասոնք են իմ տուած անունները) ինչպէս կրնար այսպէս անգութ մտածութիւններ ունենալ, ու այն աւերիչ մեքենաներուն միջոցաւ արիւնհեղութեան և քանդման տեսարաններուն վերայ բոլորովին անզգայ ըլլալ։ "Աս բա-

նիս տաքի հնարողը , ըստ Թագաւորը , մարդկային սեռին թշնամի չար ոգի մը պէտք է որ ըլլայ : Իսկ ես՝ որչափ որ ըն-նութեան և արուեստի մէջ եղած նոր գիւտերը լսելով , շատ ուրախացայ , այ-սու ամենայնիւ աւելի լաւ կը համարիմ Թագաւորութիւնս կորսնցընել , քան թէ այսպէս գաղտնիք մը ի գործ դնել . ուս-տի եթէ կեանքդ կորսնցընել չես ուզեր , այսու հետև ասոր վրայօք բան մը չփչես":

Ի՛նչ այլանդակ արդիւնք մասաւոր նը-կատմանց և սահմանաւոր սկզբանց իշ-խանի մը համար , որ այնպիսի բարի յառա-կութիւներով զարդարեալ է , որոնցմով կրնայ իր ժողովուրդէն մեծարանք , սէր և յարգանք սպասել : Այս իմաստուն , լուսամիտ , խիստ տաղանդաւոր , ու իր ազգէն գրեթէ պաշտուած իշխանը ան-մտութեամբ՝ ա՛յնպիսի տարօրինակ խըղճ-մտանքէ մը կապեալ , որուն գաղափարը Եւրոպիոյ մէջ երբեք չունեցանք , ձեռ-քէն կը փախցընէ այն առիթը , որով իր հպատակաց կեանքը , ազատութեանը և ստացուածոց բացարձակ տէր ըլլալու էր .

Ասոնք ըսելով աս ազնիւ ինքնակալին առաքինութեանց յարգը պակսեցընել չէ միտքս , թէ և աղէկ գիտեմ թէ Ան-

գիւղացի ընթերցողի մը քովը այս մասին խիստ շատ պիտի պակսի , բայց ես աս պակասութիւնը իրենց ազնուութեանը կու տամ՝ քաղաքականութիւնը դեռ արուեստի կարգը անցուցած չըլլալնուն համար , ինչպէս որ Եւրոպացի սրամիտ գիտունները ըրած են ։ Քանզի շատ աղէկ կը յիշեմ թէ՝ օր մը կայսեր հետ խօսեցած ատենս՝ ըստ դիպաց ըսի անոր թէ՝ « Մենք կառավարութեան արուեստին վրայօք գրուած հազարաւոր գրքեր ունինք » ։ Նա բանս մեր վրայ խիստ նուաստ գաղափար մը տուաւ անոր , ( որ ամենեւին չէր յուսար , ) և հաստատեց թէ իշխանի կամ պաշտօնեայի մը համար ծածուկ միջոցները , հնարքները և դաւակցութիւնները ատելի և գարշելի կ՚երևէին իրեն ։

Չէր կրնար հասկընալ թէ ինչ ըսել կ՚ուզեմ տէրութեան գաղտնիք ըսելովս , ուր թշնամի կամ հակառակորդ ազգ մը չկար ։ Տէրութիւն մը կառավարելու համար բաւական են՝ կ՚ըսէր , իմացականութիւն , միտք , քաղցրութիւն , արդարութիւն , քաղաքական ու պատմական գործերու մէջ արագութիւն , և ուրիշ ասոնց նման գործնական և գի-

րին միջոցներ, որոնց վրայ խօսիլ անգամ արժան չհամարուիր ։

“Վերջապէս իմ կարծիքս աս է, ըսաւ, թէ ով որ ցորենի մէկ հասկ բուսած երկրի վրայ՝ ցորենի երկու հասկ կամ խոտի երկու շիւղ բուսցընել կարենայ, բոլոր քաղաքագէտներէն աւելի արժանի կ'ըլլայ մարդկութեան ու աւելի կարեւոր ծառայութիւն ըրած կը սեպուի իր հայրենեացը”։

Աս ժողովուրդը թէպէտեւ բարոյականութեան, բանաստեղծութեան ու մաթեմաթիկականութեան մէջ շատ յառաջ գացած է, եւ անոնց ուսումը կատարելութեան հասուցած է, այսու ամենայնիւ՝ ուրիշ գիտութեանց մէջ թերակատար տեղեկութիւններ ունի ։ Մաթեմաթիկականութիւնը հոն բոլորովին մարդուս կենացը օգտին, երկրագործութեան, ու մեքենական արհեստից յառաջադիմութեան համար կը գործածուի, այնպէս որ մեր մէջը աս գիտութիւնը նոյնչափ յարգ չկրնար ունենալ ։ Գաղափարաց, էութեանց, վերացեալ ու գերբնական բաներու վրայօք անոնց խօսք հասկըցընել անհնարին եղաւ ինծի ։

Աս երկրին մէջ օրէնք մը շարադրելու

համար իրենց այբուբենի գիրերէն աւե-լի բառեր գործածելու հրաման չկայ· աս այբուբենը միայն քսան ու երկու-տառերէ կը բաղկանայ, և քիչ օրէնք կայ, որ քսան ու երկու բառերով շա-րադրած ըլլայ։ Օրէնքը խիստ պարզ ու յայտնի կերպով բացատրեալ են, և ժո-ղովուրդը այնչափ նենգամիտ չէ որ ա-նոնց զանազան կերպ նշանակութիւններ տայ· ամէն զատ՝ որ և իցէ օրէնքի վրա-յոք մեկնութիւն գրելը մահապարտու-թեան յանցանք է։

Չինացւոց պէս տպագրութեան ար-հեստը անյիշատակ ժամանակէ ի վեր ու-նին. բայց իրենց գրքատունները շատ մեծ չեն, Թագաւորինը՝ որ ամենէն մե-ծըն է, հազար հատոր գրքերէ աւելի չունի, որոնք հազար երկու հարիւր ոտք երկայնութք սրահի մը մէջ գրուած են, ուրկէ ուզած գիրքը կարդալու համար առնելու ազատութիւն ունին։ Թագա-հւոյն ատաղձագործը Կմոապքիչի սեն-եակներուն մէկուն մէջ՝ եռատեան սան-դուղի ձեւով՝ քսան ու հինգ ոտք բարձ-րութեամբ տեսակ մը փայտեայ մեքենայ չինեց, որուն իւրաքանչիւր աստիճանը

՚յիսուն ոտնաչափ երկայն էր․ աս դիւրատար սանդուղը սենեկին պատէն տասը ոտք հեռաւորութեամբ կը տեղաւորէին, ու կարգաւ ուզած գիրքս պատին կռթնցուցած կը դնէին․ ՚Նախ սանդուղին ամենէն բարձր աստիճանին վրայ կ՚ելնէի, ու երեսս դէպ ի գիրքը դարձընելով՝ թերթին գլխէն կը սկսէի, ու տողերուն երկայնութեանը համեմատ՝ ութը կամ տասը քայլափոխ չափ՝ աջ և ահեակ կը քալէի, և եթէ դձկուիլ հարկաւորէր՝ աստիճան աստիճան կ՚իջնայի, ու այնպէս մինչև վարի տողը կու գայի, ետքը նորէն կ՚ելնէի, ու նոյն կերպով միւս թերթը կը սկսէի և աւանկով թուղթը կը դարձընէի՝ երկու ձեռքովս բռնելով․ քանզի խաւաքարտի (1) չափ կարծր և պինդ էր, ու ամենէ մեծ գրքերը տասն և ութը կամ քսան ոտնաչափէն աւելի երկայն էին։

Իրենց գրութեան ոճը մաքուր և քաղցըր է, բայց ոչ զարդարեալ․ վասնզի անպէտք բառեր կրկնապատկելէն, կամ խօսից զանազան ոճեր գործածելէն կը զգուշանան։ Անոնց գրեանց շատը, մանաւորաբար պատմութեան ու բարոյա-

(1) Մուգավա։

կանութեան վրայօք գրուածները աչքէ անցուցի, և Կըմաալբրիխչի պառկելու սենեկին մէջ միշտ գտնուած փոքր և հին ճառը հաճութեամբ կարդացի · սա ճառը անոր վարպետուհւոյն էր, որ ծանըրգլուխ և սարրը ազնուուհի մ'էր, և բարոյական ու բարեպաշտական գըրուածներ կը կարդար : Աս գրքին անունն էր · "Ճառ յաղագս տկարութեան մարդկային ազգի", որ կիներէ ու ռամիկներէ զատ ուրիշներուն քով քիչ յարգ ունէր · սակայն և այնպէս հետաքրքրութեամբ ուզ'ցի տեսնել թէ ան երկրին հեղինակի մը այսպիսի նիւթի վրայօք ըսածը ի՞նչ կրնար ըլլալ :

Աս հեղինակը Աւրապիյ բարոյագէտներուն բոլոր սովորական տեղիք ըսուած կանոնները մէջ բերելով, կը ցուցնէր թէ մարդս բուն իր բնութեամբը որչափ չնչին, անօգնական, ու անգանելի կենդանի մ'է, և որչափ անբաւական՝ ինքըզինքը օդուն սաստկութենէն, ու վայրենի անասնոց կատղութենէն պաշտպանելու · ուրիշ արարածները՝ թէ՛ ուժի, թէ արագընթացութեան, թէ նախատեսութեան, և թէ ճարտարութեան կողմանէ իրմէ որչափ գերազանց են ·

Յաւելցուցեր էր նաև թէ աշխարհիս աս վերջին դարերուն մէջ՝ բնութիւնը վատթարացեալ է, ու արդի ստեղծուածները հին ժամանակուան ստեղծուածներուն հետ բաղդատելով՝ վիժածք են: «Իմ կարծիքս ան է, կ՚ըսէր, թէ մարդոց սեռը ի սկզբան աւելի մեծահասակ եղած պիտի ըլլայ, ինչպէս որ կը վկայեն պատմութիւնք, աւանդութիւնք և այն հսկայաձև ոսկերոտիքը, որոնք գետինը փորելու ատեն մեր երկրին շատ կողմերը գտնուեցան»: Կը պնդէր իսկ թէ բնութեան օրէնքը կը պահանջէն որ մարդկային ազգը առջի ատենները հիմակուանէ աւելի բարձրահասակ և աւելի ուժեղ եղած ըլլայ, և ոչ թէ տան վրայէ կղմինտրի մը իյնալովը, կամ տղու մը նետած քարովը, կամ փոքրիկ փոսի մը մէջ իյնալովը, կեանքը կորսնցնելու վտանգներու ենթակայ ըլլայ: Աս կերպ դատողութիւններէն հետևանքը մարդկային կենաց համար բարոյական պատուէրներ յառաջ կը բերէր, զորոնք հոս կրկնել աւելորդ կը համարիմ: Աս իսկ աս բարոյական մտածութիւնները կ՚ընէի թէ մարդիկ որչափ ընդհանուր միաւութիւն մը ունին միշտ բնութենէ զատ-

գատելու և անոր պակասութիւնները չափազանց մեծցընելու ։ Աղէկ քննելով, կարծեմ թէ ոչ այս ժողովրդեան, և ոչ մեր երկրի ժողովրդոց գանգատը օրինաւոր են ։

Գանք անոնց զինուորական կարգադրութեանը · կը պարծենան թէ Թագաւորին բանակը հարիւր եօթանասուն և մէկ հազար հետևակ, ու երեսուն ու երկու հազար ձիաւոր զօրքէ կը բաղկանայ · բայց չեմ գիտեր թէ բանակ կրնա՞յ ըսուիլ այնպիսի զինուորական բազմութիւն մը, որ փոխառականներէ ու երկրագործներէ բաղկացեալ է, և որուն հրամանատարները ատենակալներ ու ազնուականներ են, ու ոչ վարձք, և ոչ թոշակ կ'ընդունին ։ Ճշմարիտը՝ ասոնք քաջական կատարելութիւն ունին իրենց կրթութեանց մէջ, և լաւ կանոններու տակ են, բայց աս զարմանալի բան մը չէ, ինչու որ ամեն երկրագործ իր հողատէրին հրամանին ներքևը, ու ամեն քաղաքացի քուէարկութեան համեմատ ընտրեալ երևելի քաղաքացիներուն կը հնազանդին ։

Լօրպըրու էկրուտի քաղաքային զօրքը՝

քաղաքին մօտ քսան քառակուսի մղոն մեծութեամբ դաշտի մը մէջ կրթութիւն ընելու եղած ատեննին շատ անգամ տեսած եմ, որոնք քսան ու հինգ հազար հետեւակէ, և տասն ու վեցը հազար ձիաւորէ աւելի չէին․ բայց անոնց բռնած տեղին տարածութիւնը չէր ներեր որ դանոնք ճշդիւ համրեմ․ Հեծեալ ձիաւոր մը գրեթէ իննսուն ոտնաչափ բարձրութիւն ունէր ։ Հրաման եղածին պէս՝ աս բոլոր զինուորները ամենը մէկէն սուրերնին կը մերկացընէին, ու օդուն մէջ կը շողշողեցընէին․ մարդ չկրնար այսպիսի մեծ, հիանալի ու զարմանալի բան մը երեւակայել․ կարծես թէ տասը հազար կայծակի փայլակներ երկնից ամեն կողմէն կ՚արձըկուէին ։

Հետաքրքրութեամբ ուզեցի գիտնալ թէ ինչո՞ւ համար աս իշխանը, որուն երկիրը անմատչելի է, իր ժողովրդեան զինուորական կրթութիւն և կանոն սորվեցընելու կ՚աշխատէր․ շատ չանցաւ՝ թէ խօսակցութենէ և թէ իրենց պատմութիւններէն իմացայ թէ շատ դարերէ ի վեր անոնք բոլոր մարդկային սեռին ենթակայ եղած հիւանդութեամբը նեղեալ են եղեր, այսինքն՝ ազնուականք՝

իշխանութիւնը իրենց ձեռքը ձգելու համար, ժողովուրդը՝ ազատութեան համար, ու Թագաւորը՝ իր բացարձակ կառավարութեանը համար շատ անգամ իրարու հետ զարնուեր ու կռուեր են։ Ու թէպէտև վերջապէս օրէնք դրուելով, յիշեալ երեք կողմնակցութիւնները իրենց արտօնութիւնները պահեր են, բայց երբեմն անոնցմէ մէկը այն օրէնքը ոտքի տակ առնել ուզելով՝ ընտանի կռիւներ ծագեր են իրենց մէջ, որոնց ետքինը բարեբաղդաբար այժմեան Թագաւորին հաւուն ձեռքովը վերջ եղած էր․ սակայն ան ատենուան միաբան հաւանութեամբ հաստատեալ քաղաքային զօրքը մինչև հիմա կը մնայ և շատ խիստ կանոններով կը պահուի։



## ԳԼՈՒԽ Ը.

*Թագաւորն ու Թագուհին դէպ ի սահմանագլուխները ճամբորդութիւն կ'ընեն. Հեղինակը ուղեկից կ'ըլլայ անոնց. Ան երկրէն ինչպէս մեկնիլը մանրամասնաբար կը պատմէ, ու Անգղիա կը դառնայ։*

ՄԻՇՏ սրտիս մէջ կը զգայի թէ օր մը ազատութիւնս ձեռք պիտի ձգեմ, թէև չէի կրնար գուշակել թէ ինչ միջոցաւ պիտի ազատիմ. վասն զի չէի կրնար այնպիսի ճամբայ մը գտնել, որուն մէջ յաջողիլս յուսայի։ Զիս հոն բերող նաւը առաջին անգամ ան ծովեզերքը տեսնուած նաւն էր, ու Թագաւորը սաստիկ հրաման էր ըրեր թէ որ և իցէ ատեն ուրիշ նաւ մը իր ծովեզերքը երևնալու ըլլայ՝ բռնուի, ցամաքը բերուի, և իր մէջի բոլոր նաւաստիներուն ու ճամբորդներուն սայլի մը մէջ դրուելով՝ Լօրպրուլկրուտ տարուի։ Թագաւորը խիստ կը փափաքէր որ իմ հասակիս կին մը գտնայ ինծի՝ սերունդս աճեցընելու համար. բայց ես կարծեմ

թէ աւելի աղէկ պիտի սեպէի մեռնիլ, քանթէ այնպիսի զաւակներ աշխարհք բերել, որոնք ընտանի դեղձանիկի պէս վանդակներու մէջ պահուելու, և գուցէ ետքը հետաքրքրական բանի մը պէս տէրութեան ազնուական անձանց ծախու հանուելու թշուառութիւնը կրելու էին:

Յիրաւի հետո շատ քաղաքավարութեամբ վարուեցան. Թագաւորի և Թագուհիի մը սիրելին, ու բոլոր պալատականաց զուարձութիւնն էի, բայց այնպիսի վիճակի մը մէջ կը գտնուէի, որ մարդկային սեռին արժանաւորութեանը չէր վայլեր: Տունս ձգած սիրոյ գրաւներս բնաւ մտքէս չէին ելներ: Կ'ուզէի այնպիսի ժողովուրդի մը մէջ գտնուիլ, որ կարող ըլլայի հետերնին հաւասարապէս խօսակցելու, և դաշտերուն ու փողոցներուն մէջ ժուռ գալու՝ գորտի կամ շան փոքրիկ ծնունդի մը պէս տուփի տակ կոխկռտուելով՝ սատկելու վախ չունենալով: Բայց յուսացածէս առաջ արտաքոյ կարգի կերպով մը ազատութիւնս գտայ, որ բոլոր պարագայիւք անկեղծութեամբ պիտի պատմեմ հոս:

Արդէն երկու տարի էր որ աս երկիրն

մէջն էի, ու գրեթէ երրորդ տարւոյն սկիզբը՝ Գլմտալքլիչ և ես Թագաւորին ու Թագուհւոյն ուղեկից եղանք, որոնք տէրութեան հարաւային ծովեզերքը ճամբորդութեան ելեր էին։ Ըստ սովորութեան՝ ճամբորդութեան սնտուկիս մէջն էի, որ արդէն նկարագրած եմ թէ տասներկու ոտք լայնութեամբ ինծի խիստ յարմար խուց մ'էր· հրամայեր էի որ անոր ձեղունին չորս անկիւնէն մետաքսեայ չուաններով կախուած անկողին մը հաստատեն, որպէս զի ծառայ մը ձիու վրայ զիս առջին առած ատենը՝ ձիուն ցնցումը խափանէ· շատ անգամ ճամբորդութեան ատեն՝ այս անկողնոյն մէջ կը քնանայի։ Ատաղձագործին ապսպրեր էի որ սենեակիս յարկին վրայ՝ մէկ քառակուսի ոտնաչափ մեծութեամբ ծակ մը բանայ, որպէս զի տաք եղած ատենը՝ քնացած ժամանակս օդ առնեմ, ու ծակը շարժուն տախտակով մը ուզած ատենս կը գոցէի։

Երբ մեր ճամբորդութեան նպատակը հասանք, Թագաւորը որոշեց որ ծովեզերքէն գրեթէ տասն և ութը անգղիական մղոն հեռի Ֆլանֆլասնիք քաղաքին մօտ իր պալատը մնայ քանի մը օր։ Գլմտալ-

քիչ ու ես խիստ հոգնած էինք․ և քիչ մը ցուրտ առած էի, բայց խեղճ աղջիկը այնպէս հիւանդ էր, որ սենեակէն դուրս չէր կրնար ելնել։

Զափազանց բաղձանք մը ունէի Անկլիա-նոսը նորէն տեսնելու, որովհետեւ իմ ազատութեանս անկէ ուրիշ ճամբայ չկար․ ու տուի եղածէս աւելի հիւանդ ձեւացու-ցի զինքս, ու հրաման խնդրեցի Կլմտալ-քլիչէն որ զիս օդ առնելու համար ծո-վեզերքը երթամ ան մանկլաւիկին հետ, զոր ես շատ կը սիրէի, և որուն երբեմն զիս յանձնած էին։ Ես առաջարկութեանս Կլմտալքլիչին ի՞նչ դժկամակութեամբ հաւանութիւն տալը, անոր՝ ծառային տուած պատուէրը որ վրաս աղէկ հոգ տանի, և նոյն ժամուն հեղեղի նման թա-փած արտասուքը բնաւ միտքէս չեն ել-նէր․ կարծես թէ գլխուն գալիքը առա-ջուց գուշակեր էր։

Մանկլաւիկը զիս սնտուկիս մէջ դրած պալատէն կէս ժամու չափ հեռի դէպ ի ծովեզերեայ ժայռերը տարաւ։ Հրա-մայեցի անասուն որ զիս գետինը դնէ, ու պատուհաններուս մէկուն ապակին վերցնելով՝ տրտում աչքով մը դէպ ի ծովը նայեցայ։ Քիչ մը անհանգիստ ըլ-

գալով, մանկլաւիկին ըսի թէ կախուած անկողնոյս մէջ պառկելու միտք ունիմ, և կը յուսամ թէ կրնամ քիչ մը հանգստանալ։ Ուստի անկողինս մտայ, ու տղան աղէկ մը պատուհանը վրայէս գոցեց, որպէս զի ցուրտ չառնեմ։ Շուտով քունս տարաւ, և հաւանական է որ մանկլաւիկը զիս քնացած տեսնելով և հոն վտանգ մը չնշմարելով, ժայռերու մէջ տեղերէն թռչուններու հաւկիթ փնտռելու համար՝ սնտուկիս քովէն հեռացեր էր, ինչպէս որ ուրիշ անգամ մը պատուհանէս դիտեր էի որ ան հաւկիթ փնտռելու գացեր և բաւական ժողվեր էր։ Ինչ և իցէ՝ սնտուկիս վրայ գամուած օղամանեակին բռնութեամբ քաշուելուն ցնցումէն յանկարծ արթնցայ, և կը զգայի որ սնտուկս օդուն մէջ բարձրանալէն ետև՝ ահագին արագութեամբ դէպ ի յառաջ կը քշուէր։ Այդ ցնցումը քիչ մնաց որ զիս անկողնէս դուրս պիտի նետէր, բայց ետքը տատանում մը բաւական մեղմացաւ։ Շատ անգամ բոլոր ուժովս սկսայ պոռալ, բայց զուր տեղը։ Անաւէն պատուհաններուս ծակէն նայեցայ, բայց ամպերէն ու երկինքէն զատ բան մը չէի կրնար տեսնել։

Մինչ գլխուս վրայէն այնպիսի ձայն մը լսեցի, որ սաւսաւնման (1) ձայնին կը նմանէր. անտարեն ինչ վտանգաւոր կացութեան մէջ գտնուիլս սկսայ հասկը-նալ եւ գուշակել՝ թէ արծիւ մը սնտու-կիս չուանը բերանը առած կը թռչէր՝ ան դիտաւորութը որ կրիայի (2) պէս զիս վերէն վար ժայռի մը վրայ ձգէ, ու մար-մինս սնտուկէս դուրս հանելով զիս ու-տէ. քանզի աս թռչունը սրամիտ ու հո-տառու ըլլալուն՝ իր որսը խիստ հեռու-անց կը գտնէ, թէեւ երկու մատնաչափ հաստ տախտակի մը մէջ ինձմէ աւելի պահուած ըլլայ։

Քիչ մը ատենէ ետեւ՝ նայեցայ որ թե-ւերուն բաբախումը երթալով խիստ կը սաստկանար, ու սնտուկս նշանի մը պէս սաստիկ հովմէն աստին անդին կը տատա-նէր։ Սնտուկիս մէջէն՝ կռուցի հարուածոց ձայներ կը լսէի, որոնք կարծեմ սնտու-կիս վերցընող արծիւը կ՚ընդունէր, ետ-քը՝ յանկարծ զգացի որ վայրկեանէ մը աւելի ուղղակի վար կը գահավիժիմ այն-պիսի անհաւատալի արագութեամբ մը, որ գրեթէ շունչս կտրեցաւ։ Ընկում

(1) Թռչունի թեւերուն բաբախումը։ (2) Թօսպաղա։

սոսկալի ցնցումով մը վերջացաւ, որուն ձայնը Նիակարայի ջրվէժէն* աւելի ուժգին եկաւ ականջիս ։ Անատեն վայրկեան մը ես բոլորովին մութի մէջ մնալէն ետեւ՝ պատուհաններուս վերի կողմերէն լոյս տեսնալու չափ սնտուկս բարձրացաւ ։ Ասոր վրայ հասկցայ թէ ծովուն մէջ ինկած էի ։ Իմ և կարասեացս ու սնտուկիս չորս անկիւնը ամրացըած երկաթի լայն թիթեղներուն ծանրութեանը համար՝ սնտուկս հինգ ոտքի չափ ջուրին մէջը խրած կը տատանէր ։ Անատեն կարծեցի և մինչև հիմա այնպէս կարծեմ թէ երկու կամ երեք ուրիշ արծիւներ սնտուկս տանող արծուին վըրայ յարձակեր են որ անոր բերնէ որսը յափշտակեն ։ ուստի և ան ինքզինքը պաշտպանելու համար՝ սնտուկս բերնէն ձգեր էր ։

Սնտուկիս յատակին վրայ գամուած երկաթի տախտակները խիստ ծանր ըլ-

* Աշխարհիս ամենէն մեծ այս ջրվէժը Ամերիկայի մէջ կը գտնուի, և Քանատայի չորս լայնատարած լիճերուն իրարու խառնուած ջուրերուն անկումն է, որ հարիւր երեսուն ու եօթը ոտք բարձրութենէ ապա-ռաժուտ դահավիժէ մը վար կը թափի. աս ջրվէժին ձայնը տասնուհինգ մղոն հեռուէն կը լսուի կ'ըսեն ։

լայուն, սնտուկը վար գահավիժած ատենը՝ հաւասարակշռութեան մէջ պահեցին զայն, ու խորտակուելէն ազատեցին։ Սնտուկիս յօդակապները և դուռը այնչափ աղէկ շինուած էին, որ շատ քիչ ջուր ներս կը մտնէր։ Մեծ դըժուարութեամբ անկողնէս դուրս ելայ, և վերոյիշեալ ձեղունին վրայ բացուած ծակին շարժուն տախտակը բանալու համարձակեցայ, որպէս զի քիչ մը օդ առնեմ, որովհետև գրեթէ շնչասպառ եղեր էի։

Ահ, որչափ կը բաղձայի ան ատենը իմ սիրելի Կլիմտալքլիչիս քովը ըլլալ, որմէ մէկ ժամի համար մեկնիլս այսչափ հեռացուց զիս։ Ստուգիւ կրնամ ըսել թէ իմ թշուառութեանցս մէջ ողորմելի սնուցչիս վրայ կ'ողբայի, մտածելով թէ իմ կորուստեանս համար որչափ պիտի տրտմի, և թագուհւոյն աչքէն ելնելով՝ ի՞նչ թշուառութեան մէջ պիտի իյնայ։ Գուցէ շատ ճամբորդք իմ այն թշուառ ու տրտում վիճակիս մէջ գտնուած չեն, ինչու որ ամէն վայրկեան սնտուկս կտոր կտոր ըլլալու, կամ գոնէ կատաղի ալեաց հարուածէն, ու հովմին բռնութենէն տակն ու վրայ ըլլալու վտանգին մէջն

էր ։ Պատուհանիս ապակիներուն մէկը եթէ կոտրուէր՝ զիս մահուան դուռը պիտի հասցնէր ։ Պատուհանները՝ միայն դրսի կողմէն երկաթ թելէ ամուր վանդակներով պահպանուած էին , որոնք ճամբորդութեան մէջ դիպուածները արգիլելու համար դրուած էին ։ Նայելով որ ջուրը քանի մը փոքրիկ ծերպերէ ներս կը մտնէ՝ ջանք ըրի կրցածիս չափ զանոնք խցելու ։ Մէկը որ խուցիս յարկը չէր կրնար վեր վերցնել , որպէս զի ելնէի անոր վրայ նստէի , գոնէ քանի մը ժամ աւելի կրնայի ապրեցնել զինքս , ինչու որ խուցիս մէջը իբր բանտարկեալ մնացեր էի ։ Եթէ մէկ կամ երկու օր այս վտանգներէն ազատ մնայի՝ ցուրտէն կամ անօթութենէն թշուառաբար մեռնելէ զատ ուրիշ ի՞նչ բանի կրնայի սպասել ։ Չորս ժամ այսպէս մնացի և այնքան յուսահատութեան մէջ էի , որ ամէն վայրկեան կենացս վերջինը ըլլալը կը բաղձայի ։

Արդէն ծանուցած եմ ընթերցողիս թէ սնտուկիս պատուհան չեղած կողմին վրայ երկու ամուր օղակներ դնուած էին , որոնց մէջէն՝ մանկլաւիկը ձիով զիս պըտըտցուցած ատենը՝ կաշեայ գօտի մը

անցընելով, իր մէջքէն կը կապէր զան։ Ես անմխիթար վիճակիս մէջ՝ օղակներուն զամուած կողմէն տեսակ մը ձայն լսեցի, կամ՝ գոնէ ինծի այնպէս երևցաւ, և սկսայ կարծել թէ սնտուկը նաւու մը ետևէ կապուած կը քաշուի․ ինչու որ ատեն ատեն տեսակ մը ցնցիւն կը զգայի, որմէ պատճառած ալիքը պատուհաններէն վեր բարձրանալով, զիս գրեթէ խաւարի մէջ կը ձգէին։

Ատեն քիչ մը քաջալերութիւն առի, և կարծեցի թէ զիս ազատելու համար օգնութիւն կ՚ըլլայ, թէպէտ և օգնութեան որ կողմէն գալը չէի կրնար երևակայել․ համարձակութիւն առնելով՝ յատակին վրայ պտուտակով պնդուած աթոռներուս մէկը քակեցի, ու գագաթին ծակին ներքև՝ գետնի վրայ նորէն պնդելով զան, անոր վրայ ելայ, բերանըս կրցածիս չափ ծակին մօտեցուցի, ու բարձր ձայնով բոլոր գիտցած լեզուներովս օգնութեան կանչեցի։ Այնուհետև թաշկինակս գաւազանիս ծայրը կապեցի ու ծակէն դուրս հանելով՝ օդուն մէջ շատ անգամ կը շարժէի զան, այն դիտաւորութեամբ, որ եթէ մօտերը նաւ-

կամ նաւակ մը կայ , նաւաստիները աս սնտուկին մէջ գժբաղդ մահկանացու մը ըլլալը հասկընան ։

Աս ամեն ջանքէս օգուտ մը չտեսայ , բայց նայեցայ որ սնտուկը յառաջ կը քշուէր , ու մէկ ժամէ ետքը զգացի որ սնտուկիս պատուհան չեղած կողմը՝ ուր որ օղակները սնգած էին , կարծր մարմինի մը դէմ զարնուեցաւ ․ Իսկզբան մտածեցայ որ չըլլայ թէ այն կարծր մարմինը ժայռ մը ըլլայ ․ բայց շուտով զգացի որ առջի անգամէն աւելի կը տատանէր ։ Աս միջոցին խուցիս յարկին վրայ որոշ ձայն մը լսեցի որ օղակին մէջէն պարան մը անցընելու ձայնին կը նմանէր ։ Անատեն նայեցայ որ սնտուկս կամաց կամաց գըրեթէ երեք ոտք վեր բարձրացեր էր ։ Ուստի Թաշկինակս գաւազանիս կապելով՝ յարկին ծակէն դուրս հանեցի , ու մինչև ձայնիս քաշուիլը օգնութեան կանչեցի ։

Աս ձայնիս պատասխան՝ աղաղակ մը լսեցի , որ երեք անգամ կրկնուեցաւ ։ Ասոր վրայ՝ այնպէս ուրախութիւն մը զգացի , որ միայն վիճակիս մէջ գտնուողը կրնայ երևակայել ․ Ի նմին ժամու գլխիս վրայի կողմէն՝ ոտքի ձայն մը առի ,

ու մարդուն մէկը պատուհանէն ծակէն բարձր ձայնով մը Անգղիարէն լեզուաւ պոռաց․ “Եթէ մէջը մարդ կայ՝ թող ձայն հանէ ։ — Այո՛, պատասխանեցի անատեն, ողորմելի Անգղիացի մը կայ․ դժբաղդաբար այնպիսի տառապանքի մէջ ինկած է, որ ըստ մէկին գլուխը չէ եկած․ ի սէր Աստուծոյ, զիս աս խուարչախէն բանտէն ազատեցէք ։ — Մի՛ վախնար, պատասխանեց ձայնը, վտանգի մէջ չես, սնտուկդ մեր նաւուն կապած ենք․ հիմա ատաղձագործը կու գայ, որ անոր յարկին վրայ ծակ մը բանայ և անկէ զքեզ դուրս հանէ ։ — Ծակ բանալու հարկաւորութիւն չկայ, կրկնեցի նորէն, քանզի աս երկար բան է․ բաւական է որ նաւաստիին մէկը մատը օղակին անցընելով, սնտուկը ծովէն դուրս հանէ, նաւուն մէջ դնէ, ու անկէ նաւապետին խուցը տանի”։ Նաւաստիներէն մէկ քանին աս այլանդակ խօսքս լսելով՝ կարծեցին թէ խենդ եմ, և ոմանք սկսան ծիծաղիլ․ քանզի իրաւը՝ ըստ միտքս չեկաւ թէ հիմա իմ հասակաւս և ուժովս մարդոց մէջը կը գտնուիմ։

Ատաղձագործը եկաւ ու քանի մը վայրկենի մէջ չորս քառակուսի ոտք մեծու-

թեամբ ծակ մը բանալէն եւ՝ փոքրիկ սանդուղ մը ներս իջեցուցին. սոր վըրայէն երբ վեր ելայ, նաւուն մէջէն զիս քաշեցին առին, բայց շատ տկար վիճակի մէջ էի։ Բոլոր նաւաստիները ապշեալ ու շուարեալ՝ հազար հարցմունք կ՚ընէին ինձ, որոնց պատասխանելու ոյժ չունէի։ Ես իսկ աչքիս առջին այնչափ թզուկներ տեսնելով՝ խռովեցայ, ինչու որ մեկնած տեղոյս ահագին բաներուն երկար տեսնէ ի վեր աչքս այնչափ սորվեր էր, որ անոնք շատ փոքր կ՚երեւային ինծի։ Բայց Պրն. Թոմաս Ուիլքօքս նաւապետը բարեսիրտ և արժանաւոր Շըրոփշայրցի մարդ մը ըլլալուն, երբ տեսաւ թէ մարելու վրայ եմ, զիս իր սենեակը խօթելով՝ զօրացուցիչ ըմպելիք մը խմցուց որ ոյժ առնեմ, ու իր անկողնոյն վրայ պառկեցուց զիս սախպելով որ քիչ մը հանգստանամ։

Քնանալէս առաջ՝ հասկըցուցի անոր թէ սնտուկիս մէջ քանի մը թանկագին կարասիք ունէի, որոնք թէ որ կորսուելու ըլլային՝ անոնց նմանը ձեռք ձգելը հնար չէր. աս կարասիներն են՝ կախծուգեղեցիկ անկողին մը, պատուական գետնախշոր մը, երկու աթոռ, մէկ սեղան

և մէկ պահանոց · սենեակս ամեն կողմէն զարդարուած, կամ լաւ ևս է ըսել՝ մետաքսեայ և բամպակեայ նիւթերով լեցուցած էր: "Թէ որ կ'ուզէք, ըսի, նաւաստիներէդ մէկը խուցս թող հոս բերէ, որպէսզի առջևնիդ բանալով մէջինները ձեզ ցուցունեմ": Աս խօսքս նաւապետին այլանդակ երևնալով՝ կարծեց թէ կը զառանցեմ: Ինչ և իցէ (կարծեմ զիս հանդարտեցընելու համար) խօսք տուաւ որ ուզածս կատարէ · ուստի նաւուն տամալիին (1) վըրան ելնելով՝ քանի մը նաւաստի խուցս խրկեց, որոնք գացին և ունեցածս առին նաւը բերին (ինչպէս որ ետքը ինծի պատմեցին), բայց գետնի վրայ պնդուած աթոռները, փոքրիկ գահլիճս, ու անկողինս նաւաստեաց աղխատութենէն խիստ վնասուեր էին, որոնք բռնութը զանոնք քաշեր հաներ էին տեղերնէն: Իրենց նաւուն մէջ գործածելու համար քանի մը տախտակներ, ու իրենց հարկաւոր ամեն բան առնելէն ետև՝ սնտուկս ծովը նետեցին, որ ուղղակի ծովուն յատակը իջեր է: Ստուգիւ՝ աս ըրած կորստեանս ականատես չըլլալուս շատ բաղ-

(1) Կէօվէրթէ ։

դաւոր կը համարիմ զիս , քանզի անշուշտ խիստ պիտի տրտմէի անցած գացած բաները միտքս բերելով , զորոնք աւելի մոռնալ կ'ուզէի ։

Քանի մը ժամ քնացայ , բայց հեռացած տեղիս ու գլխէս անցած վտանգներուն վրայօք շարունակ երազներ տեսնելով անհանգիստ կ'ըլլայի ։ Վերջապէս երբ արթնցայ՝ հանգստութիւնս տեղը եկեր էր . անատեն իրիկուան ժամը ութը կար . Նաւապետը մտածելով թէ երկար ատենէ ի վեր բան մը կերած չեմ , անմիջապէս սեղան պատրաստելու հրաման ըրաւ , ու հետս խիստ քաղցրութեամբ վարուեցաւ . քանզի ոչ կերպարանքիս վրայ վայրենութիւն մը կը տեսնէր , և ոչ խօսքիս մէջ անյարմարութի մը . Երբ երկուքս սենեկին մէջ առանձին մնացինք , խնդրեց որ ճամբորդութեանցս պատմութիւնը ընեմ իրեն , ու ես ահագին փայտեայ սնտուկով ինչ պատահմամբ ծովուն ալեաց մէջ գտնուիլս իրեն հասկըցընեմ ։

« Այսօրի մօտ՝ գրեթէ ժամը տասներկուքին , ըսաւ , դիտակովս չորս կողմս նայած ժամանակս՝ բան մը երեցաւ աչքիս , կարծեցի թէ նաւ մ'է , ուստի

ճամբուս վրայէն շատ հեռի չըլլալուն՝ քիչ մը պաքսիմաթ ծախու առնելու դիտաւորութեամբ միտք ըրի որ անոր մօտենամ, քանզի խիս հատանելու վրայ էր․ բայց քանի որ մօտեցայ, նայեցայ որ սխալեր եմ․ ուստի նաւակս խրկեցի որ երթան անոր ի՛նչ ըլլալը տեսնեն․ բայց նաւաստիքս զարհուրած եւ դառնալով կ'երդնուին թէ ան տեսածնին ջուրին երեսը լողացող տուն մ'էր։ Անոնց յիմարութեանցը վրայ ծիծաղելով՝ անձամբս նաւակը մտայ, և մարդոցս հրաման ըրի որ հետերնին հաստ չուան մը առնեն։

«Օդը հանդարտ ըլլալուն՝ զանազան անգամ սնտուկին չորս դին թիավարելով պտըտեցայ, և նայեցայ որ պատուհաններդ երկաթ թելերէ շինուած վանդակներով պահպանուած են։ Սնտուկին պատուհան չեղած մէկ կողմին վրայ՝ երկու գամուած օղակներ տեսայ, բայց լոյս առնելու համար ծակ մը չկար։ Անատեն հրաման ըրի մարդոցս որ օղակներուն մօտենան, ու անոնց մէկուն պարան մը կապել տալով, սնտուկը դէպ ի նաւը քաշեն։

«Երբ նաւուն քովը հասանք, նորէն

Հրաման ըրի որ յարկին վրայ զամուած օղակէն պարան մը անցընելով կապեն, ու ճախարակներու միջոցաւ սնտուկդ վեր վերցընեն, բայց ամեն նաւաստիք մէկ գալով, երկու կամ երեք ոտքէն աւելի բարձր վերցընելու կարող չեղան։ Երբ սնտուկին ծակէն դուրս ելած գաւազանին ծայրը կապած թաշկինակդ տեսանք, հետեւցուցինք թէ անոր մէջը դժբաղդ մէկը կայ։ — Արդեօք, ըսի, դուք կամ նաւաստիքդ զիս նշմարած ատեններդ՝ օդուն մէջ ահագին թռչուններ չտեսա՞ք։ — Քնացած ատենդ, պատասխանեց նաւապետը, նաւաստեացս հետ աս նիւթիս վրայօք խօսեցած ժամանակս՝ անոնցմէ մէկը դէպ ի հիւսիս թռչող երեք արծիւ տեսեր է, բայց անոնց սովորականէն աւելի մեծ ըլլալուն վրայօք բան մը չէ դիտեր”։ Կարծեմ ան պատճառաւ որ աս թռչունները շատ բարձրէն կը թռչին եղեր, բայց նաւապետը չէր կրնար երեւակայել թէ ի՞նչ պատճառաւ աս հարցումը կ'ընեմ իրեն։ Անատեն՝ հարցուցի անոր թէ ցամաքէն ո՞րչափ հեռու կը կարծէ որ ըլլանք։ պատասխանեց թէ իր ըրած հաշուովը հարիւր փարսախի չափ հեռու ենք ցամա-

քէն ։ « Կարծեմ սխալած պիտի ըլլաս , ըսի , ինչու որ ջրին մէջ չինկած՝ եկած քաղաքէս մեկնիլս Զ ժամէն աւելի չէ »։

Աս խօսքիս վրայ՝ նորէն սկսաւ կարծիք ընել թէ խելքս ցնդեր է , ու խրատեց զիս որ երթամ ինծի համար պատրաստուած խուցին մէջ պառկիմ։ « Ճշմարիտ կ'ըսեմ , ըսի անոր , թէ ձեզի հետ սեղան նստելով և խօսակցելով իմ առջի վիճակս գտայ , և միտքս այնպէս հանդարտ է , որ կենացս մէջ այսպէս ըլլալս չեմ յիշեր »։

Անատեն նաւապետը կատակը մէկ դի ձգելով ․ « Ըսէ՛ ինծի , ըսաւ , թէ մեծ յանցանք մը գործելուդ համար՝ իշխանի մը հրամանաւ աս սնտուկիս մէջ դըրուելով միտքդ շփոթա՞ծ է , ինչպէս որ քանի մը տէրութեանց մէջ՝ մեծ յանցաւորները ջուր առնող ծակ նաւու մը մէջ դրուելով , առանց պաշարի ծովը կը ձգուին ․ եթէ այսպէս է՝ թէև քեզի պէս չար մարդ մը նաւուս մէջ առած ըլլալուս զղջացած եմ , բայց դարձեալ կը խոստանամ՝ որ առջի հասած նաւահանգիստնիս ողջ առողջ կը հանեմ զքեզ։ Աստ որում խուցիդ կամ սնտուկիդ վը-

րայօք նախ նաւաստեացս՝ ու երբոր ինծի հետ բրած քանի մը խիստ անտեղի խօսքերդ, և սեղան նստած ատենդ այլանդակ նայուածքերդ ու վարմունքերդ կասկածներս խիստ շատ աւելցան"։

Աղաչեցի զան որ համբերութեամբ ականջ դնէ ըսելու պատմութեանս, զորոնք անկեղծութեամբ սկսայ պատմել վերջին անգամ Անգղիայէն մեկնելէս մինչև զիս դիտակով տեսած ատենը ։ Որովհետև ճշմարտութիւնը միշտ դիւրաւ կը մտնէ բանաւոր մտաց մէջ, ուստի աս բարեսիրտ և արժանաւոր մարդը, որ բաւական գիտութիւն ունէր, ու շատ աղէկ հասկացողութեան տէր էր, իսկոյն ըսածներուս ճշմարիտ ու անկեղծ ըլլալուն համոզուեցաւ ։ Բայց զանոնք աւելի հաստատելու համար՝ աղաչեցի որ պահանոցս, որուն բանալիքը գրպանիս մէջ պահած էի, ներս բերուելու հրաման ընէ ․ քանզի սնտուկս ինչ ընելնին նաւապետը արդէն ինծի իմացուցեր էր ․ Պահանոցը անոր առջին բացի, ու ան երկրէն ժողված բոլոր հաղուագիւտ բաներս անոր ցուցուցի ։ Անոնց մէջ կային նաև Թագաւորին մօրուքին մազերէն շինուած սանտրս, նոյն մազերէն

տուրիշ սանտր մը՝ Թագուհւոյն ըԹամատին եղունգի մը կտորին վրայ շինուած· ծրար մը ասեղներ ու գնդասեղներ՝ մէկ ոտքէ մինչև կէս կանգուն երկայնութը· չորս հատ պիծակի խայթոցներ, որոնք ատաղձագործի մանր բևեռներու կը նմանէին· Թագուհւոյն սանտրուած ատենը Թափած մազերէն· ոսկի մատնի մը, զոր ընծայ ըրաւ ինծի Թագուհին օր մը մարդասիրութեամբ իր ճկոյթէն հանելով, ու քառամանեակի (1) պէս գլխուս վրայէն վիզս անցընելով։ Աղաչեցի զինուասպետը որ աս մատնին ընդունելու բարեհաճի ի նշան իմ երախտագիտութեանս, բայց ան բացարձակապէս մերժեց զայն։ Կօշտ (2) մը ցուցուցի անոր, որ իմ ձեռքս պատուադիր տիկնանց մէկուն ոտքի մատին վրայէն փրցուցեր էի։ Աս կօշտը Քէնթի լեմոնի չափ մեծ էր, և այնպէս կարծր, որ երբ Անգղիա դարձայ, բաժակի ձեւով փորել տալով՝ արծաթի վրայ ագուցի զայն։ Ի վերջոյ՝ աղաչեցի որ հագած սռնապանս (3) դիտէ, որ մուկի կաշիէ շինուած էր։

Անկլաւիկի մը ակռայէն զատ բան

(1) Կէրտանլըք· (2) Նասըր· (3) փանթալօն։

մը չկրցի անոր ընդունել տալ· աս ակռան խիստ շատ հետաքրքրութեամբ առնել զննելէն հասկցայ թէ անոր վըրայ աչք տնկեր էր · ուստի արժան եղածէն աւելի շնորհակալութեամբ ընդունեց զան ։ Անփորձ ատամնաբոյժ մը Սմտալբինջի մարդոց ակռայի ցաւ ունեցող մէկէն սխալմամբ աս ողջ ակռան հաներ էր , ու ես զայն մաքրել տալով՝ խուցիս մէջ պահեցի ։ Աս ակռան ոտքի մը չափ երկայնութիւն , ու չորս մատնաչափ տրամագիծ ունէր ։

Նաւապետը բրած պարզ պատմուե̃ս վրայ շատ գոհ եղաւ ։ "Կը յուսամ թէ, ըսաւ , Անգղիա դարձած ատենդ՝ ասոնց պատմութիւնը գրելով ու հրատարակելով , հասարակութիւնը երախտապարտ կ՚ընես ։ "Կարծեմ արդէն պէտք եղածէն աւելի ճամբորդութեան գրքեր կը գտնուին , ըսի , և աս օրուան օրս գիրք մը՝ որ իր մէջը արտաքոյ կարգի բան մը չպարունակեր՝ մարդ ձեռքը չառներ· ահա աս բանիս համար կը կասկածիմ քանի մը հեղինակաց գրուածոց վրայ , որոնք իրենց սնապարծութեան , անձնական օգտին , կամ տգէտ ընթերցողը զբօսցընելու համար՝ ճշմարտութիւնը շատ չեն

մնացեր ։ Իմ պատմութեանս մէջ՝ հասարակ գիտցուածներէ զատ շատ բան չի կայ, օտար տնկոց, ծառոց, թռչնոց, և ուրիշ կենդանեաց, կամ վայրենի ժողովրդոց ունեցած բարբարոսական սովորութեանց փայլուն նկարագրութիւնները չկան, որոնցմով ճամբորդութիւն գրող խիստ շատերուն գրուածքը լեցուն են"։ Այսու ամենայնիւ՝ իր բարի կարծեացը համար շնորհակալ ըլլալով, խօսք տուի որ աս բանիս վրայօք պէտք խորհիմ։

« Մէկ բանի վրայ շատ կը զարմանամ, ըսաւ ինծի, թէ ինչո՞ւ համար այսչափ բարձրաձայն կը խօսիս. արդեօք ան երկրին թագաւորին ու թագուհւոյն ականջները ծանր էին. — Ոչ, ըսի, պատճառը այն է որ երկու տարիէ ի վեր բարձր ձայնով խօսելու սովորած եմ, ու ես քու և մարդոցդ փսփսուքի նման ձայնին վրայ նոյնչափ զարմացած եմ, թէև բաւական աղէկ կրնամ բառերնիդ լսել։ Բայց ան երկրին մէջ խօսելու ատենս, թէ որ սեղանի մը վրայ դրուած՝ կամ մէկը զիս իր ձեռքը առած չըլլար, զանգակատան մը վրայի մարդուն հետ փողոցէն խօսո-

ղին չափ բարձրաձայն կը պոռայի ։ Նմանապէս ուրիշ բան մը դիտեցի · երբ նաւուղմնայ , նաւաստիները բնաւ չտեսնուած փոքրիկ և անարգ սանդձուածներ երևցան աչքիս · ինչու որ սա իշխանին երկիրը գտնուած ժամանակս՝ աչքս այնպէս ահագին բաներու սորվելէն ետև՝ հայելի մը մէջ չէի կրնար նշմարել , որովհետև իմ և անոնց հետ ըրած բաղդատութենէս ես իմ աչքիս առջև էակ մը կ'երևայի ։

— Սեղան նստած ատենիս , ըստ նաւապետը , դիտեցի որ ամէն բանի վրայ զարմանքով մը կը նայէիր , ու շատ անգամ հազիւ թէ ծիծաղս կրնայիր բռնել , որուն պատճառը չէի իմանար , և կարծէի թէ խելքիս պակսութիւն եկած է ։ — Ըդ ըսածդ , պատասխան տուի անոր , շատ իրաւ է · որովհետև յիրաւի չէի դիտեր ինչպէս ծիծաղս զսպել , ինչատեն կը տեսնայի երեք փչնոց արծաթ դրամի մեծութեամբ ամաններ , խոզի ապուխտ մը՝ որ հազիւ թէ մէկ պատառ կ'ըլլար , բաժակ մը՝ որ ընկուզի կեղևէն մեծ չէր ” · ու այսպէս ամէն կահ կարասիքը և ուտելիքը նկարագրելով շարունակեցի , ինչու որ՝ թէ և Թագուհին էր

ծառայութեան տակը եղած ատենս՝ ին-
ծի ամէն հարկաւոր եղածները իմ հա-
տակիս համեմատ պատրաստել տուած էր,
սակայն չորս դիս տեսածներուս մէջը
պաշարուէր էր, ու ես իմ պզտիկու-
թեանս աչք կը խփէի, ինչպէս որ մար-
դիկ երենց պակասութեանցը կը խփեն”:

Նաւապետը իմ կատակս շատ աղէկ
հասկցաւ, ու հետեւեալ Անգղիարէն
հին առածով մը պատասխան տուաւ թէ
“Անշուշ շատ աչքդ փորէդ աւելի մեծ են”.
քանզի թէեւ բոլոր օրը բան մը չէի կե-
րած, այսու ամենայնիւ շատ ախորժակ
չունէի: Նաւապետը իր կատակը շարու-
նակելով՝ ըսաւ. “Յօժարութեամբ հա-
ւերը վրա կու տայի նաւակդ արծիւին
բերանը, եւ այնչափ բարձրութենէ ծո-
վուն մէջ ինկնալը տեսնելու համար, որ
անշուշտ շատ զուարճալի բան մը ըլլալու
էր, եւ արժանի ապագայ դարերուն ա-
ւանդելու”: Փայետոնի արկածին բաղ-
դատութիւնը այնչափ պատահմամբ կը
յարմարէր աս պարագայիս, որ զան իմ
վրաս յարմարցընելու առիթը չկորսըն-
ցուցի. բայց ինծի աս բաղդատութիւնը
անհամ բան մը երեւցաւ:

Նաւապետը Թօմբինէն Անգղիա դար-

ձած ատենը՝ 44 աստիճան լայնութեան ու 143 աստիճան երկայնութեան՝ դէպ ի հիւսիսային արեւելք քշուեր էր, բայց նաւը գալէս երկու օր ետեւ՝ կանոնաւոր հողմ մը փչելով՝ երկար ատեն դէպ ի հարաւ նաւեցինք, ու Նոր-Հոլանտայ Ծովեզերքին քովէն անցնելով. դէպ ի արեւմտեան-հարաւային-արեւմուտք, ու ետքը հարաւ-հարաւային-արեւմուտք գացինք, մինչեւ որ Գլուխ-Բարեյուսոյ հրուանդանէն անցանք.

Ճանապարհորդութիւննիս շատ յաջող գնաց, որուն օրական պատմութիւնը ընելով ընթերցողիս ձանձրութիւն չտամ. Նաւապետը քանի մը նաւահանգիստ մտնելով երկաթ նետեց, ու նաւակը ցամաքը ղրկեց որ անոյշ ջուր և ուտելիք ճարեն, բայց ես մինչեւ Տրնս հասնելընիս՝ ամենեւին նաւէն դուրս չելայ. ուր որ 1706 Յունիսի երրորդ օրը հասանք՝ ազատելէս ինը ամիս չափ ետքը. Նաւու վարձքին տեղ՝ կահ կարասիքս նաւապետին քով գրաւ թողնել ուզեցի. բայց նաւապետը սատակ մը ընդունիլ չուզեց. Ուստի սիրով հրաժարական ողջոյն տալով, իրարմէ զատուեցանք, ու խօսք առի անորմէ որ Ռէտրիֆ զիս տեսնելու

տունս գամ ։ Նաւապետը հինգ ճիճինկ փոխ տուաւ ինծի, որով ձի ու առաջնորդ մը վարձեցի ։

Ճամբուս մէջ՝ աներուն, ծառերուն, արջառներուն, ու ժողովրդեան պզտիկութիւնը դիտելով, ինքզինքս Լիլլիփութի մէջ կը կարծէի ․ կը վախնայի որ անցնող դարձողներուն վրայ չկոխեմ, ու շատ անգամ պոռալով ձայն կու տայի անոնց որ ճամբուս վրայէն մէկ դի քաշուին, այնպէս որ մէկ երկու անգամ յանդգնութեանս համար քիչ մնաց որ ծեծ պիտի ուտէի ։

Տունս երթալու ատեն՝ ճամբան ուրիշներուն հարցընելու ստիպուեցայ, ու երբ ծառայիս մէկը դուռը բացաւ, ներս մտնելու ատենս կծկեցայ (սագի մը վանդակի դուռէն ներս մտնելուն պէս), որպէսզի գլուխս տեղ մը չզարնեմ ։ Ամուսինս վազեց վրաս փաթթուեցաւ, բայց ես իր ծնկերէն վար կծկեցայ, մտածելով թէ ուրիշ կերպիւ չեմ կրնար անոր երեսին հասնել զայն համբուրելու համար ։ Աղջիկս ծունկի վրայ եկաւ օրհնութիւնս առնելու համար, բայց մինչև որ ոտքի չելաւ՝ չկրցի զինքը ճանչնալ, որովհետև երկար ատենէ ի վեր սովորութիւն

ունէի աչքս ու գլուխս վախթուն ոտքէն աւելի բարձր բռնելու · անատեն գացի որ մէկ ձեռքովս անոր միջքէն բռնեմ վեր վերցընեմ ։ Տանս մէջ գտնուող ծառաներս ու քանի մը բարեկամներս աչքիս մէկ մէկ թզուկ կ'երեւային , ու ես անոնց առջին հսկայ մը ։ “ Զամէն աւելի սակաւապետ եղած պիտի ըլլաս , ըսի կնոջս , քանզի կը գիտեմ որ թէ՛ դուն և թէ աղջիկս ոսկերոտի էք դարձեր ”։ Վերջապէս այնպէս այլանդակ կերպով վարուեցայ , որ ի սկզբան ամէնքն ալ նաւապետին կարծիքը ունեցան վրաս , և խենդի տեղ դրին ։ Այս ամէն բաները մանրամասն յիշելուս պատճառը՝ նախապաշարման ու սովորութեան ինչ աստիճան ազդեցութ՟ի ունենալը ցոյց տալ է ։

Շատ չանցաւ ընտանիքս և բարեկամքս իրար աղէկ ճանչցանք · ամուսինս ինձմէ խօսք առաւ որ այնուհետև ծովային ճամբորդու՟թի չընեմ , բայց դժբաղդ ճակատագիրս անոր հակառակը տնօրինեց , ինչպէս ընթերցողս ետքը պիտի հասկընայ ։ Հոս կը վերջացընեմ իմ դժբաղդ ճամբորդութեանս երկրորդ մասը ։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ



# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Ի

# ԼԱՓՈՒԹԱ,

Ի ՊԱԼՆԻՊԱՐՊԻ, Ի ԼԸԿԿՆԱԿԿ,

Ի ԿԼԸՊՊՏԸՊՏՐԻՊ,

ԵՒ Ի ՃԱՓՈՆ

# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

# Ի

# ԼԱՓՈՒԹԱ

## Ի ՊԱԼՆԻՊԱՐՊԻ. Ի ԼԸԿԿՆԱԿԿ.

## Ի ԿԼԸՊՊՏԸՊՏՐԻՊ.

## ԵՒ Ի ՃԱՓՈՆ



### ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ.

*Հեղինակին երրորդ ճամբորդութեան մը ձեռք զարնելը. Ծովահէններէ բռնուիլը. Հոլանտացիի մը չարութիւնը. Կղզի մը հասնիլը. և անկէ Լափութա երթալը.*

ՊՐԵԹԷ տասն օրէն աւելի չէր որ ընտանեացս քովը կը գտնուէի, երբ Ուի-լէըմ Րօպինսըն Գօրնիշցի նաւապետը, որ երեք հարիւր տակառաչափ վերցընող Հօփուէլ անուն հաստատաշէն նաւուն հրամանատարն էր, տունս եկաւ. Նոե-

նաց ուրիշ նաւով մը Արեւելք ճամբորդութիւն ըրած ժամանակս՝ աս նաւապետը նոյն նաւուն հրամանատարը՝ միանգամայն և անոր չորրորդ մասին տէրն էր, ու ես անոր մէջ վիրաբոյժ էի, և ճամբան՝ աւելի իբր եղբայր վարուեցաւ հետս, քանթէ ստորին պաշտօնատար մը: Նաւապետը երկրորդ ճամբորդութենէս դառնալս լսելուն պէս՝ այցելութեան եկաւ ինծի միակ բարեկամութեան համար, ինչպէս որ նախ այնպէս կարծէի, ինչու որ միայն այն խօսքը եղաւ մէջերնիս, որոնք երկար բացակայութենէ ետև բարեկամաց մէջ սովորական են: Սակայն իր այցելութիւնները կրկնելով՝ զիս քաջառողջ վիճակի մէջ տեսնելուն համար զգացած ուրախութիւնը յայտնելէն ետև՝ հարցուց թէ բոլոր կեանքս հոն անցընելու որոշած եմ. յաւելցուց նաև թէ գրեթէ երկու ամիսէն Արեւելեան Հնդկաստան ճամբորդելու դիտաւորութիւն ունի: Վերջապէս՝ բացարձակապէս թէև քաշուելով հրաւիրեց զիս որ նոյն նաւուն վիրաբոյժը ըլլալու յանձնառու ըլլամ, խոստանալով որ կրկին ամսական, և իմ հրամանիս տակը երկու օգնականներ

զատ՝ ուրիշ վիրաբոյժ մը տայ ։ “Ես , ըսաւ , քու ծովային հմտութիւնդ փորձով ճանչցած եմ , որ իմինիս կը հաւասարի ․ ուստի իբր երկրորդ նաւապետ խորհրդոցդ հետևելու կը զիջանիմ” ․ և ուրիշ շատ հաճոյական խօսքեր ըրաւ ։ Ես անոր ազնիւ մարդ մը ըլլալը գիտնալուս՝ անոր առաջարկութիւնը չկրցի մերժել , որովհետև աշխարհք տեսնելու համար ունեցած փափաքս՝ անցեալ դժբաղդութիւններս մոռցնելով , առաջուաննէն աւելի վառուեր ։ Հիմա միակ դժուարութիւնը կինս համոզել էր , որուն հաճութիւնն ևս վերջապէս առայ , յիշելով անոր աս ճամբորդութենէս մեր զաւակաց քաղելու բարիքը ։

1707 , Օգոստոս 5ին ճամբայ ելանք , և 1707 , Ապրիլ 11ին Սէնդ Ճորճի բերդը հասանք ․ ուր երեք շաբաթ մնացինք նաւաստեաց հանգստութիւն տալու համար , որոնց մեծ մասը հիւանդ էր ։ Անկէ Թօնքին գացինք , ուր նաւապետը քիչ մը ատեն մնալու որոշեց ․ քանզի գնոյ առնելիք ապրանաց շատը պատրաստ չըլլալուն՝ չէր յուսար որ քանի մը ամիս առաջ ճամբայ ելնելու կարող ըլլայ ։ Ուստի իր հօն յապաղելովը ընելու ծա-

խուց փոխարէնը մասամբ իւիք լեցընելու դիտաւորութեամբ՝ փոքրիկ նաւ մը գնեց, և ան տեսակ ապրանքով բեռցուց զան, որոնցմով Թոնքինցիք առ հասարակ առևտուր կ՚ընէին մերձակայ կղզեաց հետ։ Այս նաւուն մէջ տասն և ութը մարդ դրաւ, որոնց երեքը երկրացի էին, և զիս անոր նաւապետ կարգեց, միանգամայն և հրաման տուաւ որ մինչև իր գործերը Թոնքինի մէջ լմնցընելը՝ ես երթամ առևտուր ընեմ։

Դամքայ ելնելնէս երեք օրէն ետև՝ սաստիկ փոթորիկ մը ծագեցաւ և մեր նաւը հինգ օր շարունակ դէպ ի հիւսիս-հիւսիսային-արևելք, և անկէ արևելք քշեց տարաւ։ Վերջապէս՝ թէև օդը քիչ մը հանդարտեցաւ, բայց արևմտեան հողմը միշտ բաւական սաստկութեամբ կը փչէր։ Տասներորդ օրը՝ երկու ծովահէն (1) նաւեր ետևնէս ինկան, որոնք շատ չանցաւ՝ մեզի մօտեցան. քանզի նաւս լեցուն ըլլալուն՝ շուտ չէր կրնար քալել, և մենք ինքզինքնիս պաշտպանելու վիճակի մէջ չէինք։

Այս երկու ծովահէնները գրեթէ մի և նոյն ժամանակին վրանիս հասան, և ա-

(1) Ծովու աւազակ։

նոնց նաւաստեաները իրենց մարդերովը
կառավարար նաւս մտան. բայց նայե-
լով որ ամենքս երեսն ի վայր գետինը
փռուած էինք ( քանզի ես այսպէս ըսե-
լու հրաման ըրեր էի ), բաւական սե-
պեցին ամուր չուաններով միայն մեզ
կապել, և փրանկս պահապաններ դնե-
լով՝ սկսան նաւուն ամեն կողմը փնտռել:
Անոնց մէջ Հօլանտացի մը տեսայ, որ
իշխանութեան տէր մէկը կ'երևար, թէ-
պէտ՝ և ոչ մէկ նաւուն հրամանատարն
էր: Աս Հօլանտացին մեր դէմքէն Ան-
գլիացի ըլլալնիս ճանչցաւ. ուստի մեր
լեզուաւ կակազելով երդում ըրաւ՝ թէ
կռնակ կռնակի կապուելով ծովը պիտի
նետուինք: Իսկ ես, որ Հօլանտերէնը
բաւական կը խօսէի, մեր ով ըլլալը յայտ-
նեցի անոր, միանգամայն աղաչեցի որ
նաւաստեաները մեր վրայ ի գութ շարժէ,
յիշեցնելով թէ մենք իր երկրին մերձակայ
և խիստ նեղակից տէրութեան հպա-
տակ, քրիստոնեայ և մանաւանդ Բողո-
քական ենք: Աս խօսքս միայն իր կատա-
ղութիւնը բորբոքեցին, ու սպառնալիքը
կրկնելով, դէպ ի իր ընկերները դար-
ձաւ, և սկսաւ ազդու ձայնով մը ա-

խուց փոխարէնը մասամբ իւիք լեցընելու դիտաւորութեամբ՝ փոքրիկ նաւ մը գնեց, և ան տեսակ ապրանքով բեռցուց զան, որոնցմով Թօնքինցիք առհասարակ առևտուր կ՚ընէին մերձակայ կղզեաց հետ։ Այս նաւուն մէջ տասն և ութը մարդ դրաւ, որոնց երեքը երկրացի էին, և զիս անոր նաւապետ կարգեց, միանգամայն և հրաման տուաւ որ մինչև իր գործերը Թօնքինի մէջ լմնցընելը՝ ես երթամ առևտուր ընեմ։

Ճամբայ ելնելնէս երեք օրէն ետև՝ սաստիկ փոթորիկ մը ծագեցաւ և մեր նաւը հինգ օր շարունակ դէպ ի հիւսիս-հիւսիսային-արևելք, և անկէ արևելք քշեց տարաւ։ Վերջապէս՝ թէև օդը քիչ մը հանդարտեցաւ, բայց արևմտեան հովը միշտ բաւական սաստկութեամբ կը փչէր։ Տասներորդ օրը՝ երկու ծովահէն (1) նաւեր ետևնէս ինկան, որոնք շատ չանցաւ՝ մեզի մօտեցան. քանզի նաւս լեցուն ըլլալուն՝ շուտ չէր կրնար քալել, և մենք ինքզինքնիս պաշտպանելու վիճակի մէջ չէինք։

Այս երկու ծովահէնները գրեթէ մի և նոյն ժամանակին վրանիս հասան, և առ-

(1) Ծովու աւազակ։

նոնց նաւաստեաները իրենց մարդերուն կատաղաբար նաւս մտան · բայց նայելով որ ամէնքս երեսն ի վայր գետինը փռուած էինք ( քանզի ես այսպէս ընելու հրաման ըրեր էի ), բաւական սեպեցին ամուր չուաններով միայն մեզ կապել, և փախնելու պահապաններ դնելով՝ սկսան նաւուն ամէն կողմը զննել :

Ասոնց մէջ Հոլանտացի մը տեսայ, որ իշխանութեան տէր մէկը կ՚երևար, թէպէտ՝ և ոչ մէկ նաւուն հրամանատարն էր : Աս Հոլանտացին մեր դէմքէն Անգղիացի ըլլալնիս ճանչցաւ · ուստի մեր լեզուաւ կակաղելով երդում մը ըրաւ՝ թէ կոնակ կոնակի կապուելով ծովը պիտի նետուինք : Իսկ ես, որ Հոլանտերէնը բաւական կը խօսէի, մեր ով ըլլալը յայտնեցի անոր, միանգամայն աղաչեցի որ նաւաստեաները մեր վրայ ի գութ շարժէ, յիշելով թէ մենք իր երկրին մերձակայ և խիստ նեցակից տէրութեան հպատակ, քրիստոնեայ և մանաւանդ Բողոքական ենք : Աս խօսքս միայն իր կատաղութիւնը բորբոքեցին, ու սպառնալիքը կրկնելով, դէպ ի իր ընկերները դարձաւ, և սկսաւ ազդու ձայնով մը ա-

նանց հետ կարծեմ Ճափոներէն խօսիլ՝ Բըրէփքեանս բառը ստէպ կրկնելով։

Սա երկու նաւերէն մեծին նաւապետը Ճափոնցի մ'էր և քիչ մը Հոլանտերէն կը խօսէր, թէև շատ կցկտուր։ Ուստի ինծ մերձենալով շատ հարցումներ ըրելէն ետև, որոնց մեծ խոնարհութեամբ պատասխանեցի, ըսաւ. "Մի վախնաք, ձեր կենացը պիտի չդպչինք"։ Սոր վրայ խորին խոնարհութիւն մը ընելէս ետև՝ դէպ ի Հոլանտացին դարձայ ու ըսի. "Շատ կը ցաւիմ որ աւելի մարդասիրութիւն գտայ հեթանոսի մը, քան թէ քրիստոնեայ եղբօր մը վրայ"։

Բայց շուտով աս ըսածիս վրայ յիրաւի զղջացայ, ինչու որ այն չար ամբարիշտը(1) զիս ծովը նետել տալու համար թէև շատ ջանք ըրեր է, բայց չէ կրցեր նաւապետները համոզել, քանզի խօսք տուեր էին ինծ թէ կենացս պիտի խնայեն. վերջապէս՝ այնչափ ուք կրներ է որ ինծ մահուանէ աւելի դառն պատիժ մը տալու համոզեր է զանոնք։ Ուստի նաւաստիներս իրենց երկու նաւերուն մէջ հաւասար բաժնեցին և իմ նաւուս մէջ ուրիշ նաւաստի դրին։ Իսկ ինծի համար

(1) Անհաւատ։

որոշեր էին որ փոքրիկ բրակուրի (1) մէջ թիեր, մէկ առագաստ, և չորս օրուան պաշար դնելով, զիս անոր մէջ իջեցընեն, ու ալեաց խնամոցը յանձնեն: Սակայն՝ Ճափոնցի նաւապետը իր մասնաւոր պաշարէն աս պաշարս կրկնապատկեց, և չի թողուց որ վրաս ունեցածս կողոպտեն: Ես բրակուրին մէջ իջած ատենս՝ Հօլանտացին նաւուն վրայէն՝ բերնին եկած ամեն անէծքը և հայհոյանքը վրաս կը թափէր:

Ծովահէնները տեսնելնէս գրեթէ ժամ մը յառաջ դիտեր էի թէ լայնութեան 46 և երկայնութեան 143 աստիճանաց տակը կը գտնուէինք: Երբ ծովահէններէն քիչ մը հեռացայ, գրպանի հեռադէտակս հարաւային - արևելեան կողմը քանի մը կղզիներ տեսայ: Հողմը յաջող ըլլալուն՝ առագաստս պարզեցի և ջանք ընելով՝ գրեթէ երեք ժամուան մէջ ամենէն մօտ կղզին հասայ: Ես կղզին քարքարոտ ժայռոտ էր, սակայն՝ անոր վրայ թռչուններու շատ հաւկիթներ գտայ, և զանոնք եփելու համար քիչ մը հաւամիգի (2) և ծովու չոր սեզ (3)

(1) Անգղ. Քանօ, որ է բրուած կամ փորուած մակոյկ. սանտալ:  (2) Սիւփիւրկէ օթու: (3) խոտ մը:

բռնկցուցի, և պաշարս ըստ կարի խնայելու մտօք իրիկունը ասկէ ուրիշ բան չկերայ։ Գիշերը տակս քիչ մը հաւամիգի փռելով, ժայռի մը ներքեւ շատ հանգիստ քնացայ։

Հետեւեալ օրը՝ դէպ ի ուրիշ կղզի մը առագաստեցի, ու անկէց դէպ ի երրորդ ու չորրորդ կղզիները՝ երբեմն առագաստըս բանալով, և երբեմն թիերս գործածելով. բայց նեղութեանցս մասնաւոր պատմութիւնովը ընթերցողս չձանձրացընելու համար բաւական է ըսել թէ հինգերորդ օրը՝ երեւցած վերջին կղզին հասայ, որ առջի տեսած կղզիէս հարաւ-հարաւային-արեւելեան կողմը կ'իյնայ։

Այս կղզին կարծածէս աւելի հեռի էր, և մինչև հոն հասնիլս հինգ ժամ տեւեց։ Գրեթէ անոր բոլորտիքը պտըտելով՝ հազիւ թէ ցամաքը ելնելու յարմար տեղ մը գտայ, որ բրակուրիս երեք մեծութեամբը փոքրիկ ծոց մ'էր։ Բոլոր կղզին ժայռոտ էր, միայն տեղ տեղ դալարիք և անուշահոտ խոտեր բուսած էին։ Առտին ան դուզմոքեայ պաշարս ցամաքը հանեցի, և քիչ մը ուտելով զօրանալէս ետեւ՝ մնացեալը հոն գտնուած այրերուն (1) մէկին մէջ պահեցի։ Այ-

(1) Մաղարա։

ռերուն վրայէն շատ հաւկիթներ ժող-
վեցի, նմանապէս քիչ մը ծովու չոր սեզ, և չորցած խոտեր դիզեցի, որպէսզի հետևեալ օրը կրակ վառելու և կրցածիս չափ հաւկիթներս եփելու կարող ըլլամ, որովհետև կայծքարս (1), հրահանս (2), լուցկիս (3), և կիզիչ ապակիս վրաս էին։

Ամբողջ գիշերը նոյն այրին մէջ անցուցի, ուր որ պաշարները դրեր էի։ Պառելու համար ժողված չոր խոտերս անկողնոյ տեղ ծառայեցին ինձ։ Բայց խոնջէնքիս վրայ մտացս անանդորրութիւնն ևս զօրանալով՝ շատ քիչ քնացայ։ Կը մտածէի թէ այսպիսի ամայի տեղի մը մէջ ապրիլը ո՛րչափ անհնարին էր, և վերջս ո՛րչափ ողորմելի պիտի ըլլար. աս մտածմունքը այնպէս յուսահատեալ և լքեալ վիճակի մէջ ձգեցին զիս, որ անկողնէս ելնելու սիրտ չմնաց վրաս, և մինչև որ բաւական ոգի առնելով այրէն դուրս ելայ՝ արևը շատոնց ծագեր էր։ Օդը բոլորովին պարզ ըլլալուն՝ քիչ մը ժամանակ ժայռերուն մէջ պտըտեցայ. բայց արևուն տաքութիւնը այնչափ սաստիկ էր, որ կռնակս դէպ ի անոր դարձընելու պարտաւորեցայ։

(1) Չագմագ թաշը։ (2) Չագմագ։ (3) Գավ.

Նստէն՝ արեւը յանկարծ խաւարեցաւ, բայց այս խաւարումը ամպէ պատճառածի չէր նմաներ: Աչքս դէպ ի երկինք ուղղելով՝ նայեցայ որ իմ եւ արեւին մէջ տեղը շարժուն եւ անթափանցիկ մարմին մը դէպ ի կղզին յառաջ կու գար: Կ՚երեւար թէ այս մարմինը գրեթէ երկու մըղոն բարձրութիւն ունէր, եւ արեւուն երեսը վեց կամ եօթը վայրկեան ծածկեց. բայց լերան մը շուքին ներքեւը եղածէն աւելի ցուրտ եւ աւելի խաւար չերեւցաւ ինծի: Երբ այս մարմինը իմ գըտնուած տեղէս աւելի մօտեցաւ՝ նայեցայ որ հաստատուն մարմին մ՚է, յատակը տափարակ եւ ողորկ, ու վարը եղած ծովուն ցոլացումէն սաստիկ պայծառութեամբ կը փայլէր: Ծովեզերքէն գրեթէ երկու հարիւր կանգուն բարձր բլուրի մը վրայ ելայ կանգնեցայ, եւ դիտեցի որ այս լայնատարած մարմինը կարծես թէ ինծի հաւասար գծիւ գրեթէ Անգղիական մղոնի մը հեռաւորութեամբ վար կ՚իջնար: Ուստի՝ հեռադէտով յայտնի տեսայ որ բազմութիւ անձինք կղզւոյն քիչ մը հակեալ երկու կողերուն վրայ վեր վար կ՚երթեւեկէին, բայց անոնց ինչ ընելը չէի կրնար որոշել:

Ապրելու բնական սէրը սրտիս մէջ ուրախութեան ազդեցութիւն մը պատճառեց, ուստի սկսայ յուսալ թէ աս տեսածս որ և իցէ կերպիւ կրնար զիս աս ողորմելի տեղէն ու վիճակէն ազատել: Բայց ընթերցողս դժուարաւ պիտի կրնայ իմ զարմանքս երևակայել, երբ օդուն մէջ կղզի մը տեսայ, որուն բնակիչները (ինչպէս որ կ՚երևար) ուզածնուն համեմատ՝ կղզին բարձրացընելու, իջեցընելու կամ յառաջ մղելու կարողութիւնը ունէին· սակայն աս միջոցին աս օդերևոյթին վրայ փիլիսոփայական քննութիւն ընելու վիճակին մէջ չգտնուելուս՝ աւելի աղէկ սեպեցի անոր ո՛ր կողմը երթալը դիտել, քանզի ինձ երևցաւ թէ ատեն մը անշարժ մնաց:

Սակայն շատ չանցաւ՝ այնչափ մօտեցաւ, որ անոր բոլորտիքը եղած զանազան աստիճան ճեմելիները, և անոնք իրարու հաղորդող սանդուղները կրցի տեսնել: Ստորնագոյն ճեմելիքին վրայ քանի մը անձինք տեսայ, որոնք երկայն կարթով ձուկ կ՚որսային, և ուրիշները անոնց կը նայէին: Թաշկինակս և գլխանոցս (1) (ըստ որում փեղոյրս (2) շա-

(1) Քասքէթա, կասըր շափգա: (2) Շափգա:

տոնց հինգեր էր) դէպ ի կղզին վերցընելով շարժեցի։ Երբ կղզին աւելի մերձեցաւ՝ բոլոր ուժովս ծափելով պոռացի, անատեն ուշադրութեամբ նայելով, ինձ երևցած կողմին վրայ խուռն բազմութիւն մը տեսայ։ Ասոնց մասով ինծի և իրարու ցուցընելնէն հասկըցայ թէ զիս տեսան, թէև ծափաձայն պոռալուս չի պատասխանեցին։ Բայց չորս — հինգ հոգի տեսայ, որոնք մեծ շտապաւ կղզւոյն գագաթին վրայ ելան և աներևոյթ եղան։ Ես ինչ ըսելնուն հրամանը ընդունելու համար՝ իշխանաւոր անձի մը խրկուելնուն վրայ ըրած կարծիքս ստոյգ ելաւ։

Ժողովրդեան թիւը երթալով աճեցաւ, և կէս ժամ չքշեց՝ սկսաւ կղզին շարժիլ, ու այնչափ իջաւ որ ամենէն վարի ձեմելիքին և կայնած տեղիս մէջ հարիւր կանգուն հեռաւորութիւն չմնաց։ Ան ատեն աղերսարկու կեցուածքով և ամենախոնարհ ձայնով սկսայ խօսիլ, բայց պատասխան մը չընդունեցի։ Ինծի մօտ երևցողներուն զգեստնէն գուշակեցի որ պատուաւոր անձինք են, որոնք շատ անգամ ինձ նայելով, իրարու հետ խորհուրդ կ'ընէին։ Վերջապէս՝ անոնցմէ

Ցէկը մաքուր, քաղցր և մեղմ լեզուաւ զիս կանչեց, որուն արտասանութիւնը Իտալերէնի կը նմանէր, ուստի և ես նոյն լեզուաւ պատասխանեցի անոր, յուսալով թէ աս լեզուին հնչումը աւելի անոյշ գայ ականջնուն։ Թէև իրարու չհասկցանք, սակայն միտքս դիւրաւ կը հասկցուէր, ըստ որում ժողովուրդը կը տեսնէր թէ ինչ աղէտալի վիճակի մէջ էի.

Անոնք նշաններով հասկցուցին՝ թէ ժայռէն իջնալով դէպ ի ծովեզերքը երթամ. ուստի՝ ըսածնուն պէս ըրի, և թռչող կղզին յարմար բարձրութեամբ վար իջնալով, ամենէն վարի ձեմելիքէն՝ շղթայի կապած նստարան մը իջեցուցին, որուն վրայ նստելով, ճախարակներու միջոցաւ զիս վեր քաշեցին։



## ԳԼՈՒԽ Բ.

*Լափութացւոց բնութիւնը և միտքը. Իրենց գիտութեան, թագաւորին և իր պալատականաց պատմութիւնը։ Հոն գտած ընդունելութիւնը։ Կանանց վերայօք պատմութիւն մը։*

Երբ վեր հասայ՝ խուռն բազմութիւն մը չորս կողմս պատեց, որուն մէջէն ամենէն աւելի ինձ մօտեցողները անոնց երևելիները կ'երևէին։ Անոնք ամէնքը մեծ զարմացմամբ ինձ կը նայէին, ու ես նոյնպէս անոնց կը նայէի, որովհետև մինչև ան ատենը թէ ձևով, թէ զգեստով, և թէ դէմքով այնպիսի այլանդակ ցեղ մը չէի տեսեր։ Ամենուն գլուխը կամ աջ կամ ձախ կողմը ծռած էր, ու աչաց մէկը դէպ ի ներս, միւսը ուղղակի դէպ ի զենիթ* դարձած։

Արտաքին զգեստնուն վրայ՝ արևներու, լուսիններու, աստղերու, և տեղ տեղ՝

* Աս նկարագրութիւնը ընելով հեղինակին դիտաւորութիւնն է՝ կեանքերնին մտածական գիտութեանց մաշողները ծաղրել, որոնց մտաց կարողութիւնները Լափութացւոց աչաց պէս անպատշաճ կերպով զբաղեալ են։

ջութակներու (1), սրինգներու (2), սանթուռներու, փողերու, փանդիռներու(3), տաւիղներու (4), և Եւրոպացւոց անծանօթ ուրիշ մէկ քանի երաժշտական գործիներու պատկերներով զարդարուած էր։ Տեղ տեղ՝ սպասաւորի զգեստներ հագած բազմաթիւ անձինք տեսայ, որոնց ամեն մէկին ձեռքը գաւազան մը կար՝ ծայրը ուռեցուցած փամփուշտ մը կապուած. փամփուշտներուն մէջ, ինչպէս որ ետքէն իմացայ, քիչ մը չոր ոլոռն (5) կամ կոպիճ (6) կային։ Այս փամփուշտներով իրենց քովը գտնուողներուն մերթ բերաննուն և մերթ ականջնուն կը զարնէին, և աս բանիս ինչ նշանակելը ան ատենը չկրցի հասկընալ։

Կերևի թէ աս ժողովուրդը այնքան խորին մտմտուքի մէջ ընկղմած էր, որ ոչ խօսիլ կրնար, և ոչ ուրիշին խօսքին ականջ դնել, մինչև որ լսողական և խօսողական գործարանաց վրայ արտաքին ազդեցութիւն մը չըլլար։ Աս պատճառաւ է որ բաւական հարստութիւն ունեցող անձինք իրենց ընտանեաց մէջ իբր սպասաւոր՝ փամփուշտով զարնող մը

(1) Քէմէնչէ. (2) Ֆլաութօ։ (3) Քիթարա։ (4) Գըլըվէն։ (5) Պիզէլլա։ (6) Մանր քար.

(բնիկ լեզուաւ քլիմնօլ կ՚ըսուի) կը պա-հեն, և առանց աս ազգարարին ոչ այ-ցելութեան կ՚երթան և ոչ պարտելու։ Նոր պաշտօնը ան էր որ երկու-երեք կամ աւելի անձինք միատեղ գտնուած ատեննին՝ խօսիլ ուզողին բերանը և լը-սողին կամ լսողներուն աջ ականջը մեղ-մով մը փամփուշտով կը զարնէր։ Նո փամփշտահարին պարտքն էր նաև զգու-շութեամբ հսկել իր տիրոջը քալելու ատենը, որպէսզի հարկը պահանջած ա-տենը կամաց մը զարնէ անոր աչոց, քան-զի միշտ խորին մտածութեան մէջ ըլլա-լուն՝ որ և իցէ գահավէժէ վար գլորե-լու, գլուխը ցօղերու զարնելու, փո-ղոցներու մէջ ուրիշներու զարնուելու և ուրիշներէն հրուելու վտանգը յայտ յանդիման կ՚երևէր։

Հարկը ստիպեց աս տեղեկութիւնը ընթերցողիս տալ, եթէ ոչ՝ ան ալ այս ժողովրդեան գործերը հասկընալու հա-մար նոյն տատամսութեան մէջ պիտի իյնար, ինչպէս որ ես ինկայ՝ մինչև որ զիս սանդուղներէն կղզւոյն գագաթանը վրայ հանեցին, և անկէ արքունական պալատը տարին։ Սանդուղներուն վրայ ելած ատեն՝ շատ անգամ ընկերներին մոռ-

ցան, և զիս հոն ձգեցին, մինչև որ փամփշտահարները իրենց յիշողութիւնը նորէն արթնցուցին. քանզի կ'երևար թէ անոնց ամենևին ազդեցութիւն մը չըրաւ իմ օտար զգեստս և դէմքս և ռամկաց աղաղակը, որոնց միտքը և խորհուրդները միւսներուն չափ ծանրաբեռնեալ չէին.

Վերջապէս՝ պալատը մտանք և անկէ արքայական սենեակը գացինք, ուր Թագաւորը իր գահին վրայ նստած էր, և իր երկու կողմը խիստ երևելի անձինք կանգնած էին: Գահին առջև մեծ սեղան մը կար, որուն վրայ երկրագունդեր, երկնագունդեր, և մաթեմաթիգական ամեն տեսակ գործիներ լեցուն էին: Երբ ներս մտանք, Թագաւորը ամենևին ուշադրութիւն չըրաւ մեզ, թէև հետս եկող պալատականները մեր մտած ատենը շատ ձայներ կը հանէին, Թագաւորը ան ատեն խորին մտածութեան մէջ խնդիր մը լուծելու կը պարապէր. ուստի՝ գրեթէ ամբողջ ժամ մը հոն սպասեցինք, մինչև որ իր գործը լմնցուց: Անոր երկու կողմը մէկ մէկ մանկլաւիկ կանգնած էին ձեռքերնին փամփշտաւոր գաւազաններ բռնած: Երբ նորին վեհափա-

ռութիւնը աշխատելէ դադրեցաւ, անոնցմէ մէկը յուշիկ մը անոր բերնին, և միւսը՝ աջ ականջին զարկին · որուն վրայ Թագաւորը յանկարծ և ընդոստ քունէ արթնցածի պէս սթափեցաւ, իմ և հետս եկողներուն վրայ նայելով՝ մեր գալուն պատճառը յիշեց, որուն վրայօք քիչ մը առաջ իրեն իմացուցեր էին ·

Ուստի՝ քանի մը խօսք ըսաւ, և երիտասարդ մը իսկոյն քովս եկաւ ու ձեռքի փամփշտովը աջ ականջիս յուշիկ մը զարկաւ, բայց ես կրցածիս չափ նշաններով հասկըցուցի անոնց թէ՝ ես ամենևին կարօտութիւն չունիմ այսպիսի գործիքի մը։ Ասոր վրայ՝ Թագաւորը և բոլոր պալատականները, ինչպէս որ ետքէն իմացայ, իմ իմացականութեանս վրայօք նուաստ կարծիք մը ունեցան։ Թագաւորը կարծեօք քանի մը հարցմունք ըրաւ ինծի, ու ես գիտցած ամէն լեզուներովս պատասխանը տուի · բայց երբ իմացուեցաւ թէ ո՛չ կը հասկընամ և ոչ կրնամ հասկըցընել, հրաման ըրաւ որ զիս իր պալատին սենեակներուն մէկը տանին, ու երկու ծառայ տուին ինծի։ Աս իշխանը օտարականաց ըրած հիւրընկալութեանը համար իր նախնիքէն աւելի երևելի եղած էր։

Ճաշս բերին , և չորս երևելի անձինք, զորոնք թագաւորին խիստ մօտը տեսնելս կը յիշեմ, ինձ պատիւ ընելով հետս սեղան նստան : Երկու անգամ երեքական պնակ կերակուր եկաւ առջևնիս : Առջի անգամին՝ երեք պնակներուն մէջ կային եռանկիւնի հաւասարակողմ ձևով կտրած ոչխարի ուս մը , կտոր մը եզան միս շեղանկիւնի ձևով , և մէկ պուտին(1) կիսալուսնի ձևով : Երկրորդ անգամին՝ երեք պնակներուն մէջ կային երկու սագ ջութակներու ձևով լցուցած , խոզի երշիկներ և պուտիններ , որոնք սրինգներու և շեփորներու (2) կը նմանէին , և հորթու երբուծ (3) մը սանթուրի ձևով : Ծառաները հացը մանրեցին բրգական , գլանական , և ուրիշ մաթեմաթիքական ձևերով :

Սեղանին վրայ՝ համարձակելով քանի մը բաներու անունները հարցուցի իրենց լեզուաւ , և աս ազնուատոհմ անձինքը իրենց փամփշտահարաց օգնութեամբը մեծ հաճութեամբ ինձ պատասխանեցին , որպէս զի իրենց հետ խօսիլ կրցած ատենս՝ իրենց մեծ տաղանդներուն վրայ

(1) Հացէ , ալիւրէ , և չամիչէ շինուած Անգղիացւոց կերակուր մը : (2) Տեսակ մը փող : (3) Կուրծքի միս , տէօշ :

զարմանքս գրգռեն ։ Շատ չանցաւ՝ հաց, գինի, և ուրիշ ինծի պէտք եղածները կրնայի ուզել։

Առաջին օրս՝ երբ ասոնք քաշուեցան գացին, արքայական հրամանաւ մէկը քովս եկաւ, հետը փամփշտահար մը, թուղթ, գրիչ, մելան, ու երեք-չորս գիրք բերելով ։ Նշաններով ինծի հասկըցուց թէ երկրին լեզուն սորվեցընելու համար խրկուած է ։ Անոր հետ չորս ժամ նստանք, ու երկու էջերու վրայ շատ մը բառեր գրեցի, և թարգմանութիւննին դիմացնին գրի ։ Նմանապէս ուզեցի որ քանի մը համառօտ խօսակցութիւններ սորվիմ, որոնց միտքը հասկըցընելու համար՝ ուսուցիչս մարդու մը կը հրամայէր որ երթայ բան մը բերէ, դառնայ, խոնարհութիւն ընէ, նստի, կանգնի, քալէ, ու ասոնց նման բաներ ընել կուտար ․ և ես անոնց ինչ նշանակելը գրի կ'առնուի ։ Գրքի մը մէջ՝ արևին, լուսնին, աստեղաց, զոդիակոսին, արևադարձներուն, և բևեռային աստեղաց շրջաններուն պատկերները ցուցուց ինծի, միանգամայն և իրենց ամեն երաժշտական գործիներուն անուններն ու նըկարագրութիւնները, և անոնց հնչուե-

լուն արհեստական ընդհանուր բառերը յիշեց։ Նոյն քովէս հեռացաւ, աս ամէն բառերը այբուբենական կարգաւ գրեցի։ Աւստի քիչ օրէն՝ իմ սուր յիշողութեամբս լեզուին մէջ քիչ մը տեղեկութիւն ըստացայ։

Թռչող կամ տատանող թարգմանած բառս ի բնէ Լափութա է, որուն ճիշդ ստուգաբանութիւնը չեմ կրցեր երբեք հասկընալ։ Լափ՝ վաղեմի անգործածելի լեզուաւ կը նշանակէ բարձր, և ունթուհ՝ կառավարիչ։ Աս երկու բառերէն աղաւաղմամբ յառաջ եկած է, կ'ըսեն, Լափութան Լափունթուհէն։ Սակայն՝ աս ածանցումը չեմ հաւնիր, որ քիչ մը քաշկըտած կ'երևի։ Համարձակելով անոնց գիտնականներուն իմ կարծիքս առաջարկեցի թէ Լափութան Լափ ուըտէտէն յառաջ կու գայ, Լափ՝ արևուն ծառագայթից ծովու վրայ խաղալը, և ուըտէտ թև մը նշանակելուն համար։ Այսու ամենայնիւ՝ աս մեկնութեան վրայ չեմ ուզեր յամառիլ, այլ իրաւագէտ ընթերցողիս կը յանձնեմ զայն։

Ծառաներս զգեստներուս վիճակը դիտելով հրաման ըրին որ հետևեալ առտու դերձակ մը գայ և հագ մը զգեստ

չինելու համար չափս առնէ ։ Աս դերձակը Եւրոպիոյ դերձակներէն տարբեր կերպով իր արհեստը ի գործ դրաւ ։ Առաջ՝ քառորդ (1) գործիով մը բարձրութիւնս առաւ, ետքը՝ քանոնով և կարկինով բոլոր անձիս ընդարձակութիւնը ու շրջագիծը չափելով թղթի վրայ գծեց, և վեցը օրէն՝ լաթերս բերաւ բոլորովին տձև և անշնորհք, քանզի ըստ դիպաց՝ հաշուին մէջ սխալ նշան մը դրեր էր ։ Բայց ես հոգ չըրի՝ մտածելով թէ այսպիսի պատահմունք շատ կը հանդիպին, և դերձակները ասոր այնչափ ուշադրութիւն չեն ըներ ։

Զգեստ չունենալուս, և քիչ մը անհանգիստ ըլլալուս համար՝ քանի մը օր աւելի սենեկէս դուրս չելլելու պարտաւորեալ միջոցին՝ բառգիրքս աւելի ընդարձակելու պատեհութիւնը ունեցայ, և արքունիքը ներկայացած ատենս՝ թագաւորին խօսքին շատը կրնայի հասկընալ, և կերպով մը պատասխանել ։ Նորին վեհափառութիւնը հրաման ըրեր էր որ կղզին յառաջ մղեն դէպ ի հիւսիսային-արևելք՝ ուղղակի Լակատոյին վր-

(1) Ընդ. Քուատրանթ, որ է բոլորակի մը քառորդ մասը ։

րայ, որ իր ցամաքային բոլոր տէրու-
թեան մայրաքաղաքն էր։ Այս քաղաքը
գրեթէ յիննսուն փարսախ հեռու էր,
և մեր ճամբորդութիւնը չորս ու կէս
օր տևեց։ Կղզին օդուն մէջ թռչած ա-
տենը պատահած տատանումը ամենևին
չզգացի. Հետևեալ առտու՝ գրեթէ ժա-
մը տասն ու մէկին, թագաւորը անձամբ
իր ազնուականաց, պալատականաց և
պաշտօնակալաց հետ սկսաւ շարունակ ե-
րեք ժամ՝ պատրաստուած երաժշտական
գործիները նուագել. այնպէս որ ձայ-
նէն ականջներս գրեթէ խլցան։ Ասոր ինչ
նշանակելը չէի կրնար կռահել, մինչև որ
ուսուցիչս գալով, ըսաւ թէ իրենց կըղ-
զւոյն ժողովրդեան ականջները երկնա-
գնդոց միշտ նուագած երաժշտութիւնը
լսելու սովորած ըլլալուն՝ պալատական-
ները ևս իրենց պարտքը կը կատարեն՝
իրենց ամենէն աւելի գիտցած նուագա-
րաններովը։

Երբ դէպի Լակատօ մայրաքաղաքը կը
ճանապարհորդէինք, նորին վեհափա-
ռութիւնը քանի մը քաղաքներու և
գիւղերու վրայ կղզին կեցընել տուաւ,
որպէսզի հպատակաց աղերսագիրները
ընդունելու կարող ըլլայ։ Ասոր ա

քանիս համար ծայրերնէն փոքրիկ կապարներ կապած երկայն արասաններ վար կախեցին, ձողամուրճը աս արասանին վրայ իրենց աղէրսագիրները անցուցին, որոնք իսկոյն վեր քաշուեցան ճիշդ գագաթան աշակերտաց՝ դէպ ի իրենց թռուցիկը(1) արասանին վրայէն խրկած թղթի կտորուանքին նման։ Նորէն ճախարակներու միջոցաւ վարէն վեր գինի և ուտելիք կ'առնէին։

Մաթեմաթիկականութեան մէջ ունեցած տեղեկութիւնս իրենց լեզուին ոճերը սորվելու ժամանակս շատ օգնեցին ինձ, որոնք աս գիտութենէն և երաժշտութենէ խիստ կախեալ էին, և աս վերջի գիտութեան մէջ իսկ անհմուտ չէի։ Իրենց ամէն գաղափարները գիծերով և պատկերներով կը բացատրէին։ Օրինակի աղագաւ. թէ որ ուզէին կընոջ կամ ուրիշ որ և իցէ անասունի մը գեղեցկութիւնը գովել, շեղանկիւններու, զուգահեռականներու, ձուաձեներու և ուրիշ երկրաչափական կամ երաժշտական բառերով կը նկարագրէին զան, զորոնք հոս կրկնելը աւելորդ է։ Արքայական խոհանոցին մէջ ամէն տե-

(1) Պարագ.

տակ մաթեմաթիգական ու երաժշտական գործիքներ տեսայ, որոնց ձեւերուն համեմատ՝ նորին մեծափառութեան սեղանը գրուելիք միսերը կը կտրէին ։

Տանց շէնքը շատ յոռի էր, պատերը ծուռ էին. սենեակներուն մէջ և ոչ մէկ ճիտակ անկիւն կար, և աս պակասութիւնը՝ գործնական երկրաչափութեան դէմ իրենց ունեցած ատելութենէն կը ծագէր, զոր իբր ծառայական և հասարակ արհեստ մը կ՚անարգէին ։

Գործաւորներուն տրուած ուսմունքը անոնց կարողութենէն վեր ըլլալուն՝ միշտ սխալմունք կը պատճառէին ։ Անոնք թէև բաւական յաջողակ էին թղթի կտորի մը վրայ քանոն, մատիտ, և կարկին գործածելու, սակայն՝ կենաց սովորական գործոց և վարուց մէջ՝ ատոնցմէ աւելի ապուշ, խակ, անյաջող, և մաթեմաթիգական ու երաժշտական նիւթերէ զատ՝ ուրիշ ամեն բաներու վրայ աւելի դանդաղ և տարտամ մարդիկ բնաւ տեսած չեմ ։ Ասկէ զատ՝ խիստ ծուռ դատողութիւն կ՚ընէին՝ և հակառակելու միշտ պատրաստ էին՝ մինչև որ ուղիղը չխորհէին, որ դուն ուրեք կը պատահէր ։

Բան մը խորհելու, երեւակայելու, եւ հնարելու բոլորովին անտեղեակ էին, եւ իրենց լեզուին մէջ մնաց աս կարողութիւնները բացատրող բառ մը չունէին՝ իրենց միտքը եւ խորհուրդները վերոյիշեալ երկու գիտութեանց մէջ սահմանուած ըլլալուն համար.

Անոնցմէ շատը եւ գլխաւորաբար աստղագիտութեան պարագաները քաղդէութեան (1) կը հաւատան, թէեւ կ՚ամչնան հրապարակաւ խոստովանելու:

Բայց մէկ բան ինձ աւելի զարմանալի եւ անհասկանալի կ՚երեւէր, երբ կը տեսնէի թէ քաղաքական գործոց եւ նոր լուրերու սաստիկ սէր եւ միտումն ունէին. հասարակաց գործերը անդադար քննելով եւ տէրութեան գործոց վրայ դատողութիւններ ընելով՝ կուսակցութեան մը կարծիքը սաստիկ կրիւք կը պաշտպանէին: Իրաւ՝ աս նոյն միտումը մեր Եւրոպացի մաթեմաթիկոսաց շատին վրայ իսկ տեսեր եմ, սակայն մաթեմաթիկականութեան եւ քաղաքականութեան մէջ եւ ոչ դոյզն ինչ նմանութիւն մը կրցեր եմ գտնել. միայն թէ՝ աս ժողովուրդը այնպէս ենթադրէ՝ թէ որովհետեւ ամե-

(1) Միւնէճճիմլիք.

նափոքրիկ բոլորակ մը ամենամեծ բոլորա-
կի մը չափ աստիճաններ ունի , ուստի՝
աշխարհիս կառավարութիւնը և կարգա-
դրութիւնը՝ երկրագնդի մը վրայ խօսե-
լէն և զան ձեռքով դարձընելէն ուրիշ
աւելի կարողութիւն մը չպահանջեր ։
Բայց ես այս յատկութիւնը մարդկային
բնութեան ընդհանուր եղած տկարու-
թեանը կու տամ, և այս տկարութենէն
է որ խիստ հետաքրքիր և ինքնահաւան
ըլլալու հակամիտեալ ենք այնպիսի նիւ-
թերու մէջ, որոնք խիստ քիչ կը վերա-
բերին մեզ, և որոնց համար թէ՛ ուսո-
մամբ և թէ բնութեամբ ամենէն քիչ
յարմարութիւն ունինք ։

Աս ժողովուրդը միշտ անհանգստու-
թեանց մէջ է , վայրկեան մը մտաց ան-
դորրութիւն չվայելեր , և աս անհան-
գստութեանց պատճառները բոլորովին
անհիմն են ։ Անոնց վախերը երկնային
մարմնոց զանազան փոփոխութիւններէն
կը ծագին ։ Օրինակի աղագաւ ․ կը վախ-
նան թէ արեւը շարունակ իրենց երկրին
մօտենալովը՝ ի վերջէ կամ պիտի ընկղմէ
և կամ պիտի կլլէ զան ։ Կը վախնան որ
արեւուն գոլորշիներովը գամ քան զգամ
կեղև մը ձևանալով՝ անոր երեսը պիտի

ծածկուի, և այնուհետև պէտք չլուսաւորէ զաշխարհս ։

Կ՚ըսեն թէ աշխարհս վերջին գիսաւորին պոչին հարուածէն հազիւ ազատելով, որ անպատճառ մոխիր դարձուցած պիտի ըլլար զիրենք, երկրորդ անգամին՝ որ իրենց հաշուին նայելով՝ երեսուն և մէկ տարիէն վերջը պիտի երևար, կը վախնային որ զիրենք բնաջինջ չընէ ։ Ինչու որ գիսաւորը՝ իր արևամերձ կէտին մէջ՝ արևուն այն ինչ աստիճանը հասած ատեն, (որմէ՝ իրենց հաշուին համեմատ՝ իրօք տոկալու իրաւունք ունէին), հրաշէկ երկաթէ մը տասն հազար անգամ աւելի սաստիկ ջերմութիւն պիտի առնար, և արևէն հեռանալու ատեն՝ մէկ միլեօն և տասն ու չորս մղոն երկայնութեամբ բոցաճաճանչ պոչ մը պիտի ծաւալէր ետևէն, որուն մէջէն երկիրը թէև գիսաւորին մարմնէն հարիւր հազար մղոն հեռուէն անցնելու ըլլար, անտարակոյս պիտի բռնկէր, և մոխիր դառնար ։ Կը վախնան թէ արևը որ իր ճառագայթները անդադար կը սպառէ առանց սնունդ առնալու, ի վերջէ բոլորովին պիտի սպառի և ոչնչանայ · հետևաբար՝ պիտի կործանին աս երկի-

րքը, և ան ամէն մօլորակները, որոնք ճառագայթնին անկէ կ՚ընդունին *։

Ասոնք շարունակ աս և ասոնց նման ապագայ վտանգներուն երկիւղովը այնպէս վրդոված են, որ ոչ հանգիստ քուն կը քնանան, և ոչ հաճոյք կամ զբօսանք մը կրնան վայելել։ Առաւօտուն՝ երբ իրարու հանդիպին, նախ և առաջ կը հարցընեն՝ թէ արևին ողջութիւնը ի՞նչպէս է, մայրը մտած և ծագած ատեն ի՞նչ վիճակի մէջ կը գտնուէր, և երևնալու գիսաւորին հարուածէն ազատելու ի՞նչ յոյս կայ։ Եւ աս խօսակցութեան մէջ նոյն յօժարութեամբ կ՚ընկղմին, ինչպէս որ տղայք ոգիներու և պարիկներու (1) ահաւոր պատմութեանցը հաճութեամբ ականջ կը դնեն, և վախերնէն անկողին մտնելու չեն համարձակիր։

Կղզւոյն կիները շատ կրակոտ են, իրենց ամուսինը կը նախատեն, և օտարականները չափազանց կը սիրեն. որոնցմէ միշտ շատ կը գտնուին պալատին մէջ՝

* Աս ամենը իրենց դարերուն երևելի մաթեմաթիկոսաց ենթադրութիւններն են։

(1) Փէրի։

թէ՛ քաղաքային և ընկերական գործոց և թէ իրենց մասնաւոր պիտոյից համար վարի երկրէն եկած ։ Բայց ասոնք հոն շատ կ'անարգուին՝ Լափութացւոց մասնաւոր ձիւքը չունենալնուն համար ։ Կիները ասոնցմէ իրենց սիրահար կ'ընտրեն , բայց ցաւալին ան է որ ասոնք մեծ դիւրութեամբ և ապահովութեամբ իրենց գործը կը տեսնեն ․ որովհետև էրիկնին մտածութեան մէջ միշտ այնպէս խորին ընկղմած են , որ անկինը իր սիրողին հետ անոր առջին վերջին աստիճան կ'ընտանենայ , բաւական է որ էրիկը թուղթ և գրիչ ունենայ առջին , և փամփշտահարը քովը չըլլայ ։

Կանայք և աղջիկունք շատ կը ցուին որ կղզիէն դուրս չեն կրնար ելնել , թէև ըստ իմ կարծեացս ան կղզին աշխարհիս ամենէն պատուական տեղն է , և անոնք հոն մեծ փառաւորութեամբ և առատութեամբ կ'ապրին ։ Սա կղզւոյն մէջ ուզածնին ընելու թոյլտուութիւն ունին , այսու ամենայնիւ՝ աշխարհ տեսնելու և մայրաքաղաքին զբօսանքը վայելելու համար չափէ դուրս բաղձանք ունին ․ քանզի առանց թագաւորական մասնաւոր հըրամանին՝ մայրաքաղաքը երթալը իրենց

արգիլեալ է, և աս հրամանը ձեռք ձըգելը գլուխին բան չէ · որովհետև երևելի անձինք շատ փորձառութեամբ տեսեր են՝ թէ որչափ դժուար բան էր կիներնին համոզել որ Լափութա վերադառնան։

Անգամ մը պատմեցին թէ պալատական տիկին մը, որ քանի մը զաւակի տէր էր, — և որուն էրիկը առաջին պաշտօնատար, տէրութեան մէջ ամենահարուստ, կնոջ վրայ չափազանց սէր ունեցող, խիստ գեղեցկադէմ, և կղզւոյն ամենապատուական պալատին մէջ բնակողանձ մ'էր, — իր առողջութիւնը պատրուակ բռնելով, Լակադօ կ'երթայ, և հոն ամիսներով ծածուկ կը մնայ, մինչև որ թագաւորէն հրաման կ'երթայ որ փընտռուի։ Խուարչտին պանդոկի մը մէջ ցնցոտի զգեստներով կը գտնեն զան, վասն զի զգեստները գրաւ դրած էր՝ ծեր ու տգեղ սպասաւոր մը քովը պահելու համար, որ ամէն օր զինքը կը ծեծէր, և որուն քովէն զինքը բռնի կ'առնեն կը տանին։ Ու թէպէտ էրիկը ամենայն մարդասիրութեամբ կ'ընդունի և ամենևին չյանդիմաներ զան, բայց շատ չանցնիր՝ կինը նորէն կը փախչի, և կ'եր-

թող իր նոյն սիրահարին քովը՝ իր ամէն գոհարեղէն զարդերը իր հետը տանելով․ և ան ատենէ ի վեր անոր ինչ ըլլալը չէ լսուեր ։

Այս պատմութիւնը գուցէ ընթերցողիս աւելի Եւրոպական կամ Անգղիական, քանթէ այսպիսի հեռաւոր երկրի պատմութիւն մը երևի ։ Բայց կ՚աղաչեմ՝ թող յիշէ ընթերցողս թէ՝ կանանց ազգին կամքն ու հաճոյքը մէկ կլիմայի և մէկ ազգի համար սահմանուած չեն, հապա մեր երևակայածէն խիստ շատ աւելի մի և նոյն բանն են ամէն տեղ․

Գրեթէ ամառուան մը միջոցին՝ իրենց լեզուին մէջ բաւական յառաջադիմութիւն ըրեր էի, և Թագաւորին ներկայացած ատենս՝ անոր հարցմանց մեծ մասին կրնայի պատասխանել ։ Նոյն վեհափառութիւնը՝ իմ գացած երկիրներուս օրինաց, կառավարութեան, պատմութեան, կրօնքին, և սովորութեանց վրայօք հարց ու փորձ ընելու ամենևին հետաքրքրութիւն չունեցաւ, այլ մաթեմաթիքական գիտութեանց վիճակին վրայ տեղեկութիւն առնալը բաւական սեպելով, իր խօսակցութիւնը անոր սահմանէն դուրս չհանեց, և իմ պատաս-

խաններս մեծ անարգանօք և անտարբերութեամբ ընդունեց, թէ և երկու կողմը կանգնող փամփշտահարները շատ անգամ զինքը կ'արթնցընէին ։



## ԳԼՈՒԽ Գ.

*Արդի փիլիսոփայից և աստղագիտաց բացատրած մէկ օ-դերևոյթը։ Աստղագիտութեան մէջ Լափլասի Թոգըոց ըրած մեծ յառաջադիմութիւնները։ Աշխատասիրութիւնը պահելու համար Թագաւորին բռնած ճամբան։*

ԿՂԶԻՈՅՆ հետաքրքրական բաները տեսնելու համար Թագաւորէն հրաման ուզեցի, և ան վեհանձնաբար խնդիրքս շնորհեց, ու հրամայեց ու ուսուցչիս որ հետս ընկերանայ։ Յատկապէս կ'ուզէի գիտնալ որ կղզւոյն թէ բնական և թէ արուեստական զանազան շարժումը ո՞ր պատճառէ յառաջ կուգար, որուն վրայօք փիլիսոփայական պատմութիւն մը պիտի ընեմ հիմա ընթերցողիս։

Թռչող կղզին բոլորովին կլոր է, իր տրամագիծն է 7837 կանգուն կամ գրեթէ չորս ու կէս մղոն, ու հետևաբար տասը հազար արտավար (1) կը պարունակէ. և հաստութիւնը երեք հարիւր կանգուն է։ Յատակը կամ վարի մակերեւոյթը, որ վարէն նայողներուն կ'երևի,

(1) Տէօնիւմ.

գրեթէ երկու հարիւր կանգուն թանձրութեամբ հարթ աղամանդեայ տախտակ մ'է ։ Անոր վրայ զանազան մետաղներ հաստատեալ կան իրենց սովորական կարգաւը , և աս ամենուն վրայ տասը կամ տասներկու ոտք խորութեամբ պարարտ հողի շերտ մը ծածկուած է ։

Վերին մակերևոյթը բնականաբար շըրջապատէն դէպ ի կեդրոնը հակած է , որպէս զի կղզւոյն վրայ իջած անձրևներն և ցօղերը մանր փոսերու միջոցաւ դէպ ի կեդրոնը վազին , և չորս մեծ աւազաններու մէջ ժողուին , որոնց ամեն մէկը գրեթէ կէս միլոն շրջան ունի , և կեդրոնէն երկու հարիւր կանգուն հեռի են ։ Աս աւազաններուն ջուրը ցորեկները արեէն շարունակ գոլորշի դառնալով՝ չի կրնար յորդիլ ։ Ասկէ զատ՝ որովհետև ինքնակալին ձեռքն է կղզին մինչև ամպերուն ու շոգիներուն սահմաններէն վեր բարձրացընելը , ուստի կրնայ ուզած ատենը ցօղին ու անձրևին վազելը արգիլել ։ Քանզի ամեն բնագէտք համաձայն կը հաստատեն թէ ամպերը երկու միլոնէն աւելի չեն կրնար բարձրանալ , գէթ ասկէ աւելի բարձրանալը ան երկրին մէջ երբէք չեն տեսեր ։

Կղզւոյն կենդրոնին վրայ ծակ մը կայ գրեթէ յիսուն կանգուն տրամագծիւ, ուրկէ աստղագէտները վար կ'իջնան այն գմբէթաւոր փոսին մէջ, որուն ֆլանտօնա կանյօլ, կամ այր աստղագիտաց անունք կու տան, որ ադամանդին վերի մակերեւութէն հարիւր կանգուն խորութիւն ունի ։ Այս այրին մէջ քսան կանթեղ անդադար վառուած են, որոնք ադամանդին ցոլումէն սաստիկ լոյս մը կը տարածեն ամեն կողմ ։ Այս այրին մէջ կըցուն է նաեւ շատ տեսակ վեցորդներ (1), քառորդներ, աստղագէտներ, հեռադէտներ, և ուրիշ աստղագիտական գործիներ, բայց ամենէն հիանալի բանը, որմէ կղզւոյն Ճակատագիրն իսկ կախեալ է, այն ահագին մեծութեամբ մագնէտն է, որ ձեւով ոստայնանկի կըկոցին կը նմանի ․ երկայնութիւնը վեցը կանգուն է, և ամենէն հաստ մասը առնուազն երեք կանգունէն աւելի է ։ Այս մագնէտը իր կեդրոնէն անցած խիստ դիմացկուն ադամանդեայ առանցքին վըրայ կը շարժի, և այնպէս ճշդութեամբ հաւասարակշռած է վրան, որ ամենա-

(1) Անգղ. Սէքսթէնթ ․ որ է բոլորակի մը վեցերորդ մասը ։

տկար ձեռք մը կրնայ դարձընել զան։ Նոր բոլորակը գոգաւոր շրջանակ մը կայ չորս ոտք խորութեամբ, նոյնչափ հաստութեամբ և տասներկու կանգուն տրամագծիւ, որ մէջը կանգուն բարձրութեամբ ութը աղամանդեայ պատուանդանից վրայ հորիզոնական դիրքով հաստատուած է։ Շրջանակին գոգաւոր կողմին մէջ տեղերը տասներկու բթաչափ խորութեամբ ագոյց մը կայ, որուն մէջ անցուցած են առանցքին ծայրերը, որով պէտք եղած ատեն կրնան դարձընել զան։

Որ և իցէ մարդ չկրնար աս մագնէտը տեղէն շարժել. քանզի անոր շրջանակը, պատուանդանները, և կզզւոյն յատակը կազմող աղամանդը միապաղաղ (1) էր։ Աս մագնէտին միջոցաւ կզզին կը բարձրանայ, կը ցածնայ, ու տեղէ տեղ կը տարուի. վասնզի աս ինքնակալին տիրած երկիրներուն մէջ մագնէտը մէկ կողմին վրայ ձգիչ ու միւսին վրայ վանիչ զօրութիւն ունի։ Ուստի՝ երբ մագնէտը կանգուն և իր ձգիչ ծայրը դէպ ի երկիրը ուղղած դրուի, կզզին վար կ'իջնայ, բայց

(1) Եկփարչէ.

երբ վանիչ ծայրը դէպ ի վար նայի , կղզին շիտակ վեր կ՚ելնէ ․ երբ կողմնակի դրուի , կղզւոյն շարժումն ևս կողմնակի կ՚ըլլայ , որովհետև մագնէտը միշտ իրեն հաւասար ուղղութեանը վրայ կ՚ազդէ ․

Այս կողմնակի շարժմամբ կղզին ինքնակալին իշխանութեան զանազան կողմերը կը տարուի ։ Իր շարժմանը վրայ գաղափար մը տալու համար , դիցուք թէ Ա․ Բ գիծերը Պալնիպարպի երկրին մէջ տեղէն քաշուած գիծը ներկայացընեն , և Գ Դ գիծը՝ մագնէտը ։ Գը ձգիչ և Դն վանիչ ծայրերը ըլլան՝ կղզին Գին վըրայ բռնելով ։ Երբ մագնէտը Գ Դ դիրքով և վանիչ ծայրը դէպ ի վար դրուի , անատեն կղզին կողմնակի դէպ ի Դ կ՚ելնէ ։ Երբ Դ հասնի , և հոն թէ որ մագնէտը իր առանցքին վրայ այնպէս դարձուի , որ իր ձգիչ ծայրը դէպ ի Ե ուղղի , կղզին կողմնակի դէպ ի Ե կ՚երթայ ․ երբ մագնէտը նորէն իր առանցքին վրայ դարձուի՝ մինչև որ Ե Զ դիրքով և վանիչ ծայրը դէպ ի վար գայ , կղզին կողմնակի դէպ ի Զ կ՚ելնէ ։ Այս կէտին վրայ՝ ձգիչ ծայրը դէպ ի Ա որ դարձուի , կղզին դէպ ի Ա կ՚երթայ , և Ա գիծէն Բ գիծը , երբ մագնէտին վանիչ ծայրը ուղղակի վար նայի ․

Սակայն և այս գիտելու է՝ թէ աս կղզին ոչ վարի երկրին տարածութենէն անդին կրնայ շարժիլ, և ոչ չորս մղոնէն աւելի բարձրանալ։ Ասոր վրայօք՝ աստղագէտները (որոնք շատ գրքեր գրած են աս մագնէտ քարին վրայ) հետևեալ պատճառութիւնը կ'ընեն. Մագնիսական զօրութիւնը, կ'ըսեն, չորս մղոնէն հեռի չտարածիր, և երկրին արգանդէն ու ծովեզերքէն վեցը փարսախ հեռու ծովուն մէջէն մագնէտին վրայ ազդող մետաղը երկրագունդին ամէն կողմը տարածուած չէ, այլ միայն թագաւորին սահմաններուն մէջ կը գտնուի. և այսպիսի բարձրագոյն դրութեամբ շատ դիւրին բան էր թագաւորի մը համար աս մագնէտին ազդեցութեան ներքևը գտնուող ո՛ր և իցէ քաղաքը իր իշխանութեան տակը ձգելու։

Երբ մագնէտը հորիզոնական մակերեւոյթին հաւասար դրուի, կղզին անշարժ կը մնայ, ինչու որ աս դրութեան մէջ անոր երկու ծայրերը երկրէն հաւասար հեռի ըլլալուն՝ հաւասար ներգործութիւն կ'ունենան՝ մէկ ծայրին դէպ ի վար, և միւսին դէպ ի վեր քաշելովը, որով ի հարկէ շարժում մը չծագիր։

Այս մագնէտը քանի մը աստղագիտաց խնամոցը յանձնուած է, որոնք Թագաւորին հրամանին համեմատ կերպ կերպ դրութեան մէջ կը դնեն զան։ Ասոնք իրենց կենաց մեծ մասը երկնային մարմինները դիտելով կ'անցընեն այնպիսի հեռադէտներով, որոնք մերիններէն շատ գերազանց են։ Թէև իրենց մեծամեծ հեռադէտները երեք ոտքէ աւելի մեծ չեն, բայց ամեն բան՝ մեր հարիւր ոտք մեծութեամբ հեռադէտներուն ցուցըցածներէն շատ աւելի խոշոր և աստղերը աւելի պայծառ կը ցուցընեն։ Ասա աս գերազանցութեամբ կրցեր են մեր Եւրոպիոյ աստղագէտներէն աւելի իրենց գիւտերը ընդարձակել․ ըստ որում տասը հազար հաստատուն աստեղաց ցանկ մը ունին, ինչատեն մեր գտածները աս թուոյն մէկ-երրորդ մասին չեն հասնիր։

Նմանապէս երկու ստորնագոյն աստղեր կամ արբանեակներ գտած են, որոնք Արեսին բոլորտիքը կը դառնան, և ասոնց ամենէն մօտը Արեսի տրամագծին ճիշդ երեք անգամ հեռաւորութեամբը մոլորակին կեդրոնէն հեռի է, և ամենէն հեռին՝ հինգ անգամ։ Առաջինը տասը ժամուան մէջ իր շրջանը կը

կատարէ․ և երկրորդը՝ քան և մէկ ու-
կես ժամու մէջ։

Իննսուն և երեք տարբեր գիսաւորներ գտած, և մեծ ճշդութեամբ անոնց եղանակները կարգի գրած են։ Թէ որ աս բանս ճշմարիտ է (զոր մեծ վստահութեամբ կը հաստատեն,) երանի թէ իրենց դիտողութիւնները հրատարակուէին, որով գիսաւորաց տեսական գիտութիւնը, որ աս օրուան օրս շատ կաղ և պակասաւոր է, աստղագիտութեան միւս մասանցը պէս կատարելութեան հասնէր։

Թագաւորը աշխարհիս ամենաբացարձակ իշխանը կ'ըլլար, թէ որ կարենար իր պաշտօնատարները համոզել որ իրեն միաբանին․ բայց աս պաշտօնատարաց կալուածքը վարի երկիրին մէջ ըլլալուն, և սիրելի պաշտօնատարի մը պաշտօնը շատ անհաստատ բան մը ըլլալը մտածելով, իրենց հայրենիքը գերութեան տակ ձգելու երբեք հաճութիւն չէին տար։

Թէ որ քաղաք մը ապստամբէր, կամ խռովութիւն հանէր, և կամ սովորական տուրքը վճարել չուզէր, Թագաւորը զանոնք հնազանդեցնելու համար երկու

միջոց ունէր ։ Առաջինը միանգամայն և ամենաչափաւորը ան է որ կղզին ան ապատամբ երկրին և անոր շրջակայ տեղեաց վրայ այնպէս կը կեցընէ, որով զանոնք արեւուն և անձրեւին բարիքէն կը զրկէ, և հետեւաբար սովով ու հիւանդութեամբք կը նեղէ բնակիչները ։ Թէ որ յանցանքնին ծանր է՝ աս պատիժէն զատ մեծ քարերով կը քարկոծէ զանոնք, որոնք աս պատիժներէն ազատելու համար իրենց շտեմարաններուն և այրերուն մէջ կը մտնեն, ինչատեն իրենց աներուն յարկերը ջարդուբուրդ կ՚ըլլան ։ Բայց թէ որ տակաւին իրենց յամառութեան մէջ մնան, կամ ապստամբութիւն սպառնան, Թագաւորը անատեն իր վերջին միջոցը ձեռք կ՚առնէ, և կը թողու որ կղզին շիտակ անոնց գլխուն վրայ իջնայ ․ որով թէ՛ բնակարաններուն և թէ մարդոց ընդհանուր կործանում մը կը պատճառէ ։ Ի վերայ այսր ամենայնի՝ շատ քիչ անգամ կը պատահի որ Թագաւորը իր բարկութիւնը մինչև աս աստիճանը հասցընէ՝ թէև ակամայ ։ Իր պաշտօնատարները անգամ չեն համարձակին խրատել զան որ այսպիսի գործ մը ընէ ․ քանզի աս բանս զիրենք ժողո-

վրդեան աւելի ընելէն զատ՝ իրենց վարի երկրին մէջ ունեցած ստացուածոցը մեծ վնաս պիտի հասցընէր ։

Բայց յիրաւի ասկէ աւելի բանաւոր պատճառ մը կայ, որուն համար աս երկրին թագաւորները այսպիսի սոսկալի պատիժ մը ի գործ դնելէ միշտ զգուշացեր են, մինչև որ անհրաժեշտ հարկաւորութիւն մը զիրենք չէ ստիպեր ։ Ինչու որ եթէ ան կործանելու քաղաքին մէջ բարձր ժայռեր (որոնք աս հասարակ մեծամեծ քաղաքաց մէջ կը գտնուին, և գուցէ այսպիսի աղէտքէ մը ազատելու համար առջի ժամանակները դիտմամբ քաղաքները աս ժայռերուն քով շինած են) կամ բարձր զանգակատուններ, և կամ քարեղէն սիւներ գտնուէին, կղզւոյն յանկարծակի անկումը կրնար վտանգի մէջ ձգել իր յատակը կամ տակի մակերևոյթը, որն որ ինչպէս յիշեր եմ՝ թէպէտև երկու հարիւր կանգուն հաստութեամբ միապաղաղ ադամանդէ կը բաղկանայ, բայց սաստիկ բաղխմանէն կարելի է որ ճայթի, կամ վարի տուներուն կրակներուն խիստ շատ մօտենալովը ճեղքի, ինչպէս որ մեր քարեղէն և երկաթեղէն ծխահաններուն կ՚ըլլայ ։ Բնա-

կիչք աս ամէն բռածխս աղէկ վերահասու են, և իրենց ազատութեան և ստացուածոց համար մինչև որ աստիճան յամառիլն իսկ գիտեն։ Երբ թագաւորին բարկութիւնը յետին ծայրը հանելով քաղաքը աւերակ դարձընել ուզէ, կղզին խիստ շատ կամաց իջեցընել կու տայ, իբր իր ժողովրդեան վրայ գութ ունենալուն համար․ բայց Ճշմարիտը՝ անոր այսպէս ընելը իր վախէն է, որ չըլլայ թէ ադամանդեայ յատակը Ճայթի․ քանզի իրենց փիլիսոփայից կարծեացը համեմատ մագնէտը այնուհետև չկրնալով կղզին վերցընել՝ ամէնը մէկ տեղ վար կը գըլորին։

Աս տէրութեան հիմնական մէկ օրէնքով արգիլեալ է որ աս կղզիէն դուրս չեն կրնար ելնել ո՛չ թագաւորը, ո՛չ անոր երկու անդրանիկ զաւակները, նմանապէս և ոչ թագուհին, մինչև որ իր ծննդաբերութեան ժամանակը անցած չըլլայ։



# ԳԼՈՒԽ Դ.

*Հեղինակը Լափութայէն կը մեկնի, Պալնիպարպի կը տարուի. և մայրաքաղաքը կը հասնի։ Մայրաքաղաքին և շրջակայ տեղեաց նկարագրութիւնը։ Հեղինակը մեծ Լորտէ մը մարդասիրաբար կ'ընդունուի։ Անոր հետ ըրած խօսակցութիւնները։*

Թէեւ աս կղզւոյն մէջ յոռի ընդունելութիւն չգտայ, սակայն ճշմարիտը ըսեմ՝ գրեթէ զիս երբեք ձգած էին, և քիչ մը նախատինք կը ցուցընէին ինծի։ Կ'երևար որ թէ թագաւորին և թէ ժողովրդին հետաքրքրութիւնը միայն մաթեմաթիգական և երաժշտական գիտութեանց մէջ էր. որոնց վրայօք անոնց չափ տեղեկութիւն չունենալուս համար վրաս մեծ համարում չունեցան։

Ըսկէ զատ կղզւոյն ամէն հետաքրքրական բաները տեսնելէս ետև՝ շատ կ'ուզէի անկէ դուրս ելնել, ըստ որում աս ժողովրդէն իսկ բոլորովին ձանձրացեր էի։ Թէև աս երկու գիտութեանց մէջ խիստ գերազանց կը հանդիսանան, զորոնք և ես շատ կը յարգեմ, և անոնց վրայօք

քիչ մը տեղեկութիւն ունիմ, սակայն այնպէս վերացեալ և մտածութեան մէջ ընկղմած են, որ այսպիսի անհամ մարդիկ երբէք տեսած չեմ։ Երկու ամիս հոն կեցայ, և այնչափ միջոցին՝ միայն կանանց, մանրավաճառաց, փամփշտահարաց, և մանկլաւիկներուն հետ խօսակցեցայ. ասոր համար՝ հասարակաց վրաս ունեցած արհամարհանքը աւելցաւ. սակայն միայն աս տեսակ մարդոցմէ կրնայի իրաւացի պատասխան մը առնել միշտ։

Ասոնք ուսմամբ իրենց լեզուին մէջ բաւական տեղեկութիւն ստացեր էի, բայց այնպիսի կղզի մէջ գոցուած մնալովս, և բնակիչներէն այնչափ քիչ յարգ գտնելուս համար ձանձրացած ըլլալով, միտքս դրի որ առջի պատեհութիւնով անկէ դուրս ելնեմ։

Պալատին մէջ երևելի լորտ մը կար, որ միայն թագաւորին մօտ ազգականը ըլլալուն համար յարգ գտած էր. բայց ընդհանրապէս ամենատգէտ և ամենայիմար անձ մը սեպուած էր պալատին մէջ։ Աս անձը շատ երևելի ծառայութիւններ ըրած էր տէրութեան, բնական և ստացական յատկութիւններ ունէր, և իր

համեստութիւնն ու ազնուամտութիւնը խիստ երևելի էին ։ Բայց երաժշտական ունակութիւնը այնչափ ակար էր , որ գլուխը բամբասողները կը հաստատէին թէ ան շատ անգամ եղանակին դաշնը սխալ կը զարնէ , և իր մաթեմաթիքական վարժապետները չէն կրցեր առանց չափազանց դժուարութեան ամենադիւրին խնդիր մը լուծելու սորվեցընել անոր ։ Այս լորդը մարդասիրութեան շատ նշաններ ցուցուց ինծի ։ շատ անգամ պատիւ ընելով այցելութեան կու գար , և կը խնդրէր որ Եւրոպիոյ գործոց , և համբորդութիւն ըրած երկիրներուս օրինաց, սովորութեանց , վարուց , և գիտութեանց վրայօք տեղեկութիւն տամ իրեն ։ Մեծ ուշադրութեամբ ականջ կը դնէր ինծի , և ամէն բանին վրայ շատ խելացի դիտողութիւններ կ՚ընէր ։ Երկու փամփուշտահար ունէր շքոյ համար , բայց միայն պալատը , և արարողական այցելութիւններ ըրած ատենը կը գործածէր զանոնք ։ իսկ մեք երկուքս առանձին եղած ժամանակնիս կը հրամայէր անոնց որ հեռանան ։

Ես անոր անձին աղաչեցի որ նորին վեհափառութեան բարեխօսութիւն ը-

նելով, կղզիէն մեկնելուս հրաման առնէ. ու խնդիրքս ցուալի սրտիւ կատարեց, և թէպէտ շատ շահաւէտ խոստմունք բրաւ ինձ, բայց ես մեծապէս շնորհակալ ըլլալով չընդունեցի զանոնք։

Փետրուար 16ին՝ նորին վեհափառութեան և արքունականաց հրաժարական ողջոյնս տալով մեկնեցայ։ Թագաւորը գրեթէ երկու հարիւր Անգղիական լիրայի արժողութեամբ ընծայ մը բրաւ ինձ․ նոյն արժողութեամբ ընծայ մը ես իր ազգականը միանգամայն և իմ պաշտպանս բրաւ, ասկէ զատ յանձնարարական նամակ մը տուաւ իր բարեկամաց մէկուն վրայ, որ Լակատօ մայրաքաղաքը կը բընակէր. Կղզին ան միջոցին գրեթէ երկու մղոն բարձրութեամբ լերան մը վրայ գտնուելով՝ առորնագոյն ձեմելիքէն վեր քաշածնուն պէս զիս վար իջեցուցին։

Թաչող կղզւոյն ինքնակալին իշխանութեան տակը եղող ցամաք երկիրը ընդհանուր անուամբ Պաշիկպարան կ՚ըսուի, և մայրաքաղաքը, ինչպէս և առաջուց ըսեր եմ, Լակատօ կը կոչուի։ Երբ հաստատուն երկրի վրայ իջայ, քիչ մը հաճութիւն զգացի, և առանց շփոթելու սկսայ դէպ ի քաղաքը քալել, որովհետև

քաղաքացւոց պէս հագուած էի, և լեզուներն բաւական գիտէի: Յանձնարարական թուղթը տալու մարդուն տունը իսկոյն գացի, և կղզին բնակող իր ազնուական բարեկամին նամակը ներկայացընելով, մեծ սիրով ընդունուեցայ: Աս անուանի Լորդը, որուն անունը Մունոտի էր, իր տանը մէջ սենեակ մը պատրաստել տուաւ, ուր մինչև ան քաղաքէն մեկնիլս մնացի և չափազանց մարդասիրութիւն գտայ:

Հոն հասածիս հետևեալ առտուն՝ աս Լորդը զիս իր կառքը առաւ, որպէսզի քաղաքը տեսնեմ, որ գրեթէ Լոնտոնի կէսին չափ մեծ է, բայց տանց ձևը շատ այլանդակ, և ըստ մեծի մասին նորոգուելու տեղերնին չէր մնացեր: Ժողովուրդը փողոցաց մէջ արտորալով կը քալէին՝ աչքերնին անկած, դէմքերնին վայրենի, և աս հասարակ զգեստնին պատռտած: Քաղաքին դրանց մէկուն մէջէն անցանք, և գրեթէ երեք մղոն հեռաւորութեամբ դէպ ի գիւղը գացինք. հոն բազմաթիւ մշակներ տեսայ, որոնք զանազան գործիներով երկիրը կը հերկէին, բայց չէի կրնար իմանալ թէ բրած-

նին ինչ էր, որովհետեւ խոտ կամ ցորեն աճելու ակնկալութիւն մը չտեսայ հոն, թէպէտեւ հողոյն պատուականութիւնը կ'երեւար ։ Թէ՛ քաղաքին և թէ գիւղին մէջ տեսած սա տարօրինակ բաներուս վրայ զարմանքս չկրնալով զսպել, աղաչեցի լորդին որ բարեհաճի ինծի մեկնել թէ՝ փողոցաց և դաշտաց մէջ այսչափ գլխոց և ձեռաց աշխատիլը ինչ կը նշանակէ, որովհետեւ անոնց մէկ արդիւնքը չեմ տեսներ · այլ ընդ հակառակը՝ այնպէս յոռի մշակուած երկիր մը, այնպէս տձև շինուած և աւերակ դարձած տներ, ու զգեստնին և դէմքերնին այնպէս թշուառ և կարօտ վիճակ մը յայտնող ժողովուրդ մը չեմ տեսեր երբէք ։

Մունոտի առաջին աստիճանի անձ մը ըլլալուն՝ տարիներով Լակատոյի կառավարիչ եղած էր, բայց պաշտօնատարաց դաւաճանութեամբը իբր անբաւական սա պաշտօնէն ինկած էր ։ Սակայն թագաւորը սիրով կը վարուէր անոր հետ՝ իբր բարեմիտ, բայց նուաստ և անպիտան խելքի տէր անձի մը տեղ դնելով զան ։

Երբ իր երկրին և բնակչացը վրայ սա համարձակ դիտողութիւնը ըրի, ուրիշ

պատասխան չտալով՝ միայն ըսաւ․ “Բաւական ժամանակ մեր մէջը կեցած չես որ կարենաս դատողութիւն մը ընել․ աշխարհիս զանազան ազգերը զանազան սովորութիւններ ունին”․ և ասանց նման ուրիշ շատ փաստեր մէջ բերաւ։ Բայց երբ իր պալատը վերադարձանք, հարցուց թէ ի՞նչպէս է իր պալատին շէնքը, և ի՞նչ անտեղութիւն կը տեսնեմ․ իր ծառայից տեսքին և զգեստուցը վրայ խօսելիք մը ունի՞մ։ Ես հարցմունքը կըրնար ապահովութեամբ ընել, որովհետև տանը մէջ ամեն բան չքնաղ, մաքուր և կանոնաւոր էր։ Ուստի՝ պատասխանեցի անոր թէ իր խոհեմութեամբը, մեծութեամբը, և հարստութեամբը ուրիշներուն յիմարութեան և մուրացկանութեան պատճառը ունեցած ամեն պակասութիւններէն ազատ մնացեր էր։ “Թէ որ, ըսաւ, հետս գիւղի տունս գաս, որ ասկէ գրեթէ քսան մղոն հեռի է, և իմ՝ ամեն կալուածքս նոյն գիւղին մէջ կը գտնուի․ հոն այսպէս խօսքեր ընելու աւելի պարապ ժամանակ կ՚ունենանք։ — Ես, ըսի, բոլորովին ձեր վսեմութեան հրամանին տակն եմ”։ Ուստի հետևեալ առտու ճամբայ ելանք։

Ճամբան՝ երկրագործաց իրենց երկիրը հերկելու զանազան տեսակները ցուցուց , որոնք բոլորովին անհասկանալի էին ինծի · քանզի քանի մը տեղերէ զատ ցորենի հասկ մը , կամ խոտի ծիղ մը անգամ չէի տեսներ ։ Բայց երբ ժամ ճամբայ ընելէն ետեւ՝ տեսարանը բոլորովին փոխուեցաւ , և ամենաչքնաղ գիւղ մը հասանք , ուր երկրագործաց տները իրարմէ քիչ հեռաւորութեամբ , և աղուոր շէնքով շինուած էին · դաշտերուն բոլորտիքը ցանկապատած էր , որոնց մէջ այգիներ , վարուցաններ , և մարգագետիններ կային · չեմ յիշեր թէ ասկէ զուարճալի տեսարան մը երբեք տեսած ըլլամ ։ Նորին վեհափառութիւնը երեսիս վրայ խնդում մը տեսնելով , հառաչանքով մը ըսաւ · « Ահա ասկէ կը սկսի իմ կալուածքս , և մինչև տունս այս տեսարանը կը շարունակուի · բայց հայրենակիցներս վրաս կը ծիծաղին , և զիս կը նախատեն , որպէս թէ գործերս աւելի աղէկ չեմ տնտեսեր , և այսպէս չար օրինակ կ'ըլլամ ամենուն , ու ինծի հետևողները ինծի պէս ծեր , յամառ , և տկար քանի մը անձինք են » ։

Վերջապէս՝ իր տունը հասանք , որ

Ճարտարապետական ամենապատուական ձեւով չկրա՛ւ ի չքնաղ շէնք մ՚էր։ Միջի աղբիւրները, պարտէզները, ճեմելիները, ծառազարդ ճամբաները, և անտառնե-րը՝ ըստ վայելչութեան և ըստ քմաց կարգադրած էին։ Ամեն տեսածներուս արժանաւոր եղած գովեստները յուսի, որոնց նորին վսեմութիւնը ամենեւին ա-կանջ չկախեց մինչեւ ճաշէն ելնելիս։ Նորքը՝ երբ երկուքնիս զատ ուրիշ մարդ չկար, տխուր դէմքով մը ըսաւ. «Զեմ գիտեր թէ արդեօք քաղաքի և գիւղի տներս փոխընե՞մ, և ներկայ ձեւոյն հա-մեմատ շինել տա՞մ, ծառատունկերս ա-րե՞մ, և անոնց տեղ՝ նոր սովորութեան համեմատ ուրիշ տնկել տա՞մ. և հրա-ման տա՞մ ամեն վարձակալացս որ նոյն բանը ընեն. եթէ ոչ՝ իբր հպարտ, սա-բոլինակ, յիմար, և խելքին փչածը ը-նող մարդ մը պիտի բամբասուիմ, և գուցէ նորին մեծափառութեան վրաս ունեցած գժգոհութիւնը աւելցընեմ։ Ես քու զարմանքդ կամ պիտի պակսի, և կամ պիտի մեռնայ, երբ քեզ բանի մը մանաւոր գիտելեաց վրայ տեղեկու-թիւն տամ, որ հաւանական է թէ պա-

լսարին մէջ ամենեւին լսած չէս․ ինչու՛ որ ան տեղի մարդիկը չափէ դուրս իրենց մտածութեանց մէջ ընկղմած ըլլալնուն՝ հոս վարը եղածներուն վրայ դիտողութիւն ընելու ատեն չունին”։

Լսածին բովանդակութիւնը աս հետեւեալն է․ “Գրեթէ քառասուն տարի առաջ քանի մը անձինք թէ՛ գործի եւ թէ զբօսանաց համար Լափութա կ'երթան․ ուր հինգ ամիս մնալէն ետեւ՝ մաթեմաթիգական թեթեւ տեղեկութեամբ մը, բայց շատ ցնդական խորհուրդներով գլուխնին լցուած կը դառնան կու գան, եւ կը սկսին հոս գտնուած ամեն բաները չհաւնիլ․ ուստի գաղափարներ կը խորհին որ արհեստները, գիտութիւնները, լեզուները եւ մեքենականութիւնը նոր ձեւի մէջ մտցընեն, եւ աս նպատակաարքունական հրովարտակ մը ձեռք կը ձգեն Լականոյի մէջ հնարագիտաց Ճեմարան մը հաստատելու համար, եւ աս փափաքը այնպէս սաստիկ կը զօրանայ ժողովրդեան վրայ, որ տէրութեան մէջ Ճեմարան չունեցող փոքրիկ գիւղ մը անգամ չգտնուիր։

Աս վարժարաններուն մէջ ուսուցիչները երկրագործական եւ ճարտարապե-

տական նոր ձևեր և կանոններ, և արուեստից ու ձեռակերտութեանց նոր տեսակ գործիներ և անօթներ կը հնարեն, որպէս զի մարդ մը տասը մարդի ընելու գործը ընէ, շաբթու մը մէջ պալատ մը շինուի այնպիսի կարծր նիւթերով, որ առանց նորոգութեան յաւիտեանս դիմանայ. որ և իւր եղանակի մէջ երկրին ամեն պտուղները հասուննայ, և այն հիմակուանէ հարիւր անգամ աւելի խոշորութեամբ, և ուրիշ անհամար զարմանալի գիտաւորութիւններ ունէին։ Սակայն բանը ան է՝ որ մինչև ցայսօր ասոնց մէկն իսկ կատարելութեան չհասնելէն զատ՝ բոլոր երկիրը թշուառութեամբ աւերած, տները կործանած, և ժողովուրդը մերկ և անօթի են։ Ի վերայ այսր ամենայնի՝ փոխանակ վհատելու՝ յիսուն անգամ աւելի սաստկութեամբ իրենց գիտաւորութիւնները գլուխ հանելու հակամիտած են՝ մերթ յուսահատելով և մերթ յուսալով։ Բայց ինքը յանդուգն ոգւոյ տէր մէկը չըլլալուն՝ բաւականացեր է փողեմի ճամբան շարունակել, իր նախնեացը շինած տան մէջ բնակիլ, և առանց փոփոխութիւն ընելու՝ անոնց նման ապրիլ։ Քանի մը

ազնուական անձինք եւս իր աս օրինակին հետեւեր են․ բայց ամէն մարդ անարգանօք և վատ աչքով կը նայէր անոնց վրայ՝ իբրու Թշնամիարուեստից , ագէտ ; և անպիտան քաղաքացի , ու իրենց բուն հանգստութիւնը և դատարկութիւնը՝ իրենց երկրին ընդհանուր յառաջադիմութենէն նախամեծար սեպող ։

« Չեմ՝ ուզեր , յաւելցուց նորին վեսեմութիւնը , աւելի մանրամասն պատմութիւններով զքեզ ձանձրացընել , այլ կը խնդրեմ որ ան երեւելի ճեմարանը տեսնելու երթաս , ու մասնաւորաբար կ՚աղաչեմ որ գացած ժամանակդ գրեթէ երեք մղոն հեռաւորութեամբ լերան մը կուշտին վրայ կառուցած աւերեալ շէնքը դիտես ։ Տունէս կէս մղոն հեռու շատ յարմար ջրաղացք մը ունէի , որ մեծ գետի մը հոսանքովը կը դառնար , և աս ջրաղացքը իմ ընտանիքէս զատ՝ վարձակալացս խիստ շատին իսկ կը բաւէր ։ Գրեթէ եօթը տարի կայ որ հնարագիտաց ընկերութիւն մը եկաւ , և առաջարկեց ինծի որ աս ջրաղացքը փլեմ , այն լերան կուշտին վրայ ուրիշ մը շինեմ , և լերան երկայն գագաթանը վրայ աւազանի մը համար ջրանցք մը բանամ , ուրկէ

խողովակաց և մեքենայից միջոցաւ ջուրը վար իջնալով ջրաղացքը դարձընէ , ըսելով թէ հողմն ու օդը լերան վրայ ջուրը յուզելով , աւելի դիւրագոյն կ'ընէ զան , և ջուրը զառ ի վայր հոսելով՝ գետի մը կէս հոսանքը ջրաղացքը կը դարձընէ · որովհետև գետի մը ընթացքը աւելի հարթ ու հաւասար է ։

« Այն ժամանակները՝ տէրութեան հետ շատ աղէկ չըլլալուս , և բարեկամացս շատերէն ստիպուելով՝ առաջարկութիւնն ընդունեցի , ու երկու տարի շարունակ հարիւր հոգի բանեցընելէն ետև՝ գործը չյաջողեցաւ · առաջարկողները յանցանքը վրաս բեռնաւորելով՝ ձգեցին գացին , ու մինչև հիմա վրաս կը ծիծաղին , և աս ինձ ըրածնուն պէս ուրիշ շատերուն ըրին ։

Քանի մը օրէն՝ քաղաքը եկանք , նորին վսեմութի̃ը ձեմարանին մէջ վատ համբաւ մը ունենալուն համար հետը գալ չուզեց , ուստի՝ իր բարեկամաց մէկին յանձնեց որ ինձ ընկերանալով հոն տանի ։ Աչքս նորութեանց վրայ սքանչացող , խիստ հետաքրքիր , և դիւրահաւան անձի մը տեղ դրեր էր զիս · աս կարծիքը բոլորովին սխալ չէր , քանզի երիտասարդութե̃ս ատեն տեսակ մը հնարագէտ ձևացած էի ։



## ԳԼՈՒԽ Ե.

Հեղինակը հրաման կը ստանայ Լակատոյի երեւելի ճեմարանը տեսնելու : ճեմարանին ընդարձակ նկարագրութիւնը . և անոր վարժապետաց զբաղած արուեստները և գիտութիւնները :

Այս ճեմարանը ամբողջ ու առանձին շէնք մը չէ, այլ փողոցի մը երկու կողմին վրայ շատ մը տուներէ բաղկացեալ է, որոնք անբնակելի ըլլալուն՝ գնոյ առնուելով աս նպատակին համար գործածուեր էին :

Ճեմարանին տեսուչը զիս մարդասիրաբար ընդունելուն համար՝ շատ օր շարունակ հոն գացի : Ամեն մէկ սենեկին մէջ՝ մէկ կամ աւելի հնարագէտներ կային, և կարծեմ թէ մտած ամեն սենեակներս հինգ հարիւրէն պակաս չէին :

Առջի տեսած մարդս փոխտ մէկն էր՝ ձեռքը և երեսը մրոտ, մազերն ու մօրուքը երկայն, զգեստները պատռտած և տեղ տեղ խանձոտած · զգեստները, շապիկը, և մարմնոյն մորթը մի և նոյն

գոյնը ունէին ։ Սա մարդը ութը տարիէ ի վեր հնարք մը կը խորհէր որ վարունգին մէջ պարունակուած արեւին ճառագայթները դուրս հանէ, որպէս զի զանոնք աղէկ խցուած սրուակաց մէջ դնելով, ամառները ցուրտ ու բարեխառն եղած ատեն՝ օդը ասով տաքցընէ ։ “ Տարակոյս չունիմ, ըսաւ աս հնարագէտը, որ ութը տարիէն ետեւ կարող պիտի ըլլամ չափաւոր գնով արեւի ճառագայթներ մատակարարել կառավարչին պարտէզներուն ” ։ Բայց իր դրամագլուխին նուազութեան վրայ գանգատելով, աղաչեց որ բան մը տամ իրեն առ ի քաջալերութիւն հնարագիտութեան, ըսելով թէ ան տարուան վարունգները խիստ սուղ են ։ Անոնց՝ տեսութեան գացողներէն մուրալու սովորութիւննին ըրխս գիտնալով՝ ինծի ըստակ տուած ըլլալուն՝ փոքրիկ պարգեւ մը տուի անոր ։

Ուրիշ սենեակ մը մտայ, բայց անտանելի հոտէ մը գրեթէ խղդուելով, խակոյն անկէ ետ դառնալ ուզեցի · սակայն ընկերս թնդեց զիս որ ներս մտնեմ, եւ ականջիս փսփսալով աղաչեց որ չվշտացընեմ ան հնարագէտը, որ իրեն եղած

անարգանք մը երբէք մտքէն չհաներ֊ ուստի քիթս անգամ խցելու չհամար֊ ձակեցայ ։ Աս անձը ճեմարանին ամենէն վաղեմի հնարագէտն էր՝ երեսն ու մօ֊ րուքը բաց դեղին գունով, զգեստն ու ձեռքը աղտոտութեամբ շաղախած ։ Երբ իրեն ներկայացայ՝ սերտիւ գրկախառն ընդունեց զիս ․ շիտակը՝ աս տեսակ մե֊ ծարանքը չըներ՝ աւելի աղէկ կ՚ըներ ։ Իր ճեմարանը մնած օրէն ի վեր ուրիշ բա֊ նի վրայ չէր պարապեր, այլ միայն մար֊ դու կղկղանքը իր առաջին ուտելի վի֊ ճակին դարձընել՝ անոր զանազան մա֊ սունքը զատելով, լեղիէն ստացած գոյ֊ նը ջնջելով, գարշահոտութիւնը հեռա֊ ցընելով, և լորձական փրփուրը հանե֊ լով ։ Ընկերութեան կողմանէ ամեն շա֊ բաթ գրեթէ Կրիոթըլի տակառի մեծու֊ թեամբ աման մը լեցուն մարդու կղկը֊ ղանք կը տրուէր իրեն ։

Ուրիշ հնարագէտ մը տեսայ, որ կ՚աշ֊ խատէր սառը վառօդի դարձընել ։ Կրա֊ կին տարածականութեանը վրայ իր գրած մէկ ճառը ցուցուց ինծի, զոր հրատա֊ րակելու միտք ունէր ։

Խիստ վարպետ ճարտարապետ մը տե֊ սայ, որ տուն շինելու նոր կերպ մը հը֊

նարեր էր , այսինքն տունը յարկէն սկսիլ ու հիման վրայ լմնցընել , և աս գործութիւնը մեղուին և մամուկին ըրածը մէջ բերելով կը հաստատէր ։

Սենեկի մը մէջ ի ծննդենէ կոյր մը կար , որ ձեռացը տակ իրեն նման շատ աշակերտներ ունէր ։ Անոնց պաշտօնը պատկերահանաց համար գոյներ բաղադրել էր , զորոնք հոտոտելով ու շօշափելով որոշելու կը սորվէին ։ Դժբաղդաբար նայեցայ որ դեռ բաւական յառաջադիմութիւն ըրած չէին իրենց դասին մէջ , և վարժապետնին անգամ կը սխալէր գոյները բաղադրելու ատեն ։ Ընկերութիւնը աս արհեստաւորները շատ կը յարգէր ու կը քաջալերէր ։

Ուրիշ սենեկի մը մէջ մեծ ուրախութեամբ հնարագէտ մը տեսայ , որ խուզերով երկիրը մշակելու գիւտը գտեր էր . որով հերկելու , կենդանեաց և աշխատուն ծախքը պիտի խնայէր ։ Եւ իր գտած գիւտը այս է ։ Արտավար մը հողի մէջ պէտք է իրարմէ վեցը բթաչափ հեռաւորութեամբ և ութը բթաչափ խորութեամբ փայտի կաղիններ (1) , արմատներ , շագանակներ , և այն կենդանեաց ուրիշ խիստ ախորժելի բոյսեր թաղել , ետքը՝ անոնց-

(1) Փալամուտ ։

մէ վեցը հարիւր հատ կամ աւելի արտին մէջ ձգել· ասոնք իրենց կերակուրը գտնելու համար՝ բոլոր գետինը կընճիթօքնին այնչափ պէտք պեղեն, որ քանի մը օրուան մէջ երկիրը ցանուելու յարմար պիտի ընեն, միանգամայն և իրենց աղբովը հողը պիտի պարարտցընեն։ Իրաւ՝ աս գիւղին փոքր եղած ատեն դժբաղդաբար չյաջողեր էր, որովհետև ծախքը և նեղութիւնը շատ մեծ ըլլալէն զատ՝ հունձքը շատ քիչ կամ ամենևին չէր եղեր, այսու ամենայնիւ տարակոյս չունէին որ աս գիւղը կրնայ մեծ յառաջադիմութիւն գտնել։

Ուրիշ սենեակ մը գացի, որուն պատերն ու ձեղունը գլխովին սարդի ոստայններով (1) պատած էր, միայն նեղ ճամբայ մը կար, որ արհեստաւորը անկէ մտնէ ու ելնէ։ Ներս մտնելու ատենս՝ աս մարդը բարձր ձայնով մը պոռաց որ զգուշանամ ու մամուկները անհանգիստ չընեմ։ “Կը ցաւիմ, ըսաւ, որ աշխարհս ցաւալի սխալմամբ այսչափ երկար ատենէ ի վեր շերամ (2) կը գործածէ, մինչդեռ այսչափ անթիւ ընտանի միջատներ

(1) Էօրիւմճէք աղը։ (2) Մետաքսի որդ, իփէք պէօճէյի։

ունինք, որոնք առջինէն չափազանց գե-
րազանց են․ ըստ որում մամուկները ոչ
միայն մանել, այլ հիւսել իսկ գիտեն։
Պէտք է գիտնալ նաև թէ սարդի ոս-
տայնները գործածելով, մետաքս ներկե-
լու ծախքը բոլորովին կը խնայուի”։ Ըս
ըսածին լիովին համոզուեցայ, երբ ամե-
նաչքնաղ գոյներով բազմաթիւ ճանճեր
ցուցուց ինծի, որոնցմով իր մամուկները
կը կերակրէր։ “Սամուկները այս ճան-
ճերը ուտելով, ըսաւ, անոնցմէ գոյն
կ'առնեն, և որովհետև այս ճանճերը
ամեն տեսակ գոյները ունին, կը յուսամ
որ կարող պիտի ըլլամ ամեն մարդուն
ուզած գոյնը չինելու, եթէ այս ճանճերը
մնուցանելու յարմար ուտելիք, այսինքն՝
խէժեր, իւղեր, և ուրիշ մածանող
նիւթեր գտնալու ըլլամ, որով ոստայ-
նին թելերուն դիմացկանութիւն և ոյժ
կրնենամ տալ”։

Սենեկի մը մէջ՝ սատղագէտ մը կար,
որ խորհրդաւոր հողմացոյց գրոշին վրայ
ժամացուցի տախտակ մը կանգնելու
ձեռք զարկեր էր, անոր վրայ երկրին ու
արևին տարեկան և օրական շարժմունքը
աւելցընելով, այնպէս որ հողմին ամեն
դիպուածական շարժուածոց համաձայնի։

Բանի մը վայրկեանէ ի վեր թեթեւ խոստուկ (1) մը զգալուս համար՝ առաջնորդս սենեակ մը տարաւ զիս, ուր երեւելի բժիշկ մը կը բնակէր. և աս ախտը բժշկելու շատ հռչակաւոր էր՝ մի և նոյն գործիքով խոտոր հակառակ գործողութիւներ ընելով։ Աս բժիշկը մեծ փուք (2) մը ունէր, որուն ցռուկը երկայն և բարակ փղոսկրէ շինուած էր, և սրբանին (3) մէջ ուլթը ըթաչափ ներս խօթելով՝ ներսի հողմը կը քաշէր, և կը հաստատէր թէ աս կերպով չոր փամփուշտի մը պէս աղիքը կրնար ցամքեցընել. բայց երբ ցաւը աւելի սաստիկ և տեւական ըլլար՝ փուքը հողմով լեցընելով, ցռուկը հիւանդին սրբանին մէջ կը խօթէր ու կը պարպէր զան. և երբ ցռուկը դուրս քաշէր որ փուքը նորէն հողմով լեցընէ, իր ընթամատը սրբանին ծակին վրայ դընելով ուժգնութեամբ մը կը խցէր զան, և աս գործողութիւնը երեք-չորս անգամ կրկնելով, ներս մնած հողմը ներսի վնասակար հողմին հետ բռնութեամբ դուրս կը հանէր (ինչպէս որ ջրհանի մէջ դրուած ջուրը անոր փողին աղտոտութիւնը դուրս կը հանէ), ուստի և հիւանդը կ'առողջանար։

(1) Սանձը. (2) Քէօրիւկ. (3) Պլուղիւք.

Աս երկու տեսակ գործողութիւնը շատ մը վրայ ըրեր տեսայ · սակայն առջի գործողութիւնը ազդեցութիւն մը չըրաւ ։ Երկրորդ գործողութիւնը բրած ժամանակը՝ կարծես թէ շունը պիտի ճայթէր · ու ասի այնպէս սոսկալի կերպիւ ներսը պարպուեցաւ, որուն գարշահոտութիւնը ընկերիս ու ինծ ազդեց ։ Շունը հոն մեռաւ մնաց, ու մենք ձգեցինք դուրս ելանք, ինչատեն բժիշկը կը պարապէր որ մի և նոյն գործողութեամբ շունը նորէն կենդանացընէ ։

Ուրիշ շատ սենեակներ մտայ, բայց տեսած ամեն հետաքրքրական բաներս պատմելով՝ չեմ ուզեր ընթերցողս ձանձրացընել, որովհետև ամեն բան համառօտի պատմելը ինծ պարտք սեպած եմ ։

Մինչև ցայս վայր տեսածս միայն ճեմարանին մէկ կողմն էր · միւս մասը տեսական (1) գիտութեանց յառաջադիմութեանը պաշտպաններուն սեպհականուած էր · որոնց վրայ քանի մը խօսք պիտի խօսիմ՝ մէկ ուրիշ երևելի անձ մը յիշելէս ետև, որ իրենց մէջ “ընդհանուր արուեստագէտ” կ՚անուանի ։

Այս անձը ըսաւ մեզ երեսուն տարիէ

(1) Իմացական ։

ի վեր մարդկային կեանքը լաւացընելու կը պարապէր։ Երկու մեծ սենեականներ ունէր, որոնք ամեն տեսակ հետաքրքրական բաներով լեցուն էին, և յիսուն անձինք հոն կ'աշխատէին։ Ոմանք կը պարապէին օդը խտացընել, և բորակը անկէ զատելով, ու ջրային և հեղուկ մասերը քամելով՝ չոր ու շօշափելի նիւթ մը ընել։ Ոմանք կ'աշխատէին մարմարինը կակղցընել, որ սնարքի (1) և գնդասեղ խօթելու բարձեր շինեն։ Ուրիշները կ'աշխատէին ողջ ձիու մը սմբակը (2) քարացընելու որ բեւեռելու ատեն՝ բեւեռը ոտքին մէջ չմխի։ Նոյն իսկ արհեստագէտը մի և նոյն ատենը երկու երեւելի խորհուրդներու կը պարապէր։ Առաջինն էր խոզանաւ (3) երկիր սերմանել, և կը հաստատէր թէ սերմանական բուն զօրութիւնը անոր մէջ բովանդակած էր, և ասոր զանազան փորձերը ըրաւ, բայց բաւական հանճարեղ չըլլալուս համար՝ ըրածէն բան մը չկրցի հասկընալ։ Երկրորդը՝ խէժային, մետաղային և տնկական բաղադրութիւն մը երկու մատաղ զառնուկներու վրայ քսելով, անանց

(1) Երեսի բարձ։ (2) Ձիու և ուրիշ անասնոց ոտքին տակը նալ եղունգը։ (3) Պօղայ սամը։

բուրգերուն աճումը արգիլել էր․ և կը յուսար թէ քիչ ժամանակէ ետև՝ բոլոր տէրութեան մէջ անասր (1) ոչխարաց սերունդը տարածէ ։

Ասկէ՝ ճեմարանին միւս կողմը անցանք, ուր ինչպէս արդէն ըսեր եմ, տեսական գիտութեանց պարապողները կը բնակին ։

Հոս առջի տեսածս ուսուցիչ մ՚ էր՝ ընդարձակ սենեկի մը մէջ նստած, ու իր բոլորտիքը քառասուն աշակերտք շարուած էին ։ Բարեւելնէս ետև՝ երբ տեսաւ որ գրեթէ սենեկին ամենամեծ մասը բռնող մեքենային մտադրութեամբ կը նայիմ․ "Գուցէ, ըսաւ, զարմանաս, երբ տեսնես որ գործնական և մեքենական գործողութեամբ տեսական գիտութիւն մը յառաջացընելու կը պարապիմ․ բայց քիչ ատենէն՝ բոլոր աշխարհ աս բանիս պիտանաւորութիւնը պիտի ճանչնայ, և թէ որ չեմ սխալիր՝ կարծեմ ասկէ աղնիւ ու բարձր խորհուրդ մը ամենևին մարդու մը մտքէ անցած չէ ։ Յայտնի բան է թէ արհեստ ու գիտութիւն սորվելու սովորական ճամբան որչափ դժուար է․ ասոր հակառակը՝ իմ աս գտած գիւտովս ամե-

(1) Անբուրդ․ եփւնոկզ ։

նատգէս մարդ մը անգամ չափաւոր գըտնով և անձնական թեթև աշխատութեամբ կրնայ փիլիսոփայական, բանաստեղծական, քաղաքական, օրինական, մաթեմաթիգական և աստուածաբանական գրքեր գրել՝ ամենեւին ուսման և հանճարոյ կարօտութիւն չունենալով”: Նատեն զիս գործիքին մօտեցուց, որուն բոլորտիքը գրեթէ ամեն աշակերտները շարուած էին:

Այս գործիքը՝ սենեակին մէջ տեղը դրուած էր, ու քսան քառակուսի ոտնաչափ մեծութիւն ունէր, և անոր մակերևոյթը բազմաթիւ փայտէ կտորներէ կը բաղկանար, որոնք գրեթէ քուէի (1) չափ, բայց մէկ քանին քիչ մը աւելի մեծ էին, ու ամենը մէկ տեղ երկաթեայ նուրբ թելերով կապուած: Այս փայտէ կտորներուն ամեն մէկ քառակուսի երեսին վրայ թղթեր փակցուցած էին, և աս թղթերուն վրայ իրենց լեզուին ամեն բառերը՝ անոնց զանազան եղանակներովը, ժամանակներովը, և հոլովներովը խառն գրուած էին: Ուսուցիչը մեքենան շարժելու առենը՝ խնդրեց որ դիտողութիւն ընեմ: Ուստի հրաման

(1) Թաւլու զառը:

տուածին մէջ՝ իւրաքանչիւր աշակերտ գործիքին բոլորտիքը պնդուած քառասուն երկաթեայ բռնատեղերը բռնեցին․ և աս բռնատեղերը յանկարծ դարձընելով՝ բառերուն գրութիւնները գլխովին փոխուեցան ։ Անատեն՝ ուսուցիչը հրամայեց իր երեսուն և վեց աշակերտաց, որ ցած ձայնով մեքենային վրայ երեւցած տողերը կարդան, և երբ խօսքի մը մէկ մասը կազմող երեք կամ չորս բառեր մէկ տեղ տեսնեն՝ չորս գրագիր ազդոց ընելով գրել տան ։ Աս գործողութիւնը երեք—չորս անգամ կրկնուեցաւ, և մեքենան այնպէս շինուած էր որ ամեն մէկ անգամին՝ բառերը կը փոխուէին ։

Երիտասարդ աշակերտները օրը վեցը ժամ աս աշխատութեան կը պարապէին․ և ուսուցիչը մեծ թերթերու վրայ գրուած խառն և անհամաձայն իմաստներով լեցուն բազմաթիւ հատորներ ցուցուց ինձ, զորոնք արդէն հաւաքեր էր, և միտք ունէր զանոնք իրար կցելով կարգի դնել, յուսալով թէ աս հարուստ նիւթերէն ամեն արհեստից և գիտութեանց վրայ ամբողջ ժողովածոյ գիրք մը պատրաստէ հասարակութեան,

և կը կարծէր թէ աս ձեռք զարկած գործը կրնայ դեռ յառաջադիմութիւն գըտնել և կատարելութեան հասնիլ, թէ որ հասարակութիւնը հարկաւոր դրամագլուխ պատրաստելով՝ ասոր նման հինգ հարիւր մեքենայ Լակատոյի մէջ հաստատէր և բանեցընէր․ և անոնց վերակացուները պարտաւորէր որ իրենց զանազան քաղուածները ամենուն հաղորդեն։

“Ճշմարիտ կ'ըսեմ, ըսաւ, որ երիտասարդութենէս ի վեր միայն աս գիւտիս վրայ կը պարապիմ և բոլոր բառգիրքը աս գործքերին վրայ պարպած եմ, ու գըրոց ժամնիկներուն, անուններուն, բայերուն, և ուրիշ մասունք բաներուն մէջ գտնուած ամեն թիւերուն ընդհանուր համեմատութիւնը ճշդիւ բովանդակած եմ”։

Մեծապէս շնորհակալ եղայ աս երևելի անձէն՝ ինծի տուած աս ուսումնական երևելի տեղեկութեանցը համար, և խոստացայ անոր որ երբ հայրենիքս վերադառնալու բաղդաւորութիւնը ունենամ, աս զարմանալի մեքենային միակ հեղինակը ինքը ըլլալը հրատարակեմ, ու անոր ձեռք և զանազան շարժմունքը իր հրամանաւը թղթի մը վրայ գծեցի, ինչ-

պէս որ հոս դրուած պատկերին մէջ կը տեսնուի ։ « Թէպէտեւ , ըսի ես գիտնականին , գիւտերը իրարմէ գողնալը մեր Եւրոպացի գիտնականաց սովորական բան է , որով գոնէ միշտ կասկած մը կը ձգեն Ճշմարիտ հնարողին վրայ , բայց ես այնպիսի զգուշութիւն մը ձեռք պիտի առնեմ , որ առանց ախոյեան մը ունենալու՝ այդ հնարագիտութեան պատիւը բոլորովին քու վրադ մնայ » ։

Անկէ ետեւ՝ լեզուագիտութեան գըրատունը գացինք , ուր երեք ուսուցիչ մէկտեղ նստած կը խորհէին իրենց երկրին լեզուն կատարելագործելու ։

Իրենց առջի նպատակն էր բազմավանկ բառերը միավանկ ընելով , բայերը եւ ընդունելութիւնները մէկ դի ձգելով՝ խօսքը կարճեցընել . քանզի ինչ որ կըրնանք երեւակայել՝ իրօք գոյական անուն է ։

Միւս նպատակն էր որ և է ամեն բառ ջնջել , և աս բանս թէ կենաց և թէ ժամանակ խնայելու համար խիստ օգտակար դատուած էր ։ Յայտ է՝ թէ ամեն արտասանած բառերնիս մաշողութեամբ թոքերնիս աստիճանաւ մը կը նուազեցընեն , և հետեւաբար մեր կենաց կարճութեանը կ՚օգնեն ։ Աստի իբր կարեւոր

բան մը առաջարկուած էր որ բառերը միայն իրերու անուններ ըլլալու համար՝ աւելի յարմար պիտի ըլլար որ ամեն մարդ մասնաւոր գործի մը վրայ խօսելու ատեն՝ պէտք ունեցած ամեն նիւթերը իր վրայ կրէ ։ Աս միջոցը անշուշտ ի գործ պիտի դրուէր, թէ որ կանայք ռամկաց և անուսումն մարդոց հետ միանալով՝ իրենց նախահարց պէս իրենց լեզուաւ խօսելու համար ապստամբութիւն հանելու չսպառնային ։

Ի վերայ այսր ամենայնի՝ խիստ խելացիներէն և խիստ ուսումնականներէն շատերը աս նոր ձևը ի գործ կ'ածէին, որ աս անտեղութիւնը ունի միայն, որ մեծ և զանազան գործեր ունեցող մարդ մը պիտի պարտաւորի իր գործոյն ծանրութեանը համեմատ կռնակին վրայ բեռ կրելու, թէ որ զանոնք վերցընելու համար մէկ կամ երկու հզօր ծառաներ վարձելու կարողութիւն չունենայ ։ Աս գիտնականներէն երկուքը շատ անգամ տեսած եմ, որոնք գրեթէ իրենց բեռին ծանրութեանը տակ կը ճնշուէին՝ մեր երկրի փողոցները շրջող փերեզակաց (1) պէս՝ որոնք իրարու հանդիպած ժամա-

(1) Չէրչիճի ։

նակնին՝ բեռներնին փողոցին մէջ գետնին վրայ կը դնեն, և ծրարնին բանալով, ժամերով խօսակցելէն ետև՝ նորէն իրար կը բեռնաւորեն ու կը մեկնին։

Բայց համառօտ խօսակցութեանց համար՝ մարդ մը կրնայ իր գրպանին մէջ կամ անութին տակը իրեն բաւելու չափ բեռ կրել, և իր տանը մէջ ալ գործիներէն պակասութիւն չունի։ Ուստի այս արհեստիս հետևող ընկերութեան սենեկին մէջը՝ այս արհեստական խօսակցութեան վերաբերեալ ամեն նիւթերը լեցուն են։

Այս գիւտին մէկ օգուտը ան էր որ իբրև ընդհանուր լեզու ամեն տեղ պիտի ծառայէր, և ամեն լուսաւորեալ ազգեր պիտի հասկընային զան. իրենց կահ կարասիքը և գործիքը ընդհանրապէս իրարու շատ նմանելուն՝ անոնց գործածութիւնը դիւրաւ կրնար հասկցուիլ։ Եւ այս կերպով դեսպանները պիտի կրնային դաշնակցիլ այն օտար իշխանաց կամ պաշտօնէից հետ, որոնց լեզուին ամենևին տեղեկութիւն չունին։

Անկէ մաթեմաթիգական դպրատունը գացինք, ուր ուսուցիչը իր աշակերտները

սորվեցընելու համար այնպէս ճամբայ մը բռներ էր, որ Եւրոպացիք հագիւ կրնան երեւակայել ։ Մաթեմաթիգական տառաջարկութիւնը պարզապէս նամակի բարակ նշխարի մը վրայ գլխոյ վերաբերեալ բժշկական գունաւոր ջրով բաղադրեալ մելանով մը գրուած էր, և աս նշխարը աշակերտը անօթի փորունց պիտի կլլէր, և երեք օր շարունակ ուտելիքը միայն հաց ու ջուր պիտի ըլլար ։ Նշխարը մարսելէն ետև՝ բժշկական գունաւոր ջուրը տառաջարկութիւնը հետը տանելով՝ ուղեղին մէջ կ'ելթար ։ Մինչև հիմա աս հնարքը յաջողութիւն գտած չէ, որուն պատճառը՝ կ'ըսեն, բաղադրութեան կամ չափուն մէջ եղած սխալն է, և կամ գալլատան ազոց չարութիւնը, որոնց աս նշխարը խիստ դդուելի գալուն համար՝ հասարակօրէն գաղտուկ մէկ կողմ երթալով՝ բերաննէն կը նետեն զան, և եթէ կլլեն իսկ՝ դեռ ազդեցութիւն մը չըրած կը փսխեն. ասկէ զատ՝ այնչափ երկար ժամանակ ծոմ պահելու ամենքին համոզուիլ չեն ուզեր ։

# ԳԼՈՒԽ Զ.

*Ճեմարանին շարայարութիւնը ։ Հեղինակին առաջարկած քանի մը կատարելագործութիւնները ․ որոնք պատուով կ՚ընդունուին ։*

ՔԱՂԱՔԱԿԱՆ հնարագիտաց դըպրատան վրայ շատ գոհ չեղայ , ինչու որ անոր մէջի ուսուցիչները կարծեօք բոլորովին խենդեցած կ՚երեւէին , և աս վիճակը զիս միշտ տխրութեան մէջ կը ձգէ ։ Աս ապերջանիկ մարդիկը կ՚առաջարկէին ինքնակալաց որ իրենց մտերիմները խիստ իմաստուն , կարող , և առաքինի անձանց մէջէն ընտրեն ։ Պաշտօնէից կը սորվեցընէին որ հասարակաց բարիքը խորհին ․ արժանաւորաց , կարողաց , և պետութեան երեւելի ծառայութիւններ ընողներուն հատուցում ընեն ․ իշխանաց կը հասկըցընէին թէ իրենց ճշմարիտ օգուտը հպատակաց օգտին հետ մի և նոյն հիման վրայ կը կայանայ , և կառավարութեան գործոց համար յարմար անձինք ընտրեն ։ Վերջապէս՝ ամեն մարդու մտքէ չանցած ուրիշ շատ այլանդակ և անկա-

րելի ցնորք կ՚երեւակայէին ։ Ուստի այն վաղեմի առածին ճշմարտութիւնը սրտիս մէջ հաստատուեցաւ, թէ՝ «Չկայ այնպիսի այլանդակ եւ անտեղի բան մը, որ փիլիսոփաները իբր ճշմարիտ հաստատած չըլլան»։

Այսու ամենայնիւ՝ ճշմարտութիւնը չխափանելու համար՝ ճեմարանին այս մասին վրայ այնչափ ըսեմ՝ թէ անդամոց ամէնը այսպէս գանդաչող (1) չէին ։

Ամենաճարտար բժիշկ մը տեսայ, որ կառավարութեան գիտութեանց մէջ կատարելապէս կրթուած կ՚երեւար ։ Նա երեւելի անձը շատ աշխատելով, թէ կառավարչաց մոլութեանցն ու տկարութեանցը, եւ թէ անոնց ձեռաց տակը եղողներուն լկտութեանցը՝ գործակալութեան զանազան ճիւղերուն ենթակայ եղած պէս պէս հիւանդութեանցը եւ վարուց ապականութեանցը համար զօրաւոր դեղեր գտեր էր ։ Օրինակի աղագաւ ․ որովհետեւ ամեն հեղինակք եւ փիլիսոփայք կը համաձայնին՝ թէ քաղաքական եւ մարդկային ընկերութեան մէջ ճիշդ եւ ընդհանուր նմանութիւն մը կայ, ուստի ինչ աւելի յայտնի բան կրնայ

(1) Սայրգլայան ։

ըլլալ, որ երկուքին առողջութիւնը մի և նոյն դեղով չպահուի, և հիւանդութիւնները չըժշկուին: Ամենուն յայտ է՝ թէ ծերակոյտը և երևելի խորհրդականք արեան ու հիւթոց յորդութեամբը՝ գլխի և մանաւանդ աչքի շատ տեսակ հիւանդութեամբք կը նեղին, որոնցմէ յառաջ կու գան սաստիկ ըղձձգութիւններ, ձեռաց մանաւանդ աջ ձեռքին ջիղերուն սոսկալի կարկամութիւններ, մայծաղնացաւ (1), փուք (2), թալուկ (3), զառանցութիւն, թարախով և զարշահոտ հիւթերով լեցուն խուլական ուռեցք, փրփրալից թթու զգայռուն (4), չնքաղց (5), դժուարամարսութիւն, և ուրիշ շատ ախտեր, որոնք յիշելը աւելորդ է:

Ասոր բժիշկը կ'առաջարկէր որ ծերակուտի նիստին առջի երեք օրը՝ քանի մը բժիշկ հօն գտնուին, և ամէն օր՝ մէջը վերջանալէն ետև՝ ծերակուտի ամէն մէկ անդամին բազկին զարկը զննեն, և անոնց հիւանդութեանցը և հարկաւոր դեղոց վրայ հասուն միօք խորհելէն ե-

(1) Տալող խլէթի: (2) Եէլ: (3) Գլխի դառնալը: (4) Փախկը: (5) Ընյաղ անօթութիւն:

ու՝ չորրորդ նիստին օրը՝ առանք նորէն ժողովարանը վերադառնան հարկաւոր դեղերով իրենց դեղավաճառները հետերնին առնելով, և վէճը չսկսած՝ ամեն մէկ անդամին՝ մեղմիչ, քակիչ, մաքրիչ, փաղաղիչ (1), պնդիչ, ամոքիչ, լուծիչ, գլխոյ, դալուկի (2), լուլեաց վերաբերեալ, մաղասփարատիչ, և ուրիշ իրենց ախտերուն զանազանութեանը համեմատ դեղեր տան, և այս դեղերուն ըրած ներգործութեանցը համեմատ՝ հետևեալ նիստին դեղերը կրկնեն, փոխեն, կամ զանց ընեն։

Այս բանս Հասարակութեան շատ սուղի չնստիր, և իմ խոնարհ կերծեօքս՝ գործերը շուտով լմննալուն կը ծառայէ այն քաղաքաց մէջ, ուր մեծ ժողովները օրէնսդրական իշխանութեան մասնակից են։ Այսով անդամները իրարու կը համաձայնին, վէճերը կը համառօտին, կը բացուին ան բերանները, որոնք հիմա գոց են, և կը գոցուին ուրիշ աւելի բերաններ, որոնք հիմա բաց են, երկտասարդաց լրբութիւնը կը դադրի, ծերոց յամառութիւնը կ՚ուղղի, յիմարը կը պապանձի, և անզգամը կը թմբրի։

(1) Լափող։ (2) Սարըլըք։

Բաց յայսմանէ՝ ինչպէս որ միշտ գանգատ կ'ըլլայ թէ թագաւորաց մտերիմները կարճ ու տկար յիշողութեան տէր անձինք են, նոյն բժիշկը կ'առաջարկէր թէ գործի մը համար պաշտօնէայի (1) մը գացողը՝ իր գործը վերջին համառօտութեամբ և ամենապարզ բառերով խօսելէն ու յայտնելէն ետև, անկէ մեկնելու ժամանակը՝ յիշեալ պաշտօնէային քթին պինդ (2) մը, կամ փորին կից մը տայ, կամ ոտքի մատին կոշտը (3) կոխէ, կամ երկու ականջները երեք անգամ քաշէ, կամ վարտիքին գնդասեղ մը մխէ, և կամ թեւը սաստկութեամբ մը կսմթէ, որպէս զի բանը չմոռնայ, և ամեն առտեանի օրեր նոյն գործողութիւնը կրկնէ, մինչև որ գործը լմննայ, կամ բացարձակապէս մերժուի։

Ալ սորվեցընէր նաև թէ ամեն ծերակուտի անդամ ազգային ընդհանուր ժողովին մէջ իր կարծիքը յայտնելէն և ըսածը հաստատելու համար պէտք եղածը ըսելէն ետև՝ պարտաւորի ուղղակի ըսածին հակառակ քուէ նետել, քանզի թէ որ այսպէս ըլլայ, անպատճառ հասարակութեան օգտին շատ աղէկ կ'ըլլայ։

(1) Տէվլէթ վէքիլի, բէճանը · (2) Միջին մատով զարնելու ֆիսքէ · (3) Նասըը ·

Տէրութեան մը մէջ սաստիկ կուսակցութիւններ եղած ատեն, բժիշկը զանոնք հանդարտեցընելու համար զարմանալի հնարք մը կ՚առաջարկէր. որ է այս: Իւրաքանչիւր կուսակցութեան պարագլուխներէն մէ հարիւրական հոգի, և գլուխնուն մեծութիւնը իրարու ամենէն աւելի հաւասարողները զոյգ զոյգ շարէ: Անատեն՝ քաջ արուեստաւոր մը ամեն մէկ զոյգին օկսիպուտները միատեղ թող սղոցէ, այնպէս որ ուղեղները հաւասար բաժնուին, և աս սղոցած օկսիպուտները փոխանակ իրարու գլխոյ վրայ դըրուին: Աս գործողութիւնը յիրաւի շատ դժուարին կ՚երևի, բայց ուսուցիչը ինձ ապահովեց՝ թէ երբ աս բանը ճարտարութեամբ ի գործ դրուի, առողջանալու տարակոյս չկայ: Քանզի կը հաստատէր թէ՝ աս երկու կէս ուղեղները մէկ օկսիպուտի մէջ խնդրի մը վրայ վիճելով՝ հարկաւ շուտ պիտի հասկընային իրարու. ասկէ կը ծագի խորհելու այն չափաւորութիւնն ու կանոնաւորութիւնը, որ աշխարհիս ընթացքը հսկելու և կառավարելու համար միայն ինքզինքնին ծնած կարծողներուն գլխին մէջ գտնուիլը շատ ցանկալի է: Իսկ ուղեղներուն

թէ՛ որքանութեան և թէ որպիսութեան տարբերութիւնը խիստ չնչին բան մ'է՝ կ'ըսէր ։

Առանց նեղելու ժողովրդէն ստակ հաւաքելու ամենադիւրին և իրական միջոցներուն վրայ երկու փորձագէտաց սաստիկ կռիւք վիճելը լսեցի ։ Որոնց առջինը կը պնդէր թէ ամենէն արդար ճամբան՝ մոլութեանց և յիմարութեանց վրայ տուրք դնել է, և ամէն մարդ իր դրացի դատաւորի մը ուղիղ դատողութեանը համեմատ հարկ տայ ։ Իսկ երկրորդը գլխովին ասոր հակառակ կարծիք ունենալուն, կը պնդէր թէ՝ անձնական և մտաւորական այն յատկութեանց վրայ հարկ դըրուի, որոնցմով մարդիկ գլխաւորապէս կը պանծան, ու հարկադրութիւնը իրենց գերազանցական աստիճանացը համեմատ աւելի կամ պակաս ըլլայ, և աս բանիս որոշումը բոլորովին իրենց խղճին ձգուի ։

Ամենէն ծանր տուրքը կանանց ամենէն աւելի սիրելի եղողներուն վրայ դրուի, և ամէն մարդու՝ կանանցմէ ընդունած շնորհացը թուոյն և տեսակին համեմատ ըլլայ, և աս բանիս համար ամէն մարդ բուն իր անձին համար վկայութիւն տայ ։ Կ'առաջարկէր նաև որ խելացիութեան ,

քաջութեան, և բարուց ազնուութեան վրայ ծանր հարկ դրուի, ամէն մարդու՝ այս յատկութիւններէն որչափ ունենալը խոստովանածին համեմատ: Բայց պատուոյ, արդարութեան, իմաստութեան, և գիտութեան վրայ ամէնևին հարկ չդըրուի, որովհետև ասոնք այնպիսի հազուագիւտ են, որ ամէն մարդ ոչ իր դրացեաց վրայ գտնուիլը կ'ընդունի, և ոչ իր ունենալուն վրայ կը պարծի:

Կանայք իսկ իրենց գեղեցկութեանցը և հագուելու կապուտէրու մէջ ունեցած ճարպկութեանը համեմատ՝ մարդոց աչէն ըստ իրենց խոստովանութեանցը հարկ տան: Բայց հաւատարմութիւնը, պարկեշտութիւնը, մաքրութիւնը և բարի ընութիւնը բոլորովին ազատ ըլլան ամէն հարկէ, որովհետև ասոնց համար հաւաքուելիք տուրքը ըլլալու ծախուց չէին բաւեր:

Օտարականի անդամները ատէրութեան իշխանութեանը տակ պահելու համար՝ ըմբիշը կ'առաջարկէր որ անդամները բաղդահանութը պաշտօններու համէն. սակայն ան կերպով որ ամէն մարդ բաղդահանութենէ առաջ երդում ընէ, և երաշխաւորութի տայ, որ եթէ փորձէր,

և եթէ կորսնցընէ զայն՝ արքունեաց ուզածին համեմատ պիտի քուէ նետէ ։ Ասկէ եւս՝ կորսնցընողները կարգաւ ազատութիւն ունենան ապառնի դատարկ պաշտօնի համար քուէ նետելու ։ Ահա այսպէս անոնց յոյսը և ակնկալութիւնը կենդանի կը մնայ ․ մէկը չկրնար գանգատիլ իրեն եղած խոստմանց չկատարուելուն համար, այլ իր յոյսին դատարկ ելնելը գլխովին բաղդին կու տայ, որուն ուսերը պաշտօնէի մը ուսերէն աւելի լայն և ուժեղ են ։

Ուրիշ վարժապետ մը ինծի մեծ գրուած մը ցուցուց, որուն մէջ կառավարութեան դէմ եղած գաղտնի միաբանութիւնները և ապստամբութիւնները երեւան հանելու ճամբան կը յայտնէր ։ Երեւելի քաղաքագիտաց կը խրատէր որ ամեն կասկածելի մարդոց կերակուրը, անոնց ո՛ր ժամանակ ուտելնին, անկողնոյ մէջ ո՛ր կողմին վրայ պառկելնին, և ո՛ր ձեռքով սրբանքնին մաքրելնին քննեն ․ անոնց կղկղանքը զգուշութեամբ զննեն, և անոնց գոյնէն, հոտէն, համէն, պնդութենէն, կամ մարսողութեան հասունութենէն՝ անոնց խորհուրդներն ու դիտաւորութիւնները գտնեն, ինչու որ

մարդս ոչ երբէք այնչափ խոհական ,
մտախորհ և մտադիր է , որչափ՝ կարի-
քի համար աթոռ նստած ժամանակը · ո-
րուն փորձը ինքը բռած է ։ Ինչու որ երբ
միայն փորձի համար խորհէր՝ թէ թա-
գաւորը սպաննելու ամենէն դիւրին
ճամբան որն է , անատեն՝ իր կեղծանքը
կանաչ գոյն մը կը ստանար · բայց անոր
գոյնը բոլորովին տարբեր կ՚ըլլար , երբ
ապստամբութիւն հանելու կամ մայրա-
քաղաքը կրակի տալու համար միայն
խորհէր ·

Բոլոր ասոնք մեծ Նրբամտութիւնք այն
գրուածին մէջ նշանակուած էին · ուր
քաղաքագիտաց թէ պիտանի և թէ հե-
տաքրքրական շատ դիտողութիւններ իսկ
կային · սակայն աս գործը ինձ անկատար
երևցաւ ։ Ես բանս հեղինակին ըսելու
համարձակեցայ , և առաջարկեցի որ ե-
թէ կ՚ուզէ՝ ասոնց վրայ քանի մը յա-
ւելուած տամ իրեն · առաջարկութիւնս
այնպէս մեծ շնորհակալութեամբ մը ըն-
դունեց , որ հեղինակաց մանաւանդ հը-
նարագիտաց հասարակ բան չէ , և խոս-
տովանեցաւ որ ուրախութեամբ կ՚ըն-
դունի՝ եթէ աւելի տեղեկութիւն տամ
իրեն ։

Ուստի ըսի անոր թէ Թրիպնիայի տէրութեան մէջ ( որուն երկրացիք Լանկտէն անունը կու տան , և ուր ճամբորդութիւն ըրած ժամանակս քիչ մը ատեն մնացեր եմ ) , ժողովրդեան մեծ մասը կերպիւ մը բոլորովին քսուներէ , վկաներէ , լրտեսներէ , ամբաստաններէ , դատախազներէ , երդմնողներէ , միանգամայն և աս մոլութեանց ուրիշ երկրորդական և օժանդակ գործակիցներէ կը բաղկանայ · որոնք ամէնքը տէրութեան պաշտօնէից , և անոնց երեսփոխանաց թոշակին , դրօշակին , և առաջնորդութեան ներքեւ կը գտնուին ։

Աս տէրութեան մէջ դաւաճանութիւնները առ հասարակ ան տեսակ մարդոց գործ են , որոնք կ'ուզեն խորին քաղաքագէտ ըլլալնուն համբաւը տարածել , տկարացեալ կառավարութեան մը նոր ոյժ տալ , դժգոհները հեղձամղձուկ ընել կամ անոնց միտքը դարձընել , սնտուկնին տուժերով և գրաւմամբ լեցընել , իրենց մասնաւոր շահուն յարմար՝ հասարակաց յորդը բարձրացընել կամ ցածցընել ։ Ամբաստանուելու կասկածելի անձանց վրայ գաղտնի միաբանելէն ետեւ ;

անոնց ամէն թղթերն ու նամակները կը գրաւեն, և անոնց ոտքերը շղթայակապ կը բանտարկեն։ Նոյն թղթերը՝ բառերու, վանկերու, և գիրերու ծածուկ նշանակութիւնները գտնելու խիստ ճարտար արհեստաւորաց ընկերութեան մը կը յանձնուին, որոնք աշխատելով կը գըտնեն թէ որովայնի կարեաց աթոռ մը՝ մանաւ որ ժողով մը կը նշանակէ, սագերու խումբը՝ ծերակոյտ մը, կաղ շունը՝ յափշտակիչ մը, ժանտախտը՝ հաստատուն բանակ մը, բզէզը՝ առաջին պաշտօնատար մը, յօդացաւը՝ աւագերէց մը, կախաղանը՝ ուրութեան քարտուղար մը, կճիճը՝ մեծամեծաց մանաժողով մը, մօղը՝ պալատական սիկին մը, աւելը՝ յեղափոխութիւն մը, մկանատը՝ պաշտօն մը, անյատակ հորը՝ գանձարան մը, արքանոցաց առուն՝ սրբունիք մը, գլխարկ և զանգակները՝ մտերիմ մը, բեկեալ եղէգը՝ արդարութեան ատեան մը, դատարկ տակառը՝ զօրապետ մը, բացուած խոցը՝ կառավարութիւն մը։

Երբ սա կերպը չյաջողի, տակաւին երկու ուրիշ յաջող կերպեր ունին, որոնց մէկը իրենց գիտնականաց բառերին համեմատ՝ անդրադառն կ'ըսուի, և միւսը՝ սկզբնատառ ախաղ։

Նախ՝ ամէն սկզբնական նշանագրաց քաղաքական իմաստ մը կու տան, այսպէս. Ն՝ կրնայ նշանակել գաւ մը, Գ՝ հեծելազօրաց գունդ մը, Լ՝ նաւատորմիղ մը։ Երկրորդ՝ կասկածելի թղթի մը գրերուն կարգը այնպէս կը փոխեն, որ կարենան գժգոհ կուսակցութեան մը ամենածածուկ դիտաւորութիւնները յայտնել։ Օրինակի աղագաւ. թէ որ բարեկամիս մէկուն գրած նամակիս մէջ գրէի. "Մեր Թօմմաս եղբայրը տեռատեսութիւն ունի". Ճարտար մեկնիչ մը պիտի գտնէր թէ աս իմաստը կազմող ամէն տառերը աս հետեւեալ խօսքով կրնան լուծուիլ". Դիմացէք, — ապստամբութիւն կայ հայրենեաց մէջ — Բերդը"։ Աս է նշանագրաց կարգը փոխելուն կերպը։

Աս տեղեկութիւնները հաղորդելուս համար ուսուցիչը մեծապէս շնորհակալ եղաւ ինծի, և խոստացաւ իր ճառին մէջ պատուով յիշել զիս։

Աս երկրին մէջ արժանաւոր բան մը չտեսայ որ աւելի երկար ատեն հոն մընայի. ուստի սկսայ Անգլիա հայրենիքս դառնալու վրայ խորհելու։

## ԳԼՈՒԽ Է

*Հեղինակը Լակատոյէն կը մեկնի . և Մալտոնատէ կը հասնի : Պատրաստ նաւ չգտնելուն՝ կարճ ճամբորդութիւն մը կ'ընէ ի Գլըպտըպտրիպ : Հոն կառավարչէն ինչպէս ընդունուիլը :*

ԱՍ երկիրը, որուն մէկ մասը աս տէրութիւնը կը կազմէ, կը տարածի ըստ իմ դատողութեանս՝ դէպ ի արևելք, Ամերիկայի մինչև այն անծանօթ մասին վրայ, որ Կալիֆորնիոյ արևմտեան, և Խաղաղական Ովկիանոսին հիւսիսային կողմը կ'իյնայ, որ հարիւր յիսուն մղոնէն աւելի հեռի չէ Լակատոյէն, ուր աղէկ նաւահանգիստ մը կայ, և երկայնութեան 140, ու լայնութեան գրեթէ 29 աստիճանին վրայ դէպ ի հիւսիսային — արևմուտք գտնուած Լըկկնակկ կըղզւոյն հետ առևտրական մեծ հաղորդակցութիւն ունի :

Աս Լըկկնակկ կղզին Ճափոնի հարաւային արևելքէն գրեթէ հարիւր փարսախ հեռի կը գտնուի · Ճափոնի կայսեր և Լըկկնակկի Թագաւորին մէջ եղած մը-

ներիմ գաշնակցութեանը պատճառաւ՝ մէկ կղզիէն միւսը կ'երթեւեկէին ։ Ուստի՝ որոշեցի որ աս ճամբով Եւրոպա վերադառնամ ։ Վասն որոյ կահերս վերցընելու համար երկու ջորի, և ճամբան ցուցընելու համար առաջնորդ մը վարձեցի, ու ինձ այնչափ բարիք ընող պաշտպանիս հրաժարական ողջոյնս տուի, որ մեկնելու ժամանակս պատուական ընծայ մը բրաւ ինձ ։

Ճամբորդութեանս մէջ պատմելու արժանի դիպուած մը չպատահեցաւ որ պատմեմ ։ Երբ Մալտօնատէ նաւահանգիստը հասայ (քանզի այսպէս կըկոչուի), Լըկկնակ երթալու պատրաստ նաւ չի գտայ, և մօտ օրերս գտնուելու ալ յոյս չկար ։ Սա քաղաքը գրեթէ Փորսմըթհի չափ մեծ է ․ քիչ ժամանակի մէջ քանի մը անձանց հետ տեսութիւն ըրի, որոնցմէ մեծ մարդասիրութեամբ ընդունուեցայ ։ "Որովհետեւ, ըսաւ երեւելի պարոն մը, ամիս մը առաջ Լըկկնակ երթալու նաւ չգտնուիր, աղէկ կ'ընես թէ որ գտնելու համար՝ Կլըպտըպտրիպ փոքր կղզին երթաս, որ հարաւային արեւմուտքէն գրեթէ հինգ փար-

ռախ հեռու է ։ Թէ որ կ'երթաս, ես ու մէկ բարեկամս քեզ կ'ընկերանանք, և ճամբորդութեան համար նաւակ մը կը պատրաստենք"։

Գըպպտըպտրիպ (ճշդիւ թարգմանել կրցածիս չափ) կախարդաց և մոգերու կղզի կը նշանակէ, որ գրեթէ Ուայթ կղզւոյն երրորդ մասին չափ մեծ՝ և չափազանց արգասաւոր է ։ Այս կղզին ցեղապետ մը իշխանութեան տակն է, և որուն բոլոր բնակիչները կախարդ են ։ Ասոնք միայն իրենց մէջը աղջիկ կ'առնեն կու տան, և յաջորդաբար ցեղին ծերագոյնը իշխան կամ կառավարիչ կ'ըլլայ ։ Այս իշխանը շքեղ պալատ մը, և գրեթէ երեք հազար արտավար ընդարձակութեամբ պարտէզ մը ունի, որուն բոլորտիքը պատը քսան ոտք բարձր և բանուած քարերով շինուած է ։ Այս պարտէզին մէջ՝ անասնոց, ցորենի, և ծաղկոցներու համար բազմաթիւ մանր ցանկեր կան ։

Կառավարչին և անոր ընտանեաց ծառաները տեսակ մը այլանդակ անձինք են ։ Իր կախարդական հմտութեամբը կրնայ իր ուզած ո՛ր և իցէ մարդը գերեզմանէն յարուցանել, և միայն քսան ու չորս

ժամ իր ծառայութեանը գործածել․ սակայն՝ մինչև որ երեք ամիսը չանցնի՝ չկրնար մի և նոյն ոգին նորէն կանչել, և այն՝ թէ որ անհրաժեշտ հարկ մը չի պարտաւորէ զինքը ։

Երբ աս կղզին հասանք, ժամը գր՛ թէ առաւօտեան տասն և մէկն էր․ Ինձ ընկերացող պարոններէն մէկը կառավարիչին երթալով, բսաւ՝ թէ օտարական մը նորին վսեմութեան ներկայանալու պատիւը կը խնդրէ․ Սա խնդիրքը իսկոյն ընդունուեցաւ, ու երեքնիս մէկտեղ պալատին դռնէն ներս մտանք, որուն երկու կողմը խիստ նախնի կերպով հագուած և սպառազինուած պահապան զօրք շարուած էին, որոնց դիմաց տեսքը այնպէս ահռելի էր, որ զիս սոսկացուց․

Մինչև կառավարչին սենեակը երթանիս՝ բազմաթիւ սենեակներու մէջէ անցանք, որոնց երկու կողմերը կարգաւ նոյն տեսակ ծառաներ կանգնած էին․ Խորին խոնարհութեամբ երեք անգամ ողջունելէս, և մեզի քանի մը հարցմունք ընելէն ետև՝ նորին վսեմութիւնը հրամայեց որ իր գահին ստորինագոյն պատուանդանին մօտը դրուած երեք աթոռակներու վրայ նստինք ։ Կառավարիչը

Պալնիպարալի լեզուն գիտէր , թէև կրդ-գու այն լեզու էն տարբեր էր ։ Աւստի խընդրեց որ ճամբորդութեանցս պատմութիւնը ընեմ իրեն , և ինձ հասկըցընելու համար՝ թէ հետս առանց մեծարանաց վարուիլ կ՚ուզէ , մատովը նշան մը ըրաւ որ ծառաները հեռանան ․ որոնք նոյն կէտին՝ երազական ցնորքի պէս անյայտ եղան , որուն վրայ շատ զարմացայ ։ Քիչ մը ժամանակ չկրցի խելաբերիլ , մինչև որ կառավարիչը ապահովեց զիս՝ ըսելով թէ վախնալու բան չկայ , և տեսնելով որ երկու ընկերները կատարեալ հանդարտութեան մէջ են , որովհետև անոնք շատ անգամ այսպիսի ընդունելութիւն գտած էին , սկսայ քաջալերիլ , և համառօտաբար ճամբորդութեանցս մէջ պատահած դէպքը պատմել , թէև վախնալով և շատ անգամ ծառայող ոգիները տեսած կողմս նայելով ։

Կառավարիչին հետ սեղան նստելու պատիւը ունեցայ , և կերակուր բերող ու մեզ սպասաւորութիւն ընողները կարգ մը նոր ոգիներ էին ։ Բայց նայեցայ որ առաջուան պէս չեմ վախնար հիմա ․ ուստի մինչև արևին մայրը մտնելը հոն մնացի , բայց նորէն վաեմու-

թեանը խանդարհարար աղաչեցի՝ որ գիշերը հօն մնալու համար բռած հրաւէրը չընդունելուս ներողամիտ ըլլայ ։ Երկու ընկերներս և ես փոքրիկ կղզւոյն մերձակայ մայրաքաղաքին մէջ առանձին տուն մը պահեցանք · և հետևեալ առտու՝ նորէն կղզին դարձանք , որպէս զի կառավարչին երթալով մեր երախտագիտութեան պարտքը կատարենք · և կառավարիչը բարեհաճեցաւ մեզ նորէն ընդունելու ։

Աս կերպով տասը օր աս կղզւոյն մէջ մնացինք՝ օրին մեծ մասը կառավարչին հետ անցընելով , և գիշերը նորէն մեր բնակարանը դառնալով ։ Աս օրերուն տեսքին ան տարիձան ընտանեցայ , որ երկրորդ կամ չորրորդ անգամ տեսնելէս ետքը՝ ալ ամենևին հոգս չեղաւ , կամ եթէ տակաւին քիչ մը վախ վրաս մնացած կար , հետաքրքրութիւնս անոր յաղթեց ։

“ Աշխարհիս սկիզբէն , ըսաւ նորին վըսեմութիւնը , մինչև ցօրս մեռած մարդոցմէ ո՞րը որ ուզես՝ բերել կուտամ զան , և ինչ հարցմունք որ ընես անոր՝ կը պարտաւորեմ զան որ քեզ պատասխանէ՝ ան պայմանաւ որ ընելու հարց-

մունքըդ իրենց դարերէն դուրս բաներ չըլլան ։ Անպահովութեամբ կրնամ ըսել թէ ամեն բան ստուգութեամբ պիտի ըսեն քեզ, քանզի ստութիւնը միւս ստորին աշխարհի մէջ անօգուտ տաղանդ մ'է ” ։

Այս շնորհացը համար նորին վսեմութեան մեծապէս շնորհակալ եղայ ։ Մեր սենեակէն այն մեծ պարտէզին պատուհան տեսքը կ'երեւար ։ Իւ որովհետեւ առջի փափաքս՝ փառաւոր և շքեղ տեսարաններ տեսնել էր, անոր համար ուզեցի որ Աղեքսանդրը տեսնեմ իր բանակին գլուխը անցած՝ Արաբիլի պատերազմէն ետքը եղածին պէս ։ Կառավարիչը մատը շարժածին պէս՝ մեր պատուհանին ներքեւը ընդարձակ դաշտի մը մէջ ու իշխանը յանկարծ երեւան ելնելով, մեր սենեակը կանչուեցաւ ։ Յունարէնի մէջ շատ աղէկ տեղեկութիւն չունենալուս համար՝ անոր լեզուն շատ դժուարութեամբ հասկցայ * . իր պատուոյն վրայ հաստատեց ինծի թէ ինքը թունաւորած չէր, այլ չափազանց խմելէ պատճառած դէշ տենդէ (1) մը մեռեր էր ։

* Պեւլեմէրի ու բամծէն՝ Յունարէն լեզուին բուն յատկութիւնը կորսուած ըլլալը պէտք է իմանալ ։

(1) Սըթմա ։

Անորմէ եւս՝ Անիբալը տեսայ, որ Ալպեան լեռները կ'անցնէր, ու ըսաւ ինծի թէ իր բանակին մէջ կաթիլ մը քացախ անգամ չունէր *:

Տեսայ նաեւ Կեսարն ու Պոմպէոսը, որոնք իրենց զօրաց գլուխը անցած պատերազմելու պատրաստ կեցեր էին. Առաջինը իր վերջին յաղթանակութեամբը կը փայլէր:

Մեծ սրահի մը մէջ Հռոմմայեցւոց ծերակոյտը, և անոր դիմացը՝ ուրիշ սենեկի մը մէջ արդի օրէնսդրական ժողով մը տեսնել ուզեցի: Առաջինը՝ դիւցազանց և կիսադից ժողով մը երեցաւ, իսկ վերջինը՝ կարծես թէ փերեզակաց, քսակահատից (1), հուզկահարաց (2), և պարծուկներու կոյտ մ'էր անոնց քովը:

Կառավարիչը իմ խնդրանօքս նշան ըրաւ Կեսարին ու Պրուտոսին որ յառաջ գան դէպ ի մեզ: Խորին պատկառանօք ապշեցայ երբ Պրուտոսին դիմաց ամեն մէկ

* Լէվի Հռոմմայեցւոց պատմիչը կը պատմէ՝ թէ Անիբալ իր ճամբան արգիլող ժայռի մը վրայ կոյտ մը փայտ վառեց. երբ ժայռը տաքցաւ, Անիբալ անոր վրայ քացախ թափեց, որով ժայռը այնչափ կակղցաւ որ անոր մէջէն դիւրաւ կրցաւ անցնիլ:

(1) Եան քէսիճի: (2) Աւազակ:

գծին վրայ ամենակատարեալ առաքինութիւն, ամէհի քաջութիւն, մտաց հաստատութիւն, ամենակեղծ հայրենասիրութիւն, և չափազանց մարդասիրութիւն տեսայ։ Մ՚եծ ուրախութեամբ գիտեցի թէ աս երկու անձինքը իրարու հետ աղէկ բարեկամացեր էին, և Կեսար պարզապէս խոստովանեցաւ թէ իր կենացը մէջ ըրած ամեն երևելի գործերը՝ Պրուտոսի զինքը սպաննելով ստացած փառքին չեն հաւասարիր։ Պատիւ ունեցայ Պրուտոսի հետ երկարօրէն խօսելու, որ ըսաւ ինծի. «Իմ Յունիոս, Սոկրատէս, Եպամինոնտաս, Կատոն կրտսեր, Սըր Թովմաս Մոր նախնիքս և ես այնպէս վեցանդամածողով մը կը կազմենք, որուն վրայ աշխարհիս ամեն դարերը եօթներորդ մը չեն կրնար յաւելցընել։

Չեմ ուզեր ընթերցողս ձանձրացընել յիշատակելով ան ամեն երևելի անձանց թիւը, որոնք ամեն անցեալ դարերը աչացս առջևը տեսնելու անյագ փափաքս լեցընելու համար կանչուեցան։ Բռնաւորաց և յափշտակողաց կեանքը վերցընողները, հարստահարեալ և նեղեալ ազգաց ազատութիւնը նորոգողները տես-

նելով՝ աչքս բոլորովին կշտացան · բայց անկարելի է ինձ որչափ գոհ ըլլալս այն կերպով յայտնել, որ կարենամ ընթերցողիս հաճելի զբօսանք մը ընել։



## ԳԼՈՒԽ Ը.

*[illegible] նկարագրութեան շարայարութիւնը ։ Հին և նոր պատմութեանց սրբագրութիւնը ։*

Թէ՛ հանճարովն թէ գիտութեամբ մեծահամբաւ հանդիսացող նախնիքը տեսնելու համար մասնաւոր օր մը որոշեցի, և ուզեցի որ Հոմերոս և Արիստոտէլ իրենց մեկնիչներովը երևան ելնեն ։ Բայց աս մեկնիչները այնչափ բազմաթիւ էին, որոնցմէ քանի մը հարիւրը դրսի սենեկաց և պալատին գաւիթին մէջ մնալու պարտաւորեցան ։ Նայելուս պէս՝ աս երկու գիւցազները ճանչցայ, զորոնք ոչ միայն բազմութենէն այլ և իրարմէ որոշեցի ։ Հոմերոս Արիստոտէլէն աւելի բարձրահասակ էր, և աւելի գեղեցիկ տեսք մը ունէր ։ Իր տարիքին նայելով, խիստ կանգուն կը քալէր . աչքը այնպէս սուր և կենդանի էին, որ երբէք չէի տեսած ։ Արիստոտէլ շատ կը ծռէր, և ձեռքը գաւազան կը գործածէր ։ Իր դէմքը նիհար, մազերը ցանցառ (1) և բա-

(1) Սէյրէք .

րակ, և ձայնը խորին (1) էր ։ Իսկոյն իմացայ թէ ասոնք իրենց հետը եկողները ամենևին չէին ճանչնար · քանզի զանոնք ոչ տեսած, և ոչ անոնց վրայօք բան մը լսած էին ։ Ոգի մը, որուն անունը պիտի չըսեմ, ինձ մօտենալով՝ ականջիս ըսաւ · “Այս մեկնիչները ստորին աշխարհին մէջ միշտ իրենց հեղինակներէն հեռի թաղերու մէջ կը բնակին · որովհետև աս հեղինակաց միտքը անարժան կերպիւ ապագայից ներկայացընելնուն համար ամօթով և յանցաւոր ըլլալնին՝ խիղճերնին զիրենք կը տանջէ ։

Տիտիմոսը և Եւստաթիոսը Հոմերոսին ներկայացուցի, և աղաչեցի զան որ անոնց գուցէ արժանաւոր եղածէն աւելի աղէկ վարուի հետերնին · քանզի մէկէն ճանչցաւ՝ թէ անոնք բանաստեղծի մը ոգին հասկընալու չափ հանճար չունէին ։ Բայց Արիստոտէլ չկրցաւ իր համբերութիւնը զսպել, երբ Սքոթոսը և Ռամոսը իրեն ներկայացընելով, անոնց դրութեանց պատմութիւնը ըրի · և հարցուցի անոնց թէ իրենց կարգին ամեն անձինքը իրենց պէս անբա՞ն էին * ։

(1) Խորունկ կամ հաստ ձայն ։

* Տիտիմոս ու Եւստաթիոս՝ Հոմերոսի բանաստեղծու-

Այնուհետեւ կառավարիչը աղաչեց, որ Տէքարթը և Կասսէնտին կանչէ, ու առիպեց զանոնք որ իրենց դրութիւնները Արիստոտէլի բացատրեն։ Աս երեքէն փիլիսոփան յայտնի ճանչցաւ բընական փիլիսոփայութեան մէջ ունեցած սխալանքը, վասն զի միշտ կարծիքական կամ ենթադրական սկզբան կը հետեւէր, ինչպէս որ ամէն մարդիկ այնպէս պարտին ընել։ Արիստոտէլ հաստատեց թէ Կասսէնտիին Էպիկուրեան վարդապետութիւնը*, զոր կրցածին չափ ընդունելի ըրեր էր, և Տէքարթին աշխարհի դրութիւնը հաւասարապէս հերքելի էին։ Չդիչ դրութեան համար նոյն բանը գուշակեց, զոր արդէն գիտնականք այնչափ եռանդով կը հաստատեն։ «Բնութեան նոր դրութիւնները, ըսաւ, ուրիշ բան չեն, այլ միայն նորելուկ ձեւեր.

թիւնները սխալ և անհաւատարիմ կերպով թարգմանեցին. և Աքուինաս ու Բաքոն՝ Արիստոտէլի փիլիսոփայութեան վրայ մեկնիչնան համար հոն կը նախատուին։

*Էպիկուրեան վարդապետութիւնը կ'ուրանար հոգւոյն անմահութիւնը. աստուածները՝ թէպէտ գերբնական՝ բայց երկրի վրայ անհոգ կ'ընդունէր. նախախնամութեան չէր հաւատար, ու ո՛չ ալ ստեղծագործութիւնը կը հերքէր։

որոնք ամեն դարու մէջ փոփոխութիւն պիտի ստանան. և դրութիւնները մաթեմաթիգական վկայութեամբ ցուցընել ու դոգմերն իսկ քիչ ժամանակի համար պիտի ծաղկին, ու շուտով պիտի մոռցուին »:

Հինգ օր շարունակ ուրիշ շատ նախնի գիտնականաց հետ խօսակցելով անցուցի, և Հռովմայեցի կայսերաց մեծ մասը տեսայ: Այնու հետև կառավարիչը աղաչեց որ մեզ ճաշ մը պատրաստելու համար Հէլիօկապալոսին խոհարարները կանչէ, բայց անոնք նիւթոց պակասութեանը համար չկրցին իրենց ամեն ճարտարութիւնները մեզ ցուցընելու: Ագէզիլաոսին մէկ ատրուկը Սպարտացւոց արգանակ մը շինեց, բայց միայն մէկ դրգալ կրցի ուտել անկէ:

Ինծ ընկերացող երկու պարոնները իրենց մասնաւոր գործոցը համար երեք օրէն վերադառնալու պարտաւորեալ ըլլալնուն, ես նոյն օրերը՝ թէ՛ մեր և թէ Եւրոպիոյ ուրիշ երկիրներուն մէջ վերջին երկու կամ երեք դարէ ի վեր մեռեալ երևելի անձերէն մէկ քանին տեսնելով անցուցի: Մանաւանդ՝ նախնի գեր-

դաստաններ տեսնելու միշտ մեծ փափաք ունեցած ըլլալուս համար՝ կառավարիչը աղաչեցի որ մէկ կամ երկու երկոտանեակ Թագաւորներ կանչէ իրենց ութը կամ ինը նախնի ազգատոհմներուն հետ միատեղ· բայց ցաւալի է անակնունելի կերպիւ յոյսս դատարկ ելաւ ։

Ինչու որ փոխանակ Թագակալներ տեսնելու, գերդաստանի մը մէջ՝ երկու ջութակահարներ, երեք իգասէր պալատականներ, և մէկ Իտալացի եկեղեցական առաջնորդ մը տեսայ ։ Ուրիշ գերդատանի մը մէջ՝ մէկ սափրիչ, մէկ աբբայ, և երկու կարտինալ տեսայ ։ Պսակաւոր գլխոց համար ունեցած խիստ մեծ յարգանքս չներեր որ այսպիսի փափուկ նիւթի մը վրայ երկարօրէն խօսիմ, սակայն՝ կոմսերու, մարքէզներու, դուքսերու, և ասոնց նմաններուն այնչափ զգուշութիւն չըրի ։ Ճշմարիտը՝ խիստ գոհ եղայ երբ այնպիսի դիմաց մասնաւոր գծագրութիւններ տեսայ, որով քանի մը գերդաստաններ իրենց սկիզբէն ի վեր կը ճանչցուէին ։

Յայտնի տեսայ Թէ ինչո՛ւ գերդաստան մը երկար ծնօտ ունէր, ինչո՛ւ այն ինչ գերդաստանին մէջ՝ մինչև երկու սե-

րունդ՝ նենգաւորներ, և մինչև չորս սե-րունդ՝ յիմարներ կը գտնուէին։ Ինչո՛ւ գերդաստան մը ճաթած-ուղեղ(1), և ուրիշ մը գող էին։ Ասոր համար ըսած է Փոլիտոր Վիրգիլիոս երևելի տան մը համար թէ՝ "Չի՛ք ի նմա մարդ արի, և ոչ կին առաքինի"։

Իմացայ թէ ի՛նչպէս անգթութիւնը, վատասրտութիւնը, և խաբէութիւնը քանի մը գերդաստանաց յատուկ նը-շանները եղած էին՝ իրենց ազգատոհմա-կան նշանաց պէս։ Տեսայ այն անձը, որ գաղղիական ախտը ազնուական տան մը մէջ մտցուցեր էր, որ խուլական ելուն-դներու ձեռով ցեղէ ի ցեղ կը մշտըն-ջենաւորէր։ Աս ամէն ըսածիս վրայ ա-մենևին չզարմացայ, երբ տեսայ որ ազ-գատոհմական կարգին մէջ մանկլաւիկ-ներ, սպասաւորներ, կառավարներ, ար-բանեակներ, խաղամոլներ(2), ջութա-կահարներ, նուագահարներ, նաւա-պետներ, և քսակահատներ մտած էին։

Արդի պատմութեան մէջ անտանձներս բոլորովին զզուեցուցին զիս։ Երբ հարիւր տարի առաջ՝ իշխանաց պալատներուն մէջ մեծ համբաւ ունեցող անձինքը ճըշ-

(1) Թեթևսոլիկ. յիմար. (2) Գումարպազ.

գիւ քննեցի, տեսայ թէ աշխարհս ո՛րչափ խաւարեր էր անիրաւ մատենագրաց ձեռքովը, որոնք պատերազմական ամենամեծ յաղթութիւնները՝ վատասրտաց, ամենիմաստ խորհուրդները՝ յիմարաց, հաւատարմութիւնը՝ փաղաքշողաց, առաքինութիւնը՝ հայրենիքը մատնողաց, բարեպաշտութիւնը՝ անաստուածոց, համեստութիւնը՝ սոդոմականաց, և ճըշմարտութիւնը՝ բանսարկուաց ընծայեր են։ Ո՛րչափ անմեղ և պատուական անձինք կաշառակուրծ պաշտօնէից խարդախութեամբը ի մահ և յաքսորս դատապարտուեր էին․ ո՛րչափ սրիկաներ՝ չոհուէս, պատուաւոր, զօրեղ և հաւատարմութեան արժանի մեծամեծ պաշտօններու հասեր էին․ ո՛րչափ պոռնիկներ, կաւատներ (1), հացկատակներ, և խեղկատակներ՝ ծերակոյտներու, ժողովներու, և ատեաններու մէջ ազդեցութիւն ունէին, և անոնց մէջ պատահած դէպքերուն և առաջարկութիւններուն ո՛րչափ մեծ մաս ունէին։ Ո՛հ, ո՛րչափ մարդկային իմաստութեան և անճարատութեանը վրայ նուաստ կարծիք ունեցայ, երբ աշխարհիս երևելի ձեռնարկութեց

(1) Ցոփի համբու միջնորդ ։

և յեղափոխութեանց պատճառներն ու արդիւնները ճշդիւ տեղեկացայ ։

Արտաքեայներ կամ գաղտնի պատմութիւններ գրել ուզողներուն յիմարութիւնն ու ննջութիւնը տեսայ , որոնք բաժակ մը թեյնով այնչափ թագաւորներ գերեզման կը դրկեն , այս կամ այն թագաւորին՝ իր առաջին պաշտօնեային հետ ըրած խօսքը առանց լսելու կը պատմեն · տէրութեան ատենադպրաց և դեսպանաց դահլիճները կը բանան , և անոնց խորհրդոցը մէջ՝ կը թափանցեն · բայց դժբաղդաբար միշտ կը սխալին ։

Աշխարհս ղալմաղցնող քանի մը երևելի դիպուածոց ճշմարիտ պատճառները իմացայ , և տեսայ թէ ինչպէս պոռնիկ մը կրնայ կառավարել իր գաղտնի սենեակը , գաղտնի սենեակը՝ ժողով մը , ու ժողովը՝ ծերակոյտ մը ։

Զօրապետ մը առջիս խոստովանեցաւ թէ իր վեհերոտութեամբն ու յոռի մարմանքովը միայն յաղթութեան պատճառ եղաւ · և ծովապետ մը ըսաւ թէ ակամայ թշնամին զարկաւ , որուն իր նաւատորմիղը մատնելու դիւրութիւն ունէր ։ Երեք թագաւորներ յայտնեցին ինծի թէ իրենց թագաւորած ատեն՝ աշխա-

նաւոր անձ մը երբեք չվարձատրեցին՝ մինչև որ իրենց հաւատարիմ պաշտօնեայն զիրենք չխաբէր, և ոչ իսկ կ'ուզէին վարձատրել, թէ որ նորէն աշխարհ գալու ըլլային. և կը հաստատէին թէ արքայական աթոռ մը առանց կաշառակերութեան չկրնար հաստատ մնալ. որովհետև առաքինութեան՝ մարդուս տուած այն հաստատուն, հաւատարիմ, և անընկճելի բնութիւնը հասարակաց գործոց մէջ անջէնաւոր արգելք մ'է։

Ճեպաքրքրութենէ շարժեալ՝ մասնաւոր կերպով մը հարցուցի՝ թէ ինչ ճամբով այնչափ մարդիկ մեծամեծ տիտղոսներ և այնչափ անբաւ հարստութիւններ ստացած են։ Սակայն օտարականները անգամ չվշտացընելու համար, առանց ներկայ ժամանակը խառնելու՝ հարցմունքս խիստ մօտաւոր ժամանակի մէջ սահմանեցի. քանզի կը յուսամ որ ընթերցողս ինքնիրեն կ'իմանայ թէ աս նիւթին վրայ ըսածներս ամենևին հայրենեացս վերաբերել չէ դիտաւորութիւնս։ Բազմաթիւ անձինք կանչուեցան, և շատ թեթև քննութենէ ետև՝ այնպիսի խայտառակութեան տեսարան մը բացուեցաւ առջիս, որուն վրայ առանց ցա-

ներու չեմ կրնար խորհիլ։ Երդմնազան-
ցութիւնը, հարստահարութիւնը, հը-
րապուրանքը, նենգութիւնը, կաւա-
տութիւնը, և ասոնց նման ծանակու-
թիւնները իրենց մեծութեան հասնելուն
ամենաթեթև միջոցներն էին. Բայց երբ
ոմանք խոստովանեցան թէ իրենց մեծու-
թիւնը և հարստահարութիւնը սոդոմա-
կանութենէ և ազգապղծութենէ էին,
ոմանք՝ իրենց կանանց և դստերաց պո-
ռընկութենէն, ոմանք՝ իրենց հայրենիքը
կամ թագաւորը մատնելէն, ոմանք՝
ուրիշները թունաւորելէն, և շատերը՝
անմեղը կորսնցընելու համար արդարու-
թենէ խոտորելնէն. ուստի՝ կը յուսամ
որ կը ներեն ինծի՝ եթէ բարձրաստիճան
անձանց յարգանքը քիչ մը պակսեցընե-
լու համարձակիմ, զորոնք բնականաբար
կը պատուեմ, ինչպէս որ մեզ նման ի-
րենց ստորինները պէտք են զանոնք յար-
գել անոնց բարձր արժանաւորութեան-
ցը համեմատ։

Թէ իշխանաց և թէ հայրենեաց հա-
մար եղած մեծամեծ ծառայութեանց
վրայօք շատ անգամ կարդացած ըլլալուս՝
ուզեցի աս պաշտօնները կատարող ան-
ձինքը տեսնել. բայց պատասխանեցին

ինձ թէ անոնց անունները արձանագրաց մէջ չեն գտնուիր, բաց ի մէկ քանի անձանց անուններէն, զորոնք պատմագիրք իբր ամենավատ մատնիչ, և գող յիշատակեր էին. իսկ միացածներուն վրայօք ամենևին բան մը չլսեցի։ Աս միացուած բոլոր անձինքը երևան ելան՝ գէմքերնին տխուր, և զգեստնին պատռտած. անոնց մեծ մասը ըսին ինձ՝ թէ աղքատութեան և թշուառութեան մէջ մեռան, ու միացածներէն ոմանք կախաղան, և ոմանք գլխատաբեմը (1) ելան։

Անոնց մէջ մէկը կար, որուն գլուխն եկածը քիչ մը արտառոց երևցաւ ինձ, և իր քովը գրեթէ տասն և ութը տարեկան երիտասարդ մը կանգներ էր. «Երկար տարիներ, ըսաւ ան, նաւու մը հրամանատար էի, և Ակտիոմի ծովային պատերազմին մէջ Թշնամիին տորմիղին ձախակողը խորտակեցի, երեք նաւեր ընկղմեցի, և մէկ նաւ բռնեցի. աս եղաւ Անտոնիոսին փախչելուն, և իմ յաղթութեանս միակ պատճառը. և աս քովըս կանգնողը անդրանիկ զաւակս է, որ ան պատերազմին մէջ մեռաւ։ Պատե-

(1) Գլխատութեան բեմ, ղաթլկեահ։

րազմը վերջանալէն ետև՝ հատուցում մը առնելու յուսով Հռովմ գացի , Օգոստոսի* ատեանին Թախանձանք ըրի որ այն աւելի մեծ նաւը , որուն հրամանատարը սպաննուեր էր , ինծ տրուի · բայց իմ այս պահանջմանս ականջ չդընելով՝ աս պաշտօնը այնպիսի երիտասարդի մը տուին , որ դեռ ծովը անգամ տեսած չէր ։ Աս երիտասարդը՝ կայսեր տարփածուներուն մէկին Լիպէրթինա սենեկապետին զաւակն էր · Երբ նաւս դարձայ , իբր թէ պարտքս չկատարելուս համար ամբաստանեցին զիս , և նաւուս հըրամանատարութիւնը Փըպլիքօլա անուն երկրորդ ծովապետին սիրելի մանկլաւիկին յանձնեցին · Աստ վրայ՝ Հռովմէն շատ հեռի ողորմելի ագարակի մը մէջ առանձնացայ , ուր կեանքս վերջացաւ ”։

Աս պատմութեան ճշմարտութիւնը ստուգելու հետաքրքրութիւն ունենալով , ուզեցի որ Ակրիպպան երևան գայ , որ ան պատերազմին ատեն ծովապետ էր · Ակրիպպան երևնալով՝ աս բոլոր պատմութիւնը ստուգեց , և այնպէս պարագաներ իսկ յաւելցուց , որոնց վրայ նա-

* Կայսր Հռովմայեցւոց ·

ւապետը պարկեշտութեամբ իր արժա-
նաւորութեան մեծ մաս ծածկեր կամ
հարեւանցի անցեր էր ։

Ապշեալ մնացի՝ երբ տեսայ թէ վարուց
ապականութիւնը այն տէրութեան մէջ
որչափ շուտ տարածեր, եւ ինչ աստիճա-
նի հասեր էր․ աս բանը՝ ուրիշ երկիր-
ներու ասոնց նման գործոց վրայ ունեցած
զարմանքս պակսեցուց, ուր ամեն տե-
սակ մոլութիւնները անկէ շատ աւելի
ժամանակ առաջ կը տիրէին, եւ առաջին
զօրապետները ամեն գովութիւնն ու ա-
ւարը բոլորովին իրենց սեփհականած է-
ին, որոնց՝ գուցէ իրենց ամենէն յետին
զինուորէն աւելի քիչ իրաւունք ունէին։

Ամեն կանչուած մարդիկը աշխարհիս
մէջ եղածնուն պէս երեւնալնուն համար,
ցաւալի սրտիւ տեսայ թէ հարիւր տա-
րիէ ի վեր մարդկային ազգը որչափ այ-
լասերեր էր մեր մէջը, ինչպէս գաղղիա-
կան ախտը իր բոլոր հետեւանքովը Ան-
գղիացիի մը դիմաց գիծերը փոխեր,
հասակը կարճեցուցեր, ջիղերը քաշեր,
մկունքը թուլցուցեր, գոյնը դեղնցու-
ցեր, եւ մարմինը մաշեր ու ապականեր
էր ։

Մեր նախնի Անգղիացի գիւղականները

անգամ տեսնել ուզեցի, որոնք ատեն մը իրենց զգեստուց, կերակրոց, և վարուց պարզութեամբը, գործոց մէջ ունեցած արդարութեամբը, ազատասիրական ճշմարիտ ոգւով, քաջութեամբ, և հայրենասիրութեամբ երևելի հանդիսացեր էին։ Աս մեռածները կենդանիներուն հետ բաղդատելով՝ խիստ ցաւեցայ, երբ տեսայ թէ աս վերջինները ինչպէս իրենց նախահարց ամեն մաքուր և պարզ առաքինութիւնները քիչ մը ստակի համար ապականեր էին, և անդամընտրութեան ատեն՝ իրենց քուէարկութիւնը ստակով ծախելով, պալատականաց ամեն մոլութիւնները և վարուց ապականութիւնները ինչպէս առեր էին։



## ԳԼՈՒԽ Թ

Հեղինակը Մաստոնետէ կը վերադառնայ . Դէպ ի Լեհկնակէի տէրութիւնը կը նաւէ : Ուր կը բանտարկուի . և անկէ արքունիքը կը տարուի : Հոն ինչպէս ընդունուիլը : Թագաւորին իր հպատակացը վրայ ունեցած մեծ գթութիւնը :

Մեր մեկնելու օրը հասնելով, Կըրպըպտըպտրիպի կառավարիչէն հրաման առի, և երկու ընկերացս հետ Մաստօնէտէ դարձայ . ուր տասն և հինգ օրէն ետև՝ Լըկէնակէ երթալու պատրաստ նաւ մը գտայ : Ես երկու պարոնները և քանի մը անձինք առատաձեռնութեամբ և մարդասիրութեամբ այս ճամբորդութես հարկաւոր եղած պաշարները պատրաստեցին, և մինչև նաւը ինձ ընկերացան .

Ամիս մը ճամբայ քաշեցի : Բայց սաստիկ փոթորիկի մը հանդիպելով, ստիպուեցանք նաւը դէպ ի հիւսիս ուղղել, որպէս զի գրեթէ վաթսուն փարսախ ընդարձակութեամբ տիրող կանոնաւոր հողմին հասնինք : 1708, Ապրիլ 21ին՝ Պըլամկնիկ քաղաքին գետին մէջ մտանք,

որ Լըկկնակկի հարաւային արեւելեան կողմը ծովեզերեայ նաւահանգիստ մ'էր : «Քաղաքէն փարսախ մը հեռու երկաթ նետելով՝ ազդանշանը քաշեցինք որ նաւուղիղ մը գայ : Կէս ժամ չանցած՝ երկու նաւուղիղ եկան , և նաւը այն ծանծաղ , ժայռոտ և վտանգաւոր տեղերուն մէջէն անցուցին , ու մեծ աւազան մը տարին , որուն մէջ նաւատորմիղ մը քաղաքին պարսպէն պարանի մը երկայնութեանը չափ հեռու ապահովութեամբ կրնար խարիսխ նետել :

Մեր նաւաստիներէն ոմանք կամ մատնութեամբ , և կամ անխոհեմութեամբ նաւուղիղներուն հասկըցուցին՝ թէ ես շատ երկիրներ պտըտող օտարական մը եմ : Ասոնք մաքսատան պաշտօնեայի մը իմացուցին որ ցամաքը ելած ժամանակս՝ զգուշուք վրաս քննէ : Աս պաշտօնեայը հետս Պալնիպարպիի լեզուաւ խօսեցաւ , ինչու որ աս երկրին հետ առևտրական մեծ յարաբերութիւն ունենալնուն համար՝ ամենքը առ հասարակ , մանաւանդ նաւաստիք և մաքսաւորք , կը հասկընային : Կարճօրէն և կրցածիս չափ հաւանական ու յարմար կերպիւ պատմութիս ըրի անոր . բայց որովհետև միտքս Ճա-

փոն երթալ էր, և հոն մնալու թոյլտուութիւն ունեցող Եւրոպացիները միայն Հոլանտացիք ըլլալը գիտնալուս համար՝ հայրենիքս չյայտնելը և իբր Հոլանտացի ձևանալը հարկաւ որ դատեցի։ "Ես, ըսի պաշտօնակալին, Պալնի-պարպիի ծովեզերքը նաւաբեկութեան հանդիպելով և ժայռի մը վրայ նետուելով՝ Լափութայէն կամ Թռչող կղզիէն (որուն վրայօք շատ անգամ լսած էրան) զիս վեր առին, և հիմա կ'ուզեմ Ճափոն երթալ, ուրկէ դիւրաւ հայրենիքս կարենամ վերադառնալ"։ Պաշտօնակալը պատասխանեց ինձ. "Պէտք է որ հոս մընաս՝ մինչև որ պալատէն հրաման ընդունիմ, ուր իսկոյն պիտի գրեմ, և կը յուսամ որ մինչև տասն ու հինգ օր պատասխան առնեմ"։ Ետքը՝ առաւ զիս վայելուչ բնակարան մը տարաւ, և դըրան առջին պահապան զինուոր մը դրաւ։ Սակայն՝ ընդարձակ պարտէզի մը մէջ պտըտելու թոյլտուութիւն ունէի, և հետս քաղաքական մարդասիրութեամբ վարուեցան. ու ծախքս թագաւորէն կը հոգացուէր։ Հետաքրքրութենէ շարժեալ՝ շատ անձինք այցելութեան կուգային ինծ, որպէս զի տեսնեն հեռի և

չլսուած աշխարհէ մը եկած մէկը տեսնեն ։

Հոս նաւով եկող երիտասարդ մը իբր Թարգման վարձեցի, որ Թէև Լըկնակցի էր, բայց Մալտոնէտէի մէջ ատեն մը կեցած ըլլալուն՝ երկու երկրին լեզուները կատարելապէս գիտէր ։ Անոր միջոցաւ՝ ինձ այցելութեան եկողներուն հետ կրնայի խօսակցիլ, այսինքն հարցմունքնին հասկընալ և պատասխաններս հասկցրնել անոնց ։

Արքունիքէն սուրհանդակը գրեթէ մեր յուսացած ժամանակը եկաւ, և հրաման բերաւ որ ուղեկիցներուս հետ մէկ տեղ տասը ձիաւոր զօրաց ընկերութեամբը Թրալտրակտըպհ կամ Թրիլտրօկտրիպ (քանզի որչափ որ կրնամ յիշել՝ երկու կերպով իսկ կ'արտասանուի) տանին զիս ։ Իմ բոլոր ուղեկիցներս այն ողորմելի երիտասարդէն կը բաղկանար, որ իբր Թարգման ինձ ծառայելու քովս առեր էի ։ Խոնարհաբար աղաչելուս վրայ՝ երկուքնուս մէկ մէկ ջորի տուին որ հեծնանք ։ Մեզմէ կէս օր առաջ սուրհանդակ մը ճամբայ հանեցին, որպէս զի գալստեանս լուրը Թագաւորին տանի, և հարցընէ նորէն մեծ հաճութեան՝ Թէ

ո՛ր օրը և ո՛ր ժամը կը բարեհաճի իր պատուանդանին առջևի փոշին լիզելու պատիւը ինծի շնորհել։

Սա արքունեաց կանոնը աս էր, սակայն սովորական պարզ օրէնքը միայն ասով չէր լմննար. ինչու որ հոն հասնելէս երկու օր ետքը ներկայացած ատենս՝ հրաման ըրին որ երեսս ի վայր պառկիմ, և մինչև գահը փորիս վրայ սողալով լեզուաւս գետինը լիզեմ. բայց օտարական ըլլալուս՝ շնորհք ըրեր գետինը մաքրեր էին, որ փոշին ինծի վնաս չտայ։ Սա մասնաւոր շնորհքը ուրիշին չըլլար, բայց միայն նորին վեհափառութեան ներկայացող ամենաբարձր աստիճանաւորաց։ Բայց երբեմն իսկ դիտմամբ գետինը կը փոշոտեն, երբ ներկայացող անձը պալատին մէջ զօրեղ թշնամիներ ունենայ։ Անգամ մը՝ երևելի լորդ մը տեսայ, որուն բերանը ա՛ն աստիճան փոշիով լեցուեր էր, որ գահին մօտեցած ատեն՝ բառ մը չկրցաւ արտասանել։ Սա դժբաղդութեան դարման չկայ, բաց որում՝ նորին վեհափառութեան առջին թքնելը կամ բերանը սրբելը մահու դատապարտութեամբ արգիլեալ է։

Հոն ուրիշ սովորութիւն մը ևս կայ,

որ ամենևին չեմ հաւնիր ։ Երբ Թագաւորը քաղքը և մեղմ կերպիւ ուզէ իր աւագանիներէն մէկը սպաննել, Թիւնալի և Թխագոյն փոշի մը գետինը ցանել կուտայ, որ մարդ լեզելով քսան ու չորս ժամուան մէջ անպատճառ կը մեռնի ։ Բայց աս իշխանին մեծ գթութիւնը, և իր հպատակաց կենացը վրայ ունեցած խնամքը յայտնի ցուցընելու, մանաւանդ իրեն պատիւ ընելու համար (երանի թէ Եւրոպիոյ ինքնակալները աս մասին ասոր նմանէին) պարտիմք յիշել՝ թէ այսպիսի գործ մը կատարուելէն ետև՝ ամեն անգամ հրաման կը տրուի որ գետնին թունաւորեալ մասը աղէկ մը մաքրուի, և թէ որ ծառայք աս պաշտօնը կատարելու անհոգութիւն ընեն, արքայական պատիժը ընդունելու վտանգին մէջ կ'իյնան

Անգամ մը նորին վեհափառութիւնը հրամայեց որ իր մանկլաւիկներէն մէկը ձաղկեն (1), որովհետև գետինը մաքրել տալու կարգը իրը եղած ատեն՝ չարութ չէր իմացուցեր ․ և աս զանցառութեան համար՝ յուսատու երիտասարդ լորդ մը, որ Թագաւորին ներկայանալու եկեր էր, դժբաղդաբար թունաւորեր էր, թէև

(1) Գաւազանով ծեծել ։

ամառէն Թագաւորը զան սպաննելու դիտաւորութիւն չունէր ։ Բայց աս բարի իշխանը գթասիրտ ըլլալուն՝ աս ողորմելի մանկլաւիկին ներեց, ու պատուիրեց որ աս պակասութիւնը առանց իր մասնաւոր հրամանին ուրիշ անգամ չընէ։

Դանք նոյէն ինծի․ երբ սողալով մինչեւ չորս կանգուն հեռաւորութեամբ գահին ներկայացայ, մեղմով մը ծունկի վրայ եկայ, և ճակատս եօթն անգամ գետինը զարնելէն ետեւ՝ աս հետեւեալ խօսքը արտասանեցի, որոնք գիշեր մը առաջ ինձ սորվեցուցեր էին․ [illegible] ։ Ահա այսպէս է երկրին օրինացը համեմատ Թագաւորին ներկայացող ամեն մարդու ընելու մեծարանքը ։ Եւ աս խօսքը այսպէս կը թարգմանուի․ “ Հաճեցի ձեր երկնային վեհափառութիւնը երկարել ի կեանս մետասան և կէս լուսնի առաւել քան զարև ” ։ Թագաւորը ինծի պատասխան մը տուաւ, թէպէտեւ ես չկրցի հասկընալ, բայց աս պատասխանը տուի, ինչպէս որ սորվեցուցեր էին ինծի․ [illegible], որ կը նշանակէ թէ “Ե-

զուս բարեկամիս բերնին մէջն է”։ Ես խօսքով կ'ուզէի հասկըցընել թէ թարգմանիս գալը կը փափագիմ. ասոր վրայ՝ յիշեալ երիտասարդը ներս մտցուցին. որուն միջոցաւ՝ նորին վեհափառութեան շարունակ կէս ժամէն աւելի ինծի ըրած ամեն հարցմանց պատասխանը տուի։ Ես Պալնիպարպեան լեզուաւ կը խօսէի, ու ան Լըկկնակկի լեզուաւ կը թարգմանէր։

Թագաւորը խօսակցութեանս շատ հաւնելով՝ հրամայեց իր պլիֆֆմարքլըպին, այսինքն՝ իր մեծ սենեկապետին, որ ինծի և թարգմանիս համար իր պալատին մէջ բնակարան մը պատրաստէ, միանգամայն և օրական պարէն, ու մանր մունր ծախուցս համար մէկ մեծ կտոր ոսկի տայ։

Երեք ամիս աս երկրին մէջ մնացի նորին վեհափառութեան կատարեալ հընազանդութեանը տակ, որ զիս մեծապէս պատուելու, և շատ պատուաւոր խոստմունք ընելու բարեհաճեցաւ։ Բայց ես աւելի խոհեմութիւն և արդարութիւն սեպեցի հայրենիքս դառնալ, ու կնոջս և ընտանեացս հետ ապրիլ։



## ԳԼՈՒԽ Ժ.

Լըկնակկեցւոց վրայ գովեստ։ Սթրըլտբրըկաց մանաւոր նկարագրութիւնը։ Այս նիւթիս վրայօք հեղինակին և ուրիշ երևելի անձանց մէջ եղած խօսակցութիւնը։

ԼԸԿՆԱԿԿՑԻՔ քաղաքավար և ազնիւ անձինք են, և թէպէտ արևելեան ամէն ազգաց մանաւոր հպարտութենէն բոլորովին անմասն չեն, այսու ամենայնիւ ազնուութեամբ կը վարուին օտարականաց հետ, և մանաւորապէս արքունեաց սիրելիներուն հետ։ Շատերուն՝ մանաւանդ երևելիներուն հետ տեսնուեցայ, և թարգմանիս միջոցաւ անոնց հետ ըրած խօսակցութիւնս հաճելի եղաւ։

Օր մը՝ ընկերութեան մը մէջ՝ երևելի մէկը հարցուց ինծի թէ իրենց Սթրըլտբրըկները կամ անմահները տեսած եմ։ Պատասխան տուի թէ տեսած չեմ, և աղաչեցի որ ինծի մեկնէ՝ թէ մահկանացու-առեղծուածի մը աս անունը տալով ինչ ըսել կ'ուզէր։ "Երբեմն՝ թէ և շատ քիչ անգամ, ըսաւ, գերդաստանի մը մէջ

չուակ մը կը ծնի, որուն ճիշդ ձախ յօնքին վրայ կարմիր և կլոր պիսակ մը կ'ըլլայ, և ասկէ կը ճանչցուի թէ ան երբէք պիտի չմեռնի ։ Այս պիսակը՝ ի սկզբան գրեթէ մեր արծաթեայ երեք փէննոցի մեծութիւնը ունի, բայց ժամանակէ ետև՝ կը մեծնայ ու գոյնը կը փոխուի · քանզի երբ տղան տասներկու տարեկան կ'ըլլայ՝ պիսակը կը կանաչի մինչև քսան և հինգ տարեկան ըլլալը, ու անկէ ետև՝ մթին կապոյտ կը փոխուի ։ Քառասուն և հինգ տարեկան եղած ատենը՝ ածխային սև կ'ըլլայ · և չէնկլի չափ կը մեծնայ · բայց անկէ ետև ուրիշ փոփոխութիւն չստանար ։ Այսպիսի տղայք այնչափ քիչ կը ծնին, որ բոլոր տէրութեանը մէջ չեմ կարծեր թէ հազար հարիւր թէ արու և թէ էգ Ստրըլտպրըկներէն աւելի գտնուին · որոնց գրեթէ յիսունը մայրաքաղաքին մէջն են, և հոն գրեթէ երեք տարեկան երիտասարդ աղջիկ մը կայ ։ Ասոնք մասնաւոր գերդաստաններէ ծնելու սեպհականուած չեն, այլ ըստ դիպուաց կը ծնին, և Ստրըլտպրըկաց զաւակներն իսկ միւս ժողովրդոց պէս մահկանացու են"։

Շխոտակը աս պատմութիւնը չափազանց ուրախութիւն պատճառեց սրտիս, և ինչպէս որ զան պատմողը Գաղ̃իպարպի լեզուն գիտէր, ու ես իսկ շատ աղէկ գիտէի, գուցէ քիչ մը չափազանց կերպիւ զարմանքս անոր յայտնեցի, և իբր յափշտակեալ մտօք բացագանչեցի․ “Երանիկ ազգ, զոնէ քու որդիքդ անմահ ըլլալու բաղդը կրնան ունենալ։ Երջանիկ ժողովուրդ, որ վաղեմի առաքինութեանց այսչափ կենդանի օրինակները կը վայելես, և անցեալ դարուց գիտութեամբը քեզ կրթող ուսուցիչները ունիս։ Բայց քանի՜ անհամեմատ երջանիկ են աս ազնիւ Անգղիացիները, որ մարդկային բնութեան ընդհանուր եղած չարիքէն ազատ ծնելով, մտքերնին մահուան երկիւղէն ծագած այն մտատանջական ծանրութեամբ բեռնաւորած չէ։ Ինչ զարմանք որ աս անուանի անձերէն արքունեաց մէջ չեմ տեսած․ քանզի թէ որ ան ու պիտակը պալատականաց ճակատին վրայ ըլլար, անշուշտ պիտի տեսնէի։ Ինչպէս կրնայ ըլլալ որ նորին վեհափառութիւնը՝ որ կորովամիտ իշխան մ՚է, այսպիսի իմաստուն և կարող խորհրդականներ չունենայ։ Սակայն՝ գուցէ աս պատուելի ծե

րոց առաքինութիւնը՝ արբունեաց ազատ և ապականեալ վարուց հետ երբեք չի համաձայնիր, և փորձով շատ անգամ կը տեսնենք թէ երիտասարդները խիստ յամառ և փափուկամիտ ըլլալնուն՝ չեն ուզեր իրենցմէ մեծերուն բարի խրատուցը համեմատ վարուիլ”։ Ի վերայ այսր ամենայնի՝ որովհետև թագաւորը բարեհաճեր էր ինծի թոյլտուութիւն ընելու որ իրեն ներկայանամ, աս նիւթիս վրայօք ունեցած կարծիքս առջի ներկայացած օրս՝ թարգմանիս միջոցաւ երկարօրէն և համարձակ խօսիմ իրեն․ և աս խորհուրդս եթէ ընդունի և եթէ ոչ, իր երկրին մէջ Միւղու համար նորին մեհափառութեան շատ անգամ ինձ ըրած հրաւէրը մեծ շնորհակալութեամբ ընդունիմ, որպէս զի իմ բոլոր կեանքս աս գերագոյն էակաց՝ այսինքն՝ «Իըըլպպըը-նաց հետ անցընեմ, թէ որ բարեհաճին զիս իրենց մէջ ընդունելու”։

Պալնիպարպի լեզուաւ հետս խօսող պարոնը պատասխանեց ինձ այնպէս ժպիտով մը, որ սովորաբար յիմարի մը վրայ գթալէն կը ծագի․ “Շատ ուրախ եմ որ հոս մնալ կ՚ուզես, բայց ներէ ինծի որ ըսածներդ ընկերութեան յայտնեմ”։

Ռուսական ամեն իրենց լեզուաւ հե-տերնին խօսեցաւ · բայց ես ըսածէն բան մը չհասկըցայ, և ոչ կրցի երեսնէն գի-տել թէ խօսքս ինչ ազդեցութիւն ըրաւ անոնց վրայ ։ Կարճ լռութենէ մը ետև՝ մի և նոյն անձը ըսաւ ինծի · «Իմ և քու բարեկամներդ շատ գոհ են՝ ան-մահութեան օգտիցը և երջանկութեան համար ըրած հանճարեղ խորհրդածու-թեանցդ վրայ · բայց շատ կը փափաքին մասնաւոր կերպիւ գիտնալու թէ ինչ տեսակ կեանք պիտի վարէիր, թէ որ բնութեամբ «ՍՏՐԸԼՏՊՐԸԿ» ծնած ըլլայիր ։

— Այսպիսի ճոխ և զուարճալի նիւթի մը վրայ խօսիլը, պատասխանեցի անոր, դիւրին բան մ'է, մանաւանդ ինծի հա-մար, որ շատ անգամ զինքս զբօսցուցած եմ երևակայելով որ՝ եթէ թագաւոր, զօրապետ, կամ երևելի լորտ մը ծնած ըլլայի, ինչ պիտի ընէի, և անմահու-թեան վրայօք իսկ շատ անգամ կը խոր-հէի թէ ինչ ընթացք պիտի բռնէի, և ինչպէս ատենս պիտի անցընէի, թէ որ յաւիտեան ապրելս ստոյգ գիտնալու ըլլայի ։

« Թէ որ «ՍՏՐԸԼՏՊՐԸԿ» ծնելու բաղդաւո-րութիւնը ունենայի, երջանկութիւնս

ճանչցածիս, և մահուան ու կենաց մէջ
եղած տարբերութիւնը հասկցածիս
պէս՝ նախ ձեռքէս եկածը պիտի ընէի
որ հարստութիւն ժողվեմ, փառն որոյ՝
խնայողութիւն և բարի գործածութիւն
ընելով իրաւամբ կրնայի յուսալ թէ՝
երկու հարիւր տարուան մէջ տէրու-
թեան ամէնէն հարուստ մարդը ըլլամ։
Անկէ զատ՝ իմ առջի տարիներէս սկսե-
լով, արուեստից և գիտութեանց պիտի
պարապէի, որ օրին մէկը գիտութեան
մէջ ամէնքը գերազանցէի։ Վերջապէս
հասարակութեան մէջ պատահած ամեն
երևելի գործերը և դիպուածները զգու-
շութեամբ պիտի նշանակէի. իրար յա-
ջորդող իշխանաց և տէրութեան պաշ-
տօնէից զանազան բնութիւնները անա-
չառութեամբ և ամեն կէտի վրայ դի-
տողութիւն ընելով՝ պիտի նկարագրէի.
լեզուաց, սովորութեանց, նորելուկ
զգեստուց, կերակրոց, և զբօսանաց ա-
մեն տեսակ փոփոխութիւնները ճշդիւ
պիտի գրէի, և բոլոր աս հանճարոյս
իմաստութեան և գիտութեան անբաւ
գանձ մը պիտի ըլլայի, և անշուշտ ազ-
գին պատգամը։
« Վաթսուն տարեկան ըլլալէն ետև՝

երբէք պէտք չկարգուէր, հիւրընկալու-
թեամբ՝ բայց դարձեալ խնայողութիւն
պէտք ապրէր. յուսատու երիտասար-
դաց միտքը կրթելու և ուղղելու պէտք
ջանայի՝ իմ գիտութիւններովս զանոնք
համոզելով, ու թէ առանձին և թէ
հասարակ կենաց մէջ առաքինութեան
պիտանաւորութեանը վրայօք անթիւ օ-
րինակներ ցուցընելով անոնց. Բայց իմ
ընտիր և հաւատարիմ ընկերներս՝ իմ
անմահ եղբարքս պէտք ըլլային՝ ամենէն
վաղեմի դարերէն մինչև իմ ժամանակա-
կից դարուս անձերէն տասներկու հոգի
ընտրելով. Թէ որ անոնց մէջ կարօտներ
գտնուէին, իմ կալուածքիս մօտ՝ անոնց
յարմար բնակարաններ պէտք տայի. ա-
նոնցմէ ոմանք միշտ սեղանս պէտք առ-
նէի և քանի մը խիստ երևելի մահկա-
նացուք պէտք հրաւիրէի, որոց մահուան
վրայ քիչ կամ ամենևին չցաւելու պէտք
սովրէի՝ անոնց ապագայէն հետ նոյն
կերպիւ վարուելով, ճիշդ ան մարդուն
պէս, որ իր պարտէզին կակաջներուն և
շահոքրամներուն տարեկան փոփոխութիւնը
կըզգօնու՝ առանց անցեալ տարուան
չորցածներուն վրայ ցաւելու.

«Ժամանակին ընթացքը մէջ մեր ը-
նելու գիտողութիւնները և յիշատա-

կութիւնները փոփոխակի իրարու պէտք հաղորդէինք, աշխարհիս մէջ աստիճանաւ յառաջադիմութիւն գտնող ամէն վարուց ապականութիւնները պէտք գիտէինք, և անոնց ամէն մէկ քայլափոխին դէմ պէտք դնէինք մահկանացուաց շարունակ ազդարարութիւններ և խրատներ տալով, և մեր բուն օրինակին հզօր ազդեցութեամբը մարդկային սեռին օր օրէ վրայ վատթարանալը պէտք արգիլէինք· որուն համար ամէն դարու մէջ այնչափ իրաւամբ տրտունջ եղած է։

“Ի՛նչ հաճութիւն պէտք զգայինք· երբ տէրութեանց և կայսերութեանց զանազան դարձուածքը, վերին և ստորին աշխարհաց փոփոխութիւնները, հինօրեայ քաղաքաց աւերակ դառնալը, անծանօթ գիւղերուն՝ թագաւորաց բընակարան ըլլալը, անուանի գետոց՝ ծանծաղ վտակներու փոխուիլը, Ովկիանոսին՝ մէկ եզրէն քաշուելով միւսին վրայ յորդիլը, դեռ անծանօթ շատ երկիրներու գտնուիլը, բարբարոսութեան՝ լուսաւորեալ ազգաց վրայ տիրելը, և խիստ բարբարոս ազգաց կրթուիլը տեսնէինք։ Ունատեն՝ աշխարհագրական երկայնութեան, աշխարհիս անդադար շարժման,

ընդհանուր դեղին և ուրիշ շատ նոր գիւտերու գտնուիլը, և յետին կատարելութեան հասնիլը պիտի տեսնէինք։

"Աստղաբաշխութեան մէջ ինչ զարմանալի գիւտեր պիտի գտնէինք մեր երկայնակեցութեամբը, մեր գուշակութիւնները հաստատելով, գիսաւորաց ընթացքն ու դարձը, աստեղաց, արեւուն և լուսնին շրջանաց փոփոխութիւնները գիտելով"։

Ուրիշ շատ նիւթոց վրայ ընդարձակօրէն խօսեցայ, որոնք անշուշտ անվերջ կենաց, և երկրաւոր երջանկութեան համար ունեցած փափաքէս սրտիս մէջ կը ծագէին։ Երբ խօսքս լմնցուցի, և անոր բովանդակութիւնը առաջնոյն պէս ընկերութեան թարգմանուեցաւ, Ըկկնակիցները մէջերնին երկար ժամանակ իրենց լեզուաւ խօսեցան, և իմ պատճառաւս քիչ մը ծիծաղեցան. վերջապէս խօսքս թարգմանող անձը ըսաւ ինծի. "Ընկերութիւնը կը ցանկայ որ քու ան քանի մը սխալներդ ուղղեմ, զորոնք մարդկային սեռին ընդհանուր եղած տկարութեամբը ունիս, և որոնք ներելի են։ Ստրըլտպրըկաց ծնունդը մեր երկրին յատկացեալ է միայն. քանզի աս տեսակ

անձինքը ոչ Պալնիպարպիի մէջ կը գըտ-
նուին և ոչ Ճափոնի ։ Նորին վեհափա-
ռութեան հրամանաւը յիշեալ երկիր-
ներուն մէջ դեսպանական պաշտօնը վա-
րելու պատիւը ունեցած ատենս՝ նայե-
ցայ որ աս երկու երկրին բնակիչները
հազիւ հազ աս բանիս կարելիութեանը
կը հաւատային, և առջի անգամ քեզ
պատմած ատենս՝ քու զարմանքէդ իմա-
ցայ՝ թէ բանս բոլորովին նոր և զըժ-
ուարահաւատալի երևցաւ քեզ ։ Յիշեալ
ակէրութեանց մէջ գտնուած ժամանակս՝
խօսակցութեան մէջ դիտեցի որ երկա-
րակեցութիւնը՝ մարդկային սեռին ընդ-
հանուր եղած փափաք և ցանկութիւն
մ՚է ։ Ո՞ն մարդը, որուն ոտից մէկը ար-
դէն գերեզմանին մէջն է, միւս ոտքը
կըցածին չափ ուժով գետնի վրայ հաս-
տատ բռնել կ՚ուզէ ։ Ամենէն ծերը ան-
գամ օր մը աւելի ապրելու յոյս ունի,
և մահուան վրայ իբր ամենամեծ չարիք
մը կը նայի ։ Ուստի՝ բնութիւնը անկէ
հեռանալու միշտ կը դրդէ զինքը ։ Անյայն
հոս Լըկկնակկ կղզւոյն մէջ երկար ապ-
րելու փափաքը այնչափ բորբոքեալ չէ՝
Ստրըլտպրըկոց օրինակը միշտ աչքերնին ըլ-
լալուն համար ։

« Քու ձեւացուցած կենցաղավարութիդ իրաւանց և արդարութեան հակառակ է, ինչու որ ադ բանը երիտասարդուն, առողջութեան, և ուժգնութեան մըշտնջենաւորութիւն մը կը յայտնէ, մարդ որչափ չափազանց փափաքներ ունենայ, չէ խնդրեցեր որ այսպիսի բանի մը յուսայ: Սակայն՝ մարդուս եւ ջանկութեամբ և առողջութեամբ միշտ երիտասարդ և ծաղիկ հասակին մէջ մնալ ուզելուն վըրայ չէ խնդիրնիս, այլ թէ ինչպէս պիտի անցընէ այնպիսի մշտնջենաւոր կեանք մը, որ ծերութեան ընդհանուր եղած ամէն նեղութեանց ենթակայ է: Թէեւ շատ քիչ մարդ կը գտնուի, որ այսպիսի դառն պայմաններով անմահ ըլլալու համար իր ունեցած փափաքը խոստովանի, սակայն՝ վերոյիշեալ երկու տէրութեանց, այսինքն՝ Պալնիպարպիի և Ճափոնի մէջ գիտեցի՝ թէ մահը որչափ ուշ գար, ամէն մարդ կը ցանկար որ աւելի ուշացընէ զան, և շատ քիչ անգամ լսեցի որ մարդ մը կամաւ մեռնի՝ բաց ի անտեններէ, որ սրտի չափազանց կսկիծ կամ տանջանք մը զինքը պարտաւորէ: Արդեօք հայրենեացդ և ճամբորդութիւն ըրած օտար երկիրներուդ մէջ աս

մի և նոյն միտումը և յօժարութիւնը գիտած չե՞ս”։

Աս յառաջաբանութենէ ետև՝ իրենց «Ստրըլտպրըկեաց վրայ մանաւոր նկարագրութիւն մը ըրաւ․ “Ասոնք, ըսաւ, հասարակօրէն մինչև երեսուն տարեկան ըլլալնին՝ մահկանացուաց պէս կ'ապրին, և աս հասակէն ետև՝ գամ քան զգամ մելամաղձութիւն և տխրութիւն մը վրանին կը զօրանայ, և որ ըստ օրէ մինչև ութսուն տարեկան կ'աճի ։ Ասոր այսպէս ըլլալը իրենք ինծ խոստովանած են, եթէ ոչ պիտի չգիտնայի, ինչու որ մէկ դարու մէջ անոնցմէ երկու կամ երեք հոգիէն աւելի չծնելուն համար՝ անոնց վրայ ընդհանուր գիտողութիւն մը չկրնար ըլլուիլ։

“Երբ ութսուն տարին կը լմնցընեն, որ աս երկրին մէջ յետին ծերութիւն սեպուած է, ասոնք՝ յաւիտեանս ապրելու սոսկալի մոլորութենէ՝ մահկանացուներէն շատ աւելի ամեն տեսակ յիմարութիւնները ու տկարութիւնները կ'ունենան ։ Ոչ միայն յամառ, վէս, կծծի, դէգ, անապարծ, և շաղակրատ են, այլ բարեկամութիւն ընելու անկարող են, և ընական սիրոյ զգացումին այնչափ մեռ-

ծալ է , որ իրենց Թուերէն անդին եր-բեք չանցներ : Նախանձութիւնը և ան-կար ցանկութիւնները՝ իրենց վրայ զօ-րացող կիրքն են : Բայց աս զգացմունքը գլխաւորաբար երիտասարդաց մոլու-թիւնները և ծերոց մահը տեսնելնէն կը պատճառի : Նուագներուն վրայ խոր-հելով , զուարճութեանց վայելքէն զըր-կեալ ըլլալնին կը տեսնեն , և երբ ծե-րոց թաղման յուղարկաւորութեան կ'եր-թան , անոնց գացած հանգստեան նա-ւահանգիստը երթալու ամենեւին յոյս չունենալնուն համար՝ կ'ողբան և կը կո-ծեն :

“Միա՛յն իրենց երիտասարդութեան և միջին հասակին մէջ սորվածնին միտքեր-նին կը պահեն , և այն՝ խիստ կիսկատար : Գործի մը ճշմարտութիւնը կամ բուն հանգամանքը հասկընալու համար՝ աւե-լի ապահով է միշտ ընդհանուր աւան-դութեան ապաւինիլ , քան թէ անոնց յիշողութեանը : Կ'երևի թէ դառանցու-թեան մէջ ինկողները և յիշողութիւն-նին բոլորովին կորսնցնողները այնչափ ողորմելի չեն , և ուրիշներուն գութը և օգնութիւնը աւելի կը շարժեն իրենց վրայ ․ քան որուն անմահից վրայ տես-

նուած են ամէն յոռի մոլութիւններէ ատանք չունին ։

« Երբ Փրօթէսթանները ամուսնանան, ուղղութեան օրինաց համեմատ՝ ամուսիններէն պզտիկը ութսուն տարեկան եղածին պէս՝ ամուսնութիւնը կ՚արձըկուի ։ քանզի օրէնքը օրինաւոր կը դատէ՝ թէ պէտք չէ անմեղ ուղը աշխարհիս մէջ յաւիտեան մնալու դժբաղդ դատապարտեալներուն թշուառութեանը վրայ կնոջ մը ծանրութիւնն ալ յաւելուլ ։

« Ութսուն տարին լմնցուցածնուն պէս՝ բոլոր քաղաքական իրաւանց մեռեալ կը սեպուին ։ ժառանգնին իսկոյն ստացուածնուն վրայ կը տիրեն՝ իրենց ապրուստին համար չնչին բաժին մը միայն ձգելով ։ իսկ աղքատները հասարակութեան ծախուքը կ՚ապրին ։ Նոյն հասակէն ետեւ՝ հաւատարմութեան արժանի եւ արդիւնաւոր գործոց մէջ մտնելու անկարող են ։ չեն կրնար երկիր մը գնել կամ փոխել, եւ քաղաքական ու յանցաւորական դատերու մէջ վկայութիւն չունին ։

Իննսուն տարեկան հասակնուն մէջ՝ ակռանին եւ մազերնին կը թափին, կերածնուն համը չեն առներ, առանց ա-

խոշմակի կ՚ուտեն կը խմեն ։ Իրենց են-թակայ եղած հիւանդութիւնները ա-ռանց սաստկանալու կամ նուազելու կը շարունակեն ։ Խօսելու ատեն՝ ամեն բա-նի, մարդոց, և մինչև իրենց ամենամօտ ազգականաց և բարեկամաց անունները կը մոռնան ։ Այս պատճառաւ կարդալով երբեք չեն կրնար զբօսնուլ, որովհետև յիշողութիւննին չներեր որ խօսք մը սկզբէն մինչև վերջը կարդալով, մտ-քերնին պահեն, միայն աս զբօսանքը կրնային ունենալ, բայց աս պակասու-թեան համար անկէ ալ զրկուած են ։

“Այս երկրին լեզուն միշտ փոփոխման մէջ ըլլալուն՝ մէկ դարուն Ստրըլտպրըկնե-րը միւս դարուն Ստրըլտպրըկաց լեզուն չեն հասկընար, և երկու հարիւր տարիէն ե-տև՝ իրենց դրացի մահկանացուաց հետ խօսակցութեան մէջ չեն կրնար մտնել, բաց ի քանի մը հասարակ խօսքէ ։ ուս-տի իրենց բուն երկրին մէջ իբր օտա-րական կ՚ապրին ”։

Ասչափ որ կրնամ յիշել՝ Ստրըլտպրըկաց վրայօք բարեկամիս ըրած պատմութիւնը աս է ։ Ասկէ ետև՝ տարբեր դարերու մէջ ծնած հինգ-վեց Ստրըլտպրըկներ տե-սայ, որոնց ամենէն փոքրը երկու հարիւր

տարեկանէն աւելի չէր · սակայն քանի մը անգամ քովս եկան, և թէպէտ բաւեցաւ իրենց թէ ես շատ ճամբորդութիւն ըրած և ամէն աշխարհ տեսած եմ, սակայն կ'երևէր թէ բան մը հարցընելու ամէնևին հետաքրքրութիւն մը չունէին, միայն կը խնդրէին որ «Սլըմսքըտաշ», այսինքն յիշատակի համար պարգև մը տամ իրենց, որ մուրացկանութենէ, և օրէնքէ փախչելուն համեստ կերպն է · որովհետև մուրացկանութիւնը խստութեամբ արգիլեալ է անոնց, և իրենց պետութեան կողմանէ կը հոգացուի թէ և լաւ ը շատ հէքութեամբ.

Ասոնք ամէն տեսակ մարդոցմէ կ'ատուին ու կ'անարգուին : Երբ «Ստրըլտպրուգ» մը ծնի՝ չար գուշակութիւն մը կը համարուի, և իրենց ծնունդը մեծ զգուշութեամբ կ'արձանագրուի, որպէս զի անոնց տարիքը գիտնալ ու գրքը արձանագրութեանց մէջ գտնէ : Ասոնց արձանագրութիւնները հազար տարիէն աւելի չեն կրնար պահուիլ, և կամ ժամանակէն առաջ՝ թէ քաղաքական ապստամբութեան պատճառաւ և թէ օդին ազդեցութեամբը կ'ոչնչանան · բայց երբ անոնց քանի տարեկան ըլլալը հաշուելու

ուղէն , սովորաբար անոնց կը հարցը-նեն՝ թէ որ երևելի թագաւորը կամ որ երևելի անձը կրնան յիշել , և ետքը պատմութեան մէջ կը նային · ինչու որ տարակոյս չկայ թէ իրենց ութսունե-րորդ տարին անցընելէն ետև՝ այն իրենց յիշած իշխանը իր թագաւորութիւնը սկսած է ։

Անոնց դէմքը չափազանց տաղտկալի էր , և կանայք մարդոցմէ շատ աւելի սոսկալի տեսք մը ունէին ։ Բաց աստի յետին ծերութեան սովորական տգեղու-թեանը վրայ՝ իրենց տարիքնուն համե-մատ այնպիսի ձիւաղական ահռելի տեսք մը յաւելցած է , որ նկարագրելը անկա-րելի է ։ Ես անոնց վեցին մէջէն աւելի ծերը որը ըլլալը իսկոյն գտայ , թէև ա-նոնց տարիքին մէջ մէկ կամ երկու դա-րէ աւելի տարբերութիւն չկար ։

Ընթերցողը դիւրաւ կրնայ հաւատալ թէ բոլոր աս լսածիս ու տեսածիս վրայ՝ կենաց մշտնջենաւորութեան համար ու-նեցած սաստիկ փափաքս որչափ պակսե-ցաւ ։ Սկսայ իրաւցընէ իմ ձևացուցած ան զուարճալի երևակայութեանցս վրայ ամչնալ · ուստի մտքէս ըսի թէ բռնաւոր մը չկրնար այնպիսի անգութ մահ մը հը-

ճարել, որուն՝ աս կեանքէն աւելի հաճութեամբ չդիմէր : Թագաւորը աս նիւթիս վրայ իմ եւ բարեկամացս մէջ եղած բոլոր խօսակցութիւնը լսելով, եւ մեծ հաճութեամբ զիս ծաղրելով, հրաւիրեց զիս որ զոյգ մը Լիլիպուտցիներ ղրկեմ հայրենիքս, որպէս զի մեր ժողովուրդը մահուանէ ունեցած վախը փարատէ : Բայց աս բանս կ՚երեւի թէ տէրութեան հիմնական օրինօք արգիլեալ էր, եթէ ոչ՝ զանոնք տանելու ծախքը եւ նեղութիւնը մեծ սիրով յանձն պիտի առնէի :

Աս տէրութեան մէջ Լիլիպուտցւոց վերաբերեալ օրէնքը խիստ զօրեղ իրաւանց վրայ հիմնեալ է, եւ այսպիսի պարագայից մէջ ո՛ր եւ իցէ երկիր մի եւ նոյն օրէնքը հաստատելու պիտի պարտաւորէր : Ապա թէ ոչ՝ ծերութեան անժխտելի հետեւանքը ագահութիւնը ըլլալուն համար՝ աս անմահները ժամանակաւ բոլոր ազգին ստացուածոցը տէր պիտի ըլլային, եւ քաղաքական զօրութիւնը պիտի նուաճէին, որ անկարողաց ձեռքը անցնելով, հասարակութեան կործանմամբ պիտի վերջանար :

## ԳԼՈՒԽ ԺԱ.

*Հեղինակը Լըկնակէն կը մեկնի. և Ճափոն կ'երթայ. ուրկէ Հոլանտացի նաւ մը մտնելով Ամսթերտամ կը դառնայ. և անկէ Լոնտոն կ'անցնի։*

Կարծեմ թէ Ստրըլտպրըկաց վրայօք ըրած պատմութիւնս ընթերցողիս զբօսանք մը ըլլայ, որովհետև աս պատմութիւնս սովորականէն դուրս կ'երևի, թերևս չեմ յիշեր թէ ճանապարհորդութեանց գրքի մէջ ասոր նման բան մը կարդացած ըլլամ. և թէ որ կը սխալիմ, կ'աղաչեմ որ ներեն ինծի՝ գիտնալով որ մի և նոյն քաղաքին նկարագրութիւնը ընող ճամբորդները շատ անգամ մի և նոյն մասնաւոր նիւթոց վրայ իրարու կը համաձայնին, և երբեք չեն բամբասուիր թէ իրենցմէ առաջ նոյն քաղաքը նկարագրողներէն օրինակած են։

Ու որովհետև աս տէրութեան և Ճափոնի ահեղ տէրութեան մէջ մեծ առուտուր կայ, շատ հաւանական է որ Ճափոնցի հեղինակները Ստրըլտպրըկաց վրայ գրած ըլլան. բայց ես Ճափոնի մէջ

շատ քիչ ժամանակ մնալուս, և լեզուին ամենևին տեղեկութիւն չունենալուս համար՝ աս բանիս վրայ քննութիւն չի կրցի ընել։ Բայց կը յուսամ թէ աս իմ տուած տեղեկութեանցս վրայ՝ Խօլանտացիք բաւական հետաքրքրութիւն և յարատևութիւն պիտի ունենան աս սասին իմ պակասութիւնս լեցընելու։

Լէկինակկի Նորին վեհափառ Թագաւորը շատ անգամ ստիպած էր զիս որ իր պալատին մէջ պաշտօն մը վարելու յանձն առնում, բայց տեսնելով որ անպատճառ հայրենիքս դառնալու որոշեր եմ, բարեհաճելով հրաման տուաւ որ մեկնիմ, միանգամայն և պատուեց զիս իր ձեռօքը Ճափոնի կայսեր գրած յանձնարարական նամակով մը։ Նմանապէս չորս հարիւր քառասուն և չորս ոսկի դրամներ (աս ազգը՝ դուկ թիւերու մանաւոր սէր ունի), և կարմիր ադամանդ մը ընծայ ըրաւ, որ Անգղիոյ մէջ հազար հարիւր ֆլորի ծախեցի։

1709 Մայիսի 9ին՝ հանդիսաւոր կերպիւ Նորին վեհափառութեան և բոլոր բարեկամացս հրաժարական ողջոյնս տուի։ Ու իշխանը վեհանձնաբար հրամայեց որ գունդ մը պահապան զօրք զիս Նանկա-

էնսթալթ տանին, որ կղզւոյն հարաւա-
յին - արեւմտեան կողմը արքունական
նաւահանգիստ մ'է ։ Վեցը օր հոն մնա-
լէն ետեւ՝ Ճափոն երթալու պատրաստ
նաւ մը գտայ, եւ տասն ու հինգ օր
ճամբորդութիւն ընելէն ետեւ՝ Քսամոս-
քի հասանք, որ Ճափոնի հարաւային-
արեւելեան կողմը փոքրիկ նաւահանգիս-
տի մը անունն է ։ Քաղաքը կղզւոյն արեւ-
մտեան ծայրը նեղ կիրճի մը վրայ շինուած
էր, որուն մէջէն դէպ ի հիւսիս ծովու
երկայն բազուկի մը մէջ կ'երթուէր եւ
որուն հիւսիսային - արեւմտեան կողմին
վրայ Ետօ մայրաքաղաքը կը գտնուէր ։

Երբ ցամաքը ելայ, Լըկկնակկի թա-
գաւորէն Ճափոնի վեհափառ կայսեր
գրուած նամակը մաքսատան պաշտօնեա-
ւորաց ցուցուցի, որոնք իսկոյն նամա-
կին վրայի դրոշմէն ճանչցան զան․ ա
դրոշմին վրայ գծագրուած էր թագա-
ւոր մը, որ կաղ մուրացկանի մը ձեռ-
քէն բռնած՝ գետնէն կը վերցընէր ։ Քա-
ղաքին երեւելիները այսպիսի նամակ մը
ունենալս լսելով, դեսպանական պա-
տուով ընդունեցին զիս, Ետօ երթալու
համար կառքեր եւ ծառաներ պատրաս-
տեցին, եւ ճամբու ծախքը իրենք մա-

տակարարեցին։ Երբ մայրաքաղաքը հասայ, կայսեր ներկայանալով նամակը յանձնեցի, որ մեծ արարողութեամբ բացին, և Թարգմանի միջոցաւ կայսեր մեկնեցին զայն։ Նորին մեծափառութեան հրամանաւ Թարգմանը հարցուց ինձ թէ ինչ է խնդիրքս՝ որ կայսրը իր Լըկկնակի արքայական եղբօրը սիրոյն համար պիտի շնորհէր։

Սա Թարգմանը՝ որ Հոլանտացւոց հետ առեւտրական գործով կը պարապէր, Եւրոպացի ըլլալս իսկոյն ճանչցաւ․ ուստի կայսեր ըսածները Հոլանտերէն լեզուաւ ինձ Թարգմանեց, որն որ կատարելապէս գիտէր։ Պատասխանեցի անոր (ինչպէս որ առաջուց որոշեր էի) թէ ես Հոլանտացի վաճառական մ՚եմ, և խիստ հեռաւոր ծովու մը մէջ նաւաբեկութեան հանդիպելէն ետեւ՝ ծովային և ցամաքային ճամփորդութեամբ Լըկկնակի հասայ, և անկէ նաւ մտնելով Ճապոն եկայ, ուր գիտէի թէ հայրենակիցներս շատ անգամ առեւտուր կ՚ընեն, և կը յուսայի թէ անոնց միջոցաւ Եւրոպա վերադառնալու պատեհութիւն մը ձեռք ձգեմ։ Ասոր մեծաւ խոնարհութեամբ աղաչեցի նորին կայսերական

Աս անհամեմատ շնորհացը համար թարգմանի բերնով խորին երախտագիտութիւնս կայսեր յայտնեցի․ ան միջոցին քանի մը գունդ զօրք Նանկասաք երթալու վրայ ըլլալով՝ անոնց հրամանատարին հրաման եղաւ որ զիս աղէկ առաջնորդ հոն տանի, և խաչելութեան գործին վրայօք ծածուկ պատուէր ունէր։

1709 Յունիսի 9ին, երկար ու աշխատալի ճամբորդութենէ մը ետև՝ Նանկասաք հասայ, ուր Հոլանտացի նաւաստեաց հանդիպեցայ, որոնք 450 տակառաչափ ծանրութիւն մերցընող Ամպօյնա անուն ամուր նաւով մը Ամսթերտամէն եկած էին։ Եէտոնի մէջ ուսման պարապած ժամանակս՝ երկար ատեն Հոլանտա մնացեր էի, ուստի Հոլանտերէն աղէկ կը խօսէի։ Նաւաստիք ուրկէ գալս իմանալով, հետաքրքրութենէ շարժեալ բոլոր ճամբորդութեանցս և գլուխս եկածներուն վրայ հարցմունք ըրին․ կըրցածիս չափ համառօտ և հաւանական կերպիւ պատմութիւնս ըրի անոնց, բայց ինձ պատահածներուն մեծ մասը ծածուկ պահեցի։

Հոլանտայոյ մէջ շատ մարդ ճանչցած ըլլալուս համար՝ ծնողացս անուանց տեղ

ուրիշ սնունդներ հնարեցի . և Կուէյնզ-լէնտի նահանգին մէջ ծնած եմ ըսի ։ Նաւապետին նաւուղչէքի համար ինձմէ ուզածը (այսինքն՝ Թ·էատորս Կան-կրու ըզ մը) հաճութեամբ պիտի տայի, բայց վիրաւորեալ ըլլալս իմանալով, սովո-րական նաւուղչէքին կէսը առնելու զոհ եղաւ՝ այն դաշամբ որ ճամբան հարկե-ցած ատենը՝ արուեստս ի գործ դնեմ։

Դեռ նաւ չմտած՝ նաւաստիներէն ո-մանք կը հարցընէին՝ թէ վերոյիշեալ ա-րարողութիւնը կատարեցի՞․ ես միշտ ա-նոնց պատասխան մը կու տայի ըսելով․ «Ամէն մասնաւոր կերպիւ թագաւորը և արքունիքը գոհ ըրած եմ»։ Սակայն չար և անզգամ նաւաստի մը պաշտօնա-կալին մատնելով, և մատով զիս ցու-ցընելով, ըսաւ անոր։ «Աս մարդը տա-կաւին խաչելութեան վրայ չկոխեց»։ Բայց պաշտօնակալը՝ որ մասնաւոր հրա-ման ունէր ինձ թող տալու, ձեռքի գաւազանովը աս անզգամին ուսերուն քանի հարուած իջեցուց․ այնուհետեւ՝ այսպիսի հարցում մը ընող չեղաւ ինձ։

Աս ճամբորդութեան մէջ պատմելու արժանի բան մը չպատահեցաւ․ յաջող հովով մը մինչև Բարեյուսոյ Գլուխը

տուագատեցինք, ուր կեցանք անուշ ջուր առնելու համար ։ 1710 Ապրիլ 10ին՝ ողջ առողջ Ամսթրտամ հասանք ։ Ճամբան միայն երեք հոգի հիւանդութենէ մեռան և մէկ հոգի առաջնակայմին առագաստակալին վրայէն ծովը ինկաւ Կուինէայի մօտ ։ Լոնտոն երթալու համար փոքրիկ նաւով մը Ամսթրտամէն իսկոյն մեկնեցայ ։

Ապրիլ 16ին՝ Տոնս հասանք, և հետեւեալ առտու՝ հայրենիքս նորէն տեսայ լման հինգ ու կէս տարիէն ետև, և ցամաքը ելնելով, ուղղակի Րէտրիֆ գացի, ուր նոյն օրը կէս օրէն երկու ժամ ետև հասայ, և կինս ու ընտանիքս ողջ առողջ գտայ ։



# ՄԱՍՆ ՉՈՐՐՈՐԴ



# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

## ՅԵՐԿԻՐՆ

# ՀՕՈՒՅՀՆՀՆԱՄԱՑ

# ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

## ՅԵՐԿԻՐՆ

# ՀՕՈՒՅՀՆՀՆՄԱՑ

---

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

*Հեղինակը նաւու մը նաւապետ ըլլալով Ճամբայ կ'ելնէ․ իր նաւաստիները իրեն դէմ կ'ապստամբին, և զինքը իր խուցին մէջ երկար ժամանակ բանտարկելէն ետև՝ անծանօթ երկրի մը ծովեզրը հանելով կը թողուն։ Հեղինակը անկէ դէպ ի քաղաքը կ'երթայ։ Եահու ըսուած տեսակ մը այլանդակ կենդանեաց նկարագրութիւնը։ Երկու Հօույհնհնմներու կը հանդիպի․*

ՇԱՐՈՒՆԱԿ հինգ ամիս կնոջս ու զաւակացս քով հայրենիքս մնացի, և կրնամ ըսել թէ շատ երջանիկ կեանք մը պիտի վարէի, թէ որ աս երջանկութեան յարգը գիտցած ըլլայի։ Կինս յղի թողուցի, ու 450 տակառաչափ վերցընող Ադվէն-

ջըր անուն վաճառականի հաստատաշէն նաւու մը հրամանատարը ըլլալու շահաւէտ առաջարկութիւն մը ընդունեցի ։ Քանզի նաւարկութեան մէջ լաւ հմտութիւն ունէի, և նաւու մէջ վիրաբոյժ ըլլալէ ձանձրացած ըլլալով՝ Թ·օպէր Փըրֆօյ անուն վարպետ երիտասարդ վիրաբոյժը նաւս առի ։

1710 Սեպտեմբերի 7ին՝ Փօրսմըթհէն ճամբայ ելանք, և 14ին՝ Թ·ենէրիֆի առջին Պրիսթըլցի Փօքօք նաւապետին հանդիպեցանք, որ Քամփէչի ծոցը կ'երթար ներկափայտ կտրելու համար ։ 16ին՝ փոթորիկ մը ելնելով, իրարմէ զատուեցանք, և հայրենիքս դառնալէս ետև՝ լսեցի որ այս նաւը ընկղմեր է, և մանչնաւակ մը զատ՝ ամենքը խղդուեր են ։ Ըս նաւապետը շատ համեստ և քաջ նաւավար էր, սակայն իր կարծեացը վրայ քիչ մը յամառկոտ ըլլալուն՝ այս պակասութիւնը իր կորստեանը պատճառ եղեր էր, ինչպէս որ շատերուն եղած է ։ Թ·է որ խրատիս հետևէր, հիմա ինծի պէս ողջ առողջ իր հայրենիքը պիտի ըլլար ընտանեացը քով ։

Ճամբան՝ նաւաստեացս մէկ մասը հրատապ տենդէ մեռան, ուստի Պարպա-

տօս և Իիւարտ կղզիներէն նաւաստի ժող-
վելու պարտաւորեցայ ․ Թէև ինձ ապ-
րանք տուող վաճառականները ու կղզի-
ները հանդիպելու հրաման տուած էին ,
սակայն հանդիպելուս շատ զղջացայ ,
քանզի ետքէն իմացայ որ նաւս առած
նաւաստեացս շատը ծովահէն էին ։ Նա-
ւուս մէջ յիսուն հոգի կար , և հրա-
ման ունէի որ Հարաւային Ովկիանոսի
հետ առևտուր ընեմ , ու նոր գիւտեր
գտնեմ ։ Աս անզգամները նաւս կողոպ-
տելու և զիս բանտարկելու համար՝ միւս
նաւաստիներս գլխէ հանելով հետեր-
նին գաղտուկ միաբանեցան , և առտու
մը կատաղաբար խուցս յարձակելով ձեռ-
քերս ոտքս կապեցին ․ և սպառնացան ծո-
վը նետել զիս թէ որ դէմ դնելու ըլ-
լամ ։ “Աս , ըսի , ձեր գերին եմ , ինչ
որ կու զէք՝ կրնաք ընել” ։ Աս ըսածիս
վրայ ինձ երդում ընել տալով կապերս
արձըկեցին , միայն ոտքիս մէկը շղթայով
մը անկողնոյս մօտ կապեցին , և հրացա-
նը լեցուն պահապան մը դրանս առջին
կանգնեցուցին , հրաման տալով անոր ,
որ եթէ ազատելու փորձ մը ընեմ՝ հը-
րացանը վրաս պարպէ ։ Ինծի ուտելիք և
խմելիք տալով , նաւուն կառավարու-

թիւնը իրենք առին ։ Միտքերնին ան-
պատակ ըլլալ ու Սպանիացիները կողոպ-
տել էր, սակայն աս նպատակը ի գործ
դնելու համար աւելի նաւաստեաց կա-
րօտ էին ։ Ուստի որոշեցին որ նախ ապ-
րանքները ծախեն, և ետքը՝ Մատակաս-
քար երթան նաւաստի ժողվելու համար,
որովհետև բանտարգուելէս ի վեր ա-
նոնց շատը մեռեր էին ։ Շաբաթներով
նաւարկեցին, ու Հնդկաց հետ առև-
տուր ըրին, սակայն իրենց մէջ գոցուած
ըլլալու՝ որ կողմը երթալնին չէի գիտեր,
և ամեն վայրկեան մահէն ի զատ ուրիշ
բանի չէի սպասեր, ինչպէս որ շատ ան-
գամ աս սպառնալիքը կ՚ընէին ։

1711 Մայիս 9ին՝ Ճէյմս Ուէլզ անուն
մէկը քովս գալով, "Նաւապետին հրա-
մանն է, ըսաւ, որ քեզ ցամաքը հանեմ" ։
Շատ աղաչանք ըրի, բայց օգուտ չըրաւ,
մինչև անգամ իրենց նոր նաւապետին
ով ըլլալը չուզեց ըսել ։ Բռնութեամբ
նաւակը իջեցուցին զիս, բայց նախ թո-
ղուցին որ ամենէն գեղեցիկ զգեստներս
հագնիմ, որոնք գրեթէ նոր էին, և
փոքրիկ ծրար մը կապուեղէն հետս առ-
նեմ, բայց դաշնակէս զատ զէնք չթո-
ղուցին որ առնեմ. միայն աս քաղաքա-

վարուԹիւնք ունեցան որ գրպաններս չզննեցին, որոնց մէջն էր բոլոր ունեցած ստակս և քանի մը մանր մունր հարկաւոր բաներս ։ Կրեթէ փարսախ մը Թի քաշելնէն ետև՝ ծովեզրին խազին վրայ հանեցին զիս ։ Աղաչեցի որ ան տեղին անունը ըսեն ինծի ։ «Աղուոր կ՚ընենք Թէ քեզմէ աւելի բան մը չենք գիտեր, ըսին . միայն աս գիտենք որ նաւապետը (որուն աս անունը կու տային) ապրանքները ծախածին պէս, զքեզ առջի տեսնուած ցամաքը հանելու և գլխէն ձամբելու որոշեր էր» ։ Աս ըսելով Թիերը քաշեցին ու խրատեցին որ ծովուն մակընԹացուԹիւնը վրայ չհասած՝ անկէ հեռանամ, և մնաս բարև ըսելով գացին ։

Աս առանձնացեալ վիճակին մէջ յառաջ քալելով՝ ցամաք երկիրը հասայ, և հանգիստ առնելու համար Թումբի մը վրայ նստելով, սկսայ խորհիլ Թէ ինչ ընելը աւելի խոհեմուԹիւն է ։ Քիչ մը հանգստանալէս ետև՝ դէպ ի քաղաքը քալեցի, և միջոց գրի որ առջևս ելած վայրենիին ընծայատուր ըլլամ, և հետս ունեցած ապարանջաններէս, ապակեայ օղերէս, և ուրիշ խաղալիկներէս, ինչ-

պէս ո՛ր աս կողմերը ճամբորդութիւն ընող նաւաստիք սովորաբար հետերնին կ'ունենան, քանի մը հատ անոնց տալով կեանքս անոնցմէ գնոյ առնեմ։ Աս երկրին վրայ բազմաթիւ ծառեր կային, որոնք անկանոն կերպիւ ինքնիրենց բուսած էին. խոտը խիտ առատ էր, և վարսակ բուսած շատ դաշտեր կային։ Մեծ զգուշութեամբ քալեցի որ չըլլայ թէ յանկարծ զիս բռնեն, կամ ետևէս և կամ ո՛ր և իցէ կողմէս նետ արձակելով զիս զարնեն։ Բանուած ճամբայ մը հասայ, ուր մարդու, կովերու և ձիերու ոտից նշաններ տեսայ։ Վերջապէս՝ դաշտի մը մէջ կենդանիներ տեսայ, որոնցմէ մէկ-երկուքը ծառերու վրայ նըստած էին։

Ասոնց ձևը շատ տգեղ և այլանդակ ըլլալուն՝ քիչ մը շփոթեցայ, և զանոնք աւելի աղէկ դիտելու համար մացառքի(1) մը ետևը պահուեցայ։ Երբ անոնցմէ մէկ քանին պահուած տեղիս մօտեցան, կերպարանքնին աւելի որոշ կրցի դիտել։

Գլուխնին և կուրծքնին խիտ մազերով ծածկուած էր, ոմանցը գանգրած (2) և ոմանցը ողորկ (3). այծի նման մօրուք

(1) Օրման. (2) Գըվըրճըգ. (3) Տիւզ.

ունէին · մազերնին կռնակնէն մինչև սրունքնուն առջևի կողմը վար կախուած էին · բայց մնացած տեղերը մերկ էին , այնպէս որ մորթին թուխ և խարտեաշ գոյնը կ'երևէր : Ոտնը գաւակնուն (1) վրայ ոչ մազ ունէին և ոչ պոչ , միայն սրբաննուն բոլորտիքը մազոտ էր · կարծեմ բնութիւնը այնպէս ըրած էր զան , որ գետնի վրայ նստած ատեննին պատսպարուին , որովհետև միշտ այնպէս կը նստին , կամ կը պառկին , և կամ շատ անգամ ետևի երկու ոտքերնուն վրայ կը կանգնին ·

Սկիւրի(2) նման արագութեամբ ծառոց վրայ մագլելով կ'ելնեն , քանզի իրենց թաթերուն ճիրանները սուր , ճանկաւոր ումեղ և երկայն էին : Շատ անգամ զարմանալի արագութեամբ կը ցատկէին և ցատկռտեն : Ոտքերը սրունքներէն աւելի փոքր են , գլուխնուն մազը երկայն և ողորկ է , սակայն երեսնուն վրայ մազ չունին · իրենց սրբանին և համքին բոլորտիքէն զատ՝ իրենց մարմնոյն միւս ամեն մասը տեսակ մը աղուամազով(3) ծածկուած է : Ծիծերնին առջևի երկու-

(1) Կենդանեաց ետևի կողմը · (2) Սկիւռ ·
(3) Բարակ մազ · Թիւյ ·

թաթերուն մէջը կը կախուէին, և քալելու ատեն՝ շատ անգամ գրեթէ մինչև գետինը կը հասնէին ։ Թէ՛ արուներուն և թէ էգերուն մազերը գոյնզգոյն են, այսինքն՝ թուխ, կարմիր, սև, կամ դեղին գոյնը ունէին ։

Վերջապէս՝ բոլոր Ճամբորդութեանցս մէջ այնպէս գարշելի կենդանի մը տեսած չեմ, որու դէմ բնականաբար այսչափ ատելութիւն ունենամ ։ Ասոնք տեսնելէս ետև՝ ատելութեամբ և արհամարհանօք լցուած կանգնեցայ, և սկսայ նոյն բանուած Ճամբան շարունակել, յուսալով թէ անկէ երթալով՝ Հնդիկի տնակ մը հանդիպիմ ։ Հազիւ թէ քանի մը քայլ առի, երբ աս կենդանիներէն մէկը յանկարծ դէմս ելաւ, և ուղղակի վրաս եկաւ ։ Այս տգեղ հրէշը զիս տեսածին պէս՝ երեսը զանազան կերպիւ ծամծմուկելէն ետև, ապշեալ երեսս ի վար կը նայէր, որպէս թէ ինծի պէս բան մը երբէք տեսած չէր · ետքը՝ աւելի մօտենալով իր թաթերը վեր վերցուց, չեմ գիտեր թէ հետաքրքրութենէ՞ն էր, եթէ չարութենէ · սակայն ես դաշնակս մերկացընելով, անոր տափակ կողմովը աղէկ ծեծ մը տուի անոր · քանզի սուր կող-

մօտը համարձակեցայ զարնել, որ չըլլայ
թէ երկրացիք այն անասուններէն մէկը
մեռցընելուս կամ վիրաւորելուս համար
կատղին ։ Այս անասունք ծեծին ցաւը ըզ-
գացածին պէս՝ ետ քաշուելով, այնպէս
բարձր գոռում մը ձգեց որ իր տեսակէն
առնուազն քառասուն հատ մը միւս
դաշտերէն վազելով եկան, և ոռնալով ու
զզուելի դէմքեր ձևացընելով բոլորտիքս
խռնեցան ․ անատեն կռնակս իսկոյն ծա-
ռի մը կռթնցընելով, և դաշնակս ճօճե-
լով զանոնք ինձ չմօտեցուցի ։ Այս անի-
ծեալներուն մէկ քանին ետևի կողմէս
ծառին կախուած ճիւղերը բռնելով՝
ցատկեցան վրան ելան, և սկսան գլխէս
ի վեր կղկղանքնին թափել ․ իրաւ՝ ծա-
ռին բունին աղէկ մը կռթնելով ինքզ-
զինքս ապահովեր էի, այսու ամենայնիւ
ամեն կողմէս վար թափած աղտոտու-
թեան հոտէն գրեթէ խեղդուեցայ ։

Այս տագնապելի մէջտեղին՝ յանկարծ կըռ-
ցածնուն չափ արագութեամբ սկսան
փախչիլ ․ ասոր վրայ համարձակելով ծա-
ռէն հեռացայ, ու ճամբաս շարունա-
կեցի չհասկընալով թէ աս կերպ փախ-
չելնուն պատճառը ինչ էր ։ Բայց երբ
ձախ կողմիս վրայ ձի մը տեսայ, որ դաշ-

տին մէջ կամաց կամաց կը քալէր, ան ատեն հասկըցայ թէ անոնք զան ինձմէ առաջ տեսնելով փախեր էին։ Երբ ձին ինձ մօտեցաւ՝ խրտչեցաւ, բայց նորէն ինքզինքին գալով, աչքը վրաս տնկած՝ յայտնի զարմանքով մը երեսս նայեցաւ, և չորս դիս դառնալով ձեռքս ոտքս դիտեց։ Ուզեցի յառաջ երթալ, բայց ան ճիշդ ճամբուն մէջ տեղը կանգնեցաւ և ամենևին բռնութիւն չանեցընելով՝ անուշ նայուածքով մը ինձ նայեցաւ։ Քիչ մը ժամանակ ապշած իրարու նայելէն ետև՝ զան չայելու դիտաւորութեամբ ձեռքս դէպ ի վիզը տանելու համարձակեցայ, սուլեցի, և ձիապարմաններու՝ անծանօթ ձիու մը մօտենալու ատեն ամէն ըրածնին ըրի. բայց կ'երևէր թէ ըրած քաղաքավարութիւններս անարգանօք ընդունեց, ինչու որ գլուխը թօթվեց, յօնքը վար ծռեց, և առջևի աջ ոտը մեղմիկ մը վեր վերցուց, որպէս զի ձեռքս վիզէն վրայէն քաշեմ. ետքը՝ զանազան հնչմամբ 3-4 անգամ այնպէս վրնջեց որ կարծեցի թէ իր մասնաւոր լեզուաւը ինքնիրեն կը խօսէր։

Աս միջոցին՝ ուրիշ ձի մը եկաւ, և խիստ ակնածութեամբ ներկայանալով,

իրենց առջեւի ալ սմբակները մեղմով մը իրարու դպցուցին, և զանազան ձայնով սկսան փոփոխակի վրնջել, այնպէս որ կարծեցի թէ իրարու հետ կը խօսէին։ Ծանր նիւթի մը վրայօք խորհուրդ ընող անձանց պէս՝ քովէ քով վեր վար քալեցին՝ աչքերնին շատ անգամ դէպ ի ինծի դարձընելով, իբր թէ ինծի կը հըսկէին որ չփախչիմ։ Այս անբան անասնոց այսպիսի վարմանցը վրայ զարմացեալ մընացի։ «Թէ որ աս երկրին բնակիչները ասոնց չափ խելք ունին, ըսի ինքնիրենս, անշուշտ պէտք է որ աշխարհիս ամենէն խելացի մարդիկը ըլլան»։

Այս մտածմունքէս քաջալերելով որոշեցի որ յառաջ երթամ, մինչեւ որ տուն մը, գիւղ մը կամ երկրացի մը գտնեմ, ու աս երկու ձիերը հան թողում որ ուզածնուն չափ խօսակցին։ Բայց առջինը՝ որ մոխրագոյն Ճարտուկ (1) ձի մ'էր, տեսնելով որ անկէ կը մեկնիմ, սկսաւ այնպէս յայտարար ձայնով մը ետեւէս վրնջել, որ կարծես թէ բառը հասկըցայ․ ասոր վրայ՝ ետ դարձայ, բայց կըրցածիս չափ վախ չցուցընելով՝ իրեն մօտեցայ, որպէս թէ իր հրամանը կատա-

(1) Բծաւոր ձի։

բելու պատրաստ էի · իրաւը՝ չէի գիտեր թէ ասոր վերջը ուր պիտի հասնէր , և ընթերցողս դիւրաւ կրնայ երևակայել թէ ներկայ վիճակէս գոհ չէի ։

Աս երկու ձիերը ինձ խիստ մօտենալով սկսան մեծ ուշադրութեամբ երեսս ու ձեռքս զննել ։ Գ՚որտուկ ձին իր առջևի սմբակը փեզդուրիս բոլորտիքը պտըտցընելով , այնչափ տակնուվրայ ըրաւ զան , որ գլխէս հանելով շիտկելու և վերստին հագնելու պարտաւորեցայ ։ Ասոր վրայ ինքը և իր ընկերը , որ Թխագոյն աշխէտ (1) ձի մ'էր , կ'երևար թէ շատ զարմացան ։ Աս վերջինը զգեստիս քղանցքը մեր վերցուց , և տեսնելով որ զգեստս մարմնոյս վրայէն կախուած բան մ'է , երկուքնին մէկտեղ նորէն սկսան զարմացմամբ ինձ նայիլ ։ Աշխէտը աջ ձեռքս շօշափեց , կ'երևար թէ անոր կակղուե̃ը և գոյնին վրայ կը զարմանար , ասկից այնպէս ուժով իր սմբակին և ոտնակապի յօդին (2) մէջ տեղը սեղմեց զան , որ չի դիմանալով բոլոր ուժովս պոռացի · ասկէ ետև՝ երկուքնին իսկ կրցածնուն չափ մեղմով կը դպչէին ինձ ։ Մուճակներուս և զանկապաններուս վրայ մեծ տարա-

(1) Տօրու ձի ։ (2) Ընդամոց կապը · գինաց ։

կուտանաց մէջ ինկեր էին, քանզի շատ անգամ սմբակներէն զանոնք կը զննէին, և իրարու կը վռնտէին, ու տեսակ տեսակ շարժումները կ'ընէին նոր և դժուարալուծելի օդերևոյթ մը բացատրող փիլիսոփայից պէս։

Վերջապէս՝ աս կենդանեաց վարքը այնչափ բանաւոր, կանոնաւոր, ճարտար ու խելացի էր, որ եզրակացուցի թէ ասոնք անշուշտ մոգ եղած ու դիտաւորութեամբ մը ձիու կերպարանք մտած ըլլան, և ճամբանուն վրայ օտարականի մը հանդիպելով անոր հետ զբօսնուլ ուզեն, կամ գուցէ այսպիսի հեռի երկրի մը մարդոցմէ՝ զգեստով, գոյնով, և դէմքով ինծի պէս տարբեր մէկը տեսնելնուն իրաւցընէ հիացած ըլլան։ Աս մտածմանս վրայ՝ սիրտ առնելով՝ հետևեալ խօսքը ըսի անոնց. «Պարոնայք, թէ որ մոգ էք, ինչպէս որ իրաւունք ունիմ այնպէս կարծելու, անշուշտ ամեն լեզուները կը հասկընաք։ Ձեր յարգութեանը կը համարձակիմ յայտնել թէ ես խեղճ ու տառապեալ Անգղիացի մ'եմ ու դժբաղդաբար ձեր ծովեզերքը ինկած. կ'աղաչեմ՝ թողուցէք ինձ որ ձեզմէ մէկուն վրան հեծնելով՝ տուն

մը կամ գիւղ մը երթամ, ուր օգնութիւն մը կարենամ գտնել։ Աս ընելու շնորհքնուդ փոխարէն աս դանակը ու ատպարանջանը ձեզ ընծայ կ'ընեմ։ Նոյն միջոցին զանոնք գրպանէս դուրս հանեցի։ Խօսեցած ատենս աս երկու անասունները լուռ կենալով, կ'երեւար թէ ուշադրութեամբ ականջ կը դնէին. խօսքս վերջանալէն ետեւ՝ սկսան այնպէս փոփոխակի վրնջել, որ կարծես թէ դըժուար խնդրի մը վրայ կը խօսակցէին։ Յայտնի գիտեցի թէ լեզուոմնին իրենց կիրքը շատ աղէկ կը յայտնէին, և թէ որ մէկը քիչ մը աշխատէր, կրնար Չինաց լեզուէն աւելի դիւրութեամբ՝ անոնց հնչած բառերէն այբուբեն մը շինել։

Եահու բառը շատ անգամ կրկնելնին լսեցի. թէեւ անոր ինչ նշանակելը չէի գիտեր, սակայն անոնց խօսակցութեան ատենն՝ աս բառը հնչելու կրթութիւն կ'ընէի. Խօսակցութիւննին դադրելուն պէս՝ բարձր ձայնով մը և կրցածիս չափ ձիու մը վրնջելուն պէս ընելով Եահու պոռալու համարձակեցայ, որուն վրայ երկուքն իսկ յայտնապէս զարմացան։ Ճարտուկը նոյն բառը երկու անգամ կրկնեց, որպէս թէ անոր ճիշդ հնչումը

սորվեցընել կ՚ուզէր, ու ես անորմէ ետ-
քը կրցածիս չափ հնչեցի, և թէպէտ ա-
նոնց ձայնին նմանցընելէն շատ հեռի էի,
բայց կրկնելով զգալի կերպիւ քիչ մը
յաջողեցայ: Նաքը աշխէտ ձին ուզեց
աւելի դժուարահնչիւն բառ մը սորվե-
ցընել ինծ, որ Անգղիարէն ուղղագրու-
թեամբ կրնայ այսպէս հեգուիլ՝ Հօույ-
հընհնմ: Առաջինին պէս ասոր մէջ իսկ
յաջողեցայ· սակայն երկու-երեք ան-
գամ կրկնելով աւելի կարող եղայ զան
հնչել: Իմ աս յաջողութեանս վրայ շատ
զարմացան, և քիչ մը ես խօսակցելէն
ետև (անշուշտ իմ վրայօքս) առաջուան
պէս սմբակնին իրարու դպցընելով, ի-
րարմէ բաժնուեցան: Դ՚արսաւկը նշան
ըրաւ ինծ որ իր առջևէն քալեմ, ու ես
մինչև ասկէ աղէկ առաջնորդ մը գտնելս
ասոր հնազանդիլը խելացիութ̃ի սեպե-
ցի: Երբ քայլափոխերս կը թուլցընէի
հհըըն, հհըըն կը պոռար: Ասոր միտքը ի-
մացայ, և յոգնութենէս աւելի շուտ
քալել չկրնալս կրցածիս չափ հասկըցու-
ցի անոր, անատեն կեցաւ որ հանգըս-
տութիւն առնեմ:



# ԳԼՈՒԽ Բ.

*Հօույհնհնմ մը զհեղինակը իր տունը կը տանի ։ Այս տան պատմութիւնը, և հեղինակին ինչպէս ընդունելութիւն գտնելը ։ Հօույհնհնմներուն կերակուրը ։ Ուտելիք չգտնուելուն համար հեղինակին ունեցած նեղութիւնը ։ Այս նեղութենէն վերջապէս ազատիլը ։ Եւ աս երկրին մէջ ինչ կերպ ապրիլը ։*

ԳՐԵԹԷ երեք մղոն ճամբայ ընելէս ետեւ՝ երկայնաձեւ տուն մը հասանք, որ գետինը ցցուած ու մէջ տեղերը հիւսուած փայտերով շինուած էր, և ձեղունը ցած ու վրան յարդով ծածկուած էր ։ Աս միջոցին՝ սկսայ քիչ մը սփոփիլ, և գրպանիս մէջէն քանի մը խաղալիկներ հանեցի, որոնցմէ թէ Ամերիկայի և թէ ուրիշ կողմերու վայրենի Հնդկաց մէջ ճամբորդութիւն ընողները՝ ընծայ տալու համար սովորաբար հետերնին կ'ունենան. և ուզեցի որ զանոնք տան մէջ եղողներուն ընծայ ընեմ, որպէս զի ատանցմով քաջալերուելով մարդասիրաբար ընդունին զիս ։ Ձին նշան ըրաւ որ առաջ ես ներս մտնեմ. սենեակին յատակը կաւով հարթած, և

անոր մէկ կողմին վրայ ծայրէ ի ծայր մը-սուր և մարդոյ քանդակ մը շինուած էր ։

Այս սենեկին մէջ՝ երեք մատաղցի (1) և երկու զամբիկ (2) կային , որոնք բան մը չէին ուտեր , սակայն անոնցմէ ոմանք զիստերնուն (3) վրայ նստած էին ․ ասոնց վրայ ունեցած զարմանքս աւելցաւ , երբ տեսայ թէ՝ և ոմանք ալ տնին գործերու կը պարապէին , որոնք Հասարակ ձիեր կ'երևէին ։ Սակայն աս բանս իմ առջի կարծիքս Հաստատեց՝ թէ այսպիսի անբան անասունները աս աստիճան կրթող ժողովուրդը անշուշտ պէտք է որ աշխարհիս ամէն ազգերէն գերագոյն իմաստութեան տէր ըլլայ ։ Ճորտուկ ձին անմիջապէս ետևէս ներս մտաւ , և արգիլեց որ միւսները ինծի հետ անարժան կերպով չվարուին ։ Իշխանական կերպով բանի մը անգամ փնչեց անոնց , և անոնք պատասխանը տուին ։

Այս սենեակին ետին՝ տան երկայնութեամբը շինուած ուրիշ երեք սենեակներ կային , ուր երթալու համար՝ իրարու դէմ շինուած երեք դռներէ պիտի անցնուէր ․ մենք երկրորդ սենեկէն անց-

(1) Սխտիկ ․ (2) Գըսրաղ ։ (3) Մարմնոյ նստելու տեղը մինչև ծունկը , գալչա ։

նելով՝ դէպ ի երրորդը գացինք։ Հոս ճարտուկը առաջ ներս մտաւ, նշան ընելով ինծի որ հոն սպասեմ․ անատեն՝ տան տիրոջ ու տիկնոջ տալու պարգևներս պատրաստեցի, այսինքն՝ երկու դանակ, կեղծ մարգարիտ շինուած երեք ապարանջան, փոքրիկ հայելի մը, և ուլունքէ (1) շինուած մանեակ մը։

Ձին երեք-չորս անգամ վրնջեց, և ես կը սպասէի որ մարդու ձայնով պատասխան մը լսեմ, սակայն վրնջումէն ուրիշ ձայն չլսեցի, միայն՝ անոր տրուած պատասխաններուն մէկ քանին աւելի սուր ձայնով էր․ “Կարծեմ, ըսի անտեն ինքնիրենս, պէտք է որ աս տունը իրենց երևելիներէն մէկունը ըլլայ, որովհետև ներս մտնելէս առաջ այսչափ արարողութիւն կ'ընեն։ Բայց ինչպէս կրնայ ըլլալ որ երևելի անձի մը սպասաւորները ձիեր ըլլան։ Չըլլայ որ քաշած նեղութիւններէս և դժբաղդութիւններէս խելքս շփոթած ըլլայ”։ Ասոտի ինքզինքիս գալով, աչքս սենեկին չորս կողմը դարձուցի, ուր զիս առանձին թողուցեր էին։ Աս սենեակը առջինին պէս, բայց աւելի չքնաղ կերպով

(1) Պունճուգ։

կահաւորած էր · աչքս շատ անգամ շը-փեցի , բայց տակաւին նոյն բաները կը տեսնէի և կարծելով թէ երազ է տե-սածս՝ արթննալու համար թևերս ու կո-ղերս կսմթեցի · բայց անատեն հաստատ որոշեցի թէ բոլոր աս տեսածներս ու-րիշ բան չէին , այլ միայն մեռելահմա-յութիւն և կախարդութիւն ։ Սակայն աս մտածմանցս վրայ երկար խորհելու ժամանակ չունէի · քանզի Ճարտուկ ձին դուռը զարկով , նշան բրաւ որ ետևէն երրորդ սենեակը երթամ , ուր վարպե-տութեամբ շինուած խիստ մաքուր և գեղեցիկ յորդեայ փախթներու (1) վը-րայ խիստ սիրուն զամբիկ մը , մորուկ (2) մը , և էգ մորուկ (3) մը իրենց գ՚ստե-րուն վրայ նստած էին ։

Ներս մտածիս պէս՝ զամբիկը ոտք ե-լաւ , և մօտենալով , ձեռքս ու երեսս աղէկ մը զննելէն ետև՝ նախատանօք մը երեսս նայեցաւ , ու ձիուն դառնալով , սկսաւ Եահօ— բառը կրկնելով երկուքնին մէկ տեղ վրնջել ։ Ես բառին նշանակու-թիւնը տակաւին չէի գիտեր , թէև ար-տասանելու համար սորված առջի բառս աս էր · շատ չանցաւ ասոր ինչ նշանա-

(1) Հասըր ։ (2) Թայ ։ (3) Թայ գըսրագ ։

կելը հասկցայ , որ չափազանց կսկիծ մը եղաւ սրտիս , ինչու որ ձին գլխովը ինձ նշան ընելով , ու ճամբան ըսածին պէս՝ հհըըն, հհըընը կրկնելով , որ ետեւէն երթամ ըսել էր , գաւթի մը պէս տեղ մը տարաւ զիս , ուր տնէն քիչ մը հեռու ուրիշ շէնք մը կար ։

Երբ ներս մտանք , ցամքը ելնելէս ետեւ առջի տեսած ան ատելի էակներէն երեք հատ տեսայ , որոնք արմատ և կենդանեաց միս կ'ուտէին ․ և աս կերածնին՝ չունի , իշու և դիպուածով կամ հիւանդութեամբ սատկած կովու միս ըլլալը ետքէն իմացայ ։ Ասոնք մէջերնէն հաստ չուաններով գերանի մը կապուած էին , և իրենց կերակուրը առջի ճիրաննուն մէջ առած ակռաներին ջարդելով կ'ուտէին ։

Ձի տէրը իր ծառաներէն շառագոյն մատաղաձիի մը հրամայեց , որ անասնոց ամենէն մեծը քակէ և գաւիթը տանի ։ Աս անասունը և զիս քով քովի դրին , ու տէրը և ծառայն Յահու բառը քանի մը անգամ կրկնելով՝ սկսան զգուշութեամբ մեր դէմքը բաղդատել ։ Անկարելի է իմ սոսկումս ու զարմանքս նկարագրել , երբ աս գարշելի անասունին

վրայ մարդկային կատարեալ պատկերը տեսայ․ Թէև անոր երեսը լայն ու տափակ, քիթը ճզմուած, շրթունքը հաստ, և բերանը լայն էր, սակայն աս տարբերութիւնը հասարակօրէն ամէն վայրենի ազգաց վրայ կը գտնուի․ քանզի մայրերը անհոգութեամբ իրենց զաւակները երեսն ի վայր գետնի վրայ պառկեցընելնուն, կամ զանոնք կռնակնուն վրայ կրած տարած ատեն՝ անոնց երեսը իրենց ուսերնուն քսքրտնելնուն համար՝ քիթերնին կը ճզմեն։ Եահուին առջևի թաթերը իմ ձեռացս նման էին, միայն եղունգներուն երկայնութեամբը, ափերուն կարծրութեամբն ու թխութեամբը, և ձեռաց երեսներուն մազոտութեամբը կը տարբերէր․ Իմ և անոր ոտից մէջ մի և նոյն տարբերութեամբ մի և նոյն նմանութիւնը կար, որ մուճակ և գուլպայ հագած ըլլալուս՝ ձիերը չէին գիտեր, ու մազոտութենէն և գոյնէն զատ՝ անոր մարմնոյն ամէն մէկ մասը իմինիս կը նմանէր, ինչպէս արդէն նկարագրեր եմ։

Աս երկու ձիերուն ունեցած մեծ դըժուարութիւնը կ՚երևար թէ մարմնոյս

միւս մասերը տեսնել էր, որոնք զգեստ
հագած ըլլալուս համար՝ Լափոնինէն շատ
տարբեր էին, և որոնց վրայ անոնք ա-
մենևին գաղափար մը չունէին։ Սատա-
ղաձին իրենց սովորութեանը համեմատ՝
ամրակին և ոտնակապի յօդին մէջտեղը
արիւն մը բանալով (ինչպէս որ բառ
տեղւոյն պիտի պատմեմ) ինծ տուաւ,
ու ես առի զան, և հոտոտելէն ետև՝
հնար եղածին չափ քաղաքավարութեամբ
նորէն իրեն տուի։ Ասոր վրայ՝ գնաց Լա-
փոններուն բնակարանէն կտոր մը իշու-
միս բերաւ, բայց այնպէս գէշ կը հո-
տէր, որ սիրտս տակն ու վրայ ըլլալուն՝
երեսս անկէ դարձուցի․ անատեն՝ Լա-
փոնին առջին նետեց զան, որ անյագա-
բար գիշատելով կերաւ։ Ետքը՝ բուռ
մը չոր խոտ և չափ մը լեցուն փարսակ
ցուցուց ինծի, բայց ես գլուխս թօ-
թուելով հասկըցընել ուզեցի թէ եր-
կուքն իսկ իմ ուտելու բաներս չեն։
“Հիմա, ըսի ինքնիրենս, անպատճառ
սովամահ պիտի մեռնիմ, թէ որ իմ սե-
ղէս մէկը չգտնեմ հոս”․ քանզի ճշմա-
րիտ կ'ըսեմ որ Լափոններուն պէս աւե-
լի ատելի էակներ երբէք տեսած չեմ,
թէև անատեն մարդկային սեռը ինծմէ

աւելի սիրով քիչ կը գտնուէր ։ Աս երկրին մէջ գտնուած ատենս՝ անոնց որչափ մօտենայի, այնչափ աւելի կը զըզուէի անոնցմէ ։

Աս բանիս այսպէս ըլլալը ձի տէրը վարմունքէս գիտելով, Յահուն իր տեղը զըրկեց ։ Ետքը իր առջի սմբակաց մէկը դիւրին և բոլորովին բնական կերպով մը բերանը տանելով, որուն վրայ շատ զարմացայ, և ուրիշ նշաններ ընելով կ՚ուզէր հարցընել ինձ թէ ինչ ուտելիք կ՚ուզեմ, սակայն ես չէի կրնար անոր այնպէս պատասխան մը տալ որ հասկընար, և եթէ հասկընալու իսկ ըլլար, չէի գիտեր թէ ինչ ճամբով ուտելիք պիտի գտնէր ինձ ։ Աս միջոցիս՝ ան տեղէն կով մը կ՚անցնէր, մատովս զան ցուցընելով՝ հասկըցուցի թէ անոր կաթը կթել կ՚ուզեմ ։ Ձին միտքս հասկընալով, առաւ տունը տարաւ զիս, և զամբիկ ծառայի մը հրամայեց որ սենեակ մը բանայ, ուր փայլուն և մաքուր կերպով շարուած փայտեղէն և հողեղէն ամաններու մէջ լեցուն կաթ կար ։ Ասկէ մեծ գաւաթ մը լեցընելով ինձ տուաւ, ու ես մեծ ախորժանօք խմեցի և բաւական զովացայ ։

Կէս օրի մօտ՝ չորս Յահուներէ լծուած

բալխիրի(1) նման կառք մը տեսայ, որ դէպ ի մեր տունը կու գար ։ Անոր մէջը ծեր ձի մը կար, որ պատուաւոր մէկը կ'երեւար ․ առաջ իր ետեւի ոտքը դուրս հանելով կառքէն իջաւ, որովհետեւ իր աջնի ի ձախ ոտունքը պատահմամբ վիրաւորուած էր ։ Այս ծեր ձին մեր ձիին հետ ընթրելու համար եկեր էր, որ մեծ քաղաքավարութեամբ ընդունեց զան ։ Մենէն գեղեցիկ սենեկին մէջ սեղան նըստան, ու առջի կերակուրէն ետեւ կաթով խարշած վարսակ կերան, ծեր ձին տաք կերաւ, իսկ միւսները պաղ ։ Անոնց մսուրը խորշ խորշ բաժնուած և սրահին մէջ տեղը կլոր ձեւով դրուած էր, ու իրենք զիստերնուն վրայօք յարդի կոյտերու վրայ նստած էին ։ Ան մսուրին մէջ տեղը խոտեր դնելու համար մսրոյ վանդակ մը կար, և անոր մէջի ամեն մէկ բաժանումը մսրոյ ամեն խորշերուն կը պատասխանէր, այնպէս որ իւրաքանչիւր ձի և զամբիկ իր խոտը՝ ու կաթով եփած վարսակը մեծ վայելչութեամբ ու կարգաւորութեամբ առանձին կ'ուտէր, մորուկը, և էգ մորուկը իրենց հիւրին հետ շատ համեստութեամբ կը վարուէին, տանտիկինն ու տանուտէրը չափազանց

(1) Գըլդակ ։

ուրախ և զուարթ երես մը կը ցուցընէին անոր ։ Ճ՚արտուկ ձին հրամայեց ինձ որ իրեն մօտենամ, և իր բարեկամին հետ երկար ատեն խօսեցաւ, իմ վրայօքս խօսելնին՝ օտարականին շատ անգամ ինձ նայելէն, և Աահու բառը շատ անգամ կրկնելէն հասկըցայ ։

Աս միջոցին ձեռնոցներս հագնելով, Ճարտուկ տէրը վարանաց մէջ կ՚երևար, և զարմացման նշաններ կը ցուցընէր թէ արդեօք առջևի ատներուս ինչ ըրի ։ իր ամբակը երեք-չորս անգամ անոնց վրայ դնելով, հասկըցընել կ՚ուզէր որ զանոնք առջի վիճակին մէջ դնեմ ։ անատեն՝ անոր կամքը կատարելու համար՝ ձեռնոցներս ձեռքէս հանեցի, և գրպանիս մէջ դրի ։ Աս ըրածս զամէնքը գոհ ըրաւ և իրենց խօսակցութեանը աւելի նիւթ մը եղաւ ։ շատ չանցաւ՝ ըրածիս բարի ազդեցութիւնները տեսայ ։ հրամայեցին ինձ որ ան սարված քանի մը բառերս խօսիմ, և Ճաշին ատեն՝ տանուտէրը վարսակին, կաթին, կրակին, ջուրին, և քանի մը ուրիշ բաներու անունները սորվեցուց ինձ, զորոնք անորմէ ետքը կրցի դիւրաւ արտասանել՝ պատանե-

կութենէս ի վեր լեզու սորվելու շատ դիւրութիւն ունենալուս համար։

Սեղանէն ելնելէն ետև՝ ձի տէրը ինձ առանձին կողմ մը տանելով, նշաններով և խօսքով հասկըցուց թէ շատ կը ցաւի ուտելիք բան մը չունենալուս համար։ Բրինձ իրենց լեզուաւ փարաւկ կը նշանակէ։ Ես բառը երկու - երեք անգամ արտասանեցի, քանզի թէև ինձ տուած փարաւկնին առջի անգամ մերժեր էի, սակայն ետքը մտածեցի թէ մինչև ուրիշ երկիր մը փախչելու և ինձ նման էակաց մէջ գտնուելու պատեհութիւն մը ձեռք ձգելս, կրնամ անկէ տեսակ մը հաց շինել և կաթին հետ ուտելով ապրիլ։ Ձին իսկոյն հրաման ըրաւ ճերմակ գամբիկ տան ծառայի մը, որ փայտեայ տաշտով շատ մը փարաւկ բերէ ինձ։ Ես փարաւկը կրցածիս չափ կրակին առջին տաքցուցի, և այնչափ շփեցի, մինչև որ փոճոկները (1) ելան, և հունտերը զատելով երկու քարերու մէջ փշրեցի և աղացի. անոր հետ ջուր խառնեցի, զանգուած կամ կարկանդակ մը ձևացուցի, ու կրակին վրայ եփելով տաք տաք կերայ զայն։

(1) Գապուգ։

Ես կերակուրը ի սկզբան շատ անհամ եկաւ ինծի, թէև Եւրոպայից շատ երկիրներու մէջ հասարակ կերակուր մ'է, բայց առեն անցնելէն ետև՝ ուտելու սովրեցայ: Կենացս մէջ շատ անգամ նեղ վիճակի մէջ գտնուած ըլլալուս համար՝ մարդուս որչափ քիչ բանով բաւականանալուն փորձը արդէն ասկէ առաջ իսկ ըրած էի: Պէտք եմ խոստովանիլ թէ աս երկիրը գալէս ի վեր վայրկեան մը չհիւանդացայ: Երբեմն Եւրոպացիներու մազերէն շինուած վրաններով նապաստակ կամ թռչուն կ'որսայի, և շատ անգամ առողջարար խոտեր կը ժողվէի, և խաշելով իր աղցան հացիս հետ կ'ուտէի. երբեմն իր հազուագիւտ ինչ քիչ մը կարագ կը շինէի և անոր շիճուկը կը խմէի: Ի սկզբան առանց աղի ինչ ընելս չէի գիտեր. բայց սովորութիւնը աս պակասութեան շուտով ընտանեցուց զիս, և ես հաստատ եմ թէ մեր՝ ամեն բանի մէջ աղ գործածելնուս սովորութիւնը զեղխութեան արդիւնքն է, և անոր գործածութիւնը ի սկզբան միայն խմելու գրգիռ մը տալու համար եղած է. քանզի աղը՝ երկար ճամբորդութեանց մէջ, կամ վաճառականներէն

հեռու տեղեր միս պահելու համար միայն հարկաւոր է, որովհետև մարդէ ի զատ ուրիշ կենդանի մը չենք տեսեր որ աղ սիրէ, և աս երկրէն մեկնելէս շատ ժամանակ ետքը՝ հազիւ կրցի կերածներուս մէջ անոր համին սովորիլ։

Ուտելիքիս վրայ այսչափ ըսելը բաւական է, թէև ուրիշ ճամբորդներ ճամբորդութեան գրքերնին ասով կը լեցընեն, կարծես թէ մեր լաւ կամ յոռի կերակուր ուտելնիս ընթերցողաց անձին վերաբերեալ բան մ'է։ Սա նիւթիս վըրայ միայն աս պատճառաւ հարկ եղաւ խօսիլ, որ չըլլայ թէ ամեն մարդ կարծէ թէ այսպիսի երկրի և բնակչաց մէջ երեք տարի մնացած ատենս ուտելիք գըտնելս անկարելի եղաւ։

Երբ մթնցաւ՝ ձի տէրը հրամայեց որ պառկելու համար բնակարան մը տրուի ինձ. աս բնակարանը տունէն վեցը կանգուն հեռի՝ ու Եահու-ներուն ախոռէն զատ է. Հոս տակս քիչ մը յարդ, ու վրաս զգեստներուս ծածկելով շատ խորունկ քնացայ, բայց ժամանակէ մը ետև՝ աւելի հանգիստ ըրի զան, ինչպէս որ ընթերցողս՝ ապրելուս վրայօք աւելի ընդարձակ խօսեցած ատենս պիտի իմանայ։

## ԳԼՈՒԽ Գ.

*Հեղինակը երկրին լեզուն սորվելու ատենը՝ իր Հօույհնհնմ տէրը կ'օգնէ իրեն ։ Լեզուին նկարագրութիւնը ։ Քանի մը երեւելի Հօույհնհնմներ հետաքրքրութենէ շարժեալ հեղինակը տեսնելու կու գան ։ Իր ճամբորդութեան համառօտ պատմութիւնը կ'ընէ իր տիրոջը ։*

ՀՕՈՒՅՀՆՀՆՄԱՑ լեզուն սորվելու համար մեծ ջանք մը ունենալուս՝ տէրս (այսուհետեւ աս անունը պիտի տամ անոր), իր զաւակները, ու տան ամեն ծառաները կ'ուզէին ինծի սորվեցընել· ըստ որում անբան կենդանիի մը վրայ բանական էակի նշաններ տեսնելը իրենց սքանչելիք մը կ'երեւար ։ Տէրս ամեն բան կը ցուցընէր, և անոնց անունները հարցընելով, առանձին եղած ատենս օրական գրքիս մէջ կը գրէի, և հնչմունքս ուղղելու համար տան մէջ եղողներուն կ'աղաչէի որ ան բառերը առջիս շատ անգամ արտասանեն ։ Շառագոյն մատաղաձի մը, որ տան ծառայից օգնական մ'էր, մեծ հաճութեամբ և սիրով կ'օգնէր ինծի ։

Անոնք խօսելու ատեն՝ քիթերնէն ու կոկորդնէն կ'արտասանէին, և իրենց լեզուն Եւրոպական ամեն լեզուներէն աւելի՝ Վերին Հոլանտացւոց կամ Գերմանացւոց լեզուին խիստ շատ կը մօտենայ, բայց անոնցմէ աւելի սիրուն ու ազնիւ է։ Կարոլոս Ե. աս դիտողութիւնը ընելով, ըսաւ օր մը թէ՝ “Ձիու հետ խօսելու ատեն պէտք է Հոլանտերէն խօսիլ”։ Տիրոջս անհամբերութիւնն ու հետաքրքրութիւնը այնչափ շատ էր, որ իր պարապ ժամանակներուն մեծ մասը ինձ սորվեցնելով կ'անցընէր։ Ինքը այնպէս համոզուած էր (ինչպէս ետքէն ըսաւ ինձ) թէ ես Եահու մ'եմ, բայց ուսանողութիւնս, մարդավարութիւնս, ու մաքրութիւնս զինքը կը զարմացընէին, որոնք աս կենդանեաց բնութեան հակառակ յատկութիւններ էին։ Զգեստուցս վրայօք խիկ մեծ տարակուսանքի մէջ էր. երբեմն ինքնիրեն կը խորհի եղեր թէ արդեօք անոնք մարմնոյս մէկ մասն են, քանզի գիշերը մինչև որ տան մէջ եղողները չքնանային՝ չէր հանուեր, և առտու՝ անոնք դեռ չարթընցած ես կը հագուէի։

Տէրս շատ կը ցանկար գիտնալու թէ

ո՛ր երկրէ եկած եմ, և ինչպէս ստացեր եմ այն բանականութեան երևոյթը, որ իմ ամէն գործոցս մէջ կը ցուցընեմ. և կ՚ուզէր որ ամէնը բերնովս իրեն պատմեմ, և բառերն ու խօսակցութիւնները սորվելու և արտասանելու մէջ ըրած մեծ յառաջադիմութիւնս տեսնելով, կը յուսար որ ուզածը մօտերս կատարելու կարող ըլլամ։ Աղէկ յիշելու համար՝ բոլոր սորվածս Անգղիարէն այբուբենի վրայ գրեցի, և բառերուն թարգմանութիւնները անոնց տակը դրի։ Աս բանս քիչ մը ժամանակէ ետև տիրոջս առջին ընելու համարձակեցայ, և ըրածս անոր հասկցընելու համար շատ նեղութիւն կրեցի. քանզի երկրացիք գրքի և գրականութեան վրայ ամենևին տեղեկութիւն չունին։

Դրեթէ տասը շաբաթէն ետև՝ տիրոջս ըրած հարցմանց շատը կրցի հասկնալ, և երեք ամիսէն՝ պատասխան տալու բաւական կարող եղայ։ Չափազանց հետաքրքրութիւն ունէր գիտնալ թէ ո՞ր քաղաքէն եկած եմ, և բանական կենդանեաց նմանիլը ինչպէս սորված եմ. ինչու որ Եահուները, որոնց գլխով, ձեռքով, երեսով (որովհետև մարմնոյս աս մասերը միայն կը տեսնուէին) ճշդիւ

նմանիկը տեսեր էր · Թէև խորամանկ կ'երևին, և վնաս հասցընելու խիստ հակամէտ են, ամէն անասուններէն աւելի անընտել ըլլալնին տեսնուած է։ "Այս, ըսի անոր, ինծի նման ուրիշ շատերու հետ՝ ծառերու կոճղերէ շինուած շատ խորին նաւով մը ծովու վրայէն հեռի երկրէ մը եկած եմ, ընկերներս բռնութեամբ աս ծովեզերքը հանեցին զիս և հոս ձգելով գացին"։

Այս խօսքս շատ մը նշաններ ընելով դժուարաւ հասկըցուցի անոր։ "Կարծեմ, ըսաւ, կա՛մ կը սխալիս, կամ ըսածդ եղած բան չէ"։ Ինչու որ անոնք իրենց լեզուին մէջ՝ ստութիւն կամ սուտ խօսելը բացատրող բառ չունին։ Գիտէր թէ ծովէն անդին երկիր ըլլալը, կամ անբանից գունդ մը ջուրին վրայ նաւի մը ուղած տեղերնին տանելը անկարելի բան էր · ապահով էր թէ Հօույհնհնմ մը ոչ այսպէս նաւ մը կրնար շինել, և ոչ ալ որ կառավարութիւնը Եահուի մը յանձնելու կ'ապաւինէր։

Հօույհնհնմ բառը իրենց լեզուաւ ձի ըսել է, և ստուգաբանութեամբ՝ բնութեան կատարելութիւն կը նշանակէ։ "Չեմ գիտեր, ըսի տիրոջս, թէ միտքս ի՛նչ-

պէս բացատրեմ. երբ լեզուին մէջ բաւա-կան յառաջադիմութիւն ընեմ, կը յու-սամ թէ քիչ ժամանակէն զարմանալի բաներ ձեզ պատմելու կարող ըլլամ": Ասոր վրայ շատ գոհ ըլլալով հրամայեց իր զամբիկին, որու և էգ մտրուկներուն, ու տան ծառայէն, որ լեզուն ինձ սոր-վեցընելու ամէն կերպով հոգ տանին: Օրը երկու-երեք ժամ ինքը անձամբ աս նեղութիւնս յանձն կ'առնէր: Դրացի ազնուական ձիեր և զամբիկներ շատ ան-գամ մեր տունը կու գային. քանզի լսեր էին թէ զարմանալի Եահու մը կրնայ Հօ-ույհնհնմի նման խօսիլ, որուն խօսից և գործոց մէջ բանականութեան նշոյլ մը կայ: Ասոնք հետս խօսելով հաճութիւն մը կը զգային և շատ հարցումներ կ'ընէին ինծի, որոնց կարողութեանս չափ պատաս-խան կու տայի. և աս կերպով այնչափ շատ յառաջադիմութիւն ըրի, որ հոն հասնելէս հինգ ամիս ետև՝ բառերնին կը հասկընայի, ու բաւական կը հասկը-ցընէի:

Զիս տեսնելու և հետս խօսելու դի-տաւորութեամբ տիրոջս այցելութեան եկող Հօույհնհնմները իմ ճշմարիտ Եահու-

մը ըլլալուս չէին հաւատար · “ Ոսմէնեան , կ'ըսէին , անոր մարմինը՝ գլխէն , երեսէն , և ձեռքէն զատ՝ Նախո—ներուն սովորաբար ունեցած մազը կամ կաշին չունի ” ։ Բայց գրեթէ տասն և հինգ օր ետքը դիպուածով մը աս գաղտնիքը տիրոջս յայտնուեցաւ ։

Արդէն ըսած եմ ընթերցողիս՝ թէ ամէն գիշեր տան մէջ եղողները պառկելէն ետև կը հանուէի , և զգեստներուս զիս կը ծածկէի ։ Օր մը առտու կանուխ՝ տէրս իր շառագոյն մատաղաձի ծառան ղրկեց որ զիս կանչէ · բայց ան միջոցին խորին քունի մէջ գտնուելուս՝ զգեստներս մէկ կողմիս վրայ ինկած , և շապիկս մինչև կուրծքէս վեր ելած էր ։ Ասոր ըրած աղաղակին վրայ արթնցայ , և նայեցայ որ տիրոջս բարձները շփոթութեամբ մը հասկցուց ինձ , ետքը տիրոջս գնաց , ու մեծ երկիւղով մը՝ տեսածին վրայ շատ խառնիխուռն պատմութիւն մը ըրաւ անոր · այսպէս ըլլալը խոկոյն հասկցայ , ու զգեստներս հագնածիս պէս՝ Նորին վսեմութեանը երթալու փութացայ ։ “ Ինչ կը նշանակէ ծառայիս աս ըսածը , հարցուց տէրս , թէ դուն քնացած ատենդ՝ ուրիշ ժամանակ տես-

նուաճիդ պէս չէս եղեր, ծառաս հաս-տատեց թէ մարմնոյդ մէկ մասը ճերմակ, մէկ մասը դեղին կամ քիչ ճերմակ, և մէկ մասը թխագոյն է եղեր”։

Ես անիծեալ Եահու-ներուն սեռէն հը-նար եղածին չափ որոշուելու համար՝ ըզ-գեստներուս գաղտնէքը ծածուկ պահեր էի, բայց անկէ ետև ծածուկ պահելը անօգուտ էր։ Ասկէ զատ՝ զգեստներս ու կօշիկներս պիտի հինցային, որոնք արդէն մաշելու վրայ էին, ան ատեն պէտք էր որ Եահու-ներու կամ ուրիշ կենդանեաց կաշիովը նոր զգեստ շինեմ, որով ամեն գաղտնիքս պիտի յայտնուէր։ Աս պատ-ճառաւ տիրոջս ըսի. “Իմ եկած երկրիս մէջ իմ սեռէս եղողները թէ՛ պարկեշ-տութեան և թէ օդին անբարեխառնու-թենէն, այսինքն՝ ցրտէն ու տաքէն զի-րենք պաշտպանելու համար՝ կենդանեաց մազերէ վարպետութեամբ շինուած ըզ-գեստներով մարմիննին կը ծածկեն, և թէ որ հրաման տալու կը բարեհաճիս, քանի փորձը մարմնոյս վրայ իսկոյն հը-րամանոցդ ցուցնեմ։ Միայն թէ ներէ ինձ որ մարմնոյս այն մասերը չցու-նամ, որոնք ծածուկ պահելը բնութիւնը մեզ սորվեցուցած է։ — Աս և մանաւանդ

վերի բառերդ, ըսաւ ձին, խիստ տարօրինակ կ'երեւին ինծի, քանզի չեմ հասկընար թէ բնութիւնը ինչու պիտի սորվեցընէ որ իր ձեզի տուածը ծածուկ պահէք. ես և ընտանիքս մեր մարմնոյն և ոչ մէկ մասէն կ'ամչնանք, սակայն ինչպէս կ'ուզես՝ այնպէս ըրէ": Ուստի առաջ վերարկուիս ու ետքը բաճկոնիս կոճակները քակելով, վրայէս հանեցի զանոնք, մուճակներս, գուլպաներս, ու անդրավարտիքս քաշելով հանեցի, և շապիկս մինչև կէս մէջքս վար ընելով, մերկութիւնս ծածկելու համար անոր քղանցքը իբր գօտի մէջքս փաթթեցի ։

Տէրս աս ամէն ըրածիս վրայ մեծ զարմացմամբ ու հետաքրքրութեամբ կը նայէր. լաթերս մի առ մի իր սմբակին յօդովը վեր վերցուց, և զանոնք զգուշութեամբ զննելէն ետև՝ մեղմով մը մարմինս շօշափեց և քանի մը անգամ չորս կողմս քննելով՝ ըսաւ. "Յայտնի կը տեսնուի որ դուն կատարեալ Եահում'ես. սակայն միայն մորթիդ կակղութը, ճերմակութը և ողորկութը, մարմնոյդ շատ տեղերուն վրայ մազ չունենալովդ, առջևի և ետևի ոտիցդ ճիրաններուն ձևին և կարճութեան տարբերութեամբ

թը, և շարունակ ետևէ երկու ոտիցդ վրայ քալելովդ միւս քու տեսակէդ ըլլողներէն շատ կը տարբերիս ։ Բայց բաւական է, հանէ զգեստներդ »։ Նատեն հագուստ դանոնք, որովհետև ցրտէն կը դողայի ։

«Շատ կը ցաւիմ, ըսի, որ ինծի միշտ այսպիսի խիստ անարգ կենդանիի մը անունը կու տաս, կ'աղաչեմ՝ այսպէս մի անուաներ զիս, և նոյն բանը ընտանեացդ և զիս տեսնելու եկող բարեկամացդ պատուիրէ ։ Կ'աղաչեմ նաև որ մարմնոյս վրայ շինծու ծածկոց ունենալս գաղտուկ պահես, գոնէ մինչև զգեստուցս հիննալը, և շառագոյն մատաղուածի ձեր ծառային հրաման տուր որ այն տեսածը չյայտնէ »։

Նա ամէն բաներիս մեծ մեծահանձնութեամբ հաճութիւն տալով, գաղտնիքը ծածուկ մնաց մինչև զգեստուցս մաշիլը․ որոնց տեղ զանազան հնարքով ուրիշ զգեստներ շինելս ետքը պիտի պատմեմ ։ Բայց «Կ'ուզեմ, ըսաւ, որ յետին ջանքով լեզունիս սորվելու շարունակես․ մարմինդ եթէ ծածկած ըլլայ և եթէ բաց, ես անոր ձևէն աւելի քու խօսիլ

և խորհիլ կրնալուդ վրայ կը զարմանամ· գիտնաս որ անհամբերութեամբ կ՚ըս-պասեմ որ խոստացած զարմանալի բա-ներդ պատմես"։

Աս միջոցէն՝ լեզուն ինձ սորվեցընելու համար կրկնապատիկ աշխատեցաւ · ամեն ընկերութեանց մէջ հետը տարաւ զիս, և անոնց պատուիրեց որ հետս քաղա-քավարութեամբ վարուին, որպէս զի ինչպէս առանձին անոնց ըսեր էր՝ ինձ հաճութիւն մը տայ ։

Ամեն օր քովը եղած ատենս՝ լեզուն սորվեցընելու համար քաշած նեղութե-նէն զատ՝ իմ վրայօքս շատ հարցումներ կ՚ընէր, որուն կրցածիս չափ պատասխան կու տայի · աս միջոցաւ երկրէն բնակիչիս վրայ արդէն ընդհանուր գաղափար մը ունեցաւ, բայց շատ կիսկատար ։ Լե-զուին մէջ աստիճան աստիճան յառա-ջադիմութիւն ընելով աւելի կանոնաւոր կերպիւ խօսակցութիւն ընելու կարող ըլլալս պատմելը ձանձրալի պիտի ըլլար, բայց անոր նախ ըրած կանոնաւոր ու ընդարձակ պատմութիւնս աս հետե-ւեալն է · —

"Ես շատ հեռու երկրէ մը եկած եմ, ըսի, գրեթէ ինձ նման յիսուն հոգիի

հետ, ինչպէս որ արդէն հրամանոցդ հասկըցըներու ջանք ըրեր էի, փայտեղէն և ձեր վսեմութեան տունէն աւելի մեծ խորունկ նաւով մը ծովէրու վրայէն անցնելով”։ Հնար եղածին չափ աս նաւը նկարագրեցի, թաշկինակս բանալով փը-չեցի՝ հասկըցըներու համար թէ հովը առագաստին մէջ լեցուելով, նաւը ինչ-պէս յառաջ կը մղէր, և թէ մէջքերնիս կուխ մը ծագելով զիս աս ծովեզերքը հանեցին. ու ես աստանց ո՛ւր երթալս գիտնալու յառաջ քալեցի, մինչև որ ինքը աս տեղի Եահու-ներէն ազատեց զիս։ Ան ատենը՝ հարցուց թէ նաւը շի-նողը ո՛վ էր, և ինչպէս եղեր էր որ իմ երկրիս Հօույհնհնմները անոր կառավա-րութիւնը անբան կենդանեաց յանձնած էին։ “Չեմ համարձակիր, ըսի, պատ-մութիւնս շարունակել, մինչև որ պա-տուոյդ վրայ չխոստանաս որ ըսածներուս վրայ պիտի չնեղանաս. անատեն շատ անգամ խօսք տուած զարմանալի բաներս հրամանոցդ կը պատմեմ”։ Տէրս խօսք տուաւ, ու ես այսպէս շարունակեցի. “Ստոյգ գիտցիր որ նաւը շինողները ինծի նման էակներ են, և թէ իմ թէ ճամ-բորդութիւն ըրած ամեն երկիրներուս

մէջ իշխող բանական կենդանիները միայն ասոնք են ։ Ես երկիրը եկած ատենս՝ Հօույհնհնմներուն բանաւոր էակի մը ըրածը ընելը տեսնելով խիստ շատ զարմացայ ․ ինչպէս որ դուն և բարեկամներըդ բանականութեան քանի մը նշաններ ունեցող ան էակին վրայ զարմացաք , որն որ Եահու անուանելու կը բարեհաճիս , որուն ստուգիւ ամեն նմանակ կը նմանիմ՝ անոր տգեղութենէն և գազանական բնութենէն զատ ․ Թէ որ բարեբաղդաբար նորէն հայրենիքս դառնալու արժանանամ , և ճամբորդութիւնիս հայրենակցացս պատմեմ , ինչպէս որ միտք ունիմ , ամեն մարդ պիտի կարծէ թէ ըսածներս եղած բաներ չեն , այլ միայն գլխէս հնարած պատմութիւն են ․ զքեզ , ընտանիքդ , և բարեկամներդ ամենայն յարգանօք պատուելուս , և ըսածիս վրայ չնեղանալու խոստմանդ վրայ ապաւինելով , կը համարձակիմ ըսել թէ մեր հայրենակիցները հազիւ հաւանական պիտի կարծեն թէ Հօույհնհնմ մը ազգի մը վրայ իշխող էակ , և Եահու մը անբան կենդանի եղած ըլլայ ”։

## ԳԼՈՒԽ Դ.

*Ճշմարտութեան և ստութեան վրայ Հօույհնհնմներուն գաղափարը։ Տէրը հեղինակին խօսքը չհաւնիր. Հեղինակը իր վրայօք և իր ճամբորդութեանց մէջ պատահածներուն ընդարձակ պատմութիւնը կ'ընէ.*

ՊԱՏՄՈՒԹԻՒՆՍ լսած ատենս՝ տիրոջս երեսին վրայ մեծ շփոթութի̃ մը կ'երեւար. քանզի տարակուսիլը կամ չհաւատալը աս երկրին մէջ այնչափ անծանօթ բաներ են, որ այսպիսի պարագայից մէջ ինչպէս վարուելնին չեն գիտեր։ Աշխարհիս միւս կողմերուն մարդոց բնութիւնը տիրոջս նկարագրելով՝ ստութե̃ կամ նենգութեան վրայօք խօսելու պատեհութիւն ունեցած ժամանակս՝ ինչ ըսել ուզելս շատ դժուարաւ կը հասկընար, թէեւ ան ամէն բանի մէջ սրամիտ մէկն էր։ "Խօսելու սովորութիւնը, կ'ըսէր, իրարու հասկընալու և եղած բաներու վրայ ստոյգ տեղեկութիւն ըստանալու համար մեզ տրուած է. արդ՝ թէ որ մէկը չեղած բան մը ըսէ, աս նպատակէն կը շեղի, և ճիշդ չյառուիր թէ

ըսածը հասկըցայ , ու տեղեկութիւն մը չտալէն զատ՝ ազնուութենէ աւելի յուսի վիճակի մէջ կը թողու · ինչու որ ձերմակը սեւ , կարճը երկայնի տեղ կը հաւատացընէ ինծի ։ Ահա աս է մարդկային ստեղծուածոց մէջ այնպէս աղէկ հասկըցուած և այնչափ ընդհանուր եղած ստելու սովորութեան վրայ անոր ունեցած գաղափարը ։

Գանք մեր առջի խօսքին · երբ իմ երկրիս մէջ ապրող կենդանիները Եահուներն են ըսի · « Աս ըսածիդ խելքս չհասնիր , ըսաւ տէրս , և կ՚ուզեմ գիտնալ թէ ձեր մէջը Հօույհնհնմ կա՞յ , և անոնց գործը ի՞նչ է ։ — Խիստ շատ կայ , պատասխանեցի անոր , որոնք ամառը դաշտաց մէջ կ՚արածին , և ձմեռը խոտ և վարսակ ուտելով տանց մէջ կը կենան · և Եահու ծառաներ կան , որոնք անոնց մորթը քերելով կը մաքրեն զանոնք , մազերնին կը սանտրեն , ոտքերնին կը լուան , կերակուրնին կու տան , և անկողիննին կը պատրաստեն ։ — Հասկըցայ , ըսաւ տէրս , ըսածէդ յայտնի կ՚երևի թէ Եահուները ո՛րչափ որ խելք ունենային ցուցընեն , դարձեալ ձեր վրայ իշխողները Հօույհնհնմներն են · երանի՜ թէ մեր

Եահուները ձերիններուն պէս գիւղըն-
տել ըլլային։ — Ներէ ինձ որ աս նիւթիս
վրայ ուրիշ բան չխօսիմ, բայց նորէն վը-
ստահութեան, որովհետեւ պէտք գիտեմ
որ պատմելու պատմութիւնս չափազանց
անհաւան պիտի ըլլայ քեզ։ — Ոչ, ոչ, ը-
սաւ, կ'ուզեմ որ ամեն բան թէ յոռի
և թէ աղէկ ինձ պատմես։ — Պատրաստ
եմ կամքդ կատարելու" ըսելով, այսպէս
շարունակեց. "Հօույհնհնմները, որոնց
մենք ձի կ'ըսենք, մեր ամեն կենդանի-
ներէն ամենավեհանձն և ամենագեղե-
ցիկն են, և թէ ուժով և թէ արագու-
թեամբ զամենքը կը գերազանցեն. ե-
րեւելի անձանց ձեռքը եղածները ճամ-
բորդելու, արշաւելու, կամ կառք քա-
շելու համար կը գործածուին, ու մեծ
խնամով և մարդասիրութեամբ կը նա-
յուին։ Բայց երբ հիւանդանան կամ
ոտքերնին կաղայ՝ անատեն կը ծախուին,
և մինչև մեռնելնին ամեն տեսակ նե-
ղութիւնները կը կրեն. մեռնելէն ետև՝
կաշինին կը հանուի, ու գիւրացնի կը
ծախուի, և իրենց մարմինը շանց և գի-
շատիչ թռչնոց առջին կը նետուի։
"Սակայն հասարակ սեռէ եղող ձիերը
աս բաղդաւորութիւնը չունենալով, երկ-

բագործաց, սայլորդաց, և ուրիշ ստո-
րին մարդոց ձեռքը իյնալով, աւելի կ'աշ-
խատին, և աւելի յոռի կը սնանին”։
Անոնց վրայ ինչպէս հեծնելնիս, սանձին,
թամքին, խթանին, և մտրակին, ասպա-
զէններուն, և կառքի անուոց վրայ. ա-
նոնց ձեւերը և գործածութիւնը հնար
եղածին չափ հասկցուի անոր. օրինակ
թէ մեր քարոտ ճամբաներուն վրայ քա-
լելու ատեն սմբակնին չճղքուելու հա-
մար՝ երկաթ բռուած կարծր նիւթ մը տա-
փակցընելով անոնց ոտից տակը կը քա-
մենք.

Աս բաժներուս վրայ մեծ բարկու-
թիւն ցուցընելէն ետև՝ “Շատ կը զար-
մանամ, ըսաւ, թէ ինչպէս կը համար-
ձակիք Հօույհնհնմ ի մը վրայ հեծնել, ո-
րովհետև շատ աղէկ գիտեմ թէ տան
ամենատկար ծառայն անգամ կրնայ ա-
մենէն ուժեղ Եահու մը իր վրայէն վար
նետել, կամ գետինը կռնակին վրայ տա-
պալելով՝ վրայի անբանը ճզմելով բա-
պաննել։ — Մեր ձիերը, ըսի, երեք-
չորս տարեկան եղածնուն պէս՝ մեր ու-
զած պաշտօնին մէջ կը կրթենք, և թէ
որ անոնցմէ մէկը չափէ դուրս անսաս-
տութիւն ցուցընէ՝ կառք քաշել կու

տանք անոր, և իր պզտիկութեան առեն՝ թէ որ անպատշաճ բան մը ընէ՝ անխնայ կը ծեծենք․ Հասարակ կառք քաշելու կամ հեծնելու համար որոշուած արուներուն աշխուժութիւնը պակսեցընելու, և աւելի հեզ ու ընտել ընելու համար՝ ծնելնէն գրեթէ երկու տարի ետքը՝ հասարակօրէն կը կորենք (1)․ Արաբ՝ ասոնք իրենց եզած պատիւն ու պատիւը կ'ըղձան, սակայն ձեր վսեմութիւնը թող հաճի գիտնալ թէ ասոնք աս երկրին Անասուններուն մէջ ամենէն խելքի նշոյլ մը չունին”։

Բաժնիս վրայօք տիրոջս ուղիղ գաղափար մը տալու համար՝ պէտք եղաւ որ խօսքիս շատ մը դարձուածներ տալով հասկըցընեմ․ քանզի իրենց պիտոյքն ու կիրքը մերիններէն քիչ ըլլալուն՝ լեզունուն մէջ ամեն տեսակ բառերը չունէին։ Անկարելի է տիրոջս ազնիւ ցասումը նկարագրել, երբ Հօույհնհնմաց հետ բարբարոսաբար վարուելնուս, մանաւանդ զանոնք աւելի ծառայական ընելու համար սեռերնին տարածելու կարողութենէն զրկենք զրկելնուս ու կորելնուս

(1) Ներքինի ընել․

կերպին և սովորութեանը վրայ խօսեցայ ։ « Եթէ, բսաւ, երկիր մը գտնուէր, որուն մէջ Եահու—ները միայն բանական ըլլային, անշուշտ ան երկիրը կառավարող կենդանիները իրենք պիտի ըլլային, վասն զի բանականութիւնը թէ՛ վաղ և թէ անագան միշտ անասնական զօրութեան պիտի յաղթէ ։ Բայց ձեր կազմուածքին, մանաւանդ քու կազմուածքիդ նայելով, կարծեմ թէ ամենևին ալ հասակաւ էակ մը կարող չէ որ կենաց հասարակ պիտոյից համար ալ խելքը բանեցընէ ։ Կ'ուզեմ գիտնալ թէ քու երկրիդ մէջ եղողները աս երկրիս Եահու—ներուն կը նմանի՞ն ։ — Իմ կազմուածքս, ըսի, իմ տարօքս շատերուն կազմուածքին պէս է, բայց պատանիները, և էգերը աւելի փափուկ և քնքուշ են, ու էգերուն մորթը հասարակօրէն կաթի պէս ճերմակ է ։ — Դուն, ըսաւ, աւելի մաքուր ըլլալուդ համար՝ իրաւ ուրիշ Եահու—ներէն կը տարբերիս, բայց ճշմարիտ օգտից նայելով, կարծեմ անոնցմէ շատ վար կը գտնուիս, ինչու որ թէ՛ առջևի և թէ ետևի ոտիցդ ըղունգները բանի մը չեն ծառայեր · ասկէ զատ՝ առջևի ոտքդ, թէ որ ճշդիւ խօսելու ըլլանք, ոտք չեն կըր-

նար ըսուիլ, որովհետեւ անոնց վրայ քալելդ երբեք տեսած չեմ. անոնք շատ կակուղ ըլլալուն՝ գետնին կարծրութեանը չեն կրնար դիմանալ. միշտ զանոնք բաց կը թողուս, և անոնց վրայ երբեմն ծածկածդ ոչ ետեւի ոտիցդ վրայ ծածկածիդ կը նմանի, և ոչ անոր չափ դիմացկուն է։ Երբեք ապահովութ՟բ չես կրնար քալել, քանզի թէ որ ետեւի ոտիցդ մէկը սահի՝ անպատճառ պէտք է որ գլորիս"։ Ասկէ ետեւ՝ սկսաւ մարմնոյս վրայ ուրիշ պակասութիւններ գտնել։ "Երեսդ, ըսաւ, տափակ է, քիթդ՝ դուրս ցցուած. աչքդ շիտակ ճակատիդ վրայ ըլլալուն, մինչեւ որ գլուխդ չդարձրնես՝ երկու կողմդ չես կրնար տեսնել. և մինչեւ որ առջեւի ոտիցդ մէկը վերցընելով կերակուրդ բերանդ չտանիս՝ չես կրնար ուտել. ահա աս հարկաւորութիւնները կատարելու համար է, որ բընութիւնը ձեզի ադ յօդերը տուած է։ Չեմ հասկընար թէ ետեւի ոտիցդ ծայրերուն ան բաժանումները և մանր անդամները ինչ բանի կը ծառայեն։ Անոնք շատ կակուղ ըլլալուն՝ քարերուն սրութեանն ու կարծրութեանը չեն դիմանար՝ մինչև որ ուրիշ կենդանեաց կաշիով

չճանչես զանոնք։ Բոլոր մարմինդ ցրտէն և տաքէն պաշտպանելու համար այնպիսի ծածկոցի մը կարօտ ես, որ ամէն օր մեծ նեղութիւն և ձանձրոյթ հանուելու և հագուելու պարտաւորեալ ես։ Վերջապէս՝ կը տեսնեմ որ աս երկրին ամէն կենդանիները բնականաբար Եահուները կ'ատեն, քանզի իրենցմէ տկար կենդանիները կը փախչին, իսկ աւելի զօրեղները կը հալածեն զանոնք։ Դիցուք թէ՝ բանականութեան ձիրքը ունենաք, չեմ հասկընար թէ աս ամէն ստեղծուածոց ձեզի դէմ ունեցած բնական ատելութիւնը ինչպէս պիտի կրնաք վերցընել, և զանոնք ձեր ծառայութեանը մէջ գործածելու համար ընտանեցընել։ Ի վերայ այսր ամենայնի՝ աս նիւթիս վրայօք աւելի չեմ ուզեր խօսիլ. վասն զի կ'ուզեմ որ քու անձիդ, ծնած երկրիդ, և հոս գալէդ առաջ՝ ըրածներուդ և գլխուդ եկածներուն վրայօք ինծի պատմես։

—Խիստ շատ կը փափաքիմ ամէն մասամբ զքեզ գոհ ընել, ըսի տիրոջս, բայց շատ կը վախնամ որ զանազան նիւթոց վրայ խօսելու կարող չըլլամ՝ անոնց վրայ ձեր վսեմութիւնը գաղափար մը չունե-

նալու համար · վասն զի աս երկրին մէջ բան մը չեմ տեսներ որ ըսելիքս անոր նմանցընեմ · այսու ամենայնիւ՝ ձեռքէս եկածը ընելով կը ջանամ որ նմանութիւններով ամեն բան բացատրեմ, և խոնարհաբար կ'աղաչեմ որ բնիկ բառերը չափուած առնես՝ ինձ օգնելու շնորհքը ընես” : Տէրս հաճութեամբ խոստացաւ խնդիրքս կատարել :

“Ես Անգղիա բռնուած կղզւոյ մը մէջ՝ պարկեշտ ծնողքէ ծնած եմ, բայց, աս կղզին այնչափ հեռու է, որ ձեր վսեմութեան ամենէն զօրեղ ծառայից մէկը մինչև հոն հասնիլը՝ արեւը իր տարեկան ընթացքը կը կատարէ : Ես առաջ վիրաբուժութիւն կ'ընէի, ու թէ բնութեամբ և թէ դիպուածով մարմնոյ վրայ եղած վէրքերն ու խոցուածները կը բուժէի · Իմ երկրիս կառավարութիւնը էգ մարդու մը ձեռքն է, որուն մենք թագուհի կ'ըսենք : Հարստութիւն ձեռք ձգելու համար երկրէս մեկնած եմ, որպէս զի հայրենիքս դարձած ժամանակս՝ զիս և ընտանիքս անով ապրեցընելու կարող ըլլամ · վերջին ճամբորդութեանս առենը՝ նաւու մը հրամանատար էի, և

իմ՛ հրամանիս տակը գրեթէ յիսուն Լա-
հո— ունէի, որոնց շատը ծովու վրայ մե-
ռան․ անոնց տեղը լեցընելու համար զա-
նազան ազգերէ ուրիշ նաւաստիներ առ-
նելու պարտաւորեցայ։ Մ՛եր նաւը եր-
կու անգամ ընկղմելու վտանգին մէջ ին-
կաւ, առաջին անգամին քիչ մնաց որ
ժայռի մը պիտի զարնուէր, և երկրորդ
անգամին ահագին փոթորիկի մը հանդի-
պեցայ”։ Տէրս խօսքս ընդմիջելով ըսաւ․
“Այնչափ կորուստ ունենալէդ, և վը-
տանգի մէջ իյնալէդ ետև՝ ինչպէս կըր-
ցար համոզել այն զանազան երկիրներու
մարդիկը որ հետդ նորէն վտանգի մէջ
մտնեն։ — Անոնք, պատասխանեցի, յու-
սահատեալ և ողորմելի անձինք էին, ո-
րոնք թէ՛ իրենց չքաւորութեանը և թէ
իրենց յանցանացը համար՝ ծնած երկիր-
նէն փախչելու ստիպուած են, քանզի
անոնցմէ ոմանք դատերու մէջ կործա-
նուած, ոմանք արբեցութեամբ, խաղա-
մոլութեամբ և շնութեամբ ունեցածնին
վատնած, ոմանք քրէական յանցանաց
համար փախած․ և շատերը մարդաս-
պանութեան, գողունի և համարձակ գո-
ղութեան, թունաւորելու, երդմնազան-
ցութեան, նենգութեան, դրամանեն-

գութեան , կոյս կամ կին մը լքելնուն , սողոմականութեան , իրենց դրօշակաց տակէն փախչելնուն , կամ թշնամիին կողմը անցնելնուն ; և ուրիշները՝ բանտէ փախած ըլլալնուն համար կը վախնան հայրենիքնին դառնալ , որ չըլլայ թէ ձեռք անցնելով կախուին , կամ բանտի մէջ անօթի սատկին , ուստի ուրիշ երկիրներու մէջ ապրուստ գտնելու պարտաւորեալ են " :

Ես պատմութիւնը ըրած ատենս՝ տէրս շատ անգամ խօսքս ընդմիջելու բարեհաճեցաւ : Նուաստացս շատերուն ունեցած վերոյիշեալ զանազան յանցանքը անոր նկարագրելու ատենս՝ խօսքիս շատ դարձուածներ տուի , և ըսածներս մինչև որ հասկըցաւ՝ շատ օր քշեց " : Ան զարմանար թէ այս մոլութիւնները ի գործ դնելու ինչ հարկաւորութիւն կար , և անկէ ինչ օգուտ կրնար ըլլալ : Ես մոլութիւնները բացատրելու համար՝ հարստութիւն և իշխանութիւն ձեռք ձըգելու փափաքին , նախանձու , չարութեան , անբարեխառնութեան , և շըռայլութեան սոսկալի ներգործութեանցը վրայ գաղափար մը տալու ջանք ըրի : Ես ամէն բառերս՝ օրինակներ , և են-

թագրութիւններ մէջ բերելով նկարագրելու սախալուեցայ: Իս նկարագրութենէս եւ՝ երբէք չլսուած կամ չտեսնուած բանով երեւակայութիւնը յափշտակուած մէկու մը պէս՝ զարմացմամբ ու բարկութեամբ աչքը դէպի երկինք տնկեց: Իշխանութիւն, կառավարութիւն, պատերազմ, օրէնք, պատիժ, եւ ուրիշ հազարաւոր բաներ բացատրող բառեր չունենալնուն՝ ինչ ըսել ուզելս վրայօք անոր գաղափար մը տալու դժուարութիւնը գրեթէ անյաղթելի եղաւ: Սակայն խորհրդածութք եւ խօսակցութեան միտքը շատ լուսաւորեալ ըլլալուն՝ վերջապէս լիովին հասկցաւ. թէ մեր երկիրներուն մէջ մարդկային բնութիւնը ինչ բաներ ընելու կարող էր: Ուստի ուզեց որ Եւրոպա ըսուած երկրին, մանաւանդ իմ հայրենեացս վրայ մասնաւոր պատմութիւն մը ընեմ իրեն:



## ԳԼՈՒԽ Ե.

*Հեղինակը իր տիրոջը հրամանաւ Անգղիոյ վիճակին վրայօք տեղեկութիւն կու տայ իրեն։ Եւրոպիոյ թագաւորաց մէջ եղած պատերազմաց պատճառները։ Հեղինակը Անգղիոյ սահմանադրութիւնը կը բացատրէ։*

ԸՆԹԵՐՑՈՂՍ թող բարեհաճի դիտել՝ թէ աս հետեւեալ քաղուածը երկու տարիէ ի վեր ժամանակ առ ժամանակ տիրոջս հետ ըրած խօսակցութեանցս ամենահարկաւոր նիւթոց համառօտ բովանդակութիւնն է։ Որչափ աւելի յառաջադիմութիւն կ՚ընէի Հօույհնհնմաց լեզուին մէջ, նորին վսեմութիւնը այնչափ աւելի ընդարձակ պատմութիւն կ՚ուզէր ինձմէ։

Եւրոպիոյ կացութիւնը կրցածիս չափ անոր նկարագրեցի. վաճառականութեան, ձեռակերտուածոց, արուեստից եւ գիտութեանց վրայ խօսեցայ. զանազան նիւթոց վրայօք ըրած հարցմանց տուած պատասխաններս խօսակցութեան անսպառելի նիւթ մը եղան։ Հոս հիմա միայն իմ հայրենեացս վրայօք ըրած խօսքիս

ըովանդակութիւնը կրցածիս չափ կար-
գաւ պիտի նշանակեմ։ Ժամանակէն և
ուրիշ պարագաներէն աւելի՝ ճշմարտու-
թեան խստիւ զգուշութիւն պիտի ընեմ,
միայն անոր կը ցաւիմ որ պիտի չկրնամ
ճշտիւ թարգմանել տիրոջս փաստերը և
բացատրութիւնները, որոնք անբաւա-
կանութենէս՝ մանաւանդ Անգղիարէն
բիրտ լեզուին թարգմանուելով, համը
պիտի կորսնցընեն։

Նորին վսեմութեան հրամանացը հնա-
զանդելու համար՝ պատմեցի անոր Օ-
րէնճի իշխանին ժամանակը եղած յեղա-
փոխութիւնը, ու իշխանին Գաղղիոյ հետ
ըրած երկար պատերազմը, և իր յաջորդ
ներկայ թագուհւոյն ժամանակը՝ քրիս-
տոնեայ ամենահզօր թագաւորաց նիզա-
կակցութեամբը պատերազմին նորոգուի-
լը, որ դեռ կը շարունակուի. իր խըն-
դրանօքը հաշիւ ըրի որ աս պատերազմին
մինչև վերջը գրեթէ միլեօն մը Եահո-
կրնար սպաննուիլ, գուցէ հարիւր կամ
աւելի քաղաքներ առնուիլ, և հինգ այս-
չափ նաւեր այրուիլ կամ ընկղմիլ։

Տէրս հարցուց ինծի թէ՝ երկիր մը միւս
երկրի դէմ պատերազմ բանալու սովո-
րական պատճառները որո՞նք էին։ «Ա-

նոնց պատճառները անթիւ ըլլալուն, ըսի, գլխաւորաց մէկ քանին միայն պատմեմ։ Երբեմն իշխանաց փառասիրութիւնը պատճառ եղած է, որոնք իրենց իշխանութեան ներքեւ որչափ երկիր և ժողովուրդ ունենան, դարձեալ ամենեւին գոհ չեն ըլլար․ երբեմն՝ տէրութեան պաշտօնէից վարուց ապականութ̃ որոնք իրենց յոռի գործակալութե̃ցը դէմ հպատակաց բողոքը հեղձամղձուկ ընելու կամ անոնց միտքը փոխելու համար՝ թագաւորնին պատերազմի կը դրդեցընեն։ Կարծեաց տարբերութիւնը միլէօնաւոր անձանց արիւնը թափուելուն պատճառ եղած է։ Օրինակի համար․ արդեօք մարմի՞նը հաց է, թէ հացը մարմին․ արդեօք այս ինչ մրգիկի մը ջուրը արի՞ւն ըլլալու է, թէ գինի․ միթէ ամուլիլը առաքինութի՞ւն է, թէ մոլութիւն․ միթէ փայտի կտոր մը համբուրե՞լը աղէկ է, թէ զան կրակի մէջ նետելը․ վերարկուի մը համար ո՞ր գոյնը ամենէն աղէկ է․ սե՞ւը, ճերմա՞կը, կարմի՞րը, թէ մոխրագոյնը, և արդեօք վերարկուն երկա՞յն պէտք է ըլլալ թէ կարճ, նե՞ղ թէ լայն, աղտո՞տ թէ մաքուր․ եւն, եւն։ Չկայ պատերազմ մը, որ այնչափ

արիւնահեղ, այնչափ կատաղի, և այն-չափ երկարատև ըլլայ, որչափ կարծեաց տարբերութենէ՝ մանաւանդ ոչինչ բա-ներու վրայ տարբերելէ ծագած պատե-րազմները։

«Երբեմն՝ երկու թագաւորաց մէջ պատերազմ կը ծագի, որ այն ինչ թա-գաւորին երկիրները իրենք նուաճեն, որուն վրայ և ոչ մէկերնին իրաւունք մը կրնան ունենալ։ Երբեմն՝ թագաւոր մը ուրիշ թագաւորի դէմ պատերազմ կը բանայ, վախնալով որ չըլլայ թէ ան իրեն դէմ բանայ։ Երբեմն՝ թշնամի թա-գաւորը շատ զօրեղ և երբեմն շատ տը-կար ըլլալուն՝ պատերազմ կը բացուի։ Երբեմն՝ մերձաւոր տէրութիւնը մեր ու-նեցածը չունենալուն, կամ չունեցած-նիս ունենալուն համար՝ կը սկսինք կռ-ուիլ, մինչև որ ունեցածնիս առնեն, կամ չունեցածնիս տան։ Քաղաքի մը բնակիչները սովամահ կորնչելէն, մահ-տարաժամէ ջարդուելէն, և մէջերնին ծագած երկպառակութենէն տակն ու վրայ ըլլալէն ետև՝ քաղաքին վրայ յար-ձակիլը պատերազմի իրաւացի պատճառ մը սեպուած է։

«Երբ մը ամենամօտ նիզակակցին

քաղաքաց մէկը մեզի յարմար գայ կամ անոր երկրին մէկ կողմը մեր տէրութեանը ամրութիւն ու ամբողջութիւն տայ, անոր դէմ պատերազմ բանալը իրաւունք սեպած ենք: Թէ որ թագաւոր մը՝ աղքատ ու ոգէտ մնացած ազգի մը մէջ զօրք դրկէ, կրնայ արդարապէս ան ժողովրդեան կէսը թրքէ անցընել, և մնացածները իրենց բարբարոսական ընթացքէն հանելու և կրթելու համար գերի տանել: Երբ թագաւոր մը իր թշնամւոյն յարձակումէն ապահովելու համար ուրիշ թագաւորէ մը օգնութիւն ուզէ, օգնութեան եկող թագաւորը սպաննելով, կամ բանտարգելով, և կամ աքսորելով, անոր երկրին տիրելը խիստ սովորական, պատուաւոր, և արքայավայել գործ մ՚է:

“Արիւնակցութիւնը, կամ ամուսնական մերձաւորութիւնը թագաւորաց մէջ շատ անգամ պատերազմ բացուելու պատճառ եղած են. ու ազգականութիւնը որչափ մօտ ըլլայ, կռիւ բանալու հակամտութիւնը այնչափ սաստիկ կ՚ըլլայ: Աղքատ ազգերը անօթի են, և հարուստ ազգերը՝ ամբարտաւան. արդ՝

անօթութիւնն ու ամբարտաւանութիւնը միշտ հակառակութեան մէջ են ։ Ահա աս պատճառաց համար է որ զինուորութեան արհեստը ամենէն պատուաւորը սեպուած է մեր մէջը , որովհետեւ՝ զինուոր ըսածս վարձով բռնուած Աշահո-մ'է , որ գուցէ իրեն ամենեւին վնաս մը չըրող իր սեռէն ըլլողները անխռով սրտով կրցածին չափ կը սպաննէ ։

« Եւրոպիոյ մէջ տեսակ մը մուրացիկ իշխաններ կան , որոնք ըստ իրենց պատերազմ չկրնալով բանալ , իրենց զօրքը հարուստ ազգաց վարձով կու տան՝ մարդ-գլուխ այսչափ սակ առնելով ։ աս սակին չորրորդ մասին երեք մասը իրենք կ'առնուն , և իրենց եկամուտ մեծ մասը աս է ։ այսպէս կ'ընեն նաև Եւրոպիոյ հիւսիսային միւս կողմերը ։

— Պատերազմի վրայօք ըսածներդ , ըսաւ տէրս , յիրաւի ձեր կեղծ հանճարնուդ-արդիւնքը խիստ յայտնի կերպիւ կը ցուցընեն ։ սակայն աղէկ որ շատ վնաս ընել չկրնալու համար՝ բնութիւնը ձեզ վերջին աստիճան անկար ըրած է ։ Ինչու որ բերաննիդ երեսնուդ վրայ տափակ ըլլալուն՝ իրարու չէք կրնար դիւրութեամբ խածնել ։ Ձեր ետևի ու առջևի ոտեր-

նուղ մազիկները այնչափ կարճ ու կա-
կուղ են, որ մեր Լէհ-ուհիներէն մէկը բա-
ւական է ձեր Լէհ-ուհիներէն երկոտասնեակ
մը աղջիկ ձգելով քշել տալու ։ Ուս-
տի պատերազմի մէջ մեռնողներուն թի-
ւը հաշուած ատենդ՝ ինձ կ՚երեւի թէ
չեղած բան մը ըսիր":

Այս բածներուն չդիմանալով, գլուխս
շարժեցի, ու անոր ազնուութեանը վրայ
քիչ մը ծիծաղեցայ ։ Պատերազմական
արուեստին անհմուտ չըլլալուս՝ թնդա-
նօթներու, օձաձեւ գնդընկէցներու,
պատրուգաւոր, և լայնափող հրացան-
ներու, հրացանակներու, գնդակներու,
վառօդի, թուրերու, սուիններու, պա-
տերազմներու, պաշարումներու, յար-
ձակումներու, ընկրկումներու, ական-
ներու, ընդհիմափոր ականներու, ամրա-
կոծերու, ծովային պատերազմաց, հա-
զարաւոր անձամբ նաւերուն ընկղմելուն,
իւրաքանչիւր կողմէն քանի հազար ան-
ձանց մեռնելուն, վիրաւորեալներուն,
հեծութեանց, անդամներուն յօդս վե-
րանալուն, ծուխին, շաչիւնին, աղաղա-
կին, շփոթ խառնակութեան, ձիերու
ոտից տակ կոխկրտուելով սպաննուելուն,
փախչելուն, հալածելուն, յաղթու-

թեանց, շանց՝ գայլոց և գիշատիչ թռչ-
նոց կերակուր ըլլալու համար՝ դաշտերը
դիակներով լեցուելուն, կողոպուտին,
յափշտակութեան, աւարառութեան,
հրդեհին և աւերման վրայ նկարագրու-
թիւն մը ըրի իրեն, և իմ սիրելի հայ-
րենեացս քաջութիւնը յայտնել ուզե-
լով. “Անգամ մը ես աչօքս տեսայ, ը-
սի, որ հայրենակիցներս պաշարման ա-
տեն՝ թշնամւոյն բերդին մէջէն հարիւ-
րաւոր հոգի, և նաւու մը մէջէն նոյն-
չափ անձինք մէկէն օդը հանեցին, և ա-
նոնց դիերը կտոր կտոր եղած ամպերէն
վար կը հոսէին յուրախութիւն հանդի-
սատեսաց”.

Աւելի մանրամասն տեղեկութ̅ի տալու
վրայ էի, երբ տէրս հրամայեց որ լռեմ.
“Աահո–ներուն բնութի̅ը հասկցողը, ը-
սաւ, դիւրաւ կրնայ հաւտալ թէ այս-
պիսի անարգ կենդանիի մը համար ա-
մեն ըսածներդ անկարելի բաներ չեն,
թէ որ անոնց ոյժը ու խորամանկութիւ-
նը իրենց չարութեանը հաւասարի.
Բոլոր ըսածներդ Աահո–ներու սեռին
վրայ ունեցած ատելութիւնս յաւել-
ցուցին, և միտքիս մէջ չափազանց շփո-
թութիւն մը ծագեցին. Ալ վախնամ որ

ականջս այսպիսի տաղտկալի բառերու-ընտանենալով, ետքէն չըլլայ թէ կամաց կամաց տանելութիւնս նուազի. թէև ես երկրին Լոնտոնները կ՚ատեմ, բայց այսու-հետև իրենց գարշելի յատկութեանցը համար՝ անգութ կննայհ (գիշատիչ թըռ-չուն մը) կամ սմբակս կտրող սրա-տուր քարէ մը աւելի պիտի չանարգեմ զանոնք։ Ըստ որում երբ հանճարեղ ձեւացող էակ մը այսպիսի անհնարին ա-նօրէնութիւններ ընել կարենայ, կը վախ-նամ որ գուցէ սա հանճարին ապակա-նութիւնը գազանութենէ յոռեգոյն ըլ-լայ։ Ապահովեմ թէ ունեցած հանճար-նիդ այնպիսի յատկութիւն մ՚է, որ ձեր բնական մոլութիւնները աճեցընելու-չափ կը յարմարի, ինչպէս որ առուի մը պղտոր ջուրը տձև մարդու մը պատկերը ոչ միայն աւելի երկայն՝ այլ աւելի ծու-ռումուռ կը ցուցընէ։

«Պատերազմի վրայօք թէ հիմակուան և թէ առաջուան ըսածներդ խիստ չար եղան. բայց մտածէ որ բան մը կայ, որ քիչ մը տարակուսանաց մէջ կը ձգէ զիս, ըսիր թէ ձեր նուաստեաց ոմանք դա-տերու մէջ կործանած ըլլալնուն հայրե-

նիւթէն մեկնած են. իրաւ՝ ես բառին նշանակութիւնը արդէն բացատրած եմ, բայց խելքս չհասնիր թէ օրէնքը, որ ամենուն պաշտպանութեանը համար հաստատուած է, ինչպէս կրնայ մարդու մը կործանումը պատճառել։ Ուստի կ'ուզեմ որ օրէնք և անոր գործակալները ըսելովդ ինչ ըսել ուզելդ հայրենեացդ մէջ հաստատուած ներկայ սովորութեանցը համեմատ աւելի ընդարձակօրէն հասկըցընես ինծի. Քանզի կարծեմ թէ բանաւոր կենդանիի մը (ինչպէս որ դուք այնպէս ըսաւ կը կեղծէք,) ընելիքը և չընելիքը ցուցընելու համար՝ բնութիւնը և հանճարը բաւական առաջնորդներ են։ — Թէպէտև, ըսի Նորին վսեմութեան, օրինաց վրայօք ունեցած քիչ մը տեղեկութիւնս՝ ինծի եղած անիրաւութեանց համար դատարկ տեղը փաստաբաններու հետ խօսեցած ատենս սորցած եմ, այսու ամենայնիւ կրցածիս չափ զքեզ գոհ ընելու կ'աշխատիմ։

« Մեր մէջը մարդոց ընկերութիւն մը կայ, որոնք իրենց պատանեկութենէն կրթուած են իրենց առած կաշառքին համեմատ հաստատելու համար թէ ճերմակը սև է, և սևը ճերմակ։ Բոլոր ժո֊

ղովուրդը ատ ընկերութեան գերի եղած է։ Օրինակի աղագաւ․ թէ որ դրացիս կովուս վրայ աչք անկած է, կամք ձեռքէս առնելու իրաւունք ունենալը հաստատելու համար՝ փաստաբան մը կը գըտնէ․ անատեն հարկ կ՚ըլլայ ինձ որ իրաւունքս պաշտպանելու համար՝ փաստաբան մը ես ալ վարձեմ, որովհետեւ մարդ իրեն համար ջատագով կենալը օրինաց ամեն կանոնաց դէմ է։ Հիմա ես որ կովուն ճշմարիտ տէրն եմ՝ երկու մեծ կորուստներ ունիմ։ Նախ՝ փաստաբանս գրեթէ իր օրօրոցէն ստութեան պաշտօպան կենալը սորված ըլլալուն, արդարութեան համար պաշտպան կեցած ատենը՝ իր սկզբունքէն բոլորովին դուրս կը գտնէ զինքը, և աս անընտանական պաշտօնը՝ միշտ սխալմամբ և անյաջողութեամբ ի գործ կը դնէ։ Երկրորդ՝ փաստաբանս մեծ զգուշութեամբ վարուիլ պէտք է, եթէ ոչ՝ դատաստանի յաճախորդները պակսեցընելուն համար՝ դատաւորները կը կշտամբեն, և իր արուեստակից եղբայրները կ՚ատեն զինքը։ Արդ՝ կովս չի կորսնցընելու համար՝ երկու միջոց կայ միայն․ առաջինը՝ կրկին վարձք տալով, հակառակորդիս փաստաբանը շահիլ է,

քանզի անատեն հակառակորդիս մեղմով մը կը հասկըցընէ թէ իրաւունքը վաստը-կած է։ Երկրորդ միջոցն է որ փաստաբանս պէտք է կարելի եղածին չափ դատը ա-նիրաւ ցուցընել՝ հաստատելով որ կոխ հակառակորդիս կը վերաբերի, և աս բանս թէ որ ճարտարութեամբ ի գործ դրուի, անշուշտ ատեանին պաշտպա-նութիւնը պիտի շահուի։ Ձեր վսեմու-թիւնը պէտք է գիտնայ որ աս դատա-ւորները կալուածոց վէճերը, և յանցա-ւորաց դատերը վճռելու համար հոն նստած են, և ասոնք դատերու մէջ ծե-րացած ու հեղգացած ամենաճարտար փաստաբանաց մէջէն ընտրուած են, և իրենց բոլոր կեանքը՝ ճշմարտութեան և անարդարութեան դէմ կռուելով ան-ցընելնուն համար՝ նենգութեան, երդ-մնազանցութեան, և հարստահարու-թեան պաշտպան կենալու դժբաղդաբար այնչափ սովորուած են, որ անոնցմէ մէկ քանին գիտեմ, որոնք իրաւունք ունե-ցող կողմէն տուած մեծ կաշառք մը լաւ եւս սեպեցին չընդունիլ, քան թէ իրենց բնութեան կամ իրենց սովորոյթին անվայել բան մը ընելով, ունեցած իշ-խանութեանցը վնաս մը բերել։

« Այս փաստաբանաց մէջ օրէնք եղած է՝ որ առաջուց եղած բան մը կրնայ քաս օրինի նորէն ըլլալ՝ ուստի մարդկային ընդհանուր իրաւանց և հասարակ դատողութեանց դէմ առաջուց եղած որոշումները արձանագրելու մասնաւոր հոգ կը տանին . Այս վճիռներուն նախագաղափարք անունը տալով՝ խիստ անիրաւ կարծիքը արդարացընելու համար իբր հաստատութիւն զանոնք յառաջ կը բերեն , և դատաւորները միշտ ըստ այնմ կը հրամայեն .

« Դատաստանի ժամանակը՝ դատին հիմը քննելէն կը զգուշանան . այլ հարկ չեղած ամեն պարագայից վրայ բարձր ձայնով , սաստկութեամբ , և ձանձրութիւն տալով երկար բարակ կը խօսին . Օրինակի համար . արդէն յիշած դէպքիս մէջ՝ ամենևին չեն ուզեր գիտնալ թէ հակառակորդս կովուս վրայ ինչ իրաւունք կամ ինչ պահանջմունք կրնայ ունենալ . այլ կ՚ուզեն գիտնալ թէ յիշեալ կովը կարմի՞ր էր թէ սև , եղջիւրները երկա՞յն էին թէ կարճ . այն դաշտը , որուն մէջ կ՚արածէր , կլո՞ր էր թէ քառակուսի . կաթը տա՞ն մէջ կը կթուէր , թէ տնէն դուրս ուրիշ տեղ մը . ինչ

հիւանդութեան ենթակայ էր, եւայլն։ Ասկէ ետեւ՝ կը սկսին նախագաղափար ըսուած վաղեմի վճիռները քննել. այսպէս դատը օր ըստ օրէ երկարելով, տարը, քսան կամ երեսուն տարիէն ետեւ՝ դատը կը վերջանայ։

« Պէտք է գիտել նաեւ որ աս ընկերութիւնը իրեն յատկացեալ խօսելու մասնաւոր եղանակ մը և ծածուկ լեզու մը ունի, որ ուրիշները չեն հասկընար; և աս լեզուաւ գրուած է իրենց օրէնքը, որոնք բազմապատկելու համար մասնաւոր հոգ կը տանին, որով ուղղին և սխալին, ճշմարտին և սուտին բուն էութիւնը բոլորովին այնպէս կը խառնակեն, որ երեսուն տարի պէտք է որոշելու համար թէ վեցը տասնմէ ի վեր նախնիքէս մնացած արտը ի՞նձ կ'իյնայ թէ երեք հարիւր մղոն հեռու գտնուող օտարականի մը։

« Տէրութեան դէմ յանցաւորաց դատին մէջ վճռելու կերպը աւելի համառօտ և նշանաւոր է։ Նախ՝ դատաւորը մեկը ղրկելով երեւելեաց կամքը կը քննէ, այնուհետեւ օրինաց ամեն կանոնները խստիւ պահելով, դիւրաւ կրնայ յանցաւորը կախել կամ ազատել »։

Հօ՜ տէրս ընդմիջելով. “Մե՛ղք, բը-սաւ, որ մտաւորական այսպիսի մեծ զօ-րութեան ձիրքը ունեցող էակները, ինչ-պէս որ քու նկարագրութեանդ նայե-լով՝ աս փաստաբաններն անշուշտ պէտք են ունենալ, ուրիշները գիտութեան և իմաստութեան մէջ կրթելու չեն ջա-նար. — Այս փաստաբանները, պատա-խան տուի նորին վսեմութեան, իրենց արուեստէն դուրս եղած ամէն բաներու մէջ առ հասարակ խիստ յիմար ու տը-գէտ անձինք են, հասարակ խօսակցու-թեան մէջ խիստ տաղտկացուցիչ, և ա-մէն տեսակ գիտութեան և ուսման ո-խերիմ թշնամի են. Խօսելու ատեն, ինչպէս նաև իրենց արուեստնուն մէջ մարդուս միտքը խոտորել կ'ուզեն.



## ԳԼՈՒԽ Ձ.

*Աննա Թագուհւոյն օրովը Անգղիոյ վիճակին շարայարութիւնը։ Եւրոպական տէրութեանց առաջին պաշտօնէի մը վարքը։*

ՏԷՐՍ ամենևին չէր կրնար հասկընալ թէ ատ փաստաբանները միայն իրենց նմաններուն միտ հասցընելու համար՝ ինքզինքնին խոնջէնքի, անհանգըստութեանց և դժուարութեանց մէջ ձգելնուն, ու անիրաւութեան մը դաւակից ըլլալնուն պատճառը ինչ էր, և ոչ ալ կրնար հասկընալ թէ վարձքով ըրին ըսելովս ինչ ըսել կ՚ուզէի։ Ասոր վրայ՝ մեծ նեղութեամբ անոր նկարագրեցի ստակին գործածութիւնը, անոր ինչ մետաղէ շինուիլը, և մետաղաց յարգը։ «Թէ որ, ըսի, Եահու մը ա-ծանրագին մետաղներէն շատ մը ժողվէ, ուզածը կրնայ ստանալ, այսինքն՝ ամենաչքնաղ զգեստներ, ամենապատուական տներ, ընդարձակ երկիրներ, թանկագին ուտելիք և ըմպելիներ, և իրեն համար ամենագեղեցիկ կին մը ընտրել։ Ասա-

ճեն բաները կատարողը ստակը ըլլալուն համար՝ մեր Լաւուները ըստ իրենց բեր-մանց կամ շռայլութեամբ զան վատնելէն և կամ ագահութեամբ խնայելէն չեն կշտանար ։ Չարուաները աղքատ մար-դոց աշխատանաց պտուղը կը վայելեն և վերջինները առջիններուն հետ բաղդա-տելով, մեկին հազար են ։ Մեր ժողո-վրդեան շատը՝ քանի մը անձանց առա-տութեամբ ապրելուն համար՝ չեչին օ-րոշելով ամեն օր աշխատելով խիստ թշուառութեամբ կ'ապրին"։

Ես և ասոր նման ուրիշ մասնաւոր պա-րագայից վրայ շատ երկարօրէն խօսե-ցայ ։ "Կ'ուզեմ հասկընալ, ըսաւ Նորին վսեմութիւնը, թէ արդեօք ամեն կեն-դանիք, մանաւանդ անոնց վրայ իշխողնե-րը երկրիս արգասեացը հաւասարապէս մասնակից չե՞ն ։ Ուստի կ'ուզեմ որ հաս-կըցընես թէ այս թանկագին կերակուր-ները ի՞նչ են, և ի՞նչպէս եղեր է որ ձեզմէ շատերուն հարկաւոր բաներ ե-ղեր են"։ Ասոր վրայ միտքս եկած ամեն տեսակ կերակուրները, և զանոնք հան-դերձելու զանազան կերպերը մի առ մի թուեցի, և հասկըցուցի անոր թէ կե-

րակուրներ , համեղունք , խմելիք , և ուրիշ անթիւ պէտքեր ձեռք ձգելու համար՝ աշխարհիս ամեն կողմը նաւեր կը ղրկենք ։ Մեր երևելի էգ Նաւ–ներէն մէկը մինչև իր նախաճաշիկը լմնցընելը կամ գաւաթ մը թէյ խմելը՝ աս երկրագունտս գոնէ երեք անգամ իր շրջանը կը կատարէ ։ — Ուրեմն , բաւ , ձեր երկիրը խիստ ողորմելի ըլլալու է , որ իր բնակչացը համար ուտելիք չկրնար մատակարարել ։ Ամենէն աւելի կը զարմանամ թէ այսպիսի ընդարձակ երկրի մը մէջ անուշ ջուր չգտնուի , և ժողովուրդը խմելիք գտնելու համար ծովերէ անցնելու պարտաւորի ։ — Անգղիան ( իմ սիրելի հայրենիքս , ) ըսի , բնակչացը սպառել կրցածէն երեք անգամ աւելի ուտելիք կը բուսցընէ · գարեհատերը կամ ծառոց պտուղները ճմլելով ազնիւ ըմպելիներ կը շինէ , և կենաց ամեն հարկաւորութիւնները նոյն համեմատութիւն ունինք ։ Սակայն մարդոց դեղխութիւնն ու անբարեխառնութիւնը , և կանանց սնափառութիւնը յագեցընելու համար՝ մեր հարկաւոր բաներուն ամենէն մեծ մասը ուրիշ երկիրներ կը ղրկենք , և անկէց անոնց փոխարէն հիւանդութիւն և մա-

ջութիւն պատճառող նիւթեր բերելով կը սպառենք ։ Աւստի հետեւաբար մեր ժողովրդեան մեծագոյն մասը մուրացկանութեամբ , յայտնի և ծածուկ գողութեամբ , խաբէութեամբ , կաշառուք , շողոքորթութեամբ , հրապուրանօք , սուտ երդմամբ , դրամանենգութեամբ , խաղամոլութեամբ , ստութք , քծնելով , յոխորտալով , քուէարկութեամբ , անպիտան գրքեր գրելով , աստղահմայութք , թիւնաւորելով , պոռնկութեամբ , կեղծ ու պատիր բաներ խօսելով , անուանարկութեամբ , ապստամբութք , և ուրիշ ասոնց նման գործերով իրենց ապրուստը ճարելու ստիպուած են ” ։ Ու աս բաները մինչև որ անոր հասկըցուցի՝ շատ նեղութիւն կրեցի ։

“ Օտար երկիրներէ բերուած գինին , ռոմ , ջուրին և ուրիշ ըմպելեաց պակասութիւնը լեցընելու համար չէ , քանզի գինին այնպէս ըմպելիք մ՚է , որ խելքերնիս գլուխնէս առնելով զմեզ կը գուարթացընէ , ամեն սխալ մտածմունքը մեր մտքէն կը հեռացընէ , ուղեղնուս մէջ տարօրինակ երևակայութիւններ կը ծագէ , յոյսերնիս կը բարձրացընէ , և վախերնիս կը փարատէ · ատեն մը մտա-

ւորական ամեն գործողութիւններս կը դադրեցընէ, և մեր անդամաց գործածութենէն զմեզ կը զրկէ, մինչև խորին քունի մէջ իյնալնիս. Բայց ճշմարիտը՝ աս տեսակ քունէ արթնցած ատեններս՝ ակարութիւն և թուլութիւն մը կ'ըզգանք, և աս ըմպելիքը խմելով վրանիս շատ հիւանդութիւններ կու գան, որոնք մեր կեանքը կարճ ու անմխիթար կ'ընեն.

«Ըսկէ զատ՝ մեր ժողովրդեան մեծ մասը՝ հարստաց և իրարու պէտք եղած հարկաւոր բաները պատրաստելով կ'ապրին. Օրինակի համար. եթէ հայրենիքս ըլլամ և պէտք եղածին պէս հագուիմ, պէտք է որ հարիւր արհեստաւորաց ձեռածները մարմնոյս վրայ ունենամ. տունըս շինելու և անոր մէջի զարդարանքը պատրաստելու համար՝ մէկ այնչափ մարդիկ ևս պէտք է, իսկ կնոջս զարդերը պատրաստելու համար հինգ այնչափ մարդ պէտք է».

Հիւանդները նայելով ապրուստին ճարողներուն վրայ խօսեցած ատենս (որովհետև նաւաստեաց շատը հիւանդութենէ մեռած ըլլալին նորին վսեմութեան արդէն ըսած էի) ինչ ըսել

տուզ՛ըս յետին դժուարութեամբ կրցի հասկըցընել անոր ։ « Ես միայն գիտեմ բսաւ, որ Հօռայշնեան մը մեռնելէն քանի մը օր առաջ կը տկարանայ ու կը ծանրանայ, կամ դիպուածով մը անդամոց մէկը կը խեղի · բայց ինձ անկարելի կ'երեւի թէ ինչպէս բնութիւնը, որուն ամէն գործերը կատարեալ են, կը թողու որ ձեր մարմնոյն վրայ հիւանդութիւններ ստանիս · եւ աս տարօրինակ աղէտքին պատճառը կ'ուզեմ որ ինծ հասկըցընես ։

— Մենք, բսի, իրարու հակառակ ներգործութիւններ ընող հազար տեսակ բաներ կ'ուտենք · չանօթցած կ'ուտենք, չծարաւցած կը խմենք, գիշերն ի լոյս բերաննիս պատառ մը բան չդնելով ոգելից ըմպելիներ կը խմենք, որոնք զմեզ ծուլութեան կը հակամիտեն, մարմիննիս կը բորբոքեն, եւ մարսողութիւննիս կ'արգիլեն, կամ կը սաստկացընեն ։ Պօռնիկ էգ Լ՝ահ-ները հիւանդութիւն մը ունին, որով իրենց ժանեաց մէջ կնողներուն ոսկորներուն մէջ փտութիւն մը կը տարածեն ։ Ես եւ ուրիշ բազմաթիւ հիւանդութիւններ հօրէ յորդիս

կը ժառանգին , այնպէս որ շատերը փարանին շատ տեսակ հիւանդութիւններով կը ծնանին ։ Վերջը չգար թէ որ մարդուս ենթակայ եղած ամէն հիւանդութիւնները պատմելու ըլլամ , որոնք անոր ամէն անդամին ու յօդին մէջ տարածուած հինգ - վեցը հարիւր տեսակ հիւանդութենէ պակաս չեն ․ վերջապէս՝ մարդուս թէ արտաքին և թէ ներքին ամէն մասը իրեն մասնաւոր հիւանդութիւնները ունի ։ Ասոնք բժշկելու համար մեր մէջը տեսակ մը անձինք կան , որոնք աս հիւանդութիւնները բժշկելու կամ բժշկել ձեւացընելու արուեստին մէջ կրթուած են ” ։ Աս արհեստին քիչ մը տեղեկութիւն ունենալուս՝ նորին վսեմութիւնը հաճեցընելու համար բժշկաց բանեցուցած ամէն միջոցներն ու գաղտնիքը անոր հասկըցընել ուզեցի ։

“ Իրենց առաջին սկզբունքը ան է , ըսի , որ ամէն հիւանդութիւն արեան և հիւթոց յորդութենէն յառաջ կուգայ , որուն մեր բժիշկները կը հետեցընեն որ պէտք է թէ բնական ճամբայէն , և թէ բերնէն արտաքսել տալ ։ Աս գործողութենէն ետեւ՝ դալարեղէններէ , մետաղներէ , խէժերէ , իւղերէ , խեցե-

մորթերէ , աղերէ , հիւթերէ , ծովու ոճզերէ , կղկղանքէ , ծառոց կեղեւներէ , օձերէ , առջնագորտերէ , գորտերէ , մամուկներէ , մեռած մարդոց միսէ ու ոսկորներէ , թռչուններէ , անասուններէ , ու ձուկերէ , հատուելու ու կլլելու համար այնպիսի օճառ - խառնուկ՝ չափէ դուրս գարշելի՝ և զզուելի բաղադրութիւն մը կը շինեն , որ մարդուս ստամոքսը գանելով իսկոյն դուրս կը հանէ , որուն փսխանք կ'ըսեն ։

«Կամ մի և նոյն նիւթոց մէջ ուրիշ թիւնաւոր նիւթեր խառնելով մեզ կը հրամայեն որ թէ՛ վարի և թէ վերի ծակէն ( բժշկին հրամայած ատեն՝ խելքին փչածին համեմատ ) ալ գեղերը առնենք , որոնք առջինին նման՝ աղիքնուս մի և նոյն զզուանք ու նեղութիւնը տալով փորերնիս կը թուլցնեն ու մէջի եղածը դուրս կը հանեն , և առոր՝ մաքրողագեղ , կամ գանեխ կ'ըսեն ։ Քանզի բժիշկները կը հաստատեն թէ մարդուս վերի և աչքի երեցած ծակը՝ ուտելիք և խմելիքներս խօթելու , և վարի ծակը՝ զանանք հանելու համար բնութիւնը մարդուս տուած է ։ Աս արհեստաւորները Ճարտարութք կը խորհին՝ թէ մարդուս վրայ հիւան-

գութիւն մը եկած ատեն՝ բնութիւնը իր ուղէն կը խախտի. ուստի զան նորէն իր տեղը բերելու համար՝ ամէն մէկ ծակին գործածութիւնը փոխելով, հակառակ գործողութիւն ընել պէտք է՝ հիւանդին որքանին ծակէն հեղուկ և կարծրը նիւթեր բռնութեամբ ներս խօթելով ու բերնէն դուրս հանել տալով:

"Բայց իրական հիւանդութիւններէ զատ՝ ուրիշ շատ երևակայական հիւանդութեանց ենթակայ ենք, որոնց համար բժիշկները երևակայական դեղեր հնարած են: Այս հիւանդութիւններն ու դեղերը իրենց զանազան անուններն ունին, և մեր էգ Ադամները մինչև սա տեսակ հիւանդութիւններով կը տառապին:

"Բժշկաց երևելի կատարելութեանց մէկը ան է որ կրնան ամէն բան վարպետութեամբ կանխագուշակել, և շատ քիչ կը պատահի որ սխալին. հիւանդը յոռի աստիճանի հասած ատեն՝ ընդհանրապէս անոր վրայ մահ կը գուշակեն. վասն զի եթէ բժշկելը չեն կրնար, մահ հասցընելը մինչև ձեռքերնին է. ուստի իրենց վճռէն ետև՝ եթէ հիւանդին վրայ աղէկի դառնալու անակնկալ նշաններ երևան ելնեն, սուտ մարգարէի տեղ չանցնելու

համար՝ ումպ մը յարմար դեղով իրենց վարպետութիւնը աշխարհիս յայտնելու կերպը գիտեն ։

« Ա՛ս միջոցը՝ կնիկնէն ձանձրացած էրիկ մարդոց , անդրանիկ զաւակաց , տէրութեան առաջին պաշտօնէից , և շատ անգամ Թագաւորաց բանին շատ աղէկ կու գայ » ։

Կառավարութեան ինչ ըլլալը և մանաւորապէս մեր երևելի սահմանադրութեանը վրայօք ( որ իրաւամբ բոլոր աշխարհիս զարմանքն ու նախանձը գրգըռած է , ) տիրոջս հետ անկէ առաջ ընդհանրապէս խօսեցած ատենս՝ պատահմամբ երևելի պաշտօնէայի մը վրայօք յիշողութիւն ըրած ըլլալուս , քիչ մը ժամանակէ ետև՝ հրամայեց ինձ որ իրեն հասկըցընեմ թէ երևելի պաշտօնեայ ըսելով Եահուներուն ո՛ր մասնաւոր տեսակը ըսել կ՚ուզէի ։

« Տէրութեան առաջին կամ գլխաւոր պաշտօնեայ ըսածս , ըսի , թէ՛ ուրախութենէ և թէ տրտմութենէ , թէ՛ սէրէ և թէ ատելութենէ , թէ՛ գթութենէ և թէ բարկութենէ բոլորովին ազատ անձ մ՚է ։ սակայն հարստութիւն , իշխանութիւն , ու պատիւ ձեռք ձգելու

սաստիկ փափաքէն ուրիշ կիրք չունի : Իր խօսքը ամէն ձևի խօթելով կը գործածէ, միայն՝ իր միտքը չյայտներ, և ամենևին ճշմարիտը չխօսիր մինչև որ չի գիտնայ թէ բանծը սուտ տեղ պիտի առնես, և ոչ սուտ մը կը խօսի՝ մինչև որ ճշմարտի տեղ առնելզ չգիտնայ : Այն մարդը, որուն ետևէն փառաւթեամբ կը խօսի, յառաջանալու ամենէն ապահով ճամբուն մէջն է. Երբ զքեզ ուրիշներուն կամ քու առջևդ գովէ, ան օրուանէ՝ քու վիճակդ աղէտալի է : Առաջին պաշտօնէի մը խօսք տալէն՝ մանաւանդ զան երդմամբ հաստատելէն աւելի չարագուշակ նշան մը չկրնար ըլլալ, և աս նշանէն ետև՝ ամէն խելացի մարդիկ կը քաշուին, ու յոյսերնին կը կտրեն :

« Առաջին պաշտօնէի աստիճանը հանելու համար՝ երեք միջոցներ կան. առաջինը՝ կին մը, դուստր մը, կամ քոյր մը խոհեմութեամբ ուրիշի ձեռքը յանձնելուն կերպը գիտնալ է : Երկրորդը՝ նախորդ պաշտօնեան մատնել կամ դաղտնի կերպով կործանել զան, և երրորդը՝ հասարակաց ժողովներու մէջ պալատականաց մոլորութեանց դէմ սաստիկ եռանդ մը ցուցընել է : Աստի-

ժառատուն թագաւոր մը լաւ ես պիտի տեպէր այս միջոցներէն վերջինը գործածողները իր պաշտօնէն վարել. քանզի այսպիսի նախանձայոյզները իրենց տիրոջ կամքը և կիրքը միշտ ձեռնտու և հընազանդ են: Անոնք առաջին պաշտօնեայի պաշտօնը ձեռք անցուցածնուն պէս՝ իրենց աստիճանին մէջ հաստատ մնալու համար ծերակուտի կամ բարձրագոյն ժողովի անդամոց մեծ մասը կը կաշառաբեկեն, և հնարքով մը ամեն տեսակ պատասխանատուութենէ զիրենք ապահովելով, ազգին կողոպուտներովը պաշտօնէն կը հրաժարին:

« Առաջին պաշտօնէի մը պալատը՝ ուրիշները իր բուն արուեստին մէջ կրթելու փորձարան մ'է. անոր մանկլաւիկները, սպասաւորները, դռնապանները իրենց տիրոջը հետևելով, իրենց զանազան վիճակին մէջ մէկ մէկ պաշտօնեաներ կ'ըլլան. լրբութեան, ստութեան, և կաշառաբեկութեան գլխաւոր երեք արուեստից մէջ գերազանցել կը սորվին, և հետևաբար՝ տէրութեան մեծամեծներէն կը պատուին: Անոնք ճարպիկութեամբ և անամօթութեամբ երբեմն մինչև իրենց տիրոջը կը յաջորդեն:

« Այս պաշտօնէին վրայ հաստատակօրէն իշխողը վատանուն օրիորդ մը, կամ սիրելի սպասաւոր մ՚է, որոնք այնպիսի խողովակներ են, որոնց մէջէն աս պաշտօնէից շնորհքը կը տարածին, և ստուգիւ կրնան տէրութեան կառավարիչներ անուանիլ:

Օր մը՝ հայրենեացս ազնուականաց վրայօք յիշած ատենս՝ տէրս ինծ գովութիւն մը ընելու բարեհաճեցաւ, որուն երբէք չէի ուզեր արժանանալ: « Հաւատամ եմ, ըսաւ, թէ դուն ազնուական գերդաստանէ մ՚ես, վասն զի թէ ձևով, թէ գոյնով, և թէ մաքրութեամբ մեր ամեն Լեհուհիները կը գերազանցես, թէև անոնց չափ ուժեղ և արընթաց չես երևար, սակայն աս անշուշտ ուրիշ կենդանիներէ տարբեր կերպով ապրելէդ յառաջ եկած է. ասկէ զատ՝ ոչ միայն խօսելու կարողութեան ձիրքը ունիս, այլ հանճարոյ գոյզն սկզբունքը ան աստիճան ունիս, որ ամեն ճանչցողներս սքանչելիքի մը տեղ դրած են զքեզ:

« Հուինհնմաց մէջ, ըսաւ տէրս, ճերմակները, աշխէտները, և երկաթի մոխրագոյնները՝ շառագոյններուն, ճարտուկներուն և սևերուն կազմուածքը

ջունին · ոչ նոյն տաղանդով կը ծնին , և ոչ յառաջադիմութիւն ընելու կարողութիւն ունին · ատոր համար իրենց բոլոր կենացը մէջ միշտ ծառայական վիճակի մէջ կը մնան , և ամենևին չեն ցանկար իրենց բուն սեռը յառաջացընելու · աս բանս աս երկրին մէջ անբընական և այլանդակ բան մը կ'երևայ”։

Իմ վրաս ունեցած բարի կարծեացը համար մեծ երախտագիտութեամբ շընորհակալ եղայ Նորին վսեմութեան , բայց միանգամայն իմացուցի թէ իմ ծնունդս ազնուական տոհմէ չէ , այլ աւելի ստորին ցեղէ և պարզ ու պարկեշտ ծնողքէ ծնած էի , որոնք ճիշտ ինձ բաւական կրթութիւն տալու չափ կարող էին · “Մեր մէջը , ըսի , ազնուականութիւնը կարծածէդ բոլորովին տարբեր է · քանզի մեր ազնուական պատանիները իրենց տղայութենէն ի վեր ծուլութեան և շռայլութեան մէջ կրթուած են · իրենց տարիքը նորածին պէս՝ ուժերնին կը սպառեն , և անպարկեշտ անառակ էգերու հետ հաղորդակցութիւն ունենալով գարշելի հիւանդութիւններ կ'առնեն անոնցմէ , ու գրեթէ բոլոր ու-

նեցածնին վատներէն եւս՝ անշնորհք, վատառողջ, նուաստատոհմ, և իրենց ատելի ու անարգ կնոջ մը հետ կը կարգուին՝ միայն ստակի համար ։ Այսպիսի ամուսնութէ ծնածները ընդհանրապէս խուլագար, յօդացաւոտ, կամ տձև զաւակներ են ․ և այս շարունակութեամբ գերդաստանը երբեք սերունդէ անդին չտևեր՝ մինչև որ կինը սերունդը յարատեւցընելու համար՝ իր դրացիէն կամ ծառայից մէկէն առողջ հայր մը ճարելու չհոգայ ։ Տկար ու հիւանդոտ մարմին մը, չոր ու նիհար դէմք մը, և երեսի դըժգոյնութիւնը ազնուական արեան ճշմարիտ նշաններ են ․ Թէ որ երևելի անձ մը առողջ և ուժեղ երևոյթ ունենայ, բոլոր աշխարհ կ'եզրակացընէ թէ անոր իսկական հայրը կառապան կամ ձիադարման մը եղած ըլլալու է ։ Ասոնց մտաւորական պակասութիւնները մարմնական պակասութեանց կը հաւասարին, որոնք կենաց ձանձրութեան, տխրութեան, յիմարութեան, խելքին փչածը ընելուն, զգայախտութեան, և անբարտաւանութեան բաղադրութիւն մ'են ։

« Ասոնց այս երևելի անձանց հաճութեանը՝ օրէնք մը ոչ կրնայ հաստա-

տուել, ոչ փոխուել, և ոչ ջնջուել, և այս ազնուականները կրնան նաև մեր ա-մէն ստացուածքը սահմանել առանց գերագոյն ատեանին բողոքելու ։



# ԳԼՈՒԽ Է.

*Հեղինակին չափազանց հայրենասիրութիւնը ։ Ընդդէմ ժամանակագրութեան եւ գործակալութեան վրայ իր ամբողջ դիտողութիւնները՝ ճիշդ հեղինակին նկարագրածին համեմատ ։ Մարդկային բնութեան վրայ հեղինակին ամբողջ ըսածները ։*

ՐՈՆԹԵՐՑՈՂՍ գուցէ զարմանայ թէ ինչպէս կրնայի իմ նմաններս այսպէս ազատօրէն ներկայացընելու այնպիսի մահկանացուաց առջին, որոնց իմ եւ իրենց Պոտուներուն մէջ եղած նմանութեանը նայելով, արդէն մարդկային սեռին վրայ այնչափ նուաստ կարծիք մը ունեցեր էին ։ Սակայն պէտք եմ համարձակ խոստովանիլ թէ աս ազնիւ չորքոտանեաց առաքինութիւնները մարդկային մոլորութեանց հետ բաղդատելով, աչքս այնչափ բացուեցան, ու իմացականութիւնս այնչափ ընդարձակեցաւ, որ սկսայ մարդուս գործերն ու կիրքը խիստ տարբեր կերպով տեսնել, եւ խորհիլ թէ իմ տեսակիս պատիւը պաշտպանելը արժանի չէ, մանաւանդ որ տի-

բողջ պէս սուր դատողութիւն ունեցող անձի մը առջև այս պաշտպանութիւնը անկարելի էր ինձ ընելու · քանզի ան ամեն օր վրաս հարիւրաւոր այնպիսի պակասութիւններ գտնելով ինձ կը ցուցընէր , որոնց վրայ ես առաջուց ամենևին գաղափար մը չունէի , և որոնք մեր մէջը ամենևին մարդկային պակասութեանց կարգը չեն դրուիր ։ Ամեն տեսակ ստութիւնն ու նենգութիւնը ատելու՝ տիրոջմէս սորվեցայ , և ճշմարտութիւնը ինծի այնչափ սիրելի կ'երևար , որ միտքս դրի ամեն բան անոր զոհելու ։

Ընթերցողէս բան մը չպահելու համար՝ և այս կը խոստովանիմ թէ հայրենեացս ամեն բանը այսպէս համարձակարար ներկայացընելուս աւելի զօրաւոր պատճառ մը ունէի ։ Ես երկիրը դալէս տարի մը չանցած՝ անոր բնակչացը վրայ այնպէս սէր և յարգանք մը ունեցայ որ հաստատ միտքս դրի թէ այնուհետև մարդկային սեռին մէջ չմտնելով , կեանքս աս հիանալի Հօույհնհնմաց մէջ անցընեմ , ամեն առաքինութեանց վրայ խորհելով և զանոնք ի գործ դնելով · քանզի անոնց մէջ մոլութեան գրգիռ

կամ օրինակ մը չէի կրնար ունենամ։ Բայց իմ մշտնջենաւոր Թշնամի բաղդս այնպէս վճռեր էր որ այնպիսի մեծ երջանկութենէ մը զրկուիմ։ Ու ատի հիմա քանի որ կը մտածեմ՝ քիչ մը կը մխիթարուիմ որ այնպիսի անաչառ քննիչի մը աչքէ հայրենակցացս վրայօք ըսածներուս մէջ կրցածիս չափ անոնց պակասութիւնները պակսեցընելու համարձակեցայ, և ամեն նիւթին ներածին չափ՝ պատշաճաւոր դարձուածք մը տուի · քանզի յիրաւի՝ ո՞վ է այն արարածը, որուն վրայ իր հայրենեաց համակրութիւնն ու կողմնապահութիւնը տիրած չըլլայ ։

Տիրոջս հնազանդութեանը տակ գըտնուելու պատիւը ունեցած ժամանակիս մեծ մասին մէջ անոր հետ ըրած զանազան խօսակցութեանս բովանդակութիւնը պատմեցի · բայց իրաւը՝ համառօտութեան համար հոս պատմածէս խիստ շատ աւելի բաներ զանց ըրած եմ։

Երբ իր ամեն հարցմանց պատասխանը տուի, իր հետաքրքրութիւնը բոլորովին գոհ եղած կ'երևէր · առտու մը կանուխ զիս կանչել տուաւ, ու հրամայեց որ քիչ մը հեռու նստիմ (ա՛ս պատիւը

մինչև այն օրը տակաւին ըրած չէր ինձ ) ։ « Հայրենեացդ և քու փոյօքդ ըրած ամեն պատմութեանդ վրայ , ըսաւ , մեծ զգուշութեամբ խորհեցայ , և նայեցայ որ դուք այն տեսակ կենդանիներ էք , որ չեմ գիտեր ինչ պատահմամբ խելքի թեթև նշոյլ մը ունեցեր էք , որ ձեր բնական մոլութիւնները շատցընելու և նոր մոլութիւններ ստեղծելու կը գործածէք , որով բնութեան ձեզ տուած քանի մը կարողութիւնները կորսնցուցեր էք ։ ձեր բնական պիտոյքը բազմապատկելու շատ յաջողակ էք , և կ'երևի թէ զանոնք հոգալու համար հնարքներ հնարելու ունայն փառատակօք բոլոր ձեր կեանքը կը սպառէք ։ Յայտնի կ'երևի թէ դուն հասարակ Եահուի մը ոչ ոյժը ունիս , և ոչ աշխուժութիւնը , թէրութեամբ ետևի ոտիցդ վրայ կը քալես , գործելու և ինքզինքդ պաշտպանելու հնարքը գանելով՝ ճիրաններդ անպիտան ըրած ես , և կզակիդ վրայէն մազը վերցուցեր ես , որ արևէն և օդէն պաշտպանուելու համար քեզ տրուած էր ։ Վերջապէս՝ դուն իմ եղբարցս պէս (որովհետև իր երկրի Եահուներուն աս անունը կու տար ) ոչ արագութեամբ կըր-

նաս փախել, և ոչ մագլելով ծառոց վերայ ելնել։

“Ձեր կառավարութեան սահմանադրութիւններն ու օրէնքը յայտնապէս ձեր հանճարոյն և հետևաբար առաքինութեան մէջ ունեցած ահագին պակասութենէ յառաջ կու գան, ըստ որում միայն խելքը բաւական է բանական բնութեղծուածոց վրայ կառավարելու. և դուք աս խելքը ունինք ըսելու ամենևին իրաւունք չունիք, ինչպէս որ հայրենակցացդ վրայ ըրած պատմութենէդ երևցաւ. թէև յայտնի տեսայ թէ զանոնք պաշտպանելու համար շատ մանաւոր բաները ինծմէ պահեցիր, և շատ անգամ չեղած բաներ ըսիր”։

Իր կարծեացը վրայ աւելի հաստատուեցաւ, երբ մարմնոյս ամեն մասամբ Եահուի նմանիլը տեսաւ, որմէ միայն ուժով, արագաշարժութեամբ, ճարպիկութեամբ, ճիրաններուս կարճութեմբը, և ուրիշ արուեստական բաներով կը զանազանէի։ Մեր կենացը վարուց և գործոց վրայօք ըրած նկարագրութենէս իմացեր էր թէ Եահուներուն և մեր հակամիտութեանը մէջ մեծ նմանութիւն մը կար։ “Յայտնի բան է, ըսաւ, թէ

Ճափոնցիները որ և իցէ տարբեր կենդանի
տեսքէն աւելի զիրար կ'ատեն, և աս
բանիս ընդհանուր պատճառը իրենց ձե-
ւոյն տգեղութիւնն է, որ միւսներուն
վրայ կը տեսնեն, բայց իրենց վրայ չեն
տեսներ։ Աւստի հիմա կը հասկընամ թէ
մարմիննիդ ծածկելնիդ, և աս կերպով
տձևութիւննիդ իրարմէ պահելնիդ ան-
խելքութիւն չէ, ապա թէ ոչ՝ անտա-
նելի պիտի ըլլայիք։ Սակայն կը տեսնեմ
որ սխալած եմ, քանզի աս երկրիս անաս-
նոց մէջ եղած և ձեր մէջը պատահած
կռիւները մի և նոյն պատճառներէ յա-
ռաջեկած են։ Թէ որ հինգ Ճափոնի առ-
ջին յիսուն Ճափոնի բաւելու ուտելիք
նետես, հանդարտութեամբ ուտելու
տեղ՝ իրարու վրայ յարձակելով, զիրար
կը բզկտեն. իւրաքանչիւր ոք կ'ուզէ որ
կերակուրը միայն ինքը ուտէ. ուստի՝
դուրսը կերակուր կերած ատեննին՝ սո-
վորաբար քովերնին ծառայ մը կը դրուի,
և տան մէջ ուտողները իրարմէ հեռու կը
կապուին։

«Կով մը թէ որ ծերութենէ կամ պա-
տահմամբ մեռնի, Ճօռյէնէնէմ մը զան իր
Ճափոնցիներուն համար առնելէն առաջ՝
մերձաւորնակ Ճափոնցիները խուռն բազմու-

թեամբ անոր վրայ կը թափին, և բնա-
ծիդ պէս մէջերնին կռիւ մը ծագելով,
երկու կողմէն ճանկռտելնին իրար սաստիկ
կը վիրաւորեն, բայց ձեր հնարած ըս-
պաննելու գործիները չունենալնուն
համար՝ շատ քիչ անգամ կը պատահի
որ իրար սպաննելու կարող ըլլան։ Եր-
բեմն առանց յայտնի մէկ պատճառի՝
ասոր նման կռիւներ կը ծագին զանազան
մերձաւորնակ Ե՛ահօ-ներու մէջ. մէկ սահ-
մանի Ե՛ահօ-ները միւսին վրայ յանկարծ
յարձակելու պատեհութեան կը նային,
բայց երբ տեսնեն թէ նպատակնին չյա-
ջողեցաւ, նորէն տեղերնին կը դառնան,
և անտառէն թշնամի չգտնուելուն հա-
մար՝ ինչպէս որ ըսիր, քաղաքական կը-
ռուի կը բռնուին։

«Մեր երկրին քանի մը դաշտաց մէջ
զանազան գոյնով քարեր կան, զորոնք
Ե՛ահօ-ները շատ կը սիրեն, թէ որ աս
քարերը մասամբ ինքը հողին մէջ թա-
ղուած ըլլան, ինչպէս որ երբեմն կը պա-
տահի, Ե՛ահօ-ները զանոնք հանելու հա-
մար՝ ճիրաններնին օրերով գետինը կը
փորեն, և հանելէն ետև՝ իրենց բնա-
կարանը կը տանին, կոյտ կոյտ դիզելով
կը պահեն, և մեծ զգուշութեամբ կը

հսկեն որ իրենց ընկերները գանձերնին չգողնան ։ Ամենեքին չէր հասկընար թէ ասոնց աս բնականէ դուրս փափաքին պատճառը ինչ էր, և աս քարերը Ահտի մը ինչ օգուտ կրնար ընել․ սակայն հիմա կը հասկընամ թէ աս բանս ագահութեան նոյն սկզբունքէն կը ծագի, որ դուն մարդկային սեռին սեպհականած ես ։

«Անգամ մը փորձի համար Ահտի մը թաղած քարերուն կոյտը գաղտուկ վերցընելով, ուրիշ տեղ մը տարի․ երբ աս դօշաքաղ անասունը իր գանձը չի գտաւ, այնպիսի բարձրաձայն ողբ մը ձգեց, որուն ձայնէն բոլոր Ահտները հոն հաւաքուեցան․ անատեն ողորմելի կերպով ոռնալով, սկսաւ խածնել ու ճանկռտել զանոնք ։ Ասոր տառապանաց մէջ ինկաւ․ ո՛չ կ'ուտէր և ոչ կը խմէր, ո՛չ կը ննջէր և ոչ կ'աշխատէր, մինչև որ ծառայիս մէկուն հրամայեցի որ քարերը գաղտուկ մի և նոյն ծակին մէջ դնէ, և առաջուան պէս վրան ծածկէ ։ Ահտն երբ իր քարերը նորէն ծակին մէջ գտաւ, իսկոյն խելքը գլուխը եկաւ, և ուրախացաւ, բայց զանոնք անկէ վերցընելով ուրիշ աւելի ծածուկ տեղ մը

պահեց, և այնուհետև միշտ աղէկ կ'աշխատէր ։

« Մերձաբնակ Նահո-ները աս փայլուն քարերը առատութեամբ գտնուած դաշտաց վրայ անդադար արշաւելնուն համար՝ Նահո-ներուն ամենէն յաճախ և ամենէն կատաղի կռիւները հոն կը պատահէին, զորոնք ես իսկ գիտեցի ։

« Շատ անգամ կը պատահի որ երկու Նահո դաշտի մը մէջ այսպիսի քար մը գտած ատեննին՝ իւրաքանչիւր ոք զան իրեն սեփհականելու համար կը սկսին կռուիլ, ու անդիէն ուրիշ Նահո մը գալով քարը կը յափշտակէ կը տանի ։ Անշուշտ աս բանս ձեր դատաստանական գործոց քիչ մը կը նմանի » ։ Մեր պատիւը պահելու համար՝ իր կարծիքը արդարացընել չուզեցի, որովհետև յիշած կռուոյն վերջը մեր դատաստանական վճիռներէն շատ աւելի արդարացի էր ․ ինչու որ քարին վրայ կռուած ատեննին՝ դատախազը և ամբաստանեալը նոյն քարէն զատ բան մը չէին կորսնցըներ, ուր ընդ հակառակը՝ մեր արդարութեան ատեաններու մէջ, մինչև որ երկուքնուն մէկը իր բոլոր ունեցածը չկորսնցընէ՝ դատը ամենևին չվերջանար ։

Չաեռաները, յաւելցուց տէրս, ամէն բանէ աւելի իրենց անտարբեր ախորժանացը համար ատելի են. քանզի ինչ որ գտնեն, թէ՛ խոտ ըլլայ, թէ արմատ, թէ ճռւիւ, թէ անասնոց փտտած միս, և կամ, աս ամէնը մէկ տեղ խառնուած՝ գիշատելով կը լափլիզեն։ Աչքանշան բնութիւն մը ունին՝ որ տան մէջ ո՛րչափ աղւոր կերակուր տաս անոնց, հեռու տեղերէ յափշտակածնին կամ գողցածնին աւելի ախորժանօք կ'ուտեն։ Թէ՛ որ որսերնին շատ ըլլայ՝ մինչև ճաթելնին կ'ուտեն, ու ետքը՝ բնութեան իրենց ճանչցուցած արմատը ուտելով կերածնին դուրս կը հանեն։

« Տեսակ մը խիստ հիւթեղ և հազուագիւտ արմատ կայ, զոր Չաեռաները մեծ փափաքով կը փնտռեն, կը գտնեն, ու մեծ ախորժանօք կը ծծեն զան. աս արմատը գինիին ձեր վրայ ըրածին պէս ազդեցութիւն կ'ընէ անոնց, և հիւթը ծծած ատեն՝ երբեմն իրար կը զրկեն, երբեմն իրար կը պատռեն, կ'ոռնան, կը ծամածռեն, կը բարբանջեն, կը դանդաջեն, կը գլորին, ու վերջը տղմին մէջ կ'իյնան կը քնանան»։

Իրօք տեսայ որ աս երկրիս մէջ միայն Անգղիները հիւանդութեանց ենթակայ են, որոնք մեր երկրի ծնող հիւանդութիւններէն շատ քիչ էին, և Անգղիները միայն իրենց ազատութենէն ու անյագութենէն կը խօթանան։ Այս հիւանդութիւնները բացատրող ընդհանուր բառ մը ունին իրենց լեզուին մէջ, ու այն՝ իրենց անունէն առնուած է, և կ՚ըսուի Ջոն Բուլ կամ Անգղիներու ախտ, և ասոր դեղը իրենց կզկզանքէն ու մեզերէն շինուած բաղադրութիւն մ՚է, որ հիւանդ Անգղին կոկորդէն բռնութեամբ վար կը խօթեն։ Այս դեղին յաջողիլը շատ անգամ տեսած ըլլալուս՝ հոս կը համարձակիմ ստիպել հայրենակիցներս որ հաստակաց բարւոյն համար ի գործ ածեն զան, որ արեան և հիւթոց յորդութենէ պատճառուած ամէն հիւանդութեանց դէմ զարմանալի դեղ մ՚է։

«Իսկ գիտութեան, կառավարութեան, արուեստից, ձեռակերտուածոց, և ասոնց նման բաներու մասին, ըսաւ տէրս, քու և իմ երկրիս Անգղիներուն մէջ շատ քիչ կամ թէ ամենևին նմանութիւն մը չեմ կրնար գտնել, քանզի ձեր բնութեան մէջ եղած նոյնութիւնը միայն բաւել կ՚ու-

զեմ։ Իրաւ՝ հետաքրքիր Հօույհնհնմներէ լսած եմ թէ Յահուներուն հօտերուն մեծ մասին մէջ կառավարչի պէս Յահու մը կայ (ինչպէս մեր արօտատեղիներուն մէջ հասարակօրէն առաջնորդ կամ գլխաւոր եղջերու մը կայ), որ ընդհանրապէս ամենէն տգեղ և վնասակարն է։ Սա առաջնորդը սովորաբար իր կրցածին չափ իրեն նման սիրելի մը կը գտնէ, և սա սիրելոյն պաշտօնը՝ իր տիրոջը ոտքը և յետոյքը լիզել, և էգ Յահուները անոր բնակարանը բերել է։ Իր սա պաշտօնին փոխարէն՝ երբեմն իշու մսի կտոր մը կը տրուի իրեն։ Բոլոր հօտը սա սիրելին կ'ատեն, և ան զինքը պաշտպանելու համար՝ իր գլխաւորին քովէն չհեռանար։ Սա պաշտօնը կը շարունակէ մինչև որ իրմէ աւելի տգեղ մը գտնուի. անատեն՝ իրեն յաջորդողը այն գաւառին ծեր ու երիտասարդ, արու և էգ Յահուները խուռն բազմութեամբ ետին ձգած՝ կու գայ ու պաշտօնէն ինկածին գլխէն մինչև ոտքը ամենքը մէկէն կղկղանքնին կը պարպեն. սա բանս ձեր արքունեաց, տէրութեան պաշտօնէից, ու սիրելեաց որչափ յարմար ըլլալը դու ինձմէ աղէկ կրնաս որոշել”։

Նոր աս կերպ յուշի անկնարկութեանը չհամարձակեցայ պատասխան մը տալ, որ մարդկային հանճարը հասարակ որսորդ-շնի մը սրամտութենէն վեր կը դասէր, որպէս թէ ան՝ պառաւկանաց խումբի մը մէջէն ամենէն ներհուն շան մը ձայնը առանց սխալման որոշելու և անոր ետեւէն երթալու բաւական կարողութիւն ունի:

“Նահռ-ներու մէջ, ըսաւ տէրս, զարմանալի յատկութիւններ կան, որ դուն մարդկային բնութեան վրայ խօսեցած ատենդ՝ անոնց վրայօք բան մը չյիշեցիր, և կամ յիշածդ շատ հարևանցի կերպով էր: Աս կենդանիները ուրիշ անասնոց պէս ալ հասարակ իրենց էգերը ունին, սակայն աս մասին մէջ ուրիշներէ կը տարբերին, որ էգ Նահռ-ները յղիացած ատեն՝ արուներու հետ կը միանան, և արուները իրարու հետ կռուածնուն պէս՝ էգերուն հետ իսկ կատղութեամբ կը կռուին և կը ծեծկուին: Աս երկու տեսակ կռիւները այնպէս վատ գազանութիւն է, որ ուրիշ զգայուն էակ մը ամենևին ան աստիճանը հասած չէ:

“Նահռ-ներու վրայ տեսնուած զարմանալի բաներուն մէկը՝ զազրութիւնը և աղտոտութիւնը սիրելնին է, ասոր հակառակ

ուրիշ ամէն կենդանեաց վրայ մաքրութեան բնական սէր մը կ'երևի”: Շատ ուրախ եմ որ վերոյիշեալ երկու մեղադրանքը առանց պատասխանելու անցան, քանզի աս մասին իմ նմանիներս պաշտպանելու համար ըսելիք մը չունէի, եթէ ոչ՝ իմ հակամտութեանս համեմատ պիտի պատասխանէի: Սակայն վերջի ըսած զրպարտութեան այլանդակութէն մարդկային ազգը դիւրաւ պիտի արդարացընէի, թէ որ ան երկրին մէջ խող մը գտնուէր, (որ դժբաղդութենէս չկար,) թէև խոզը Եահու—է մը աւելի հանդարտ չորքոտանի մ'է, բայց խոնարհաբար կարծեմ թէ Եահու—ներէ մաքուր ըլլալու իրաւունքը չկրնար պահանջել, և Նորին վսեմութիւնը անշուշտ պիտի խոստովանէր աս բանս, թէ որ անոնց կերակուր ուտելնուն աղտեղի կերպը, և տղմի մէջ ննջելու ու թաւալգլորելու սովորութիւնը տեսած ըլլար:

“Եահու—ներուն շատին վրայ, ըսաւ տէրըս, ծառաներս ուրիշ յատկութիւն մը տեսեր են, որ բոլորովին անհասկնալի է ինծի: Եահու— մը երբեմն խելքին փչելով անկիւն մը կը քաշուի, կը պառկի, կ'ոռնայ, կը հեծէ, և ամէն մօտը եկո-

ղին կից կը դարնէ, թէև ինքը գեր և երիտասարդ է, ոչ ուտելիքի պակասութիւն ունի և ոչ խմելիքի. ծառաներս ասոր պատճառը ինչ ըլլալը չեն կըրցեր հասկընալ, միայն զան սաստիկ աշխատցընելով զգաստացընելու դեղը գըտեր են”: Աս պատմութեան վրայ՝ իմ նմաններուս կողմնապահութեանը համար ամենևին ձայն չհանեցի, բայց բնածին մէջ կենաց ձանձրութեան ծըրմարիտ սերմերը յայտնի կ'երևային, որոնք միշտ ծոյլին, շռայլին, և հարստին վրայ կը զօրանան, և ասոնք թէ որ անոր պէս աշխատելու պարտաւորուին, բժըշկուելնուն տարակոյս չկայ:

Նորին վսեմութիւնը իր խօսքը շարունակելով, ըսաւ. « Իգ Լըակ— մը շատ անգամ թումբի կամ խոիւններու ետին կը կենայ, անցնող դարձող արու երիտասարդները կը դիտէ, անոնց կը տեսնուի, կը պահուի, և տեսակ տեսակ շարժուածներ ու խեղկատակութիւններ կ'ընէ. անատեն՝ գարշելի հոտ մը կը բուրէ վրայէն. եթէ արուներուն մէկը դէպ ի անոր մօտենայ, էգը կամաց մը կը քաշուի, ատէպ ետին կը նայի, կեղծ ձև մը ցուցընելով կը վազէ, ու յառ-

## ԳԼՈՒԽ Ը.

*Հեղինակը Եահուներուն քանի մը մասնաւոր հանգամանքը կը նկարագրէ ։ Հօույհնհնմաց երեւելի առաքինութիւնները ։ Իրենց երիտասարդաց դաստիարակութիւն ու վարժութիւնը ։ Իրենց ընդհանուր ժողովը ։*

ՄԱՐԴԿԱՅԻՆ բնութիւնը տէրէս աւելի ճանչնալու պարտաւորելուս, անոր՝ Եահուներուն վերաբերած բնութիւնը՝ իմ և հայրենեացս վրայ առնելը խիստ դիւրին էր ինձ, և ես անձամբ կրնայի շատ դիտողութիւններ ընել անոնց վրայ ։ Ուստի՝ շատ անգամ կ՚աղաչէի Նորին վսեմութիւնը որ թող տայ զիս մերձակայ Եահուներուն խումբը երթալու, և այս խնդիրքս վեհանձնութեամբ կը շնորհէր, որովհետև այս անասնոց դէմ ունեցած ատելութեանս վրայ համոզուած էր թէ երբէք չէի կրնար մոլորիլ անոնցմէ ․ և Նորին վսեմութիւնը իր ծառաներէն խիստ պարկեշտ, բարեբարոյ, և ուժեղ աշխէտ մատաղաձիերէն մէկուն կը հրամայէր որ հետս գայ, քանզի առանց անոր պաշտպանութեանը՝ այսպիսի վտան-

գի մէջ չէր համարձակեր մտնելու · ո-
րովհետեւ արդէն ընթերցողիս ըսած եմ
թէ աս երկիրը հասած ատենս աս ատեր
անասուններէն որչափ նեղութիւն կրե-
ցի : Երեք — չորս անգամ դաշնակս վը-
րաս չառած տնէն քիչ մը հեռի պտը-
տած ատենս՝ անոնց ճիրաններուն տակը
իյնալու վտանգին մէջ ինկայ ·

Անշուշտ ասոնք զիս իրենց տեսակէն
կարծեր էին · քանզի պահապանս քովս
եղած ատեն՝ անոնց առջին կուրծքս ու
բազուկներս մերկ ցուցընելով, շատ ան-
գամ այսպէս կարծելու պատճառ տը-
ւած էի : Այսպէս առիթներու մէջ՝ հա-
մարձակածնուն չափ ինձ կը մօտենային ,
և կապկի նման ըրածս կ'ընէին · բայց միշտ
սաստիկ ատելութեան նշաններ ցուցու-
նելով, ինչպէս որ գլխարկ և գուլպայ
հագած ընտանի կապիկ մը պատահ-
մամբ վայրենի կապիկներու մէջ գտնու-
ած ժամանակը անոնցմէ կը հալածուի ·

Եահուները իրենց մանկութենէն ի վեր
չափազանց առողջութիւն մը ունին · ան-
գամ մը երեք տարեկան արու Եահու-
մը բռնեցի և ամեն տեսակ գգուանօք
հանդարտեցընելու ջանք ըրի , բայց փո-
քրիկ անզգամը սկսաւ պոռալ , ճանկըռ-

տել, ու այնչափ ուժով խածնել, որ ձեռքէս թող տալու պարտաւորեցայ, ու ճիշդ ատենին թողուցեր էի, վասն զի ասոր աղաղակին վրայ գունդ մը մեծ Եահու-ներ չորս դիս հաւաքուեցան. բայց տեսնելով որ ձագը ձեռքս չէ (որովհետեւ թող տուածիս պէս փախաւ) և աշխէտ ձին քովս է, չհամարձակեցան մօտենալ մեզ:

Փոքր Եահու-ին մարմինը խիստ գէշ կը հոտէր, և աս հոտը կէս մը աքիսի և կէս մը աղուէսի հոտին քիչ մը կը նմանէր, բայց անոնց հոտէն շատ աւելի զզուելի էր: Պարագայ մը պատմելու մոռցայ (զոր եթէ բոլորովին զանց ընէի, գուցէ ընթերցողս ներէր), այսինքն՝ աս ատելի անասունը բռնած ատենս՝ իր զզուելի, դեղնագոյն և լոյծ կղկղանքովը բոլոր զգեստներս աղտոտեց. բարեբաղդաբար հոն մօտ փոքր վտակ մը գտնուելուն՝ ըստ կարի լուացուելով մաքրուեցայ. սակայն մինչև որ բաւական չհովկըեցայ՝ տիրոջս ներկայանալու չհամարձակեցայ:

Աս տեսածներուս վրայ դիտեցի որ Եահու-ները ամեն կենդանիներէ աւելի անկրթելի էին, քանզի անոնց կարողու-

թիւնը բեռ քաշելէ կամ վերցնելէ դատ ուրիշ բանի չէր հաներ ։ Սակայն կարծեմ որ աս պակասութիւնը միայն իրենց ապառում ու դժկամակ բնութենէն կը ծագի, որովհետև անոնք խորամանկ, ճտասակար, խարդախ, և ոխառու են ։ Ուժի և աշխատանքի կը դիմանան, բայց երկչոտ, ու հետևաբար լիրբ, անարգ, և անգութ են ։ Փորձուած է որ կարմիր մազ ունեցող արուներն ու էգերը միւսներէն աւելի ճտասակար ու պազշոտ, բայց աւելի ուժեղ և արագաշարժ են ։

Հօռյընընտները՝ իրենց ծառայող Եւրոպա-ները տան մօտ խրճիթներու մէջ կը պահեն ։ իսկ միւսները դաշտերը կը շրջուին, ուր գետինը փորելով արմատներ կը հանեն, զանազան տեսակ բոյսեր կ'ուտեն, դիեր կը փնտռեն, կամ երբեմն աքիս ու ընկենդոա (տեսակ մը վայրի մուկ) բռնելով անյագաբար կը լափլիզեն ։ Բնութիւնը իրենց սովորցուցած է բլուրներու կողին վրայ ըղունգօմնին խորին ծակ փորել, որուն մէջ կը պառկին, բայց էգերու ծակերը երկու կամ երեք ձագ պարունակելու չափ մեծ են ։

Իրենց մանկութենէն ի վեր գործերու

Նման կը լողան ու կընան երկար ատեն ջուրին տակը մնալ, ուրկից շատ անգամ ձուկեր կը բռնեն, զորոնք էգերը անոր-նին տանելով ձագերնուն կու տան։ Հոս այլանդակ դէպք մը պիտի պատմեմ, և կը յուսամ թէ ընթերցողս ներէ ինձ։

Օր մը աշխէտ մատաղաձի պաշտպանիս հետ զուրս տեղ մը գտնուելով, օդը շատ տաք ըլլալուն՝ աղաչեցի զան որ թո-ղու զիս մերձակայ գետին մէջ լուացուե-լու։ Խնդիրքս շնորհելով, իսկոյն մերկա-ցայ, ու կամաց մը գետը իջայ։ պատահ-մամբ երիտասարդ էգ Եահու մը թումբի մը ետին գտնուելով, բոլոր աս ըրածս տեսեր էր, և ցանկութենէ բորբոքելով, ինչպէս որ ես ու մատաղաձին այնպէս կար-ծեցինք, բոլոր ուժով վազելով, հինգ կանգուն հեռաւորութենէ ջուրին մէջ վրաս ցատկեց։ այնպէս սոսկալի վախ մը կենացս մէջ երբէք չէի ունեցեր։ Մատաղաձին ապահով ըլլալով թէ ինձ վնաս մը չկրնար պատահիլ՝ հօն մօտերը կ՚արածէր։ Աս Եահուն խիստ անպարկեշտ կերպով զիս գրկելուն՝ այնպէս բարձ-րաձայն պոռացի որ մատաղաձին սուրա-լով (1) դէպ ի ինձ եկաւ. և ասոր վրայ՝

(1) Տէօրտնալըլամա կիթմէք։

Եզը ակամայ զիս ձգեց ու գետին դի-մացի թումբին վրայ ցատկեց, ուրկէ մինչև զգեստներս հագնիլս հիացմամբ կը նայէր և կ'ուռնար։

Աս դիպուածը տիրոջս ու իր ընտանեաց խօսակցութեան զրուցի նիւթ մը եղաւ. սակայն ինձ մեծ կսկիծ մը պատճառեց, վասնզի հիմա բոլոր կազմուածքովս բուն Եահու մը ըլլալս չէի կրնար ուրանալ, երբ էգերը իրենց տեսակէն եղածին պէս բնական միտում մը ունեցան վրաս։ Աս անասունին մազը կարմիր չէր (որ այսպէսի անկանոն փափաք մը քիչ մը ներելի ըլլար), այլ վայրենի շլորի (1) պէս սև էր, ու դէմքը միւս էգերուն պէս բոլորովին սոսկալի չերևցաւ ինծի, վասնզի կարծեմ տասն և մէկ տարեկանէն աւելի չէր։

Աս երկրին մէջ ամբողջ երեք տարի մնալուս՝ ընթերցողս անշուշտ կը սպասէ որ ուրիշ ճամբորդաց պէս պատմութիւն մը ընեմ աս բնակչաց վարուց ու սովորութեանցը վրայ, որոնք յիրաւի իմ ուսմանցս գլխաւոր նիւթերն էին։

Թէև աս ազնիւ Հօույհնհնմները բնա-

(1) Երկէ։

կանոնաւոր ամէն առաքինութեանց ընդ-հանուր միտում մը ունին, և բանական էակի մը չարութեանը վրայ գաղափար մը չունին, ուստի իրենց գլխաւոր բը-կզբունքը՝ խելքերնին մշակել ու գլխո-վին անով կառավարուիլ է։ Անոնց մէջ իմաստունքը մեր մէջը եղածին պէս երկ-բայական չէ, որ մարդ մը կարենայ խըն-դրի մը երկու կողմն իսկ հաւանական կերպով հաստատել, այլ զան կրիւք և շահասիրութեամբ խառնակելէն, մթըն-ցընելէն, ու այլազունելէն առաջ՝ մէկէն պէտք եղածին պէս որոշում մը, կու-տայ։

Կը յիշեմ թէ մինչև որ չործի* բառին նշանակութիը, կամ խնդիրի մը վրայ վի-ճաբանութիւն ընելը տիրոջս հասկցու-ցի՝ չափազանց դժուարութիւն ունեցայ քանզի իրաւունքը մեզ կը սորվեցընէ որ միայն սոսկ եղածը հաստատենք կամ ուրանանք, և չխոցածնիս ոչ ուրանանք և ոչ հաստատենք։ Ուստի թէ սուտ և թէ երկբայելի խնդրոյ վրայ հակառա-կիլը, մաքառիլը, հակաճառելը և կար-ծիքը հաստատելը անոնց անծանօթ են։ Նմանապէս՝ երբ մեր բնական փիլիսո-փայութեան զանազան դրութիւնները կը

քաջալերէր իրեն , վրաս կը ծիծաղէր , թէ հանճարեղ ձեւացող էակ մը ինչպէս կը պարծենայ ուրիշ մարդոց այնպիսի նիւթերու վրայ ունեցած կարծեացը տեղեակ ըլլալուն , որոց գիտութիւնը եթէ ստոյգ իսկ ըլլայ՝ բանի մը չծառա-յեր ։ Իր սա կարծիքը Սոկրատէսի կար-ծիքին բոլորովին համաձայն էր , ինչպէս որ Պղատոն մեզ կ'աւանդէ ․ և սա փի-լիսոփայէն իշխանին մեծ պատիւ ընելու համար կը յիշեմ զան ։ Ես ատենէ ի վեր շատ անգամ խորհած եմ թէ այս-պիսի վարդապետութի մը Եւրոպիոյ գր-քատանց ինչ կործանում պիտի պատ-ճառէր , և գիտնականաց ալ քին որչափ ճամբաներ պիտի գոցէր ։

Բարեկամութիւնը և բարեսրտութիւ-նը Ճօւյճնճնաց երկու գլխաւոր առա-քինութիւններն են , որոնք մասնաւոր նիւթերու համար սահմանուած չեն , այլ բոլոր սեռին ընդհանուր են ․ ինչու որ աշխարհիս ամենէն հեռի կողմէն եկած օտարականին հետ իրենց ամենամօտ դր-ացիին պէս կը վարուին , և սա օտա-րականը ուր որ երթայ՝ իր հայրենեացը մէջ կը կարծէ զինքը ։ Յետին աստիճան պարկեշտութիւն ու քաղաքավարութիւն

կը ցուցնեն, բայց մեծարանք ըսուած բանը ամենեւին չեն գիտեր ։ Իրենց արու և էգ մորուկներուն վրայ կաթոգին սէր չունին, և զանոնք կրթելու համար չափազանց հոգ կը տանին · տէրս իր դրացեաց և իր զաւակներուն մի և նոյն սէրը կը ցուցնէր ։ Ոմանք կ'ըսեն՝ թէ բնութիւնը իրենց կը սորվեցնէ որ ամէն տեսակները սիրեն, և միայն բանաւորութիւնը յետին աստիճան առաքինին կը տարբերէ ։

Տիկին Հօսյշէնշէմները երկու սեռէն մէկ մէկ հատ ծնելէն ետև՝ իրենց երկանց հետ չեն միանար, միայն՝ թէ որ զաւակնուն մէկը դիպուածով մը կորսնցընեն, որ դուն ուրէք կը պատահի · ուստի նորէն իրարու հետ կը միանան ։ Թէ որ կնոջ մը ծննդաբերութեան ժամանակը անցած է, ուրիշ ամոլք մը իրենց մորուկներուն մէկը անոր կու տան, ու իրենք վերստին կը միանան, մինչև որ կինը նորէն յղանայ ։ Երկիր մը ժողովրդով չծանրաբեռնելու համար աս զգուշութիւնը հարկաւոր է · բայց ծառայութեան համար ծնած ստորին Հօսյշէնշէմաց ցեղը աս մասին այնպէս խիստ սահմանի տակ ինկած չէ · ազնուական գերդաս-

տանց մէջ ծառայելու համար իւրաքանչիւր սեռէն երեք հատ ծնելու Թոյլտուութիւն ունին ։

Մուսնանալու ատեն՝ աղէկ հոգ կը տանին այնպէս զոյներ ընտրելու, որ ծընելու զաւակին վրայ յոռի խառնուածք մը չըլլայ ։ Գլխաւորաբար կը նային որ արուն ուժեղ, ու էգը գեղունի ըլլայ, չէ Թէ սիրոյ՝ այլ սեռը չայլասեռելու համար ։ վասն զի էգը աւելի ուժեղ եղած ատեն՝ կը նային որ արուն անոր համեմատ գեղունի ըլլայ ։

Սիրախօսութիւն, սիրահարութիւն, ընծաներ, կնոջ կարուածք ու եկամուտներ ոչ մտքերնէն անցած բաներ են, և ոչ լեզունուն մէջ անոնք բացատրող՝ բառեր ունին ։ երկու երիտասարդներ կը միաւորին, միայն անոր համար որ իրենց ծնողքն ու բարեկամքը այնպէս ընելու համար որոշած են, և միւսներուն ըրածը ամէն օր տեսնելնուն համար՝ աս բանս բանաւոր էակի մը կարեւոր գործողութեց մէկը կ'երևի իրենց ։ Սակայն ամուսնութեան դէմ մեղանչելը և կամ ուրիշ ո՛ր և իցէ անպարկեշտութիւնը ամենևին լսած չեն ։ ու արու և էգ

առանց նախանձու, ցանկութե՟, կռուոյ, կամ տհաճութեան՝ ուրիշ ամեն կարգուածներուն հետ մի և նոյն բարեկամութեամբ և մարդասիրութեամբ իրենց կեանքը կ՚անցընեն ։ Թէ՛ արուներուն և թէ էգերուն կրթութեան եղանակը զարմանալի, ու հետևելու արժանի է ։ Մինչև տասն և ութը տարեկան ըլլալնին՝ քանի մը օրերէ զատ՝ փարսախ ուտելու թոյլտուութիւն չունին, և խիստ քիչ անգամ կաթ կը խմեն ․ և ամառը առտու և իրիկուն՝ իրենց ծնողացը պէս երկերկու ժամ կ՚արածեն, բայց ծառաներուն՝ աս միջոցիս կէսին չափ թոյլտուութիւն եղած է, որոնք խոտերնուն մեծ մասը տունը կը բերեն, ու իրենց գործոց մէջ աւելի յարմար ժամանակ գտած ատեննին ուտեն ։

Բարեխառնութիւնը, ժրութիւնը, կրթութիւնը, ու մաքրութիւնը երկու սեռի երիտասարդաց տրուած դասերն են, ու մեր էգերը տնական մէկ քանի բաներէ զատ՝ արուներէն տարբեր կերպիւ կրթելնիս տարօրինակ բան մը երեցաւ տիրոջս ․ ուստի ըսաւ ․ « Ինչու շատ ձեր բնակչաց կէսը զաւակ բերելէ զատ ուրիշ բանի չեն ծառայեր ․ և ձեր զա-

ւակաց հոգողութիւնը այսպիսի անպի-
տան կենդանեաց յանձնել է աւելի մեծ
անասնութիւն չկրնար ըլլալ”։

Սակայն Հօթընթօթները իրենց երիտա-
սարդները ուժի, արագութեան, և աշ-
խատանաց վարժելու համար, բլուրներու
և կարծրաքար փողոցներու մէջ վեր վար
կը վազցնեն։ Երբ աղէկ մը քրտնցընեն
զանոնք, աւազանի կամ գետի մը մէջ
կը մխրճեն (1)։ Տարին չորս անգամ՝ գա-
ւառի մը երիտասարդ ձիերը վազելու,
ցատկելու, և ուժի ու արագաշարժու-
թեան մէջ բաւականութիւննին ցու-
ցընելու համար մէկ տեղ կը ժողվուին.
ուր յաղթող գանուողին վրայ գովաբա-
նական երգ մը երգելով կը վարձատրեն
զան։ Աս հանդիսին օրը՝ Հօթընթօթաց
խնջոյք մը ընելու համար՝ ծառաները
խումբ մը Եզներ խոտերով, վարսակ-
ներով կաթերով բեռնաւորած դաշտը
կը բերեն, ու իսկոյն նորէն ետ կը տա-
նին զանոնք, որպէս զի չըլլայ թէ ժողով-
քին ձանձրութիւն տան։

Ամէն չորս տարի՝ աշնան արևադարձին,
մեր տունէն գրեթէ քան մղոն հեռի
դաշտի մը մէջ ազգային պատգամաւորա-

(1) Բոլորովին ջուրի մէջ ընկղմել։

կան ժողովք մը կ'ըլլայ, ու հինգ-վեցը որ կը տեւէ։ Այս ժողովքին մէջ զանազան նահանգաց կացութեան, անոնց մէջի խոտերուն, վարժականներուն, կօլէրուն, կամ Եկեղեցիներուն առատութեանն ու նուազութեանը վրայ խորհուրդ կ'ըլլայ. թէ որ նուազութիւն մը ըլլայ (որ շատ քիչ անգամ կը պատահի), ընդհանուր համաձայնութեամբ հանգանակութիւն մը ընելով այն նուազութեան տեղը կը լեցընեն։ Այս ժողովքին մէջ կ'ըլլայ նաև զաւակաց կարգադրութիւնը. օրինակի համար՝ թէ որ Քահանայ մը երկու արու զաւակ ունի, անոնց մէկը երկու էգ ունեցողին մէկին հետ կը փոխէ, թէ որ տղայ մը պատահմամբ կորսուած է, և անոր մօրը ծննդաբերութիւնը անցած է, նահանգին ո՛ր ընտանիքը անոր տեղը լեցընելը կ'որոշուի։



## ԳԼՈՒԽ Թ.

*Հօույհնհնմաց ընդհանուր ժողովքին մէջ եղած երևելի վէճը, և անոր ինչպէս վերջանալը: Անոնց գիտութիւնը, շէնքը, թաղման արարողութիւնները, և լեզուին պակասութիւնները:*

Աս երևելի ժողովներուն մէկը հոն գտնուած ժամանակս տեղի ունեցաւ՝ անկէ մեկնելէս գրեթէ երեք ամիս առաջ, տէրս իբր երեսփոխան իր նահանգին՝ ներկայ գտնուեցաւ: Աս ժողովքին մէջ իրենց վաղեմի վէճը նորէն բացուեցաւ (վէճ մը՝ որ երբէք չէ եղած իրենց երկրին մէջ), որուն վրայօք տէրս ետ դառնալէն ետև՝ խիստ մասնաւոր կերպիւ ինծի պատմեց:

Վէճին նիւթը աս էր՝ թէ Եահուները աշխարհիս երեսէն ջնջել պէտք է արդեօք: Անդամներէն մէկը բանի մը խիստ զօրեղ և հաստատուն փաստերով հաստատեց թէ՝ որովհետև Եահուները բնութեան ամենէն աղտեղի, խռովարար, ու տձև, և միանգամայն ամենէն խեռ, անընտել, չար, և վնասակար կենդա-

նիներն են, ու գաղտուկ Ֆօռ-յէնէնէններու կովերուն ծիծերը կը ծծեն, կատուներն կը սպաննեն, և կ'ուտեն, վարսակներն և խոտերնին տնակու կ'ընեն, և թէ որ անդադար հսկողութիւն չըլլայ վրանին՝ ուրիշ հազար տեսակ այլանդակ գործեր կ'ընեն։ Ընդհանուր աւանդութիւն մը մէջ կը բերէ՝ թէ Լափօ-ները միշտ աս երկրին մէջ գտնուած չեն, այլ շատ դարեր առաջ աս անտառներէն երկու հատ լերան մը վրայ կ'երևին, որոնք արդեօք ապականեալ ամպոց ու կաւուց վրայ արևուն արտադրած ջերմութենէ՞ն, կամ՝ ծովու փրփուրէն ու ճահիճէ՞ն արտադրած են, երբեք չէ գիտցուած։

Աս Լափօ-ները աճելով սերուերնին քիչ ժամանակի մէջ այնչափ կը բազմանայ որ կը սկսին բոլոր երկիրը ապականել ու յափշտակել, և Ֆօռ-յէնէնէնները աս չարիքէն ազատելու համար ընդհանուր արարողութեան կ'ընեն, ու վերջապէս անոնց բոլոր խումբը պաշարելով, և ծերերը սպաննելով, իւրաքանչիւր Ֆօռ-յէնէնէն միայն երկերկու ձագ կը պահեն. կառք քաշելու և բեռ կրելու գործածելով՝ ան ատոփճան կ'ընտելացընեն, որչափ որ բնութեամբ վայրենի կենդանի մը կրնայ ըն-

տանենալ։ Հօռայցինենց, և ուրիշ կեն-
գանեաց՝ Նժոյգներու դէմ ունեցած ա-
տելութիւննին նայելով, սորա կ'երևի թէ աս
կենդանիները չեն կրնար ինքնաբնիկ (կամ
երկրին բնակները (1)) ըլլալ, ըստ որում
թէև իրենց յոռի բարուցը համար աս
ատելութեան արժանի էին, սակայն եթէ
բնակները իրենք ըլլային, երբէք աս ա-
տիճան ատելի չէին ըլլար, և կամ շա-
տոնց աս ատելութիւնը կը վերնար։
Նրկրացիք Նժոյգներ գործածելու յօժա-
րութիւն մը ունենալով, էշերու սերուն-
դը աճեցընելը մեծ յիմարութեամբ զանց
ըրած են, որոնք սիրուն կենդանի են,
դիւրաւ կը պահուին, աւելի ընտել և
կարգաւորեալ են, զարշահոտութիւն
չունին, աշխատանքի բաւական կը դիմա-
նան, թէև անձնական արագաշարժու-
թեամբ Նժոյգներու չեն հաւասարիր, և
թէ որ զաւակու անհաճոյ ձայնը չունենան՝
Նժոյգներուն սովկալի ոռնալէն շատ ա-
ւելի ընտրելի են։

Քաղաքականներէն շատերը աս նիւթիս
վրայ իրենց կարծիքը յայտնեցին, և տէ-
րեր միջոց մը առաջարկեց ժողովքին, ո-
րուն գաղափարը ինծմէ առած էր․ «Ի-

(1) Երլիկէր․

րաւ , պատուելի անգամին յիշած աւանդութեանը հաւանութիւն կու տամ , ըսաւ տէրս , բայց կը հաստատեմ թէ առջի անգամ տեսնուած երկու Յահուները ծովու երեսէն քշուած աս երկիրը բերուած են և իրենց ընկերներէն զըրկուած ըլլալնուն՝ լեռը քաշուեր , ու երթալով այլասեռեր , և իրենց եկած երկրին բնակիչներէն աւելի վայրենի եղած են : Աս բանծիս հաստատութիւն կրնայ տալ հիմա ձեզի եղած զարմանալի Յահուն ( ինծի համար ըսել կ'ուզէր ) , որուն վրայօք ձեզմէ մեծ մասը լսած , և շատերը տեսած են զան" : Անատեն կը սկսի զիս ինչպէս գտնելը , բոլոր մարմինըս ուրիշ կենդանեաց մորթերու և մազերու շինուած բաղադրութեամբ մը ծածկուած ըլլալը , իմ բուն լեզուաւ խօսիլըս , իրենց լեզուն կատարելապէս սորվիլս , ինչ պատահմամբ հոն գալս պատմելս , զիս մերկ տեսած ատեն՝ գլխովին Յահուի մը նմանիլը , միայն գոյնիս աւելի ճերմակ ըլլալը , այնչափ մազոտ չըլլալս , և վերջապէս ճիրաններուս աւելի կարճ ըլլալը անոնց պատմեր : Կը յաւելցընէ նաև · " Աս զարմանալի Յահուն խիստ շատ աշխատեցաւ համոզել զիս թէ իր և ու-

րիշ երկիրներու մէջ կառավարող բա-
նական կենդանիները Եահուներն են, և
Հօույհնհնմները իրենց ծառայութեանը
կը գործածեն։ Իրաւ՝ Եահու մը ամեն
յատկութիւնները ունի, բայց խելքի
թեթև նշոյլ մը ունենալուն՝ անոնցմէ
այնչափ աւելի կրթուած է, որչափ մենք
իրմէ ենք"։

Հօույհնհնմները աւելի ընտելցընելու
համար՝ անոնց պատանեկութեան ատեն
դիւրին և ապահով կերպով զանոնք կը-
տրելու սովորութիւննիս անոր պատմելս
կը յիշէ։ Ու թէ՝ անասուններէ խելք
սորվիլը ամօթ չէր, ինչպէս որ ժրաջա-
նութիւնը մրջիւնէն, ու տուն շինելը
ծիծառնէն (լյհաննհ բառը այսպէս կը
թարգմանեմ, թէ և աս՝ ծիծառնէ մը
աւելի մեծ թռչուն մ՚է), սորվուած
է։ Ու կտրելը կարելի է աս երկրին պա-
տանի Եահուներուն ըլլալ, որով զանոնք
աւելի ընտել և գործածութեան աւելի
յարմար ընելէն զատ, առանց սպաննե-
լու կրնար դարէ մը ետև՝ բոլոր անոնց
սեռը ոչնչացընել, և ան ատեն Հօույհնհնմ-
ները պիտի յորդորուին էշերուն սե-
րունդը աճեցընել, որոնք ինչպէս որ ա-

մեն նկատմամբ աւելի օգտակար անձ-ռուններ են, հինգ տարեկան ըլլալնուն պէս՝ կրնան ծառայել, ինչ ատեն միւս-ները մինչև տասներկու տարեկան ըլլա-նին բանի մը չեն գար ։

Ահա ասոնք են այն ժողովքին մէջ ե-ղած խօսքը, որոնք տէրս ինձ պատմելու յարմար դատեց ։ Սակայն իմ անձիս վերաբերեալ մասնաւոր պարագայ մը ինձմէ պահելու հաճեցաւ, որուն դըժ-բաղդ ազդեցութիւնը շատ չանցաւ՝ ըզ-գացի, որ ընթերցողս ըստ տեղւոյն պի-տի տեղեկանայ, և կենացս դժբաղդու-թիւնները առ դիպուածէս եւս սկսան ։

Հույհնհնմները գիր չունին, և հետևա-բար ամեն գիտութիւննին աւանդական է, սակայն այնպէս միաբանեալ, ամեն առաքինութեամբք բնականաբար զար-դարուած, բոլորովին խելքով կառա-վարուած, ուրիշ ազգաց հետ ամենևին առևտուր չունեցող ժողովրդեան մը մէջ քիչ դիպուածներ պատահելուն համար, առանց յիշողութիւննին բեռնաւորե-լու՝ պատմական մասը դիւրաւ իրենց միտքը կը մնայ ։ Արդէն ըսած եմ թէ անոնք և ոչ մէկ հիւանդութեան ենթա-կայ են, ուստի և բժիշկներու կարօ-

տութիւն չունին։ Այսու ամենայնիւ ամբակաց և ոտնակապ տեղերնուն վրայ ապրասուր քարերէ պատճառուած պատահական ճզմուածքը և խոցուածները, նմանապէս մարմնոյն վրայի վէրքը և հաշմութիւնները բժշկելու համար՝ բոյսերէ բաղադրեալ դեղեր ունին։

Տարին՝ արեւու և լուսնին շրջաններովը կը հաշուեն, բայց շաբաթական բաժանումը չունին։ Թէ՛ արեւուն և թէ լուսնին շարժմանցը վրայ բաւական տեղեկութիւն ունին, և անոնց խաւարմանց իմացութիւնը գիտեն. աստղաբաշխական գիտութիւննին մինչև հոս կը հասնի։

Բանաստեղծութեան մէջ՝ իրաւը ընելու համար՝ ուրիշ մահկանացուները կը գերազանցեն. ասոնց մէջ իրենց բերած օրինակներուն ճշդութիւնը և մանրակրկիտ ու ճիշդ նկարագրութիւնները անմանելի են, զորոնք յաճախ կը գործածեն իրենց ոտանաւորաց մէջ ու հասարակօրէն բարեկամութեան և կամ մարդասիրութեան վերացեալ գաղափարներ, կամ արշաւանաց, և կամ մարմնական ուրիշ կրթութեանց մէջ յաղթող գտնուողներու վրայ ներբողներ կը պարունակեն։

Իրենց շէնքը թէև շատ տձև ու պարզ է, բայց ցրտէ ու տաքէ պաշտպանուելու համար յարմար շինուած է: Տեսակ մը ծառ ունին, որ քառասուն տարեկան եղածին պէս՝ արմատական ոյժը կը կորսնցընէ, ու փոքրիկ մը առջի հարուածէն յերկիր կը տապալի. աս ծառը շիփ շիտակ կ'աճի. սուր քարով մը ցիցերու նման ծայրերնին սրելով (որովհետև Հօթթէնթօթները երկաթ գործածելը չեն գիտեր), գետնի վրայ կը տնկեն զանո՛ք գրեթէ տասը ըթաչափ իրարմէ հեռու, և մէջ տեղերը վորսակի յարդերով կը հիւսեն, և երբեմն վանդակով կը փակեն. տանիքն ու դուները նոյն կերպով կը շինեն.

Հօթթէնթօթները իրենց ոմքակը և տոնակայի խոր մասը՝ առաջին անգամ երևակայածէս աւելի ճարտարութեամբ մեր ձեռաց պէս կը գործածեն. Մ'եր գերդաստանին մէջ ճերմակ մատակ ձի մը տեսայ, որ աս յօդուկը ասեղէ մը դերձան անցուց (որուն դիմամբ տուի զան). Նա կերպով կովերնին կը կթեն, վարսակնին կը ժողվեն, և ձեռքով ըլլալիք ամեն բան կ'ընեն. Տեսակ մը կարծր գայլախազներ ունին, զորոնք ուրիշ քա-

րերու վրայ քսելով կը սրեն, և գործի
մը ձևացընելով՝ կացինի և մուրճի
տեղ կը գործածեն։ Այս գործիներով
խոտերնին ու փարախնին կը հնձեն, ո-
րոնք հոն դաշտաց մէջ բնականաբար
կ՚աճին. Աւելուները կաւքով որաները(1)
տունը կը տանին, ու ծառաները՝ վրան
ծածկած հիւղերու(2) մէջ կը կոխկրտեն
զանոնք, և հունտերը հանելով շտեմա-
րաններու մէջ կը պահեն։ Փայտեղէն
և հողեղէն տեսակ մը աձև ամաններ կը
շինեն, և վերջինը արևին մէջ կ՚եփեն։
Թէև որ դիպուած մը չպատահի՝ միայն
ծերութենէ կը մեռնին, ու կրցածնուն
չափ խիստ խաւար տեղերու մէջ կը թա-
ղեն։ Անոնց մեռած ատեն՝ իրենց բա-
րեկամները ու ազգականները ոչ կ՚ու-
րախանան և ոչ կը տրտմին, և մեռնող-
ները աշխարհէն մեկնելուն համար ա-
մենևին ցաւ չեն ցուցըներ. կարծես
թէ դրացեաց մէկին այցելութեան եր-
թալով, տուն դառնալու վրայ են։ Կը
յիշեմ որ անգամ՝ մը տէրս իր բարե-
կամին մէկը իր ընտանեօքը հանդերձ
հարկաւոր գործի մը համար իր տունը

(1) Պուղտայ տէմէթի ։ (2) Գուլիպէ ։

հրաւիրեր էր · որոշեալ օրը՝ տիկինը ուշ ատեն իր երկու զաւակացը հետ եկաւ · Նախ երկանը համար ներողութիւն խնդրեց, որ մինչեւ նոյն առտու ընկրունկ գտացեր էր ։ Այս բառս իրենց լեզուին մէջ շատ ազգու նշանակութիւն ունի, սակայն Անգղիարէնի դիւրաւ չթարգմանուիր, ու բառ առ բառ կը նշանակէ· «Իր առաջին մօրը քովը քաշուիլ» ։ Ետքը՝ աւելի կանուխ չգալուն համար՝ խնդրեց որ տէրս ներողամիտ ըլլայ · քանզի երիկը նոյն առտու ուշ ատեն մեռներուն՝ անոր մարմինը յարմար տեղ մը թաղելու համար ծառային հետ երկար ժամանակ խորհելուն՝ ուշ էր մնացեր ։ Մեր տան մէջ միւս եղողներուն պէս ուրախ և զուարթ էր, և գրեթէ երեք ամիսէն՝ ինքն ալ մեռաւ ։

Հասարակօրէն մինչև եօթանասուն կամ եօթանասուն ու հինգ և շատ քիչ անգամ մինչև ութսուն տարի կ՚ապրին · մեռնելէն քանի մը շաբաթ առաջ կը սկսին կամաց կամաց տկարանալ, բայց առանց ցաւ զգալու ։ Այս միջոցին իրենց սովորութեան համեմատ զոհ և հանդարտ սրտիւ դուրս ելնել չկրնալնուն համար՝ իրենց բարեկամները այցելու-

թեան կու գան։ Սակայն միւսներէն գըրեթէ տասը օր առաջ, ըստ որում աս օրերը հաշուելու ատեն՝ ամենեւին չեն խաբուիր, Եսքիմոներէ քաշուած հանգիստ դեսպակի (1) մը մէջ նստելով, այցելութեան եկող ամենամօտ դրացեաց փոխարէն այցելութեան կ'երթան։ Աս դեսպակը ոչ միայն այսպիսի առիթներու մէջ, այլ ծերութեան, երկար ճամբորդութեանց, կամ պատահմամբ կաղացած ատեն կը գործածեն։ Մեռնելու Հօույենեանները այցելութեան գացած ատեն՝ իրենց բարեկամաց հանդիսաւոր կերպիւ հրաժարական ողջոյն կու տան, որպէս թէ իրենց կենաց մնացած մասը անցընելու համար կը պատրաստուին երկրին ամենէն հեռու մէկ կողմը երթալ։

Չեմ գիտեր թէ արժան է ըսել որ Հօույենեանները իրենց լեզուին մէջ Եսքիմոներու ազգութենէն ու յուր յատկութենէն փոխ առած բառերէն զատ՝ վատ բան մը բացատրելու բառ չունին։ Թէ որ ծառայի մը յիմարութիւնը կամ տղու մը պակասութիւնը, իրենց ոտքը վիրաւորող քար մը, և անոնց նման բաներ յայտնել ուզեն, անոնց վրայ Եսքիմո անունը կը յաւելցնեն։ Օրինակի աղա-

գաւ․ Հնդ Լեզու․ Ուրալալթայեան Լեզու, Իլլ-Ֆրանսերէն Լեզու․ և ազգեղ շինուած տուն մը յայտնելու համար՝ Ինդօչինական Լեզու կ՚ըսեն։

Սա ազնիւ ժողովրդեան բարուց և առաքինութեանց վրայ մեծ հաճութեամբ երկարօրէն պիտի խօսէի, բայց ես նիւթին վրայ մօտերս մասնաւոր հատոր մը հրատարակելու դիտաւորութիւն ունենալուս՝ ընթերցողս հոն կը հրաւիրեմ․ հիմա հոս կը փութամ իմ տխուր աղէտքս պատմել։



## ԳԼՈՒԽ Ժ.

Հեղինակին խնայողութիւնն ու Հօույհնհնմոց մէջ անցուցած երջանիկ կեանքը ։ Անոնց հետ խօսակցելով՝ առաքինութեան մէջ ըրած մեծ յառաջադիմութիւնը ։ Անոնց խօսակցութիւնները ։ Տէրը կը ծանուցանէ հեղինակին որ երկրէն մեկնի ։ Հեղինակը այս լուրին վրայ ցաւէն կը նուաղի . բայց կը հնազանդի ։ Իր ընկերակից ծառային մէկին օգնութեամբը բրակուր մը շինելու աշխատիլն ու լմնցընելը, և զինքը բաղդին յանձնելով ճամբայ ելնելը ։

ԻՄ ՏՆԻՆ փոքրիկ գործերս ու զածխս այս կարգի դրեր էի ։ Տէրս հրամայեր էր որ իր տունէն գրեթէ վեց կանգուն հեռու և իրենց ձևոյն համեմատ ինծի համար սենեակ մը շինուի . որուն կողմերն ու յատակը կաւով ծեփեցի, և շինած անպիտան փսիաթներովս վրան ծածկեցի ։ Դաշտաց մէջ ինքնօրէն բուսած կանեփ ժողվելով, տեսակ մը կտաւ շինեցի, և անոր մէջը՝ Եահուներուն մազերէ շինած որոգայթներովս բռնած թռչնոց փետուրները լեցուցի, որոնք շատ համեղ էին ։ Դանակովս երկու աթոռ շինած էի, և աշխէտ մատաղածին

ամէնէն աշխատաւոր ու դժուար տեղերը օգնեց ինծի ։

Երբ լաթերս մաշեցան, Նապաստակներու և նոյն մեծութբ Նու-Զօլ բռնուած գեղեցիկ կենդանւոյ մը բարակ աղուամազոտ կաշիէ ուրիշ լաթեր շինեցի ։ Անոնցմով բաւական վայելուչ գօտի լպաներ խակ շինեցի ։ Մուճակներուս տակը ծառէ կտրած տախտակ մը անցուցի, և մուճակներուս երեսին յարմարցուցի · աս մաշելէն ետև, անոր տեղը՝ արևի մէջ չորցուցած Լամա-ներու կաշիներ գործածեցի ։ Շատ անգամ գոգաւոր ծառերու մէջէն մեղր կը ժողվէի, որ երբեմն ջուրին հետ կը խառնէի, և երբեմն հացովս կ՚ուտէի ։ Վերջապէս աս երկու առածներուն ճշմարտութիւնը իրօք ստուգեցի, թէ՝ "Ինութիւնը շատ դիւրաւ կը բաւականնայ". և "Հարկաւորութիւնը ամեն հնարից մայրն է".

Կատարեալ առողջութիւն, և մտաց անդորրութիւն կը վայելէի · ոչ բարեկամի մը անհաստատութենէն ու մատնութենէն վախ ունէի, և ոչ յայտնի կամ ծածուկ թշնամւոյ անիրաւութիւններէն ։ Երևելի անձի մը կամ իր մտերմին հաճոյ ըլլալու համար՝ կաշառաբե-

կելու, շողոքորթելու, կամ կաւատու-
թիւն ընելու պէտք չունէի, և ոչ նեն-
գութեան կամ հարստահարութեան դէմ
պատսպարուելու կարօտութիւն ունէի։
Հոն ոչ բժիշկ կար առողջութիւնս
աւրելու, ոչ օրէնսգէտ՝ ստակս փճա-
ցընելու, և ոչ քսու՝ խօսքս ու գործքս
հսկելու, կամ կաշառքով վրաս սուտ
ամբաստանութիւն հնարելու։ Հոն այ-
պանողք, սոգտանողք, զրպարտողք, քը-
սակահատք, հուղկահարք, տուն կողոպ-
տող գողեր, գործակալներ, բողաւագ-
ներ, ծաղրածուներ, խաղամոլներ, քա-
ղաքագէտներ, հնարամիտներ, մելամաղ-
ձոտներ, ձանձրացուցիչ շատախօսներ,
վիճաբանողներ, առևանգիչներ, մար-
դասպաններ, աւազակներ, ազատական
արուեստից հմուտներ չկային։ Ոչ կու-
սակցութեան կամ երկպառակութեան
պարագլուխներ կամ հետևողներ կային,
և ոչ օրինակներով կամ գրգիռներով
մոլութե քաջալերողներ. ոչ ստորերկրեայ
բանտեր, հարկեր, կախաղաններ, և ոչ
ձաղկելու և խայտառակելու տեղեր կամ
գործիներ. ոչ խարբերայ խանութպաններ
և արուեստաւորներ, և ոչ ամբարտա-
ւանութիւն, անպարծութիւն, կամ

Հապատանք· ո՛չ անձնագով և անձնասէր ցուցամոլներ, և ո՛չ գինեմոլներ, թափառական պոռնիկներ, կամ գաղղիական ախտեր· ո՛չ խորոխտ՝ պագշոտ ու շռայլ կիներ, և ո՛չ յիմար և գոռոզ սոփեստաներ· ո՛չ ձանձրացուցիչ, խորոխտ, կռուարար, աղմկարար, դատարկագլուխ, ինքնահաւան, երդմնող ընկերներ· ո՛չ իրենց մոլութեամբը անարգ աստիճանէ բարձրացող խառնագնած թշուառականներ, և ո՛չ առաքինութեանցը համար գետնաքարշ եղած ազնուականներ· ո՛չ լրբեր, ջութակահարներ, դատաւորներ, և ո՛չ կաքաւի վարժապետներ։

Այցելութեան կամ ճաշի համար տիրոջս եկող Հօռ-յենկենմաց հետ խօսելու պատիւը ունեցայ· նորին վսեմութիւնը շնորհք ընելով կը թողուր որ սենեակը մտնեմ ու խօսակցութիւննին մտիկ ընեմ։ Տէրս և այցելուները շատ անգամ ինձ հարցումներ ընելու և ինձմէ պատասխան առնելու կը զիջանէին։ Երբեմն տէրս այցելութեան գացած ատեն՝ հետը ընկերանալու պատիւը կ'ունենայի· բայց միայն հարցման մը պատասխան տալու համար բերանս կը բանայի, և այն՝ ակամայ· վասն զի խօսակցութեան մէջ

մտնելով՝ զիս կրթելու պատեհութիւնը պիտի կորսնցրնէի, և խիստ հաճելի էր ինձ խոնարհ ունկնդրութիւն ընելու՝ այնպիսի խօսակցութեան ատեն, ուր ամենակարճ ու ամենապարզ բառերով օգտակար նիւթոց վրայ կը խօսակցէին։ Ինչպէս արդէն բսած եմ՝ աս ընկերութեան մէջ ամենեւին իրարու մեծարանք չընելով մեծ համեստութիւն կը տեսնուէր. քանզի մէկը առանց զինքը ու ընկերութիւնը հաճեցընելու չէր խօսեր. իրարու խօսքը ընդմիջել, ձանձրութիւն տալ, կռիւ յուզմունք, կամ կարծեաց տարբերութիւններ չկային։

Այնպիսի կարծիք մը ունէին թէ ընկերութեան մը մէջ ատեն ատեն կարճ լռութիւնը շատ խօսակցութեանց աւելի կ'ըլլայ. և ես աս բանիս ճշմարտութիւնը տեսայ. ըստ որում՝ լուռ կեցած ատեն՝ մտաց մէջ նոր գաղափարներ կը ծնէին, որ խօսակցութեան մեծ կենդանութիւն մը կու տար։ Իրենց խօսակցութեանց նիւթերը հասարակօրէն բարեկամութեան և մարդասիրութեան, բարեկարգութեան և խնայողութեան, երբեմն՝ բնութեան յայտնի շարժմանց կամ վաղեմի աւան-

գութեանց , առաքինութեան սահմաններուն , հանճարոյ անսխալ կանոններուն , կամ հետևեալ մեծ նիւթին մէջ ըլլուելիք որոշման , և՝ շատ անգամ բանաստեղծութեան զանազան կատարելութեանց վրայ էին ։

Նոանց սնափառութեան կրնամ յաւելցընել թէ իմ ներկայութիւնս շատ անգամ խօսակցութեան բաւական նիւթ կը պատճառէր անոնց , որովհետև տէրս իմ և հայրենեացս վրայ իր բարեկամացը պատմութիւն ընելու առիթ կ՚ունենար · որմէ ետև ամենքնին մէկտեղ մարդկային սեռին վրայ խստիւ դատողութիւն կ՚ընէին · ամեն բանծնին հոս կրկնել չեմ ուզեր · այսչափ ըսեմ թէ նորին վսեմութիւնը Եահու-ներու բնութիւնը ինծմէ շատ աւելի աղէկ հասկցած կ՚երևար ։ Մեր ամեն մոլութիւններն ու յիմարութիւնները մի առ մի նկարագրեց , և ենթադրելով թէ իր երկրին մէկ Եահուն քիչ մը խելքով ինչ յատկութիւններ կրնար ունենալ , ինքնիրեն մեր մոլութեանց մեծ մասը գտաւ , որոնք ես իրեն յիշած չէի , և խօսքը խիստ հաւանականութեամբ վերջացուց թէ՝ այսպիսի էակ մը որչափ անարգ և մանաւանդ թշուառ պէտք է որ ըլլայ ։

Անկեղծութեամբ կը խոստովանիմ թէ իմ ունեցած քիչ մը գիտութիւնս՝ տիրոջս դասերէն, ու իր բարեկամացը խօսակցութիւններէն սորված եմ, զորոնք լսելու աւելի պատիւ կը համարէի ինձ, քան թէ Եւրոպիոյ ամենամեծ և ամենախելացի ժողովի մը մէջ ատենաբանութիւն ընելը :

Բնակչաց ուժին, գեղեցկութեանը, և արագաշարժութեանը վրայ կը հիանայի, և այնպիսի սիրելի անձինքը ամեն առաքինութիւններով զարդարուած տեսնելով՝ սրտիս մէջ խիստ մեծ յարգանք մը կը ծագէր անոնց համար : Իրաւ՝ Եհոհուներու և ուրիշ կենդանեաց՝ Հօույհնհնմներուն համար ունեցած բնական յարգը ի սկզբան չունեցայ · սակայն սա քանի կամաց կամաց իմ կարծածէս աւելի շուտով վրաս աճեցաւ, և անոնց համար յարգելի սէր և երախտագիտութիւն մը ունեցայ, որ զիս իմ նմաններէս որոշելու զիջան :

Երբ ընտանեցայ, բարեկամացայ, հայրենեցայ, և մարդկային սեռին վրայ ընդհանրապէս կը խորհէի, կարծէի թէ անոնք ձևով և բնութեամբ, գուցէ քիչ մը աւելի կրթուած, խօսողական ձիերը

ունեցող Աղաներ են, որոնք իրենց խելքը միայն իրենց մուլուքները զարգացնելու և բազմապատկելու համար կը գործածեն, ինչպէս աս երկրիս մէջի իրենց նմանի-ները բնութեան իրենց տուած մոլու-թիւնները միայն ունին։

Երբ պատահմամբ կերպարանքս լճի կամ աղբիւրի մէջ տեսնէի, ինքզինքէս փախչելով, և զինքս ատելով՝ երեսս անկէ կը դարձնէի, և հասարակ Աղայի մը տեսքը իմ դէմքէս աւելի քաղցր կ'երևէր ինծի։ Հույհնհնմաց հետ խօսակ-ցելուս և զանոնք օրով տեսնելուս սկսայ կամաց կամաց անոնց նման քալել, ու շարժիլ, այնպէս որ հիմա սովորու-թիւն եղած է վրաս․ շատ անգամ բա-րեկամներս բերնս կերպով կ'ըսեն թէ ձիու մը պէս ընդոստ կը քալեմ․ աս խօսքը մեծ պատիւ մը կը սեպեմ ինծի։ Իրօք կը խոստովանիմ թէ խօսեցած ա-տենս Հույհնհնմաց ձևերուն և ձայնե-րուն պէս կ'ընեմ․ և աս պատճառաւ վրաս ծիծաղելնուն համար ամենևին չեմ վշտանար։

Աս ամեն երջանկութեանց մէջ՝ երբ բոլոր կեանքս հոն անցընելու կը կարծէի, տէրս առտու մը սովորական ժամէն քիչ

մը առաջ զիս կանչել տուաւ․ իր դէմքէն հասկըցայ թէ տարակուսանքի մը մէջ էր, և չէր գիտեր թէ ըսելիքը ինչ կերպով սկսի։ Կարճ լռութենէ մը ետև՝ «Չեմ գիտեր, ըսաւ, թէ ըսելիքս ինչ մտօք պիտի առնես։ Վերջին ընդհանուր ժողովին մէջ՝ երբ Հրէաներուն վրայ մեծ եղաւ, երեսփոխանները ընտանեացս մէջ Հրէայ մը (ինծի համար ըսել կ'ուզեն) պահելուս, ու անոր հետ աւելի իբր Ջօռյահնն, քան թէ անոնց անհատուն մը վարուելուս համար վշտացան ինձ։ ‘Գիտենք, ըսին, թէ դուն շատ անգամ անոր հետ կը խօսիս կարծելով թէ անոր ընկերութենէն օգուտ կամ զուարճութիւն մը քաղես․ այսպիսի ընթացք մը բնութեան և հանճարոյ դէմ է, և մեր մէջը բնաւ լսուած չէ․ ուստի կը յորդորենք զքեզ որ կամ անոր նմանեաց պէս անոր հետ վարուիս, և կամ հրամայես որ լողալով եկած տեղը երթայ’։ Իմ կամ իրենց տանց մէջ զքեզ տեսնող Ջօռյահնները աս առաջարկութեանց առաջինը բոլորովին մերժեցին․ ‘Նոր ունեցած բանականութե աղօտ նշոյլը, ըսին, Հրէաներուն բնական չարութեանց վրայ աւելնալով․ կը վախնանք որ չըլլայ թէ Հրէաները

գրգռելով, երկրին անտառային և լեռ-նային կողմերը տանի, և գիշեր ատեն գունդ գունդ Առիւծներու հետ գալով, Հօտտէնտօտաց արջառները ջարդէ, քանզի անոնք բնականաբար գիշատիչ և միշտ աշխատութեան թշնամի են'։

«Ամէն օր, յաւելցուց տէրս, դրացի Հօտտէնտօտները զիս կը ստիպեն որ ժողով-քին յորդորը ի գործ դնեմ. ու ասոր ալ երկնցընելու ճարս չմնաց։ Վախնամ թէ լողալով ուրիշ երկիր չկրնամ երթալ. անոր համար կ'ուզեմ որ քու նկարագրած տեսակէդ նաւակ մը շինես, որով ծովու-վրայ ճամբորդութիւն ընելու կարող ըլլամ. շինելու ատենդ իմ և դրացիներուս ծառաները քեզ պիտի օգնեն։ Ինծի մնալու ըլլայ, մինչև մեռնիլդ քեզ ծառայու-թեանս մէջ պահելու շատ գոհ պիտի ըլլայի, որովհետև կը տեսնեմ որ քու նուաստ բնութեանդ ներածին չափ Հօ-տտէնտօտաց նմանելու ջանք ընելով' այն յոռի սովորութիւններդ ու բնութիւն-ներդ մէկ դի ձգեցիր»։

Ընթերցողս պէտք է գիտնայ թէ աս երկրիս մէջ ընդհանուր ժողովքի մը վճիռը Հօտտէնտօտին բառով կը բացատրուի, որ թարգ-մանել կրցածիս չափ' յորդորանք կ'ընշա-

նակէ · քանզի անոնք ամէնեքին չեն կրնար հասկընալ թէ բանաւոր էակ մը բան մը ընելու համար ինչպէս կրնայ ստիպուիլ՝ խրատուելէ կամ յորդորուելէ զատ · ըստ որում մարդ մը չկրնար իրաւանց չհնազանդիլ, մինչև որ իր բանաւոր կենդանի ըլլալու իրաւունքը չկորսնցընէ ·

Տիրոջս աս ըսածներէն ետև՝ վրաս չափազանց յուսահատութիւն և կսկիծ մը եկաւ, և սրտիս տագնապին չդիմանալով, անոր ոտից ներքևը նուաղեցայ ինկայ · Երբ ինքզինքիս եկայ · "Կարծեցի թէ մեռայ", ըսաւ · քանզի անոնք բնութեան այսպիսի ակարութեանց ենթակայ չեն · "Ո՛հ, ըսի թուլացեալ ձայնով մը, խիստ մեծ երջանկութիւն պիտի ըլլար ինծի համար · թէև ժողովքին յորդորանքը կամ բարեկամացդ ստիպումը չեմ կրնար մեղադրել, սակայն իմ ակար դատողութեանս կարծեմ թէ պատիժներն եթէ այսչափ դառն չըլլար՝ աւելի իրաւացի կ՚ըլլար · Ես փարսախ մը չեմ կրնար լողալ, և հաւանական է որ ձեզի ամենէն մօտ եղած ցամաքը հարիւր փարսախէն աւելի հեռի է · իսկ ինծի համար շինելու նաւակիս շատ նիւթերը աս երկրիս մէջ ամենևին չեն

պատուիր , այլ ձեր վսեմութեան հնա-զանդելու և երախտագէտ ըլլալու հա-մար՝ թէև գործին անհնար ըլլալուն տա-րակոյս չկայ , բայց ձեռքէս եկածը կ՚ը-նեմ։ Ասկէ եւս զինքս ի կորուստ դա-տապարտուած կը սեպեմ. և անբնական մահուան մը պատկերը իմ ամենափոքր աղէտքս պիտի համարիմ։ Քանզի դիցուք թէ սրտառոց դիպուածով մը կեանքս ազատեմ, ինչպէս կրնամ սրտի հան-դարտութեամբ յուսալ թէ կենացս մնացած օրերը Ահո—ներու մէջ անցը-նեմ, և ճշմարտութեան մէջ տարուե-լու , ու անոնց մէջ մնալու օրինակներ չունենալով՝ հին մոլութեանց մէջ նո-րէն չիյնամ։ Աղէկ գիտեմ թէ խելացի Ջօռ-յէնէնեան որոշումները հաստատ ըլլա-լուն՝ ինծի պէս ողորմելի Ահո— մը չկըր-նար անոնց դէմ դնել”։ Ուստի նաւակս շինելու ատեն՝ իր ծառաները ինծի տա-լուն համար խորին երախտագիտութիւ-նըս յայտնեցի , և այսպիսի դժուար գոր-ծի մը համար բաւական ժամանակ խընդ-րելէս ետև՝ “Կը ջանամ, ըսի , որ ո-ղորմելի կեանքս պահպանեմ, և թէ որ Անգղիա վերադառնամ՝ կը յուսամ որ իմ սեռիս օգտակար ըլլամ՝ անուանի

Չօռայնեննաց գովեստները հռչակելով. և առաջարկելով մարդկային ազգին որ անոնց առաքինութեանցը հետևին»:

Տէրս համառօտ և խիստ վայելուչ պատասխան մը ըրելէն ետև՝ նաւակս լեցընելու համար երկու ամիս ժամանակ տուաւ, և հրամայեց աշխէտ մատաղածի իմ ծառայ ընկերիս (ըստ որում այսչափ հեռի էն զան այսպէս կոչելու կը համարձակիմ), որ իմ հրամաններս հնազանդի. « Որովհետև անոր օգնականութիւնը միայն, քու տիրոջս, բաւական է, և գիտեմ որ ան զիս կը սիրէ »:

Ասոր հետ նախ ապստամբ նաւաստեաց զիս ցամաքը հանած ծովեզերքին կողմը գացի, բարձունքի մը վրայ ելայ, և աչքս ծովուն ամէն կողմը պտըտցուցած ատենս՝ հիւսիսային-արևելեան կողմը կղզեակի մը պէս բան մը տեսայ. ուստի գրպանիս հեռադիտակը հանեցի և յայտնի կղզին տեսայ, որ ըստ իմ հաշուիս՝ գրեթէ հինգ փարսախ հեռի կը թուէր. սակայն աշխէտ մատաղածին կը կարծէր թէ երկնագոյն ամպ մ'է ան, որովհետև իր երկրէն զատ ուրիշ երկիր ըլլալուն վրայ գաղափար մը չունենալուն՝ ծովու վրայի հեռի առարկաները որոշելու մեզի չափ հմուտ չէր:

Ես կղզին տեսնելէս ետեւ՝ ուրիշ բան չմտածեցի, բայց եթէ՝ ինքզինքս այն տեսած երկիրս հանել, թէ որ կարելի է, եւ վերջս բաղդին ձգել։

Տուն դարձայ, և աշխէտ մատաղաձիին հետ խորհրդակցելով, քիչ մը հեռի անտառ մը գացինք, ուր եղդանակօքս, եւ ան գայլախազով մը, զոր իրենց սովորութեան համեմատ փայտի մը ծայրը շատ ճարտարութեամբ պնդած էր, կաղնիի շատ մը ոստեր կտրեցինք, որոնցմէ ոմանք ձեռաց գաւազանի չափ, և ոմանք աւելի հաստ էին։ Քաշած նեղութիւնս մանրամասն պատմելով ընթերցողս չի ձանձրացընելու համար՝ բաւական է միայն ըսել թէ վեցը շաբաթու մէջ՝ աշխէտ ձիուն օգնութեամբը, որ գործոյն աւելի դժուար մասերը կ՚ընէր, տեսակ մը Հնդկաց ձեւով, բայց աւելի մեծ բըրակուր մը շինեցի, ու Լամա-ներու կաշիները շինած կանեփեայ դերձաններովս իրար կցելով անոր վրայ պատեցի։ Բայց ծեր Լամա-ներու կաշին շատ կարծր ու հաստ ըլլալուն՝ երիտասարդաց կաշիէն առագաստ մը շինեցի. նմանապէս չորս թի պատրաստեցի, եւ պաշարի համար Նապաստակաց և հաւուց խաշած միս,

և երկու կուժ (1) առի, որոնց մէկը կա-
թով և միւսը ջրով լեցուն էր։

Տիրոջս տան մօտ լճի մը մէջ բրակու-
րիս փորձըրի, և անոր պակասութիւն-
ները ուղղեցի․ ծակերը Նէկրօ-ներու ճար-
պով խցեցի, մինչև որ բեռովս զիս ջրին
երեսը վերցընելու չափ հաստատուն ըրի
զան։ Երբ ամէն բան ըստ կարգի պատ-
րաստեցի՝ բրակուրը կառքի մը վրայ դը-
րին, և Նէկրօ-ները աշխէտ մաստաղաձիւն
և ուրիշ ծառայի մը առաջնորդութեամ-
բը կամաց կամաց քաշելով ծովեզերքը
տարին։

Երբ ամէն բան պատրաստելով՝ մեկ-
նելու օրս հասաւ, աչքս արտասուքով
և սիրտս կսկիծով լցուած՝ տիրոջս, ա-
նոր տիկնոջը, և բոլոր ընտանեաց հրա-
ժարական ողջոյնս առի։ Սակայն նորին
վսեմութիւնը հետաքրքրութեամբ, և
գուցէ (թէ որ առանց սնափառութեան
կրնամ ըսել) քիչ մը մարդասիրութեամբ՝
որոշեր էր որ իր դրացի բարեկամացը
հետ մինչև նաւը ինձ ընկերանայ։ Տե-
ղատութեան համար ժամէ մը աւելի
պարտաւորեցայ սպասելու․ անտուեն և
հողմը բարեբաղդաբար դէպ ի ան եր-

(1) Թէստի ։

Թալու կղզիս փչելուն՝ երկրորդ անգամ մնաք բարև ըսելով, տիրոջս սմբակը համբուրելու համար՝ անոր առջին խոնարհիլ ուզելու ատենս՝ ան զիս պատուելով, սմբակը մեղմիվ մը դէպի բերանս վեր վերցուց։ Ես պարագան յիշելուս համար՝ զիս որչափ մեղադրելնին գիտեմ։ Օ՛իս բամբասողները բարեհաճեցան անհաւանական կարծել թէ այսպէս երևելի անձ մը ինչպէս արժան սեպեր է ինծի պէս նուաստ էակի մը այսչափ մեծ պատուոյ նշաններ ցուցընել։ Գիտեմ թէ որչափ ճամբորդներ իրենց եղած արտաքոյ կարգի պատիւներուն վրայ պարծեր են․ սակայն իմ չարախօսներս եթէ Հօույհնհնմներու ազնիւ ու քաղաքավար բնութիւնը ճանչնալու ըլլային՝ կարծիքնին շուտով կը փոխէին։

Տիրոջս հետ ընկերացող Հօույհնհնմներուն մնաք բարև ըսելով, և բրակուրս մէջ նետուելով, ծովեզերքէն հեռացայ։



# ԳԼՈՒԽ ԺԱ.

Հեղինակին վտանգաւոր ճամբորդութիւնը։ Նոր Հոլանտա համնիլը. Հոն մնալու յուսալը։ Վայրենիի մը նետէ վիրաւորուիլը։ Բռնուիլը և բռնութեամբ Փորթուկալցիի մը նաւը տարուիլը։ Նաւապետին մեծ մարդասիրութիւնը։ Հեղինակին Անգղիա համնիլը։

1714-15, Փետրուարի 15ին, առաւօտու ժամը 9ին, աս յուսահատեալ ճամբորդութիւնը սկսայ։ Թէև հովը շատ յաջող էր, նախ միայն թիերս գործածեցի. բայց տեսնելով որ պիտի խոնջենամ, և հովը կրնար փոխուիլ, պզտիկ առագաստս բանալու համարձակեցայ. ահա՛ ասանկով և մակընթացութեան օգնութեամբը՝ կարծեմ ժամը փարսախ ու կէս ճամբայ կ՚ընէի։ Տէրս և իր բարեկամները՝ մինչև իրենցմէ անյայտ ըլլալս՝ ծովեզերքը կանգներ էին, և շատ անգամ "Հնուէ իլլա նյհա մաճա Եահու", աշխէտ մատղաշին խօսքը կը լսէի, որ զիս շատ կը սիրէր, և "Ինքզինքդ աղէկ նայէ, ազնիւ Եահու", ըսել կ՚ուզէր։

Մ՛իտքս դրի որ եթէ կարելի է՝ անմարդաբնակ փոքրիկ կղզի մը գտնեմ, ուր կենացս պիտոյքը բաւական հոգալով ապրիմ, որով Եւրոպիոյ ամենէն քաղաքակրթեալ պալատի մէջ առաջին պաշտօնատար ըլլալէ աւելի երջանիկ պիտի սեպէի զիս, ա՛յնչափ Ե—ե—ներու ընկերութեան մէջ և անոնց կառավարութեանը տակ նորէն մտնելիքս միտքս եկած ատեն կը սարսափէի։ Վասն զի աս ցանկացած առանձնութեանս մէջ գտնէ պիտի կարենայի մտածութիւններովս ըզբօսնելու, և աս անման Հօ—յ—նէնմ ազ առաքինութեանցը վրայ հաճութեամբ խորհելու, որով իմ սեռիս մոլութեանց ու վարուց ապականութեանցը մէջ նորէն իյնալու երկիւղը պիտի չունենայի։

Կարծեմ ընթերցողս անշուշտ կը յիշէ նաւաստեացս ապստամբելով զիս խուցիս մէջ բանտարգելնին, ու որ կողմը երթալնիս չգիտնալով հոն շաբաթներով մնալս, և վերջապէս ցամաքը ելած ժամանակս՝ նաւաստեաց՝ թէ ուր և թէ իրաւ երդմամբ աշխարհիս որ կողմը գըտնուելնիս չէնք գիտեր ըսելով հաստատելնին։ Իսկ ես ան ատեն կարծէի թէ Բարեյուսոյ Գլուխէն գրեթէ 10 աստի-

ձան դէպ ի հարաւ, կամ գրեթէ հա-
րաւային լայնութեան 45 աստիճանին
տակը կը գտնուէինք. քանզի անոնց ը-
րած խօսակցութիւններէն Մատակասկար
երթալու դիտաւորութիւն ունենալնին
կռահելով՝ անոր արեւելեան կողմը գըտ-
նուիլս ենթադրեր էի։ Թէեւ սա միայն
կարծիք մ'էր, այսու ամենայնիւ նաւս
դէպ ի արեւելք ուղղեցի, յուսալով որ
Նոր Հոլանտայի հարաւային արեւմտեան
ծովեզրը կամ անոր արեւմտեան կողմը
ուզածիս պէս կղզի մը հասնիմ. Հողմը
արեւմտեան էր, եւ իրիկուընը ժամը վեցին
հաշիւ ըրի թէ գոնէ ութը փարսախ դէպ
ի արեւելք յառաջ գացած եմ։

Նաւուն գրեթէ կէս փարսախ հեռա-
ւորութեամբ կղզեակ մը երեւցաւ աչքիս,
ուր շատ չանցած հասայ։ Այս կղզին ժայռ
մ'էր, եւ փոթորկաց բռնութենէն բա-
ցուած ծոց մը ունէր։ Նաւակուրս անոր
մէջ մտցուցի եւ մագլելով ժայռին մէկ
կողմին վրայ ելնելով, դէպ ի արեւելք
երկիր մը տեսայ, որ հիւսիսէն հարաւ
կը տարածէր։ Բոլոր գիշերը նաւակուրս
մէջ անցուցի եւ առտու կանուխ՝ ճամ-
բաս շարունակելով եօթը ժամու մէջ
Նոր Հոլանտայի հարաւային-արեւմտեան

ծայրը հասայ ։ Այս բանս երկար ատենէ ի վեր ունեցած կարծիքս հաստատեց , այսինքն թէ համատարած աշխարհացոյցները և աշխարհագրական տախտակները աս երկիրս գոնէ երեք աստիճան աւելի դէպ ի արևելք դրած էին , որ իրօք այնպէս չէ ․ աս կարծիքս շատ տարի առաջ՝ իմ Պարոն Հէրմէն Մօլ արժանապատիւ բարեկամիս հաղորդելով իրաւունքս հասկըցուցեր էի , թէև ան ուրիշ հեղինակաց հետևելը նախամեծար սեպեր էր ։

Ցամաքը եղած տեղս բնակիչ չտեսայ , և փաստ զէնք չունենալուս երկրին ներսերը երթալու չհամարձակեցայ ։ Ծովեզրը խեցեմորթներ գտայ և զանոնք չեփած կերայ ․ վախէս կրակ չվառեցի որ բնակիչները զիս չտեսնեն ։ Երեք օր հոն մնացի ու աս միջոցին պաշարս խնայելու համար սատրէ և ուլխանջ (1) կերայ ․ բարեբաղդաբար առու մը ևս գտայ , որուն ջուրը շատ պատուական ըլլալուն խիստ զօրացուց զիս ։

Չորրորդ օրը առտու կանուխ՝ քիչ մը աւելի ներսերը երթալու համարձակելով , ինձմէ գրեթէ հինգ հարիւր կան-

(1) Միտուա ։

գուն հեռաւորութեամբ բարձունքի մը վրայ քսան-երեսուն երկրացի տեսայ, որոնք թէ՛ այր, թէ՛ կին, և թէ տղայք մերկանդամ կրակի մը բոլորտիքը նստեր էին, ինչպէս որ անոր մասին հասկցայ. Ասոնցմէ մէկը զիս տեսնելով միւսոց իմացուց․ կիները ու տղաքը կրակին քով ձգելով, հինգ հոգի սկսան դէպ ի ինձ գալ։ Ես զանոնք տեսածիս պէս՝ շուտով ծովեզրը վազեցի, և նաւակուկիս մէջ՝ մտնելով, բոլոր ուժովս սկսայ թիերը քաշել․ վայրենիները փախչիլս տեսնելով, ետևէս վազեցին, ու ծովեզերքէն բաւական հեռանալէս առաջ՝ վրաս նետ մը նետեցին, որ ձախ ծունկիս գալով խորին վիրաւորեց, և որուն նշանը մինչև գերեզման մտնելս վրաս պիտի կրեմ. Վախնալով որ նետը թունաւորեալ է, ծովը հանդարտ ըլլալուն՝ նետ չհասնելու չափ հեռանալէս ետև՝ վէրքս ծծեցի, և կրցածիս չափ լաթերով փաթթեցի։

Ասաւեն ինչ ընելս չէի գիտեր, քանզի նոյն տեղը վերադառնալու չէի համարձակեր․ Թի քաշելով դէպ ի հիւսիս զարկի․ հովը թէև շատ մեղմ և հիւսիսային էր, բայց ինձ դէմ ըլլալուն՝

շարունակ թի քաշելու պարտաւորեցայ։ Վերջապէս՝ ցամաքը ելնելու համար՝ ապահով տեղ մը փնտռած ատենս՝ դէպ ի հիւսիս-հիւսիսային-արեւելք նաւ մը տեսայ, որ երթալով աւելի յայտնի երեւնալուն՝ չէի գիտեր թէ անոր սպասե՞մ թէ ոչ։ Բայց Եսքիմօներու դէմ ունեցած ատելութիւնս զօրանալով, բրակուրս դարձուցի, եւ դէպ ի հարաւ առագաստեցի, ու թիերս քաշելով նոյն խորշը մտայ, ուրկէ առտու մեկներ էի, լաւեւս սեպելով զինքս այն բարբարոսաց յանձնել, քան թէ Եւրոպացի Եսքիմօներու մէջ ապրիլ։ Բրակուրս հնար եղածին չափ ծովեզերքին մօտեցընելով՝ պատուական ջուր ունեցող առուին մօտ եղած քարին ետեւը պահուեցայ։

Երբ նաւը կէս փարսախ հեռաւորութ. խորշին մօտեցաւ, նաւաստիները նականներով մակոյկ մը իջեցընելով, եկան ասկէ անուշ ջուր առնելու (կ'երեւի թէ աս խիստ ծանօթ տեղ մ'էր)։ մակոյկը գրեթէ ծովեզրը հասած ատենը տեսնելուս՝ պահուելու ուրիշ տեղ գտնելու ատեն չկար։ Երբ նաւաստիք ցամաքը ելան՝ բրակուրս տեսան, եւ անոր չորս դին զննելով, իսկոյն հասկցան թէ անոր

տէրը մօտ տեղուանքը կը գտնուի ։ Անոնցմէ չորս հոգի աղէկ սպառազինած՝ ամէն կողմ փնտռելով, վերջապէս քարին ետին երեսն ի վայր պառկած գտան զիս։ Բաւական ատեն այլանդակ և անձոռնի զգեստուցս, կաշիէ վերարկուիս, փայտեայ մուճակներուս, և մաշկեայ գուլպաներուս վրայ հիացեալ մնացին, ու ասկէ մակաբերեցին թէ երկրացի չեմ, որովհետև ան երկրին բնակիչները մերկ էին ։ Նաւաստեաց մէկը Փորթուկալցի լեզուաւ հրամայեց ինձ որ կանգնիմ, և հարցուց թէ ո՞վ եմ։ Ես աս լեզուն շատ աղէկ գիտնալուս՝ ոտքի վրայ ելնելով․ “Ես, ըսի, Հօույհնհնմաց երկրէն աքսորուած ողորմելի Եահու մ'եմ․ կ'աղաչեմ՝ թող տուէք որ երթամ”։ Լեզունին խօսիլս լսելով, զարմացան, ու երեսիս գոյնէն Եւրոպացի ըլլալս հասկցան, սակայն Հօույհնհնմ ու Եահու բառերով ինչ ըսել ուզելս չէին հասկընար, և միանգամայն ձիու մը վրնջելուն նման զարմանալի կերպիւ խօսելուս վրայ սկսան ծիծաղիլ։

Բայց աս միջոցին անոնցմէ կը դողայի և միանգամայն զանոնք կ'ատէի․ “Աղաչեմ, ըսի նորէն, թողուցէք որ երթամ”։

ու սկսայ կամաց կամաց դէպ ի բլրակուրս երթալ· սակայն զիս բռնելով ուզեցին գիտնալ թէ ո՛ր տեղացի եմ, ո՛ւրկէ կու գամ, և ուրիշ շատ հարցումներ ըրին : «Այո, ըսի, Անգղիա ծնած եմ, ուրկէ հինգ տարի է որ ելած եմ, և անատեն իմ և ձեր երկրին մէջ խաղաղութիւնը կը տիրէր, ուստի կը յուսամ որ հետս իբր թշնամի չէք վարուիր, մանաւանդ որ ձեզ վնաս մը հասցընել չեմ ուզեր, ու խեղճ Ռոպինսոն մ'եմ որ դժբաղդ կեանքս անցընելու համար առանձին տեղ մը կը փնտռեմ» :

Երբ խօսիլ սկսան, այնչափ այլանդակ և տարօրինակ երևցան ինծի, որչափ կով կամ շուն մը Անգղիոյ մէջ, և կամ Ռոպինսոն մը Հօլլանտացւոց մէջ խօսէր : Նմանապէս բարեսիրտ Փորթուկալցիները արտաքոյ զգեստուցս և այլանդակ կերպով խօսելուս վրայ զարմացան, թէև բաներս շատ աղէկ կը հասկընային : Անոնք մեծ մարդասիրութեամբ հետս խօսելով· «Ճշմարիտ կ'ըսենք, ըսին, թէ Նաւապետանիս զքեզ ձրի Լիզպոն կը տանի, ուրկէ կրնաս հայրենիքդ դառնալ· հիմա երկու նաւաստի նաւը կը ղրկենք, որ նաւապետին իմացընելով, անորմէ հրա-

ման առնեն ․ սակայն եթէ չփախչելուդ համար մեծ երդում մը չընես , գքեզ բռնութեամբ կը կապենք” ։ Մտածեցի որ առաջարկութիւնին ընդունելէն ուրիշ բան չէի կրնար ընել ։ Մեծ հետաքրքրուք կ'ուզէին որ գլուխս եկածները պատմեմ իրենց , սակայն ես զանոնք խիստ քիչ գոհ ընելու համար՝ կարծեցին որ գըժբաղդութիւններէս խելքս չփոթած է ։ Երկու ժամէն ետև՝ ջուր լեցուն տակառները նաւը տանող մակոյկը ետ դառնալով, նաւապետէն հրաման բերաւ որ զիս նաւը տանին ։ Ծունկի վրայ գալով, անօգուտ տեղը աղաչեցի որ ազատ թողուն զիս ․ բայց անոնք առասաններով զիս կապելով, մակոյկը իջեցուցին , ու նաւը տանելով նաւապետին խուցը մըտցուցին զիս ։

Աս քաղաքավոր և ազնիւ նաւապետը , որ Փէտրօ տը Մէնտէզ կ'անուանէր , խնդրեց որ ով ըլլալս իմացընեմ իրեն , և հարցուց թէ ինչ ուտելիք և խմելիք կ'ուզեմ ․ ապահովեց զիս նաև թէ հետս շատ աղէկ պիտի վարուի ․ վերջապէս այնչափ համոզիչ խօսքեր ըրաւ , որ Եահուի մը վրայ այնչափ բարեսրտութիւն տեսնելուս շատ զարմացայ ։ Սակայն ես

լուռ ու տրտում կեցայ, և իր մարդոց ու իր հոտէն քիչ մնաց որ պիտի նուաղէի։ Վերջապէս խնդրեցի որ բրակուրէս քիչ մը ուտելիք բերեն ինծի. բայց ան փառեակ (1) մը ու պատուական գինի բերել տուաւ. ու երբոր հրամցեց որ մաքուր խուցի անկողնոյն մէջ պառկիմ. Անկողինը մտնելու ատեն՝ հանուիլ չուզեցի, այլ անկողնոյ վերմակին վրայ երկընցայ, ու կէս ժամէն ետև՝ նաւաստիները ձայնի վրայ կարծելով, երդ ու ծածուկ նաւուն եզերքը մօտենալով պատրաստուեցայ ծովը նետուիլ, և լողալով փախչիլ, քան թէ Սահոններու մէջ բանտարգելալ մնալ։ Բայց նաւաստեաց մէկը զիս տեսնելով չթողուց, ու նաւապետին իմացընելով, խուցին մէջ շղթայով կապեցին զիս։

Ճաշէն ետև՝ Տօն Փէտրօն քովս եկաւ, ու այսպիսի յուսահատական գործ մը ընելուս պատճառը հասկընալ ուզեց։ «Ապահով եղիր, քաւ, թէ ձեռքէս եկածը կ՚ընեմ քեզի համար»։ Ես այնչափ սրտաշարժ կերպիւ հետը խօսեցայ, որ վերջապէս քիչ մը խելք ունեցող կենդանիի մը պէս հետը վարուելու զիջաւ։ Ո. ա-

(1) Փիլաւ.

տի ճամբորդութեանցս, նաւաստեացս ապստամբութեան, անանց զիս ցամաքը հանած երկրին, և հոն հինգ տարի մնալուս վրայօք խիստ համառօտ կերպիւ պատմեցի անոր։ Բոլոր աս բաներս իրեն ցնորք կամ երազ մը կ'երևէին. աս որ վրայ խիստ շատ նեղացայ. որովհետև ամեն երկրի մէջ գտնուող Եահուներուն մասնաւոր եղած սուտ խօսելու, և հետևաբար իրենց նմաններուն ճշմարիտ բանին վրայ կասկածելու յատկութիւնը բոլորովին մոռցած էի։ «Միթէ, ըսի, ձեր երկրին սովորութիւնն է չեղած բան մը ըսելը։ Հաստատ գիտցիր թէ սուտութիւն ըսած բանդ գրեթէ մոռցած եմ, ու թէ որ Հօույհնհնմաց երկրին մէջ հազար տարի մնայի՝ խիստ ստորին ծառայէ մը անգամ սուտ մը պիտի չլսէի։ Բաններուս կ'ուզես հաւատայ՝ կ'ուզես մի հաւատար, ամենևին հոգս չէ. այսու ամենայնիւ ինծ ըրած շնորհացդ փոխարէն, և քու բնական մոլութեանցդ համար միայն ինծ ըրած հարցմանցդ պիտի պատասխանեմ. անատեն ճշմարտութիւնը կրնաս դիւրաւ ճանչնալ։

Նաւապետը խելացի մէկը ըլլալով, պատմութեանս մէջ հակառակութիւն գըտ-

նելու, և սուտս հանելու շատ ջանք ընելէն ետև՝ սկսաւ խօսքիս ճշմարտութե̄ը վրայ աղէկ կարծիք ունենալ: “Որովհետև, ըսաւ, այնչափ անյաղթելի կերպիւ ճշմարտութեան յարած ես, ուրեմն խօսք տուր որ կենացդ վնաս մը հասցընելը մտքէդ անգամ չանցընելով մինչև Լիսպօն հետս ընկերանաս, ապա թէ ոչ մինչև հոն դքեզ բանտարկեալ կը տանիմ”: Նաւապետին պահանջած խոստումը ըրի, բայց միանգամայն յայտնի ըսելով թէ նորէն Նահ-ներու մէջ երթալէն աւելի նախամեծար կը սեպեմ ամենախիստ նեղութիւններ կրել:

Ճամբորդութեանցս մէջ երևելի դէպք մը չպատահեցաւ: Երբեմն նաւապետը զիս խիստ սախպած տանէն, երախտագիտութիւնս յայտնելու համար անոր քովը կը նստէի, ու մարդկային սէրին դէմ ունեցած ատելութիւնս ծածկելու կը ջանայի, թէև շատ անգամ յայտնի կ'ընէի, բայց ան չսեպելու կը զարնէր: Նաւաստիները չտեսնելու համար՝ օրէն մեծ մասը խուցէս դուրս չէի ելներ:

Նաւապետը շատ անգամ աղաչեց որ վայրենի զգեստներս վրայէս հանեմ, և ուզեց որ իր ամենէն գեղեցիկ զգեստնե-

չէն հաց մը ինձ փոխ տայ · բայց ես յուզեցի որ աս մարդն զիս սափրէ , որովհետև Լուկու-ի մը կռնակէն եկած բաները մորթոյս վրայ հագնելու կը զանէի : Այլ այն երկու մորթուր շապիկ ուզեցի , որոնք հագնելէն ետև լուացուած ըլլալուն՝ կարծէի թէ ինձ այնչափ պիտի չպատատէին : Երկու օրը անգամ մը զանոնք կը փոխէի և իմ ձեռքովս կը լուայի :

1715 Նոյեմբերի 15ին՝ Միայն հատակք· բայց ցամաքը եկած ժամանակնիս՝ նաւապետը ստիպեց զիս որ իր թիկնոցը վրաս առնեմ , որպէս զի փողոցի սահակները չորս կողմէրնիս չժողվուին . Զիս իր տունը տարաւ , և իմ խնդրանօքս խիստ վերնագոյն և ներքնագոյն սենեակը տուաւ ինձ · Աղաչեցի զինքը որ Հօյենենեաց վրայօք բաներս մորդու չընէ · " Ինչու որ , ըսի , տասնկ պատմութիւն մը տարածուելուն պէս՝ անթիւ մարդիկ ինձ տեսնելու գալէն զատ՝ գուցէ զիս բանտարկելու փափագին մէջ ձգեն , կամ հաւատարմնութեանս զիս ալեն ” . Նաւապետը համոզեց զիս որ նոր շինել տուած հաց մը զգեստը ընդունիմ · սակայն չուզեցի որ դերձակը չափս առնէ ·

Տօն Փէտրօն գրեթէ հաստակուռ ըլլալուն՝ իր չափովը խիստ աղէկ յարմարեցան ինծի. Ուրիշ հարկաւոր եղածները նոր ըլլալով պատրաստեց, ինչ եւս գնենք դեռ չհագած՝ քսան ու չորս ժամողին մէջ կախեցի.

Նաւապետը կին չունէր, թէեւ երեք ծառայ ունէր, որոնք սեղան նստած ատեն մեզ ծառայել չուուաւ. Վերջապէս այնչափ քաղաքավար կերպով հետս կը վարուէր, եւ այնչափ բարեզգաց էր, որ սկսայ իրաւցընէ իր ընկերութեանը ըն-տանենալ. Օխ այնչափ շնհեցաւ, որ տան ետեւի կողմը նայող պատուհանէն դուրս նայելու համարձակեցայ. Ժամա-նակէ ետքը՝ փողոցի վրայ նայող սենեակ մը տարաւ զիս, ուրկէ գլուխս դուրս հանելով փողոցը կը նայէի, բայց վախ-նալով ներս կը քաշուէի. Շաբաթ մը ետեւ՝ զիս համոզելով մինչեւ դուռը ի-ջեցուց. Վախս երթալով կը պակսէր. սակայն անեղութիւնս եւ արհամարհանքս ի՛ամէին. Վերջապէս համարձակելով փո-ղոցը մէջ բաւական պտըտեցայ անոր ջեռ, բայց քիթս մէջը քթախոտով եւ փեգենայով(1) կը խցէի.

(1) Սէտէֆ օթու.

5ին՝ Տընս հասանք առաւօտ ժամը գրեթէ 5ին, և կէսօրէն ետև ժամը 3ին՝ ողջ առողջ Ռէտրիֆ տունս հասայ։

Կինս ու ընտանիքս մեծ ուրախութեամբ, և զարմացմամբ զիս ընդունեցին, որովհետև ինձ մեռած կարծեր էին, բայց ճշմարիտը խոստովանիմ, երեսնին տեսած ատենս՝ ատելութեամբ, արհամարհանօք, և զզուանօք լցայ, մանաւանդ երբ իմ և անոնց մէջ եղած մեծ ազգակցութիւնը միտքս կը բերէի։ Քանի Հօյ-ընհընմ ազգ երկրէն զժբաղդաբար աքսորուելէս ի վեր Եահուներուն երեսը տեսնելու, ու Տօն Փէտրօ տը Մէնտէզին հետ խօսելու պարտաւորեալ էի, սակայն միտքս ու երեւակայութիւնս ան ազնիւ Հօյ-ընհընմներուն առաքինութիւններուն ու գաղափարներուն միշտ լեցուն էին։ Երբ սկսայ մտածել թէ Եահուի սեռէ մէկու մը հետ միանալով, ու քանի Եահուներու հայր եղած էի, յետին աստիճան ամօթ, շփոթութիւն ու սոսկում պատեցին զիս։

Տունը մտածիս պէս՝ կինս զիս գրկելով համբուրեց, ես ատէկէ կենդանին շատ տարիէ ի վեր ինձ դպչած չըլլալուն՝ գրեթէ ժամ մը նուաղեցայ մնացի։ Ըս ճամբորդութիւներըս գրած ատենս հինգ

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Հեղինակին ճշմարտասիրութիւնը ։ Իր աս աշխատասիրութիւնը հրատարակելուն դիտաւորութիւնը ։ Հեղինակը ճշմարտութենէ խոտորած ճամբորդները կը մերժէ ։ Աս գրուածոց մէջ ծուռ նպատակ մը չունենալուն համար ինքզինքը կ'արդարացընէ ։ Խնդիրի մը կը պատասխանէ ։ Գաղթական հաստատելու կերպը ։ Իր հայրենեացը վրայ ըրած գովեստը ։ Հեղինակին գտած երկիրներուն վրայ տէրութեան ունեցած իրաւունքը կ'արդարացընէ ։ Այն երկիրներուն տիրելու դժուարութիւնը ։ Հեղինակը վերջին հրաժարական ողջոյնը կու տայ ընթերցողին ։ Իր մնացեալ օրերը ինչպէս ապրելու կերպը կ'առաջարկէ ։ Բարի խրատներ տալով ՝ վերջ կ'ընէ պատմութիւնը ․*

ԱՀԱ՛, ազնիւ ընթերցող, տասն ու վեցը տարի և եօթն ամիսէն քիչ մը աւելի միջոցին մէջ ըրած ճամբորդութեանս հարազատ պատմութիւնը քեզի ըրի, որուն մէջ զարդարելէ աւելի ճշմարիտը պատմելու ջանք ըրի ։ Գուցէ ուրիշներուն պէս՝ այլանդակ և անհաւանական պատմութիւններով զքեզ հիացընելու կարող ըլլայի ․ սակայն ես լաւ ևս ընտրեցի որ իրօք եղածները ամենապարզ ոճով ու-

կերպով պատմեմ․ որովհետև գլխաւոր նպատակս զքեզ կրթել է, և չէ թէ զբօսցընել։

Անգղիացւոց կամ ուրիշ Եւրոպացւոց խիստ քիչ անգամ գացած հեռագոյն երկիրները երթող մեզի պէս ճանապարհորդները շատ դիւրութեամբ կրնան՝ ծովային և ցամաքային զարմանալի կենդանեաց վրայ պատմութիւններ ձևացընել։ Բայց աստ հակառակը՝ ճամբորդի մը առաջին նպատակը պէտք է ըլլայ՝ մարդս աւելի խելացի և աւելի լաւ ընել և անոր միտքը օտար երկիրներու մէջ տեսած յոռի և բարի օրինակներովը ուղղել։

Այնպիսի օրէնք մը կ՚ուզէի ըլլար, որ ամէն ճանապարհորդ իր ճամբորդութիւնը հրատարակելու համար հրաման առնելէն առաջ՝ մեծ դիւանադպիր իշխին առջևը պարտաւորէր երդում ընելու որ իր հրատարակել ուզածը ճշմարիտ է․ ան ատեն աշխարհս սովորաբար խաբուածին պէս պիտի չխաբուէր․ քանզի հեղինակներէն ոմանք իրենց գրած գրքերը հա-տարակութեան մէջ աւելի ընդունելի ընելու մտօք՝ անզգոյշ ընթերցողը խիստ մեծ սուտերով կը խաբեն․ Պատանեկու-

թեանս ժամանակը՝ շատ ճամբորդներու գրքերը մեծ հաճութեամբ կարդացեր եմ. բայց երբ աշխարհիս մեծ մասը ճամբորդելուս, և դիտողութիւններովս չինծու շատ պատմութեանց դէմ խօսելու կարող ըլլալուս՝ աս տեսակ գրքեր կարդալը ինծի մեծ զզուանք տուած է, և մարդկային դիւրահաւանութիւնը այսպէս անամօթաբար չարաչար խաբելնին տեսնելով բարկութիւնս գրգռած է. Ծանօթներս ինծ աս տկար աշխատասիրութիւնս հայրենակցացս ընդունելի համարիլ բարեհաճելնուն, ճշմարտութեան խօսիլ յարիլը և անկէ չզարտուղիլը իբր պարտք դրի վրաս, թէև զարտուղելու գրգիռ մը երբէք չեմ կրնար ունենալ, քանի որ աչքիս առջևը ու բռնչերևելի Փօնդընէլինց դասերն ու օրինակները միտացս մէջ պահած եմ, որոնց այնչափ երկար ատեն խոնարհ ունկնդիր ըլլալու պատիւը ունեցեր էի.

-- Այո զՄինան հէք տղայ բախտըն դրժեց.
Այլ ոչ զրախօս ըլլա և ոտիս աբրաց է.

Շատ աղէկ գիտեմ թէ ո՛րչափ քիչ պատիւ կը ստացուի այն գրուածներէ, որոնք աղէկ յիշողութենէ կամ ճիշդ օ-

բաղդրութենէ զատ՝ ոչ հանճար, ոչ գիտութիւն, և ոչ խոկ ուրիշ որ և իցէ տաղանդ կը պահանջեն։ Նմանապէս գիտեմ թէ ճամբորդութիւն գրողները բառգիրք գրողներուն պէս իրենցմէ ետքը եկողներուն գերազանցութեամբը ի մոռացօնս ընկղմած են, ուստի և անոնց տակը մնացած են։ Շատ հաւանական է որ ես իմ նկարագրած երկիրներս այսուհետև այնպիսի ճամբորդներ երթան որ սխալներս (թէ որ ըրած եմ) գտնելով, և իրենց գտած գիւտերը իմինիս վրայ յաւելընելով զիս գերազանցեն, ու տեղս անցնին, և հեղինակ մը ըլլալս աշխարհէս մոռցընել տան։ Ես բանս իրաւ խիստ մեծ կսկիծ պիտի ըլլար սրտիս՝ թէ որ համբաւ ի համար գրէի, սակայն միակ դիտաւորութիւնս հասարակութեան բարիքը ըլլալուն՝ չեմ կրնար բոլորովին յուսահատիլ։ Քանզի ով կրնայ Ճօ-յնընտաց փոյթք յիշած առաքինութիւններս կարդալ և իր մոլութիւններէն զամչնալ, երբ միտքը բերէ թէ իր երկիրը կառավարող, և անոր մէջի բանաւոր էակը ինքն է։ Հան-ներուն կառավարած հեռաւոր ազգաց վրայ բան պիտի չըսեմ, որոնց մէջ ամենէն քիչ

մոլեռանդները Բրոդէսդանդներն են ։ երջանիկ պիտի ըլլայինք, թէ որ ատանց բարոյականութեան, և կրօնաւորութեան մէջ ունեցած խելացի սկզբունքը ունենայինք ։ Բայց ասոնք թէ վրայ չեմ ուզեր երկնցընել, այլ իրաւադատ ընթերցողիս քննութեան ու զուգադրութեանը կը յանձնեմ զան ։

Քիչ մը կ'ուրախանամ մտածելով որ աս իմ աշխատութիւնս թերեւս ազգանոց չզանուի, ինչու որ ի՞նչ ընդդիմութիւններ կրնան ըլլալ ան հեղինակին դէմ, որ միայն իրօք եղածները կը պատմէ այնպիսի հեռաւոր երկիրներու վրայօք, որոնց մէջ ամենեւին առեւտրական կամ քաղաքական շահ մը չունինք ։ Զգուշութեամբ հեռացած եմ այն ամեն սխալներէն, որոնց համար Ճամբորդութիւն գրող հասարակ հեղինակները շատ անգամ ու խիստ իրաւամբ եպերուած են ։ Ասկէ զատ՝ ամենեւին կուսակցութեան մը մէջ խառնուած չեմ, այլ որ և իցէ մարդու կամ մարդոց դէմ՝ առանց կիրք, առանց նախապաշարման ու ատելութեան կը գրեմ ։ Մարդկային ազգը կրթելու և լուսաւորելու նպատակաւ կը գրեմ. քանզի այսչափ երկար

ժամանակ աս ամենընտիր Հօսյէնէնեաց հետ խօսակցելով՝ քաղած օգուտներուս համար՝ կրնամ անոնց գերազանց համարել : Գովութեան կամ անձնական շահու դիտաւորութեամբ չեմ գրեր : Երեւէք գրչէս այնպիսի բառ մը սպրդած է, որ կեղծեցուցիչ կամ քիչ մը գըրպոզական ըլլայ՝ և ոչ իսկ անանց, որոնք խիստ շուտով կ'առնուին : Ասոր կը յուսամ որ կրնամ իրաւամբ անմեղադրելի հեղինակ մը կոչուիլ, որուն դէմ ելլող պատասխանատուները, ու խորհրդածութիւն, գիտողութիւն, մտածութիւն, քննութիւն և զննութիւն ընողները երբեք կարող պիտի չըլլան իրենց տաղանդները ի գործ դնելու համար նիւթ մը գտնելու :

Իրաւը ըսեմ, ականջիս ըսին թէ Անգլիոյ հպատակ ըլլալուս համար՝ առջի անգամ աս երկիրը վերադարձած ժամանակս՝ պէտք էր տէրութեան ատենադպիրի մը ճամբորդութեանց մէկ օրինակը ղրկել · վասն զի հպատակի մը գտած որ և իցէ երկիրը իր թագաւորինն է, բայց ես ստոյգ չեմ գիտեր թէ արդեօք իմ աս ըսած երկիրներս նուաճելը Ֆերտինանտ Կօրթէզին մերկ Ամերիկացւոց

վրայ տիրելուն չափ դիւրի՞ն բան է։ Անգղիացիները յաղթելու համար՝ վրանին բանակ և նաւատորմիղ ղրկելու ծախքը չարժեր. չեմ գիտեր թէ Պրոպինչնակցուց վրայ յարձակիլը խոհեմութի՞ւն կամ ապահո՞վ բան է. և կամ արդեօք Նոյզէլացի բանակ մը թռչող Աղզիէին տակը կրնա՞յ հանգիստ ընել։ Հօտտէնտօտները թէև պատերազմի այնչափ պատրաստուած չեն երևիր, որովհետև պատերազմական գիտութիւն, և մանաւանդ հրազինուց վըրայօք ամենևին տեղեկութիւն չունին։

Սակայն թէ որ ես առաջին պաշտօնեայ մը եղած ըլլայի՝ անոնց վրայ յարձակելու երրեք խորհուրդ պիտի չտայի։ Իրենց խոհեմութիւնը, համեստութիւնը, անվեհերութիւնը, հայրենասիրութիւնը՝ զինուորական արուեստին մէջ ունեցած թերութեանց տեղը լիովին կը լեցընեն։ Երևակայէ՛ անգամ մը որ եթէ 20 հազար Հօտտէնտօտ Նոյզէլացի բանակի մը մէջ նետուին՝ ինչպէս զօրաց կարգերը պիտի չփթեն, կռաքերը տակն ու վրայ պիտի ընեն, իրենց եզնի սմբակներուն սակալք կիցերուկը պատերազմողաց երեսները պիտի ջախջախեն։

Սակայն նոյն մեհանձն ազգին տիրելու՝
համար առաջարկութիւն ընելու տեղ,
աւելի կը ցանկայի որ պատուոյ, արդա-
րութեան, ճշմարտութեան, բարեխառ-
նութեան, հասարակութեան օգտին,
քաջասրտութեան, ողջախոհութեան,
բարեկամութեան, մարդասիրութեան
ու հաւատարմութեան սկզբունքը սոր-
վեցընելով, Եւրոպան կրթելու համար՝
այն ազգը կարենար կամ ուզէր իր բը-
նակիչներէն բաւական հոգի զրկել։ Ա-
մէն առաքինութեանց անունները
մեր շատ լեզուաց մէջ տակաւին կը
գտնուին, և արդի ու վաղեմի գրուածոց
մէջ կը տեսնուին, ինչպէս որ շատ ան-
գամ կարդացած ենք։

Բայց ես ուրիշ պատճառ մը ունէի,
որ իմ գիւտերուս նորին մեհափառու-
թեան երկիրները ընդարձակելու համար
տարակուսանաց մէջ կը թողուր զիս։
Ճշմարիտը ըսեմ, Թագաւորաց՝ գտնու-
ած երկիր մը արդարութեամբ բաժնե-
լու դժուարութիւնները տեսած էի։
Օրինակի աղագաւ․ գունտ մը ծովահէն-
ներ փոթորիկէ մը քշուելով ուր եր-
թալնին չեն գիտեր, և մանչնաւղ

մը մերձակայ մեծ կայմին վրայէն ցամաք մը կը տեսնէ ։ Անոնք թալլելու և կողոպտելու համար հոն կ'երթեն, և անմիտս ժողովուրդ մը կը տեսնեն, որ զիրենք մարդասիրաբար կ'ընդունի․ երկրին նոր անուն մը կու տան, և իրենց թագաւորին անունովը անոր կը տիրեն․ երկիրը գտնելնուն յիշատակը ընելու համար՝ փորուած սիւն մը կամ քար մը կը կանգնեն, բնակիչներէն քանի երեսուն հոգի կը սպաննեն, ցուցի համար անոնցմէ զոյգ մը բռնութեամբ հայրենիքնին կը տանին, ու հոն իրենց ալ ըրածներուն համար ներողութիւն կը ստանան ։ Հոս կը սկսի աստուածային իրաւամբ ստացեալ տիտղոսով նոր իշխանութիւն մը ։ Անմիջապէս նաւեր կը ղրկուին հոն․ բնակիչները կամ կը հալածուին և կամ կը ջարդուին․ ոսկիին ուր ըլլալը ցուցնելու համար անոնց իշխանները կը չարչրուին․ ամեն տեսակ անգութ և շահու գործոց ազատ թոյլտուութիւն կը տրուի․ գետինը բնակչաց արեամբ կը շաղախի, և աս մերօրեայ գաղթականութիւնը այսպէս բարեպաշտական գործով դրուած արիւնարբ ու դահիճներէ կը բաղկանայ, որոնք բարբարոս և կա-

պաշտ ժողովուրդ մը կրթելու կամ դարձրնելու համար ղրկուած են։

Սակայն իրաւը ըսեմ, անկարագրութիւնս Պրիտանական ազգին ամենևին չնկատեր, որ գաղթական հաստատելու · կրօնքը և գիտութիւնը յառաջացրնելու համար տուած առատ ձրիցը · քրիստոնէութիւնը տարածելու համար քարեպաշտ և կարող հովիւներ ընտրելու · փարուք և խոստակցութեամբ պարկեշտ անձեր մայրենի երկրէն իրենց նոր գաւառները ղրկելու · բոլոր իրենց գաղթական երկիրներուն քաղաքական ատեաններու մէջ անխտիր արդարութիւն ըլլալու համար՝ ընաւ կաշառառութի չգիտցող և ամենայաջողակ պաշտօնատարներ գնելու · և վերջապէս իրենց Թագաւոր տիրոջը պատուէն և իրենց իշխանութեանցը տակ եղող ժողովրդոց եկեղեցականութենէն զատ՝ ուրիշ գիտութիւն չունեցող խիստ ժրաջան և առաքինի կառավարիչներ ղրկելու համար՝ իր իմաստութեամբը, հոգողութեամբը և արդարութեամբը բոլոր աշխարհիս օրինակ կրնայ ըլլալ։

Բայց իմ նկարագրած երկիրներս՝ կերեւի թէ ոչ գաղթականներէ յաղթուե-

լու, գերի ըլլալու, ջարդուելու կամ հալածուելու պէտք ունին, և ոչ առատ ոսկի, արծաթ, շաքար և ծխախոտ ունին։ Ես խոնարհաբար կարծեմ թէ անոնք ամենեքին մեր նախանձու, արիւն, կամ շահուն յարմար չեն։ Սակայն անոնք ուրիշ մօք առնողներուն ես պատրաստ եմ ըստ օրինի կանչուած ատենս՝ վկայութիւն տալ որ ինծմէ առաջ ուրիշ Եւրոպացի մը աս երկիրները այցելութեան գացած չէ։ Այսինքն՝ եթէ ընակչաց հաւատացուի, և շատ տարի առաջ Փօրթուգալցւոց երկրէն լերան մը վրայ տեսնուած յիշեալ երկու Եւրո-ներուն վրայօք վէճ մը չըլացուի։

Իսկ ինքնակալին անունովը երկրին տիրելու ամրութիւնը ամենևին միտքս չեկաւ, և եթէ եկած ըլլար, ըստ պահանջման վիճակիս՝ գուցէ խոհեմութե և անձնապահութեան համար բանը ուրիշ յարմար պատեհութեան թողուցած ըլլայի։

Ահա այսպէս պատասխանելով ան միակ պակասութեան, որուն համար իբր ճամբորդ որ և իցէ ատեն կրնան զիս կշտամբել, հոս վերջին ողջոյնս կու տամ բոլոր աշխարհի ընթերցողաց, և Աֆրիքի փոքր

պարտէզս կը վերադառնամ իմ մտածու-
թիւններս վայելելու, Հօույհնհնմներէ
սորված առաքինութեանցս պատուական
դասերը ի գործ դնելու, իմ գերդաս-
տանիս Եահուները՝ իրենց դիւրընտելու-
թեանը ներածին չափ կրթելու, մարդ-
կային էակի մը դէմքը տեսնել կարենալու
համար՝ իմ դէմքս շատ անգամ հայելիի
մը մէջ նայելու, իմ երկիրս Հօույհնհն-
մաց անասնութեանը վրայ ողբալու, բայց
իմ ազնիւ տիրոջս, իր ընտանեացը, բա-
րեկամացը, և բոլոր Հօույհնհնմաց սիրոյն
համար հետերնին միշտ յարգանօք վա-
րուելով· որոնց մէջ Հօույհնհնմները
մարմնոյ ամէն մասամբ նմանելու պատի-
ւը ունեցեր են, թէպէտև մտաւորական
կարողութիւննին օտարացած է։

Անցեալ շաբաթ սկսայ թողուլ կնոջս
որ երկար սեղանին ծայրը հետս ճաշի
նստի, և ըրած քանի մը հարցմանցս
պատասխան տայ (բայց վերջին համա-
ռօտութեամբ)։ Այսու ամենայնիւ Եա-
հուի մը հոտը քթիս շարունակ շատ գէշ
գալուն, միշտ ծխախոտի տերևներով,
փեգենայով, փաղանգամուշկով(1) աղէկ

(1) Հի. սամ. օծու ։

մը կը խցեմ։ Թէև տարիքը առած մարդու մը հին սովորութիւնները ձգելը ծանր կու գայ, սակայն դեռ յոյս ունիմ որ ժամանակ անցնելէն ետև՝ դրացի Եահուի մը հետ տեսութիւն ընեմ, առանց վախնալու թէ անոր ակռաներուն կամ ճիրաններուն տակը կը գտնուիմ։

Եահուներու ընդհանուր սեռին հետ վերստին հաշտուիլս այնչափ դժուար պիտի չըլլար, եթէ անոնք բնութեան ենթակայ ըրած մոլութեանց ու յիմարութեանց միայն գոհ եղած ըլլային. ամենեւին փաստաբանի, քսակահատի, գընդապետի, յիմարի, լորդի, խաղամոլի, քաղաքագէտի, բոզաւագի, բժշկի, վըկայի, հրապուրչի, գործակալի, մատնիչի, և ասոնց նմանեաց վրայ սիրտս չնեղանար. սակայն երբ մարմնական և մտաւորական հիւանդութեամբք և տգեղութեամբք պաշարեալ ամբարտաւան մարդոց բազմութիւն մը կը տեսնեմ, չեմ կրնար համբերել. ամենեւին չեմ հասկընար թէ այսպիսի կենդանի մը ու այսպիսի մոլութիւն մը միատեղ ինչպէս կրնան երթալ։ Բանական էակի մը ամէն գերազանցութիւններովը լցուած խելոցի և առաքինի Հուոյհնհնմները ի-

րենց լեզուին մէջ աս մոլութեան անունը չունին․ իրենց Տիկիններուն ատելի յատկութիւնները նկարագրող բառէ զատ՝ փոտ բան մը բացատրող բառ չունին, և մարդկային բնութիւնը իր տխրած երկրին մէջ եղածին պէս կատարեալ չճանչնալնուն համար՝ Տիկիններուն հպարտութիւնը չէին կրցեր որոշելու․ իսկ ես իմ աւելի փորձառութեամբս վայրենի Տիկիններու վրայ անոր քանի մը արմատները յայտնի տեսնելու կարող եղայ ։

Բայց Տօսքաննացիները՝ որ բանականութեան կառավարութեանը տակ կ'ապրին, իրենց բարի յատկութեանց վրայ երբեք չեն հպարտանար, ինչպէս որ ես սրունքի կամ բազուկի մը կարօտութիւն չունենալուս համար չեմ կրնար հպարտանալ, թէ և առանց սրունքի և բազկի՝ ողորմելի պիտի ըլլայի․ Սա նիւթիս վրայ՝ խօսքս կը գադրեցընեմ Անգղիացի Տիկիններու ընկերութիւնը որ և իցէ կերպիւ անտանելի չընելու համար․ սակայն կ'աղաչեմ զանոնք որ եթէ աս պլանդակ մոլութեան ստուեր մը անգամ ունին՝ դէմ ելնելու չհամարձակին ։

ԳՐԱԴԱՐԱՆ
Библиотека
1922
Ա. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ

